# «Հենրիխ VI թագավորի ողբերգությունը»

# “The Tragedy of King Henry VI [books 1-3]”

THE TRAGEDY OF KING HENRY

Ուիլյամ Շեքսպիրի

[1591]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եագյանի [1978]*

“Why, I can smile and murder whiles I smile.”

BOOK 1

## ACT I. SCENE I.

Westminster Abbey. Dead march. The funeral for King Henry V enters, attended by Duke of Bedford, Regent of France, Duke of Gloucester, Protector, Duke of Exeter, Earl of Warwick and Bishop of Winchester.

### BEDFORD.

Սեւ հագիր, երկինք, եւ ցերեկ, զիջիր տեղդ գիշերուան, գիսաստղեր, դուք, որ փոխում էք յաւէտ բախտը տէրութեանց ու ժամանակի, արդ, շողացրէք ձեր բիւրեղափայլ հիւսքերն երկնքում եւ խարազանէք նրանցով աստղերն ընդվզող ու չար, քանզի հաշտուեցին հենրու մահուան հետ։ Մեծ համբաւ ունէր, ուստի չէր կարող նա երկար ապրել, անգլիան չէր կորցրել այսքան փառապանծ ոչ մի թագաւոր։

### GLOUCESTER.

Անգլիան չէր տեսել այսպիսի արքայ։ Առաքինի էր եւ արժանաւոր հրամայելու նրա շողացող, ոսկեփայլ սրի ճառագայթներից կուրանում էին աչքերը մարդկանց, աւելի երկար բազուկներ ունէր, քան թէ վիշապը, նրա հրացայտ, շանթող աչքերը շլացնում էին թշնամիներին աւելի սաստիկ եւ վանում հեռու, քան միջօրէի բարկ արեւն՝ հակուած նրանց դէմքերին, աւա՜ղ, ի՞նչ ասեմ արարքներն էին խօսքերից հզօր ձեռքն էր բարձրացնում միայն ու միայն յաղթութեան համար։

### EXETER.

Սեւ զգեստի մէջ ողբում ենք նրան, բայց ինչո՞ւ արեամբ մենք չենք ողողուած, մեռել է հենրին, չի զարթնի երբեք։ Կանգնած փայտաշէն դագաղի շուրջը՝ հսկում ենք նրան եւ վսեմաշուք մեր ներկայութեամբ յարգում ենք մահուան յաղթանակն անարգ, գերիների պէս՝ յաւէրժ շղթայուած յաղթական կառքին։ Միթէ՞ չարագոյժ մոլորակները պիտի նզովենք, որ դարանամուտ նիւթեցին մահը մեր հպարտութեան, թէ՞ պիտի խորհենք, որ հնարամիտ-ճարպիկ ֆրանսիացիք, հենրուց սարսափած, նետուեցին իսկոյն դուռը մոգութեան եւ կախարդական քերթուածքով նրա մահն հնարեցին։

### WINCHESTER.

Թագաւոր էր նա։ Օրհնել էր նրան արքայից արքան։ Վերջին դատաստանն այնքան ահաւոր չէր կարող լինել որքան որ նրա տեսքն էր ահաւոր՝ դաժան թշնամուն։ Աստծոյ զօրութեամբ կռւում էր արքան եւ եկեղեցու սուրբ աղօթքներով դարձաւ յաջողակ։

### GLOUCESTER.

Ի՞նչ։ Եկեղեցո՞ւ։ Թէ չաղօթէին քո տէրտէրները, նրա կեանքի թելն երբեք չէր հատուի այսքան վաղաժամ։ Քեզ դուր է գալիս միայն թուլամորթ թագաժառանգը, զի ահաբեկել կարող ես նրան իբրեւ աշակերտ։

### WINCHESTER.

Գլոստեր, ինչ էլ որ մենք կամենանք, դո՜ւ ես հովանին, ուզում ես իշխել թագաժառանգին ու

տէրութեանը։ Քո կինն հպարտ է ներշնչել է քեզ աւելի երկիւղ, քան կարող էին աստուած ու նրա ծառաները սուրբ։

GLOUCESTER.
Մի՛ տուր կրօնի անունը, քանզի մարմինն ես սիրում, եւ թէ գնում ես դու եկեղեցի տարին մի անգամ, ապա՝ թշնամուդ մահ աղօթելու։

BEDFORD.
Վե՛րջ տուէք կռուին, խաղաղուէ՛ք, տեարք իմ։ Գնա՛նք զոհարան։ Հերալդներ, սպասէք։ Ոսկու փոխարէն զոհ կը մատուցենք մեր զէնքերն ամբողջ, զէնքերն այլեւս մեզ չեն ծառայի մեռել է հենրին։ Ո՛վ դո՛ւք, յետնորդնե՛ր, դեռ պիտի տեսնէք տարիներ դժնի, երբ արցունքներով մայրը կը սնի նորածին մանկան, եւ մեր հարազատ կղզին կը դառնայ արցունքի մորուտ, կը մնան կանայք, որպէսզի ողբան զոհերի վրայ։ Հենրի հինգերո՛րդ, կանչո՛ւմ եմ ոգուդ, փրկի՛ր երկիրն այս եւ հեռու պահիր խառնակութիւնից, կռուիր երկնային մարմինների հետ, եւ աստղը ոգուդ աւելի մեծ փառք կ՝ունենայ այստեղ քան կեսարինը կամ շքեղօրէն։

*[Messenger I enters.]*

MESSENGER I.
Իմ ողջոյնը ձեզ, պատուարժան տէրեր, ես ֆրանսիայից վատ լուր եմ բերել ամէնուր՝ կորուստ, անյաջողութիւն, գիւիեն, շամպայն, օռլէան, ռուան, փարիզ, ռեմս, գիզօր ։ Կորցրինք լիովին։

BEDFORD.
Ինչ որ գուժեցիր դագաղի վրայ, ասա՛ կամացո՛ւկ, թէ չէ կորցրած մեծ քաղաքները կը ստիպեն նրան՝ գազաղը ջարդել, արթնանալ քնից։

GLOUCESTER.
Փարիզը կորցրի՞նք, միթէ՞ ռուանը անձնատուր եղաւ։ Եթէ հենրիին կեանք տրուէր նորից, այս վատ լուրերից կ՝աւանդէր հոգին։

EXETER.
Ինչպէ՞ս կորցրինք այդ քաղաքները, ո՞վ դաւաճանեց։

MESSENGER I.
Ո՛չ մի մատնութիւն։ Պակասում էին մարդիկ ու դրամ։ Զինուորների մէջ փսփսուքներ են տարածուել արդէն, որ իբրեւ այստեղ դուք բաժանուել էք տարբեր խմբերի։ Եւ որ ռազմի դաշտ փութալու տեղակ՝ վիճում էք, թէ ում ընտրել զօրավար մէկը քիչ ծախքով ուզում է մղել երկար պատերազմ երկրորդը՝ ճախրել, բայց թեւեր չունի, երրորդն է խորհում, որ առանց փողի, քաղցրանենգ խօսքով կարող է հասնել լոկ խաղաղութեան։ Զարթնի՛ր, անգլիայի ազնուականութիւն, թող հեղգութիւնը չխամրեցնի փառքդ նորածին, զինանշանից պոկել են բոլոր շուշաններն արդէն վահանն անգլիայի ճեղքուած է կէսից։

EXETER.
Թէ քիչ լինէին մեր արցունքները դագաղի վրայ, բաւ են լուրերն այս, որպէսզի թափուէր արցունքի հեղեղ։

BEDFORD.
Տեարք իմ, լուրերն ինձ վիշտ են պատճառում։ Ես՝ կուսակալս, չեմ կարող դրանց նայել անարցունք։ բերէք զրահն իմ, ես պիտի կռուեմ ֆրանսիայի համար, եւ հեռու տարէք այս ամօթալի սգի շորերը, ես ֆրանսիացուն աչքերի տեղակ վէրքեր եմ տալու, որպէսզի ողբայ իր ցաւերն արնոտ։

*[Messenger II enters.]*

MESSENGER II.
Լորդե՛ր, կարդացէք այս նամակները՝ դառնութեամբ լեցուն ապստամբուել է ֆրանսիան մեր դէմ, բացի աննշան, փոքր քաղաքներից։ Ռեմսի տաճարում թագադրուել է շառլը՝ դոֆինը, եւ օռլէանի պռռնկորդու հետ դաշինք է կնքել, անժուի դուքսը՝ ռենէն, դոֆինի բանակն է անցել, ալանսոնի դուքսն այնտեղ է վազում։

EXETER.
Թագաժառանգը կարգուել է արքայ, բոլորն էլ նրա կողմն են շտապում։ Ո՞ւր փախչենք, աստուա՛ծ, այս ամօթանքից։

GLOUCESTER.
Չպէտք է փախչենք, որ մեր թշնամու կոկորդը բռնենք, բեդֆորդ, իմացիր, եթէ յապաղես, մենակ կը մնաս։

BEDFORD.
Գլոստեր, ինչո՞ւ ես կասկածում վրաս։ Ես ժողովել եմ արդէն մտովի այնպիսի բանակ, որ նուաճել է ամբողջ ֆրանսիան։

*[Messenger III enters.]*

MESSENGER III.
Ողորմած տէրեր, կրկնապատկեցէք ձեր արցունքները, որով ցօղում էք դագաղն արքայի, ձեզ պիտի լուր տամ չարագոյժ կռուից, որ մեր թշնամու եւ լորդ տոլբոտի միջեւ բորբոքուեց։

WINCHESTER.
Տոլբոտն յաղթե՞լ է ֆրանսիացիներին։ Այդպէ՞ս է, իրա՞ւ։

MESSENGER III.
Ո՛, ո՛չ։ Տոլբոտ պարտութիւն կրեց։ Ամէն ինչ հիմա մանրամասնօրէն ես ձեզ կը պատմեմ։ Օգոստոսի

տասին այս իշխանն ահեղ օռլէան քաղաքի շրջապատումից նորէն դուրս ելաւ, վեց հազար մարդ կար նրա ձեռքի տակ, բայց ֆրանսիացիք՝ տոլբոտի զօրքից չորս անգամ աւել, շրջապատեցին նրան փութօրէն։ Նա չհասցրեց շարել իր մարդկանց տոլբոտն ուզում էր նետաձիգների շարքերի առաջ ձողեր կանգնեցնել, դրա փոխարէն ցանկապատերից պոկեցին ցցեր, կարծր հողի մէջ խրեցին անկարգ, որ կասեցնեն հեծելազօրի ճնշումը սաստիկ։ Երեք ժամ տեւեց կռիւն արնահեղ, մարդկային լեզուն չի կարող պատմել, թէ քաջ տոլբոտը սրով ու տէգով ինչ հրաշք գործեց նա բիւր զինուորներ ուղարկեց դժոխք, ոչ ոք չէր կանգնում նրան յանդիման, եւ ամէնուրեք թռչում էր նրա զայրացկոտ ոգին, իսկ ֆրանսիացիք բղաւում էին, որ նա հէնց դեւն է՝ զրահը հագին, եւ ողջ բանակը՝ վախից քարացած, նայում էր նրան, իսկ նրա զօրքը դիտում էր հպարտ այդ անկոր ոգուն, եւ բղաւելով՝ տոլբո՜տ, հէ՜յ տոլբոտ, նետւում էր կռուի որովայնն արնոտ։ Յաղթութեամբ մարտը պիտի պսակուէր, թէ ջոն ֆաստոլֆի սիրտը չօղակէր վախի զգացում՝ նրան թողնում են դիտմամբ վերջապահ, որպէսզի նեցուկ կանգնի մեր զօրքին, բայց վախկոտի պէս փախչում է դաշտից՝ դեռ չճաշակած հարուածն առաջին։ Դրանից յետոյ սկիզբ են առնում կոտորած ու ջարդ, շրջապատում է թշնամին մերոնց, մի նենգ վալոնցի, որպէսզի մտնի աչքն արքայորդու, տէգ է մխրճում մէջքը տոլբոտի, ում ցասկոտ դէմքին նրանց զօրքն ամբողջ քաջութիւն չունէր հեղ մի նայելու։

BEDFORD.

Տոլբոտն սպանուա՞ծ, ես ինձ կը սպանեմ, զի մեղկ ծուլութեամբ ապրում եմ այստեղ՝ գրկում հանգստի ու շքեղութեան մինչդեռ նա ընկաւ՝ օգնութեան կարօտ, մեր երեւելի, քաջ առաջնորդին ծախեցին, աւա՜ղ։

MESSENGER III.

Օ՛, ո՛չ, չի զոհուել, գերել են միայն, հետն էլ՝ սքելսին ու հենգերֆորդին, զօրքի մեծ մասը նոյնպէս կոտորուեց կամ գերի ընկաւ։

BEDFORD.

Ոչ ոք չի տալու նրա փրկագինն ինձանից բացի, ես քարշ եմ տալու թագաժառանգին գահից գլխիվայր, իմ բարեկամին որպէս փրկագին նրա ոսկեշող թագը կը լինի, չորս իշխաններով կը փոխանակեմ մեր գերուած մէկը։ Դե՜հ, մնա՛ք բարեաւ, ես դեռ պարտք ունեմ թշնամու հողում խարոյկ կը վառեմ, որ այդ երկրում էլ մեր սուրբ գեւորգի հանդէսը լինի։ Տանում եմ ինձ հետ տասն հազար զինուոր, որ արիւնահեղ նրանց գործերից դողայ եւրոպան։

MESSENGER III.

Պէտք չէ յապաղել, շրջապատուած է օռլէանն արդէն, բանակն անգլիայի յոգնել է, հիւծուել, կոմս սօլսբերին հայցում է պարէն, հազիւ է զսպում խռովքն իր մարդկանց, որ սակաւաթիւ՝ ետ են շպրտում մի մեծ բազմութիւն։

EXETER.

Յիշէք, իշխաննե՛ր, ձեր նուիրական երդումն հենրիին խսպառ սանձել թագաժառանգին կամ նրան յանձնել մեր տէրութիւնը։

BEDFORD.
Այո՛, յիշում եմ։ Դե՛հ, մնա՛ք բարեաւ, գնամ-պատրաստեմ իմ զէնքն ու զրահն։ [Exits.]

GLOUCESTER.
Աճապարանքով ես պիտի փութամ դէպի թաուէր, որ հրետանին ու պաշարն ամբողջ ստոյգ զննեմ եւ, այնուհետեւ, ջահէլ հենրիին հռչակեմ արքայ։ [Exits.]

EXETER.
Էլթեմ կը գնամ, որտեղ ապրում է մեր ջահէլ արքան, լինելով նրա կուսակալն յատուկ՝ կը գտնեմ նրա ապահովութեան լաւագոյն միջոց։ [Exits.]

WINCHESTER.
Ամէն ոք ունի իր տեղն ու գործը, ես աւելորդ եմ, ինձ համար կարծես ոչինչ չմնաց, բայց ես չեմ մնայ Էլթեմից հեռու ես միտք եմ դրել թաքուն փախցնել արքային ջահէլ եւ մեր տէրութեան ղեկին մօտ կանգնել։ [Exits.]

][][

ACT I. SCENE II.
France. Before Orleans. Charles the Dauphin enters with Alencon and Reignier, marching with drum and Soldiers.

CHARLES.
Մինչեւ այս օրը դեռեւս յայտնի չէ մարս մոլորակի շարժումը ստոյգ ո՛չ երկրի վրայ, ո՛չ էլ երկնքում, վերջերս այն շողաց անգլիոյ կողմերում այժմ ժպտում է մեզ՝ յաղթողներիս։ Դեռ կան քաղաքնե՞ր՝ փոքր-ինչ կարեւոր, որ չենք նուաճել մենք մեր իսկ կամքով մնում ենք այստեղ՝ օռլէանի տակ, մինչ անգլիացիք՝ ուրուականի պէս գունատ ու դժգոյն, վհատեալ կերպով պաշարում են մեզ ամիսը մէկ ժամ։

ALENCON.
Նրանք ապուրի ու պարարտ մսի կարիք են զգում, նրանց ջորու պէս պէտք է կերակրել՝ վզից կախ տալով պարկը վարսակի, այլապէս թրջուած մկների նման կը նայեն խղճուկ։

REIGNIER.
Կը քշենք նրանց։ Ինչո՞ւ ձեռնունայն սպասել այստեղ, ումի՞ց վախենալ տոլբոտն է գերուած, մնացել է լոկ խելքը թռցրած կոմս սօլսբերին, թող ինչպէս կ՝ուզէ, փրփուրը բերնին իր մաղձը թափի, ո՛չ դրամ ունի, ո՛չ էլ զինուորներ։

CHARLES.
Հնչեցրէ՛ք տագնապ, պէտք է յարձակուենք մենք նրանց վրայ՝յանուն մեր անօգ ֆրանսիացիների, պատրաստ եմ ներել ինձ մահ պարգեւող ամէն մի մարդու, եթէ ինձ տեսնի փախուստի ճամփին։

*[They rush to battle only to be beaten back by the English, suffering great losses. Charles, Aencon and Reignier re-enter.]*

CHARLES.
Ա՜խ, ո՞վ էր տեսել նման բան կեանքում իմ մարդիկ շուն են, վախկոտ, սրիկայ։ Ես չէի փախչի, եթէ այդ մարդիկ թշնամուս բերանն ինձ չգցէին։

REIGNIER.
Սօլսբերին յանդուգն, անվախ մարտիկ է, կռւում է կեանքից յոգնած մարդու պէս, միւս իշխանները քաղցած ու վայրի առիւծների պէս վրայ են տալիս, յօշոտում են մեզ, յանց իրենց որսը։

ALENCON.
Մեր հայրենակից ֆրուասարը յիշատակում է, որ անգլիան երկնեց միայն ռոլանդներ ու օլիւերներ էդուարդ երրորդ արքայի օրօք։ Եւ սա դառնում է աւելի ստոյգ, քանզի կռուի է նետում սամսոններ ու գողիաթներ, մէկը՝ տասի դէմ։ Վտի՜տ սրիկանե՜ր, ո՞վ պիտի խորհէր, որ նրանք այսքա՜ն քաջ են ու խիզախ։

CHARLES.
Քաղաքը թողնենք։ Այդ թեթեւամիտ աւազակները սաստկացող սովից խիստ կը գազազեն ճանաչում եմ ես նրանց շատ վաղուց սուր ատամներով կը քանդեն պատեր, բայց չեն հրաժարուի շրջապատումից։

REIGNIER.
Կարծես թէ նրանց ձեռքերն է լարել ինչ-որ յատուկ սարք կամ մի զսպանակ, որպէսզի նրանք ժամացոյցի պէս հարուածեն անդուլ, այլապէս նրանք չէին կարենայ ծառանալ մեր դէմ։ Շուտով ես նրանց մենակ կը թողնեմ։

ALENCON.
Թող այդպէս լինի։

*[Bastard of Orleans enters.]*

BASTARD.
Որտե՞ղ է, ասէք, թագաժառանգը։ Ես լուր եմ բերել։

CHARLES.
Ողջո՜յն ձեզ, բաստա՜րդ, երի՜ցս ողջոյն։

BASTARD.
Կարծեմ, տխուր էք, նոյնիսկ՝ գունատուած։ Միթէ՞ ձեր վերջին պարտութիւնն այդպէս անարգում է

ձեզ, պէտք չէ վշտանալ, օգնութիւնն արդէն ձեր ձեռքի տակ է, ինձ հետ կայ մի կոյս, ում շնորհել է երկինքն ի վերուստ՝ վերջ տալու տանջող այս պաշարմանը, դուրս վռնդելով մեր հայրենիքից թշնամուն անարգ։ Նրա խորամիտ, գուշակող ոգին ուժեղ է հռովմի ինն սիբիլներից։ Գուշակում է նա, թէ ինչ է եղել, ինչ է լինելու, ասէք, կարո՞ղ եմ ներս բերել նրան։ Հաւատացէք ինձ՝ խօսքերս են ստոյգ եւ ճշմարտացի։

CHARLES.
Գնա՛ ներս կանչիր։

*[Bastard exits.]*

CHARLES. [cont]
Նախ՝ պէտք է փորձել նրա շնորհքը։ Ռենէ, եկ, կանգնիր դոֆինի տեղը, նայիր նրան խիստ եւ հպարտօրէն հարցուփորձ արա այս ձեւով նրա շնորհքը կը ստուգենք։ Առանձնանում է։

*[Bastard and Joan Pucelle enter.]*

REIGNIER.
[To Pucelle] Ով կոյս գեղանի, ուզո՞ւմ ես մեզ մօտ հրաշքներ գործել։

PUCELLE.
Ռենէ, ուզում ես ա՞յդ ձեւով խաբել, որտե՞ղ է, ասա՛ թագաժառանգը։ Դո՛ւրս եկ, մօտեցի՛ր, ճանաչում եմ քեզ, թէեւ չեմ տեսել, պէտք չէ շփոթուել, ամէն ինչ գիտեմ, ուզում եմ քեզ հետ առանձին խօսել, ազնիւ իշխաններ, մեզ թողէք մենակ մի քանի վայրկեան։

REIGNIER.
Առաջին գրոհը համարձակ է խիստ։

PUCELLE.
Ես մի հասարակ աղջիկ եմ հովուի, միտքս վարժուած չէ ոչ մի գիտութեան, սակայն երկինքը։ Մեր կոյս մարիամը հաճեցան մի։ Օր շողալ անարգուած իմ բախտի վրայ, մի անգամ դաշտում, երբ նայում էի մատղաշ գառներիս այտերս այրում արեւի շողքով, յանկարծ յայտնուեց աստուածամայրը վեհափառ տեսքով, եւ ինձ պատուիրեց՝ թողնել հովուուհու ցուպը լեռներում, փրկել հայրենիքս այս աղէտներից, նաեւ խոստացաւ լինել ինձ նեցուկ։ Երբ իր կատարեալ փառքով յայտնուեց, ես տգեղադէմ աղջիկ էի։ Երկնի մաքրափայլ շողերն արձակեց իմ դէմքի վրայ, եւ գեղեցկութեամբ ինձ յաւէրժ օրհնեց։ Տուր հնարաւոր հարցերն ամենայն, կը պատասխանեմ։ Եթէ յանդգնես իմ քաջութիւնը փորձել կռուի մէջ, կը տեսնես, որ ես գերազանցում եմ սեռն իմ կանացի։ Դու ինձ վստահիր, եւ քեզ կը ժպտայ երջանկութիւնը, եթէ քո զօրքին ես տանեմ ի մարտ։

CHARLES.
Հիանում եմ ես քո բարձր ոճով, տուր ինձ ապացոյց քո խիզախութեան ե՛կ, մենամարտենք այստեղ

իրար հետ, եւ եթէ յաղթես, խօսքերդ են շիտակ այլապէս բնաւ քեզ չեմ հաւատայ։

PUCELLE.
Պատրաստ եմ, ահա իմ սուրսայր սուրը, իւրաքանչիւր շեղբն ունի հինգ շուշան, սուրս թուրենում սուրբ կատարինի գերեզմանատան հին երկաթների միջից եմ գտել։

CHARLES.
Եկ, մենամարտենք, աստուած պահապան ես չեմ սարսափում կնոջ հարուածից։

PUCELLE.
Իսկ ես քանի կամ, չեմ փախչի երբեք ոչ մի այր մարդուց։

*[They start to fight. Pucelle wins easily.]*

CHARLES.
Կա՛ց, սուրդ վայր դիր դու ամազոնի ցեղից ես սերուել բայց դեբովրայի սրով ես կռւում։

PUCELLE.
Աւա՛ղ, ես թոյլ եմ։ Ինձ նեցուկ եղաւ աստուածամայրը։

CHARLES.
Ով էլ քեզ օգնի, դարձիր ինձ սատար, իմ սիրտը լցուեց այրուող տենչանքով, դու շղթայեցիր իմ ձեռքն ու ոտը, սքանչելի՛ կոյս, եթէ քեզ մարդիկ այսպէս են կոչում, թող ոչ թէ տէրդ, այլ ծառադ լինեմ, քեզ ֆրանսիայի թագաժառանգն է այսպէս աղերսում։

PUCELLE.
Ես մերժելու եմ սիրոյ ամէն ծէս, իմ ուխտն է՝ վառել երկինքն աստղակէզ, երբ դուրս վռնդեմ զօրքը թշնամեաց, թող ինձ հատուցի արքան ողորմած։

CHARLES.
Քաղցրութեամբ նայիր գետնած ստրուկիդ։

REIGNIER.
[Aside.] Տէրն իմ չափազանց երկա՛ր է խօսում։

ALENCON.
[Aside.] Ջանում է, անշուշտ, կորզել կնոջից գաղտնիքներն ամէն, այլապէս զրոյցն այսքան չէր տեւի։

REIGNIER.
[Aside.] Արդեօք ընդմիջե՞նք, չափը չի՞ անցնում։

ALENCON.
[Aside.] Նա գիտէ աւել, քան թէ ինքներս։ Օ՛, կանայք դիւթիչ սատանաներ են։

REIGNIER.
[To Charles.] Ի՞նչ որոշեցիք, թողնե՞լ քաղաքը թշնամուն, թէ՞ ոչ։

PUCELLE.
Ո՛չ, ո՛չ։ Ուխտազանց թերահաւատնե՛ր, կռուէք մինչեւ վերջ, ես ձեր սատարն եմ։

CHARLES.
Ես հաստատում եմ նրա խօսքերը, կռուե՛նք մինչեւ վերջ։

PUCELLE.
Բախտն ինձ սահմանեց, որ պիտի դառնամ անգլիոյ խարազան։ Այս գիշեր պէտք է քաղաքն ազատեմ շրջապատումից։ Երբ ես մասնակցեմ այս կռիւներին, դուք պիտի տեսնէք երջանիկ օրեր եւ Սուրբ Մարտին ամառն հոգեթով։ Փառքն ասես լինի ծովի գիրկն ընկած ջրի շրջանակ, որ ծաւալուելով անվերջ, անդադար՝ ցնդում է անհետ։ Հենրիի մահով ցնդեց անգլիացու այն շրջանակը, որ պարփակում էր իր մէջ բիւր փառքեր։ Արդ, ես նման եմ այն հպարտ նաւին, որ միանգամից տարաւ կեսարին ու նրա բախտը։

CHARLES.
Մուհամեդն արդեօք չէ՞ր ոգեշնչւում իր աղաւնիով, իսկ դու՝ արծիւով։ Ո՛չ, նման չեն քեզ սուրբ փիլիպոսի դուստրերը չքնաղ, ո՛չ կոստանդնու մայրը՝ հեղինէն։ Դու վեներայի շողշողուն աստղիկ՝ ի վերայ երկրի, ինչո՞վ կարող եմ ես քեզ մեծարել։

ALENCON.
Պէտք չէ յապաղել թող պաշարումից քաղաքն ազատենք։

REIGNIER.
Ամէն ինչ արա, միայն թէ փրկիր մեր պատիւն, ո՛վ կո՛յս դու կը յաւէրժանաս, եթէ օռլէանից դուրս քշես նրանց։

CHARLES.
Հիմա կը փորձենք, ինձ հետեւեցէք, թէ խաբի, ուրեմն չկայ մարգարէ։

*[They exit.]*

]0[

ACT I. SCENE III.
London. Before the Tower gates. Duke of Gloucester enters with his Servants in blue coats.

GLOUCESTER.
Եկայ՝ դիտելու թաուերն այսօր, ինչ մեռաւ հենրին, երկիւղ եմ կրում յափշտակումից։ Որտե՞ղ են չքուել այս պահակները։ Ինչո՞ւ տեղում չեն։ Բացէ՛ք դարպասը։ Ես Գլոսթերն եմ:

GUARD I.
[From the depths of the stage.] Ո՞վ է հարուածում այսպէս տիրաբար։

SERVANT I.
Ազնուատոհմիկ դուքս գլոստերը։

GUARD II.
[From the depths of the stage.] Ով էլ որ լինէք, ներս չենք թողնի ձեզ։

SERVANT I.
Սրիկան, սա՞ է պատասխանը գալակտիկայի պահապանին:

GUARD I.
[From the depths of the stage.] Աստուած նրա հետ այսպէս ենք նրան մենք պատասխանում։
մենք հրամանն ենք միայն կատարում։

GLOUCESTER.
Ո՞վ է հրամայել։ Ինձանից բացի ոչ ոք չի կարող ձեզ հրամայել։ Ես եմ տէրութեան խնամակալը։ Ջարդէ՛ք դարպասը, ես թոյլ եմ տալիս միթէ՞ կը թողնեմ, որ ձիապաններն այսպէս մեզ ծաղրեն։

*[Gloucester's men rush at the Tower gates. Woodville speaks to them from within.]*

WOODVILLE.
Ի՞նչ աղմուկ է սա։ Դաւաճանութի՞ւն։

GLOUCESTER.
Ձեր ձա՞յնն եմ լսում, բերդապե՛տ, արդեօք։ Բացէ՛ք դարպասը, դուքս գլոստերը պէտք է ներս մտնի։

WOODVILLE.
Մի քիչ համբերէք, ազնիւ գլոստեր, չեմ կարող բանալ արգելել է ինձ լորդ կարդինալը նա ինձ տուել է յատուկ հրաման, որ ձեզ ու ձերոնց չթողնեմ այստեղ։

GLOUCESTER.
Փոքրոգի վուդուիլ, միթէ՞ ինձանից բարձր է այդ մարդը՝ յանդուգն ու գոռոզ եպիսկոպոսը ում չէր

հանդուրժում մեր վեհապետը՝ հանգուցեալ հենրին։ Դուք բարեկամ չէք ո՛չ թագաւորին, ո՛չ էլ աստծուն բացէ՛ք դարպասը, թէ չէ ձեր տեղից կը թռչէք իսկոյն։

SERVANT II.
Բացէ՛ք դարպասը գլոստերի առաջ, եթէ յապաղէք, կը ջարդենք ուժով։

*[The Bishop of Winchester and his Ministers enter in apricot-colored robes.]*

WINCHESTER.
Ինչի՞ ես ձգտում, փառամոլ հեմֆրի։

GLOUCESTER.
Ածիլուա՛ծ տէրտէ՛ր, դո՞ւ ես պատուիրել, որ ինձ ներս չառնեն։

WINCHESTER.
Այո, իմացիր, որ դու խարդախ շորթող ես, ոչ թե գալակտիկայի կամ մեր տիրոջ պահապանը։։

GLOUCESTER.
Յետ կանգնիր իսկոյն, յայտնի դաւադիր, դու չէի՞ր՝ արդեօք, որ փորձում էիր տիրոջն սպանել, դու չէի՞ր ներում անառակ կանանց մեղքերը բոլոր, քեզ պիտի շուռ տամ կարդինալական լայն գլխարկիդ մէջ, թէ շարունակես լկտիութիւնդ։

WINCHESTER.
*«Յետ կանգնի՞ր իսկոյն։»* Մի քայլ չեմ անի թող այս վայրը քեզ դառնայ դամասկոս, եւ քեզ անիծէ կայէնն արնախում, թէ քո եղբորը՝ անմեղ աբէլին, սպանել կամիս։

GLOUCESTER.
Քեզ չեմ սպանի, բայց ետ կը քշեմ, քեզ փաթաթելով քո ծիրանավառ հագուստների մէջ՝ դուրս կը շպրտեմ այստեղից, ինչպէս մանկան կնքաշոր։

WINCHESTER.
Փորձիր յանդգնել, կը փետեմ ես քո ցանցառ մօրուքը։

GLOUCESTER.
Ի՞նչ։ Յանդգնո՞ւմ ես ձեռք տալ մօրուքիս։ Հէ՛յ, մարդի՛կ, սրեր, թէեւ այս տեղը վայր է սրբազան, կապտազգեստնե՛ր, զարկէ՛ք անխնայ դարչնագոյններին։ Տիրացո՛ւ, զգո՛յշ քո պիղծ մօրուքից, կամենում եմ ես մօրուքդ պոկել ու քեզ ապտակել եւ ոտքերիս տակ կարդինալական գլխարկդ նետել, թէպէտ քէն չունեմ ո՛չ եկեղեցու, ո՛չ պապի հանդէպ, օձիքդ բռնած՝ քեզ քարշ եմ տալու։

WINCHESTER.
Գլոստեր, դու պապին պատասխան կը տաս։

GLOUCESTER.
Ուինչեստերի ղա՛զ։ Հէ՜յ, պարան բերէք, դուրս քշէք նրանց։ Ինչո՞ւ էք թողնում սրանց այս վայրում։ Կորի՛ր աչքիցս։ Գայլ՝ գառան մորթի գցած ուսերիդ, դո՛ւրս դարչնագոյններ, դո՛ւրս, ծիրանակիր դու փարիսեցի։

*[Gloucester's Servants push back the Bishop's men. The Mayor of London and his Officers enter.]*

MAYOR.
Վա՜յ ձեզ, լինելով տոհմիկ իշխաններ՝ դուք ամօթաբար անդորրն էք հերքում։

GLOUCESTER.
Լռի՛ր, չգիտես վիրաւորանքս։ Ահա բոֆորտը՝ թշնամին աստծոյ եւ թագաւորի, ուզում էր ուժով թաուերն առնել։

WINCHESTER.
Գլոստերն ահա՝ քաղաքաբնակ մարդկանց թշնամին, մա՛րդ, որ շարունակ կռիւ է տենչում, ո՛չ խաղաղութիւն։ Ձեր դատարկ քսակն հարկերով ճզմում։ ջանում է, աւա՜ղ, հաւատն սպանել, քանզի յորջորջուեց երկրի հովանի կամենում է նա հէնց թաուերից զէնքեր գողանալ եւ տապալելով թագաժառանգին՝ պսակուել արքայ։

GLOUCESTER.
Բառերի տեղակ քեզ հարուածներով պատասխան կը տամ։

*[They begin fighting once more.]*

MAYOR.
Արդ, ինձ այլեւս ոչինչ չի մնում այս աղմուկի մէջ, քան հնչեցնել օրէնքը տիրոջ։ Մօտ ե՛կ, ոստիկան, որքան կարող ես, կարդայ բարձրաձայն։

OFFICER.
[Loudly to all.] Ի լուր ամենայն դասի պատկանող մարդոց, որ զէնքը ձեռքերին հաւաքուել են այստեղ՝ խանգարելու աստծոյ ու թագաւորի խաղաղութիւնը, մենք նորին մեծութեան անունից յայտարարում եւ հրամայում ենք՝ հեռանալ ձեր բնակատեղիները։ Յետ այսու արգելում ենք մահուան սպառնալիքով կրել կամ գործածել զէնք, դաշոյն ու սուսեր։

GLOUCESTER.
Կարդինալ, օրէնքն երբեք դրժող չեմ, բայց երբ հանդիպենք, մեր հոգիները մենք պիտի բանանք։

WINCHESTER.
Գլոստեր, իմացիր, պիտի հանդիպենք, եւ սա քեզ վրայ թանկ է նստելու, սրտիդ արիւնով այսօրուայ

համար պիտի հատուցես։

MAYOR.
[Shouting.] Թէ չհեռանաք, պահակախմբին կը կանչեմ։ [Aside.] Իսկոյն այս կարդինալը գոռոզ է թւում, քան թէ սատանան։

GLOUCESTER.
Քաղաքագլուխ, գործդ արեցիր, դե՛հ, մնա՛ս բարով։

WINCHESTER.
Զզուելի գլոստեր, գլուխդ պահիր միտք ունեմ ես այն շուտով թռցնել։

*[Gloucester and the Bishop of Winchester exit with their men in different directions.]*

MAYOR.
Թող վտանգն անցնի, յետոյ կը գնանք։ Ողորմած աստուած, ի՜նչ կատաղի են այս իշխանները, չորս տասնեակ տարիս անցաւ, բարեկա՛մ սակայն չեմ կռուել եւ ոչ մի անգամ։

*[They exit.]*

]0[

ACT I. SCENE IV.
France. Before Orleans. Master-Gunner of Orleans enters with his Boy.

MASTER-GUNNER.
զաւա՛կս, գիտե՞ս, որ պաշարուած է օռլէանն հիմա, եւ ինչ պատճառով անգլիացիք առան արուարձանները։

BOY.
Հայրիկ, ես գիտեմ, յաճախ եմ նրանց վրայ կրակել, բայց, դժբախտաբար, վրիպել եմ միշտ։

MASTER-GUNNER.
Զաւա՛կս, հիմա պէտք չէ վրիպել, լսի՛ր քո հօրը, ես եմ քաղաքի զինագործն հմուտ մի բանով պէտք է շնորհքս երեւայ։ Թագաժառանգի դիտազօրները ինձ իմաց տուին, որ անգլիացիք, արուարձաններում խիստ ամրանալով, գաղտնադիտում են այն աշտարակի ճաղերի միջից՝ ամբողջ քաղաքը առած ափի մէջ։ Եւ նրանք գիտեն հրաձգութեամբ կամ գրոհներով մեզ նեղը գցել։ Բայց ես փակել եմ այս խոչընդոտը՝ ուղղելով այնտեղ մեր թնդանօթը, ես երեք գիշեր հսկել եմ նրանց ու հետամտել, այժմ դու հսկիր, յոգնել եմ սաստիկ ու եթէ յանկարծ մի բան նկատես, վա՛զ տուր, ինձ ասա՛, ինձ բերդապետի տանը կը գտնես։ [Exits.]

BOY.
Ապահով եղիր, վստահիր որդուդ, նկատելիս էլ հոգս չեմ պատճառի։

*[Salisbury and Talbot enter on the Wall, followed by Glansdale and Gargrave.]*

SALISBURY.
Տալբո՛տ, իմ արե՛ւ, իմ ուրախութի՛ւն, դու վերադարձա՞ր, ինչպէ՞ս վարուեցին քեզ հետ, քաջ իշխան, ի՞նչ ձեւով, կեա՜նք իմ, դու ազատուեցիր, խնդրում եմ, պատմիր այս աշտարակի բարձրութեան վրայ։

TALBOT.
Դուքս բեդֆորդն ունէր գերուած մի իշխան, քաջի անունն էր՝ փոնտօն դը սանտրայլ։ Ինձ բաց թողեցին՝ փոխանակելով այս իշխանի հետ։ Սակայն մի անգամ նրանք ցանկացան ստորացնելով ինձ փոխանակել մի զինուորի հետ, բայց անգոսնելով մահ պահանջեցի, որ ամօթալի վիճակից դուրս գամ։ Ի վերջոյ, նրանք իմ ուզած ձեւով ինձ ազատեցին։ Բայց մատնիչ ֆաստոլֆն իմ սիրտն է խոցում, ես կը սպանէի այդ դաւաճանին իմ բռունցքներով,
եթէ նա հիմա իմ ձեռքը ընկնէր։

SALISBURY.
Բայց դու չես ասում, թէ նրանք քեզ հետ ինչպէս վարուեցին։

TALBOT.
Օ՛, թշնամաբար ինձ կշտամբեցին եւ այպանելով զազրախօսեցին ինձ քարշ տուեցին նրանք շուկայի հրապարակը՝ ի զուարճութիւն ողջ ժողովրդի։ «ահա ֆրանսիայի սարսափն, ասացին, խրտուիլակ, որով երեխաներին մենք վախեցնում ենք։» Բայց պահակների ձեռքից ես փախայ, իմ եղունգներով գետնից պոկեցի վիթխարի քարեր, որպէսզի նետեմ իմ ամօթանքի հանդիսատեսին։ Նրանք իմ խոժոռ հայեացքից փախան, մահուան երկիւղից ոչ ոք քաջութիւն չունեցաւ մօտ գալ։ Պատերն երկաթեայ չէին խոստանում ապահովութիւն, եւ այնքան մեծ էր սարսափն իմ անուան, որ կարծում էին, թէ ես կը ջարդեմ պողպատ-ձողերը եւ ցրիւ կը տամ ադամանդակուռ պատերը բանտի։ Ընտրեալ զինուորներ կարգեցին վրաս, նրանք աչալուրջ հսկում էին ինձ, եւ եթէ յանկարծ ես բարձրանայի իմ չոր անկողնուց, ա՛խ, պատրաստ էին սիրտս խոցելու։

*[The Boy enters with a linstock.]*

SALISBURY.
Վիշտ է պատճառում ինձ տառապանքդ, բայց, ինչպէս հարկն է, վրէժ կ՝առնենք, արդ, օռլէանում ժամ է ընթրիքի։ Ճաղերի միջով կարող եմ համրել բոլորին մէկ-մէկ, տեսնել՝ ինչպէս են նրանք ամրանում, ե՛կ, նայիր, գուցէ հաճոյք պատճառի քեզ տեսարանը։ Սըր թոմաս գարգրեւ, սըր վիլեամ գլանսդել, խնդրում եմ յայտնէք ձեր կարծիքները ո՛ր կողմի վրայ մեր մարտկոցն ուղղենք։

GARGRAVE
Կարծում եմ, լաւ է դարպասն հիւսիսի,՝ բոլոր իշխաններն այնտեղ են կանգնած։

GLANSDALE
Իսկ իմ կարծիքով՝ վատ չէ կամրջի փոքրիկ ամրոցը։

TALBOT.
Ինչպէս տեսնում եմ, պէտք է սովամահ անել քաղաքը կամ խեղճացնել թեթեւ մարտերով։

*[Artillery begins to fire. Salisbury and Sir Thomas are wounded.]*

SALISBURY.
Օ՜, աստուա՜ծ, գթա՜ մեղաւորներիս։

GARGRAVE
Օ՜, աստուա՜ծ, գթա՜ ինձ՝ տառապեալիս։

TALBOT.
Ի՞նչ պատահմունք էր, որ յանկարծ զգեց մեզ փորձանքի մէջ։ Խօսի՛ր, սօլսբերի՛, գէթ մի բառ ասա՛, եթէ կարող ես, քեզ ի՞նչ պատահեց, դու զինուորների մաքուր հայելի, արկը տարել է քո աչքի մէկը, ջարդել քո այտը, ձեզ յաւէրժ նզո՜վք, արնոտ աշտարակ եւ ձեռք չարագոյժ, որ պատճառ դարձաք այս աղէտալի ողբերգութեանը։ Տասներեք մարտ է սօլսբերին շահել, հենրի հինգերորդն առաջին անգամ նրանից մարտի արուեստն ուսանեց մինչ հնչում էին ե՛ւ փող, ե՛ւ թմբուկ, շամփրում էր նրա սուրը ռազմի դաշտում։ Դեռ ապրո՞ւմ ես դու, թէեւ ուժ չունես խօսելու համար, բայց քո մէկ աչքով կարող ես նայել ու երկնից խնդրել ապաշխարութիւն, այսպէս արեւն է իր միակ աչքով նայում աշխարհին։ Երկի՜նք, մի՛ գթա դու այսուհետեւ ոչ մի էակի, թէ սօլսբերին կարօտ է մնում ձեռքիդ գթութեան։ Տարէք այստեղից նրա մարմինը, ես պիտի թաղեմ։ Սըր թոմաս գարգրեւ, դու շնչո՞ւմ ես դեռ, խօսիր դու ինձ հետ։ Ո՛չ, ո՛չ, ինձ նայի՛ր։ Սօլսբերի, ոգիդ թող քաջալերուի այն սփոփանքով, որ արդ չես մեռնում։ Նա ժպտում է ինձ ու ձեռքով անում, կարծես ասում է «երբ ես կը մեռնեմ, յիշիր, բարեկա՛մ, պէտք է թշնամուց վրէժս լուծես։» Պլանտագենետ, վրէժդ կ՝առնեմ եւ ներոնի պէս քնարն իմ ձեռքին՝ ես պիտի հրճուեմ այրուող քաղաքով ֆրանսիան պէտք է անդադար դողայ լոկ իմ անունից։

*[Thunderbolts and lightning.]*

TALBOT [cont.]
Ի՞նչ աղմուկ է սա, ինչո՞ւ է յուզուել երկինքդ այսպէս, ուսկի՞ց է գալիս այս ահազանգը եւ այս աղմուկը։

*[Messenger enters.]*

MESSENGER
Տէր իմ, ֆրանսիացիք ուժ են հաւաքել։ Արքայորդու հետ մի կոյս յովհաննա, ուր յայտնուել է որպէս մարգարէ, փորձում է ուժով ճեղքել քաղաքի շրջապատումը։

*[Salisbury rises and sighs a little.]*

TALBOT.
Լսիր, թէ ինչպէս լուռ հառաչելով՝ մահանում է նա, սիրտն է ծուատում, որ չենք կարենում վրէժը լուծել։ Ֆրանսիացիներ, ես պիտի դառնամ նոր սօլսբերի, աղջիկ կամ պոռնիկ, դոֆին կամ դելֆին, ես իմ նժոյգի սմբակների տակ պէտք է տրորեմ ձեր սիրտն անխնայ եւ խառնացրիւ ձեր ուղեղներից ճահիճ կը շինեմ։ Տարէք իշխանին իր վրանն իսկոյն, տեսնենք, թէ հիմա ի՞նչ են յանդգնում վախկոտ ֆրանսիացիք։

*[They exit.]*

][][

## ACT I. SCENE V.
Before Orleans. Battle. Talbot enters, chasing the Dauphin. Pucelle drives the Englishmen before her. Talbot re-enters

TALBOT.
Ո՞ւր է իմ ուժը, իմ զօրութիւնը եւ քաջութիւնը, մեր ջոկատները նահանջում են արդ։ Նրանց չեմ կարող այլեւս պահել։ Չրահը հագին՝ հետապնդում է մեր զօրքին մի կին գալիս է ահա։

*[Pucelle enters.]*

TALBOT [cont.]
Ուզում եմ քեզ հետ ուժերս չափել սատանա՞յ ես դու, թէ՞ սատանի կին, սատանան պէտք է քո միջից հանեմ, արիւն եմ ուզում հեղել քեզանից։ Ում ծառայում ես, նրան էլ կը տաս քո կախարդ հոգին։

PUCELLE.
Ինձ է շնորհուած համբաւդ գտնել։

*[They begin to fight.]*

TALBOT.
Երկի՛նք, կարո՞ղ ես քո յաղթանակը զիջել դժոխքին, թող կուրծքս պատռի իմ արիութեան ուժեղ պրկումը եւ թող ձեռքերն իմ զատուեն ուսերից, ես պիտի պատժեմ գոռոզ պոռնիկին։

*[They continue to fight.]*

PUCELLE.
Արդ, մնա՛ս բարով, դեռ չի մօտեցել քո ժամը, տոլբոտ ես պէտք է պարէն տանեմ օռլէան։

*[An alarm. Fighting Soldiers enter.]*

PUCELLE [cont.]
Բռնիր՝ կարող ես։ Քո ուժն եմ ծաղրում։ Գնա՛, սփոփիր քո հիւծուած մարդկանց, օգնիր սօլսբերուն, որ թելադրի յետմահու կամքը, մերն է այս օրը, եւ նման օրեր շատ են լինելու։ [Exits.]

TALBOT.
Մտքերս են դառնում, ինչպէս բրուտի պտտուող անիւ, ես չեմ հասկանում՝ որտե՞ղ է սիրտն իմ, եւ ի՞նչ եմ անում, ոչ թէ զօրութեամբ, այլ սարսափներով հաննիբալի պէս քշում տանում է մեր ջոկատները, ինչպէս կամենայ։ Այսպէս քշում են ծխի ծածկոյթով մեղուին փեթակից, կամ թէ անհաճոյ գարշահոտութեամբ աղաւնուն՝ բնից։ Կատաղութիւնից նրանք մոլեգնած մեզ կոչում էին անգլիական գամփռ արդ, վնգստալով շան լակոտի պէս՝ փախչում ենք հեռու կարճատեւ տագնապ։ Հայրենակիցնե՛ր, նորից ռազմի՛ դաշտ կամ պիտի պոկէք մեր առիւծները զինանշանից։ Թէ հրաժարուէք ձեր հայրենիքից եւ փոխարինէք առիւծը ոչխարով նոյնիսկ ոչխարը չի փախչի գայլից, եզն՝ ընձառիւծից, ինչպէս դուք՝ վաղուց արդէն ենթակայ ձեր ստրուկներից։

*[The battle rages.]*

TALBOT [cont.]
Այդպէս չի լինի։ Դարձէք դիրքերը, դուք հաշտուեցիք կոմս սօլսբերիի անգութ մահուան հետ, զի ոչ ոք ձեզնից նրա վրէժը չառաւ հարուածով։ Կոյսը գողունի մտաւ օռլէան, ի հեճուկս մեզ՝ մենք անզօր եղանք նրան պահելու։ Ինչո՞ւ, սօլսբերի, քեզ հետ չմեռայ ես ո՞ւր թաքցնեմ իմ խեղճ գլուխը այս ամօթանքից։

*[Talbot exits.]*

]0[

## ACT I. SCENE VI.

The walls of Orleans. Pucelle, Charles, Reignier, Alencon and Soldiers enter.

PUCELLE.
Դե՛հ, բարձրացրէք մեր դրօշակները պատերի վրայ, զի օռլէանից փախան անգլիացիք եւ ժաննան եղաւ տէրը իր խօսքի։

CHARLES.
Ով աստուածայի՛ն դու արարչութիւն, դո՛ւստր աստրէայի, ինչպէ՞ս մեծարեմ քեզ այս փառահեղ յաղթութեան համար։ Քո խոստումները վառ ադոնիսի այգիների պէս փթթում են այսօր, իսկ յաջորդ աւուր՝ բերքից կռանում։ Ցնծա՛, ֆրանսիա, քո փառաւորեալ կոյս մարգարէով։ Մեզ վերադարձրեց օռլէանն ահա, այսչափ օրհնեալ օր չէր տեսել երբեք մեր տէրութիւնը։

REIGNIER.
Ինչո՞ւ չեն զարկում քաղաքում զանգեր, ով արքայորդի՛, պատուիրիր նորից, որ քաղաքացիք անզուսպ ցնծութեան խարոյկներ վառեն, բաց փողոցներում խնջոյքներ սարքեն խնդութեան համար, որ մեզ շնորհեց բարեգութ աստուած։

ALENCON.
Թո՛ղ ուրախութիւնն ու բերկրանքն յորդեն ողջ ֆրանսիայով, երբ նա լուր առնի, թէ ինչպէս էին կռւում իր որդիք։

CHARLES.
Ո՛չ թէ մենք, այլ նա՝ ժաննան, վաստակեց այս յաղթանակը, ուստի նրա հետ ես կամենում եմ թագս բաժանել։ Թող իմ տէրութեան ամէն աբեղայ, ամէն վանական սուրբ հանդէսներում ժաննային մաղթի յաւիտենութիւն։ Աւելի շքեղ, քան ռոդոպէի բուրգը վիթխարի, ես մի յուշարձան պիտի կանգնեցնեմ ժաննայի պատուին։ Երբ նա չի լինի նրա աճիւնը պէտք է ամփոփի աւելի ազնիւ, թանկարժէք սափոր, քան թէ դարեհի ակնազարդ տուփը, եւ ֆրանսիայում բիւր թագաւորաց աչքերի առաջ տօնախնդութեան շքեղ օրերին թող նա շողշողայ։ Մենք էլ չենք կանչի սուրբ դիոնիսին, մեր երկրի սուրբը կը լինի ժաննան։ Դեհ, մտնենք քաղաք եւ արքայաբար նստենք խնջոյքի եւ յաղթանակի այս ոսկեայ օրը տօնենք փառաւոր։ Շեփորներ։

*[They exit.]*

]O[

ACT II. SCENE I.
Before Orleans. French Sergeant and two Sentinels enter.

SERGEANT.
Պարոններ, գրաւէ՛ք ձեր տեղերն իսկոյն եւ եղէք զգօն ու թէ որեւէ զինուոր նկատէք կամ աղմուկ լսէք պարիսպների մօտ, դուք տեսանելի նշանով յայտնէք պահակախմբին։

*[Sergeant exits.]*

SENTINEL I.
Զգոյշ կը լինենք։ Հիսնապետը գնում է։ Խե՛ղճ ժամապահներ, երբ ուրիշները քնում են իրենց խաղաղ անկողնում, դուք ստիպուած էք հսկել խաւարում, ցրտին, անձրեւին։

*[Talbot, Bedford, Burgundy and their Soilders enter with scaling-ladders; their drums beating a Dead March.]*

TALBOT.
Լորդ-խնամակալ եւ բուրգունդիայի ահեղաշունչ դուքս, ձեր մերձեցումով դարձել են հիմա մեզ բարեկամներ արտուան, վալոնն ու պիկարդիան, ֆրանսիացիներն այս ուրախ գիշեր հանգիստ կը

քնեն, քանզի գինովցած՝ ամբողջ օրն ուրախ խնջոյք սարքեցին պէտք է օգտուել պատեհութիւնից, հատուցել նրանց խաբէութեանը, որ հնարեցին խորամանկութեամբ ու կախարդանքով։

BEDFORD.
Վախկո՜տ ֆրանսիացի։ Տեսէ՛ք, ինչպէ՜ս է իր փառքն աղարտում՝ յուսահատուելով սեփական զէնքից, դաշինք է կնքել վհուկների հետ՝ նեցուկ փնտրելով խաւար դժոխքում։

BURGUNDY.
Օ՜, դաւաճանը ա՛յլ ընկեր չունի, ո՞վ է այդ կոյսը, որի մաքրութեամբ երդւում են նրանք։

TALBOT.
Ասում են՝ կոյս է։

BEDFORD.
Կո՛յս եւ ռազմատենչ։

BURGUNDY.
Աղերսի՛ր աստծուն, որ նա ի մօտոյ չդառնայ այր մի, թէ ոչ՝ ֆրանսիայի դրօշի ներքոյ կը կռուի մեր դէմ առաջուայ նման։

TALBOT.
Թող նրանց խաբի, թող շաղակրատի ոգիների հետ աստուած մեզ ամրոց, ում յաղթ անունով կ՝ելնենք քարաշէն պատնէշներն ի վեր։

BEDFORD.
Գնա՛, քաջ տոլբոտ, քեզ կը հետեւենք։

TALBOT.
Ո՛չ, հարկաւոր չէ բոլորս մէկտեղ, ես նախընտրում եմ բերդը գրաւել տարբեր կողմերից։ Եւ եթէ մէկին բախտը չժպտայ, թող միւսն յարձակուի հակառակ թեւից։

BEDFORD.
Ես համաձայն եմ։ Ես՝ այս անկիւնից։

BURGUNDY.
Իսկ ես՝ այստեղից։

TALBOT.
Իսկ տոլբոտն այստեղ պէտք է բարձրանայ կամ այստեղ մեռնի։ Օ՜, սօլսբերի, հանգուցեալ հենրի, ձեր փառքի համար պէտք է գիշերն այս ցոյց տայ ամէնքին, թէ ինչպէ՛ս եմ ես պարտքս կատարում երկուսիդ հանդէպ։

*[The English scale the Wall with cries of: "Saint George!" and "Talbot!"]*

SENTINEL II.
[Shouting.] Զինուէք։ Թշնամին յարձակման անցաւ։

*[The French flee. Alencon, Reignier and the Bastard enter, half-naked and confused.]*

ALENCON.
Տեարք իմ, ինչո՞ւ էք այսպէս կիսամերկ։

BASTARD.
Ուրախ ենք, որ մեզ յաջողուեց նոյնիսկ կիսամերկ փախչել։

REIGNIER.
Հազիւ արթնացանք ու դուրս վազեցինք անկողիններից, երբ ահազանգի ձայները հասան ննջասենեակներ։

ALENCON.
Այն օրից ի վեր, երբ զէնք եմ կրում, տեսել եմ բազում քաջագործութիւն, սակայն չեմ լսել այսքան յանդուգն, խիզախ զինուորի սխրանքի մասին։

BASTARD.
Տոլբոտը ասես դեւն է դժոխքի։

REIGNIER.
Եթէ ոչ դժոխքը, ապա երկինքն է նրան պաշտպանում։

ALENCON.
Օ՜, շառլն է գալիս։ Ո՜վ զարմանք, ինչպէ՞ս անվնաս մնաց։

BASTARD.
Կոյս է նրան պաշտպանում։

*[Charles and Pucelle enter.]*

CHARLES.
Սա՞ էր, խաբեբա՛յ, քո արուեստն հմուտ, այո՛, սկզբից մեզ շողոմելով՝ տուիր աննշան մի փոքրիկ օգուտ, որ տասնապատիկ կորուստներ կրենք։

PUCELLE.
Ինչո՞ւ է շառը ընկերոջ հանդէպ այդպէս աններող, կարո՞ղ է արդեօք իմ զօրութիւնը միշտ նոյնը լինել քնած ժամանակ կարո՞ղ եմ յաղթել: Դուք կամենում էք ձեր սխալները բարդել ինձ վրայ: Անհո՛գ զինուորնե՛ր, եթէ կարգէիք զգօն պահակներ, ձեզ յանկարծակի երբեք չէր բերի դժբախտութիւնը:

CHARLES.
Դուք մեղաւոր էք, ալանսոնի դուքս, քանզի լինելով պահակախմբի հրամանատար՝ պարտաւոր էիք դառնալ այդ գործին նախանձախնդիր:

ALENCON.
Եթէ ձեր բոլոր զօրամասերը հսկէին ինձ պէս յուսալիօրէն, չէինք տեսնելու այս ամօթանքը:

BASTARD.
Իմն ապահով էր:

REIGNIER.
Եւ իմն էլ, տէ՛ր իմ:

CHARLES.
Գալով ինքս ինձ, ապա գիշերուայ մեծագոյն մասը վատնեցի կոյսի եւ իմ դիրքերում՝ փոխելով յաճախ ժամապահներին: Ի՞նչ ճանապարհով եւ ինչպէ՞ս նրանք ներս մտան այստեղ:

PUCELLE.
Պէտք չէ, Օ՛, տեա՛րք իմ, շարունակ հարցնել՝ ինչպէ՞ս, որտեղի՞ց: Պարզ է, որ նրանք գտել են մի տեղ, ուր հսկողութիւնը շատ թոյլ է եղել, եւ ներս են մտել, այժմ մեզ միայն մի բան է մնում ինչպէս հաւաքել ցիրուցան եղած մեր զինուորներին եւ ինչպէս կազմել յարձակման պլան:

*[Suddenly English Soldiers burst in crying: "Talbot! Talbot!" The French flee once more, leaving behind their weapons and armor.]*

ENGLISH SOLDIER.
Այն, ինչ գցեցին, ես կը վերցնեմ համարձակօրէն, տոլբոտի անունն ինձ ծառայում է սրի փոխարէն, իմ աւարն եղաւ առատ ու հարուստ, զի նրա անունն իմ զէնքն է միայն: [Exits.]

][[

ACT II. SCENE II.
Orleans. Within the town. Talbot, Bedford, Burgundy and a Captain enter.

BEDFORD.
Լոյսը բացւում է, գիշերն է փախչում, որ սքօղում էր սեւ պատմուճանով արար աշխարհը, հնչեցրէ՛ք

այստեղ աւարտանշան, մի՛ հետապնդէք։

*[Retreat is sounded.]*

TALBOT.
Բերէք մարմինը ծեր սօլսբերու եւ դրէք այստեղ՝ հրապարակում, նզովեալ քաղաքի ուղիղ կենտրոնում։ Ես կատարել եմ ուխտն իմ վրէժի թանկագին արեան իւրաքանչիւր սուրբ կաթիլի դիմաց այս գիշեր ընկան հինգ ֆրանսիացի։ Որպէսզի գալիք դարերում տեսնեն, թէ ինչ աւերմամբ ես վրէժ առայ նրանց գլխաւոր տաճարի ներսում պիտի կառուցեմ մի մեծ դամբարան, ուր հանգչելու է մարմինը նրա։ Թող փորագրեն այդ շիրմի վրայ, որ կարդան մարդիկ, թէ օռլէանը ինչպէ՛ս աւերուեց, թէ հերոսն ինչպէս մատնութեամբ ընկաւ եւ ինչպէս դողաց այդ խիզախ մարդուց ամբողջ ֆրանսիան։ Սակայն այս կռւում չտեսայ նրանց թագաժառանգին, ո՛չ նրա զինուոր, խիստ առաքինի ժաննա դ՝արկին, եւ ո՛չ էլ մէկին՝ նրա դժրամիտ դաշնակիցներից։

BEDFORD.
Կարծում եմ, հէնց որ կռիւն սկսուեց, նրանք կիսաքուն վեր թռան յանկարծ իրենց անկողնուց եւ խառնուելով զինուած գնդերին՝ պատից վար թռան՝ պատսպարուելով արծակ դաշտերում։

BURGUNDY.
Ինձ թուաց, որքան լաւ նշմարեցի գիշերուայ թանձր խաւարի միջից, թագաժառանգը, նրա պոռնիկը խիստ աhաբեկուած, փախան թեւանցուկ՝ նման սիրահար այն զոյգ տատրակին, որ իրարից զատ չեն կարող ապրել նոյնիսկ մէկ գիշեր։ Երբ կարգ ու կանոն հաստատենք այստեղ, կը հետապնդենք նրանց մեր զօրքով։

*[Messenger enters.]*

MESSENGER.
Ողջո՛յն, իշխաննե՛ր, ո՞վ է փառապանծ այս շքախմբից կոչւում քաջ տոլբոտ, ում սխրանքներին ծափահարում է ամբողջ ֆրանսիան։

TALBOT.
Ահա տոլբոտը, ո՞վ է կամենում նրա հետ խօսել։

MESSENGER.
Օւեռնի ազնիւ, պարկեշտ կոմսուհին, ով հիանում է քո անմահ փառքով, աղերսում է քեզ իմ շրթունքներով, որ շնորհ անես քո այցելութեամբ իր դղեակն անշուք, ուր ապրում է նա, որպէսզի ինքն էլ պարծենայ մի օր, որ տեսել է քեզ, ո՛ւմ փառքն է թնդում արար-աշխարհով։

BURGUNDY.
Միթէ՞ այդպէս է։ Օ՜, տեսնում եմ՝ մեր կռիւները կը դառնան ուրախ, զուարճալի խաղ, երբ տեսակցութիւն կանայք են հայցում։ Դուք, հաւանաբար, չէք մերժի նրա քաղցրիկ հրաւէրը։

TALBOT.
Եթէ մերժեմ էլ, ինձ չհաւատաք։ Քանզի, ուր Էրիկ մարդկանց մի աշխարհ չի կարող տիրել ճարտասանութեամբ, յաղթում է կնոջ ազնւութիւնը։ Յայտնիր կոմսուհուն շնորհակալութիւն, ես խոնարհաբար կ՝այցելեմ նրան, չէ՞ք ուզում արդեօք ինձ ընկերանալ։

BEDFORD.
Ճիշտն ասած՝ պէտք չէ։ Սա բարձր է ամէն պատշաճութիւնից։ Յաճախ եմ լսել, երբ անկոչ հիւրը գնում է տնից, նրան մաղթում են բարի ճանապարհ։

TALBOT.
Այդ դէպքում նրան մենակ կ՝այցելեմ կը փորձեմ կնոջ ազնւութիւնը։ Մօտ ե՛կ, կապիտան։ [Whispers in his ear.] Հասկացա՞ր միտքս։

CAPTAIN.
Տէր իմ, կը վարուեմ, ինչպէս ասում էք։

*[They all exit.]*

][][

ACT II. SCENE II.
Auvergne castle. Countess and her Porter enter.

COUNTESS.
Յիշիր, թէ ինչ եմ պատուիրել ես քեզ, երբ գործդ աւարտես, բանալիները ինձ յանձնիր իսկոյն։

PORTER.
Կամքդ, տիրուհի։ [Exits.]

COUNTESS.
Ես դաւ եմ նիւթել եթէ ամէն ինչ գնայ իր հունով, ես կը հռչակուեմ իմ խիզախութեամբ, ինչպէս սկիւթացի քաջ տոմիրիսը՝ կիւրոսի մահով։ Այս ահեղ ասպետն ունի մեծ համբաւ, պակաս չեն նրա սխրանքներն անթիւ։ Ես շատ եմ ուզում, որ իմ աչքերը ու ականջները վկաներ լինեն այս խիստ անսովոր պատմութիւններին։

*[Messenger and Talbot enter.]*

MESSENGER.
Տիրուհի՛, ըստ ձեր բարի ցանկութեան, պատգամաբերիս խոնարի խնդրանօք՝ ահա ժամանեց իշխան տոլբոտը։

COUNTESS.
Բարի՛ գալուստ։ Ի՞նչ։ Սա՞ է այն մարդը։

MESSENGER.
Տիրուհի, նա՛ է։

COUNTESS.
Սա՞ է մտրակում ամբողջ ֆրանսիան։ Միթէ՞ տոլբոտն է, ում սարսափներից աշխարհն է դողում եւ ում անունով մայրերն են սաստում նորածին մանկանց։ Ինչպէս տեսնում եմ, այս զրոյցները կեղծ են ու պատիր։ Ես կարծում էի, թէ պիտի տեսնեմ մի հերկուլեսի, երկրորդ հեկտորին, ում խոժոռ դէմքը ներդաշնակօրէն կապուած կը լինէր զօրեղ կազմուածքին։ Բայց, աւա՜ղ, սա մի փոքրիկ տղայ է, մի ապուշ գաճաճ, չի կարող երբեք այս կնճռապատ ու խեղճ թզուկը այսպիսի անլուր երկիւղ ներշնչել թշնամիներին։

TALBOT.
Ես յանդգնում եմ ձեզ վրդովեցնել։ Բայց տեսնում եմ՝ դուք ժամանակ չունէք, լաւ է՝ ձեզ ուրիշ ատեն այցելեմ։

*[Begins to exit.]*

COUNTESS.
Ի՞նչ է ուզում նա, մօտեցիր, հարցրու, թէ ուր է գնում։

MESSENGER.
Կա՛ց, իշխան տոլբոտ, ազնիւ կոմսուհին կ՝ուզէ իմանալ, թէ ինչու այսպէս մեկնում էք յանկարծ։

TALBOT.
Անշո՛ւշտ, տիրուհին ինձ չի հաւատում, եւ ես գնում եմ, որ ապացուցեմ՝ տոլբոտն այստեղ է։

*[Porter enters with keys in his hands.]*

COUNTESS.
Եթէ տոլբոտն ես, գերի ես արդէն։

TALBOT.
Ես՝ գերի՞, ո՞ւմ։

COUNTESS.
Իմ, արնախո՛ւմ իշխան։ Այդ նպատակով քեզ հմայեցի, կանչեցի տունս։ Վաղուց գերի է քո ստուերն ինձ մօտ, ես քո նկարն եմ կախել իմ պատից, եւ այժմ ի՛մն ես քո ողջ էութեամբ։ Կապանքներ պիտի

դնեմ ոտքերիդ, ձեռքերիդ վրայ, զի կեղեքելով տարիներ ի վեր՝ աւերում էիր մեր հայրենիքը, անխնայ մորթում մեր քաղաքացոց, մեր որդիներին, ամուսիններին տանում գերեվար։

TALBOT.
[Laughing.] Հա՜, հա՜, հա՜։

COUNTESS.
Ծիծաղո՞ւմ ես դու, Օ՜, թշուառական, տե՛ս, լաց չլինես։

TALBOT.
Ես ծիծաղում եմ ձեր մտքի վրայ, քանզի կարծում էք ստուերիս տեղակ տոլբոտն է այստեղ, որի նկատմամբ ձեր խստութիւնն էք սաստիկ կիրառում։

COUNTESS.
Դու տոլբոտը չե՞ս։

TALBOT.
Այո՜, ես ինքս եմ։

COUNTESS.
Արդ, քո էութեամբ ինձ ես պատկանում։

TALBOT.
Ո՛չ, ո՛չ։ Տեսնում էք ստուերս միայն։ Խիստ սխալւում էք իմ էութիւնը այստեղ չէ հիմա։ Զի ինչ տեսնում էք, մարդկային փոքրիկ բեկորն է միայն։ Յիրաւի, տիկին, եթէ նա կանգնի իր ողջ հասակով, Օ՜, բարձր է այնքան ու լայնաթիկունք, որ ձեր հարկի տակ չի տեղաւորուի։

COUNTESS.
Ի՞նչ է, նա անմիտ հանելուկներ է վաճառքի հանել։ Մերթ այստեղ է նա, մերթ էլ այստեղ չէ։ Ինչպէ՞ս հասկանալ հակասութիւնն այդ։

TALBOT.
Կը մեկնեմ հիմա։

*[Talbot blows a note on his trumpet and suddenly English Soldiers arrive.]*

TALBOT [cont.]
Ի՞նչ կ՝ասէք հիմա, չքնա՛ղ տիրուհի, դուք համոզուեցի՞ք, որ իր ստուերն է տոլբոտը միայն, ահաւասիկ նրա մարմինն ու ջիղը, ձեռքերը, ուժը, որոնք սանձում են ձեր ըմբոստ լեզուն եւ աւերում են ձեր քաղաքները, ձեր ամրոցները եւ մի վայրկեանում ամայի դարձնում։

COUNTESS.
Յաղթապանծ տոլբոտ, դու նախատինքն իմ ընդմիշտ մոռացիր տեսնում եմ ես քեզ ոչ այնքան նուաղ, քան թէ քո փառքն է, պարթեւահասակ, քան երեւում ես քո ներկայ տեսքով։ Թող իմ անպատկառ յանդգնութիւնը քեզ չզայրացնի, ես շատ եմ ցաւում, որ պատշաճ ձեւով չընդունեցի քեզ, ինչպիսին որ կաս։

TALBOT.
Պէտք չէ շփոթուել, չքնա՜ղ տիրուհի։ Դուք ստոյգ մեկնէք տոլբոտի միտքը։ Թէեւ բաւական սխալ էք դատել նրա արտաքին կազմուածքի մասին։ Ձեր արարքն երբեք ինձ չի վշտացնում, ես այլ հատուցում չեմ հայցում ձեզնից, զի յօժարակամ դուք թոյլ էք տալիս՝ ճաշակելու ձեր ուտեստն ու գինին քանզի զինուորի ստամոքսը միշտ պատրաստ է նրանց սիրով ծառայել։

COUNTESS.
Իմ ամբողջ սրտով։ Ինձ պատիւ է մեծ՝ խնջոյքի կանչել նման քաջ մարդուն իմ հարկի ներքոյ։

*[They exit]*

][][

ACT II. SCENE IV.
London. The Temple garden. Somerset, Suffolk, Warwick, Plantagenet, Vernon and a Lawyer all enter.

PLANTAGENET.
Ի՞նչ է ակնարկում այս լռութիւնը, տոհմիկ իշխաններ, միթէ՞ մարդ չկայ, որ ճշմարտութիւնն ասի համարձակ։

SUFFOLK.
Թեմպլի սրահում շատ աղմկեցինք, պարտէզն աւելի վայելուչ տեղ է զրոյցի համար։

PLANTAGENET.
Ասացէք իսկոյն, ե՞ս եմ պաշտպանել ճշմարտութիւնը, թէ՞ սոմերսետը՝ ինձ հետ վիճելիս։

SUFFOLK.
Օրէնքի հանդէպ ես չեմ ունեցել եւ ոչ մի հակում, չեմ ծռել կամքս օրէնքի առաջ, ուստի նա՛ պէտք է կամքիս յարմարուի։

SOMERSET.
Խնդրում եմ, վորուիկ, ինքդ մեզ դատիր։

WARWICK.
Թերեւս մի կերպ կարող եմ դատել՝ երկու բազէից ո՛րն է աւելի բարձրաթիռ ճախրում, երկու շներից

ո՛րն է աւելի կատաղի հաչում երկու սրերից ո՛ր մէկն է ձուլուած անխառն պողպատից, երկու ձիերից ո՛ր մէկն է վարգում աւելի արագ երկու կանանցից ո՛ր մէկն է քաղցր աչքով անում ինձ, բայց ես օրէնքի այս նուրբ ու փափուկ բծախնդրութեան մէջ, ճշմարիտն ասած՝ խելօք չեմ նոյնիսկ մի սեւ ճայեակից։

PLANTAGENET.
Օ՛, ինչպիսի՜ զգոյշ պատասխան ճշմարտութիւնը այնպէս անզգեստ իմ կողմն է կանգնած, որ կարճատեսն էլ կարող է տեսնել։

SOMERSET.
Իմ կողմն է կանգնած ճշմարտութիւնը նոյնպէս անսքօղ, այնքան բացայայտ եւ այնքան փայլուն, որ կոյր աչքի մէջ նոյնիսկ կը շողայ։

PLANTAGENET.
Եթէ ձեր լեզուին կապանք է դրուած, ծանր է խօսելը, ձեր մտքերն յայտնէք համր նշանով։ Նա, ով զտարիւն ազնուական է, նա, ով իր տոհմի պատուոյն է կանգնած եւ հաւատարիմ ճշմարտութեանը, թող ինձ հետ պոկի սպիտակ մի վարդ։

SOMERSET.
Իսկ նա, ով երկչոտ ու շողոքորթ չէ, բայց ճշմարտութեան զինուոր է խիզախ, թող պոկի թփից կարմիր վարդ ինձ հետ։

WARWICK.
Չեմ սիրում գոյներ ու շողոմութեան ստոր ակնարկներն արհամարհելով, Պլանտագենետ, պոկում եմ թփից այս վարդն սպիտակ։

SUFFOLK.
Այս կարմիր վարդն էլ պոկում եմ ջահէլ սոմերսետի հետ։ Նա ճշմարտութեան զաւակն է ազնիւ։

VERNON.
Կացէ՛ք, իշխաններ, մի՛ պոկէք թփից ոչինչ աւելի, քանի դեռ մենք չենք պայմանաւորուել, ում թփից պոկուած վարդերն են նուազ, ասել է՝ պէտք է նա խոստովանի հակառակ կողմի ճշմարտութիւնը։

SOMERSET.
Ով բարի վեռնոն, սա լաւ խորհուրդ է, եթէ իմ թփից քիչ վարդեր պոկեն, կը տամ լռելեայն հաւանութիւնս։

PLANTAGENET.
Ես էլ, պարոններ։

VERNON.
Գործի ճշտութեան, պարզութեան համար պոկում եմ անբիծ, գունատ ծաղիկը՝ տալով իմ ձայնը սպիտակ վարդին։

SOMERSET.
Զգո՛յշ պոկեցէ՛ք, որ ձեր մատները յանկարծ չծակի, թէ ոչ՝ ձեր կարմիր արեամբ կը ներկէք սպիտակ վարդը, կամքիդ հակառակ՝ իմ կողմը կ՝անցնէք։

VERNON.
Տէր իմ, եթէ ես արիւն եմ թափում կարծիքիս համար, ուստի այն պէտք է դառնայ իմ վէրքին հմուտ վիրաբոյժ եւ ինձ պաշտպանի, ուր կանգնած եմ արդ։

SOMERSET.
Շատ բարի, տեարք իմ, ո՞ւմ հերթն է հիմա։

LAWYER.
[To Somerset.] Եթէ գրքերս, գիտելիքներս աչքս չեն կապում, ձեր ապացոյցը սխալ է, միլորդ, ես էլ եմ պոկում վարդը սպիտակ։

PLANTAGENET.
Ո՞ւր է, Սոմերսետ, ձեր ապացոյցը։

SOMERSET.
Ահա այստեղ է, սրիս պատեանում, կարծում եմ, որ սա կարող է ներկել սպիտակ վարդը կարմիր արիւնով։

PLANTAGENET.
Ի դէպ, այտերիդ գոյնը նման է մեր ճերմակ վարդին, որ գունատուել են սաստիկ երկիւղից եւ վկայում են, որ ճշմարտութիւնն իմ կողմն է կանգնած։

SOMERSET.
Ոչ թէ երկիւղից, այլ բարկութիւնից այտերս են գունատ։ Օ՜, Պլանտագենետ, դու ամօթանքից շիկնել ես ահա, եւ նմանուելով մեր բիւր վարդերին՝ չես խոստովանում, որ սխալ ես դու։

PLANTAGENET.
Սոմերսետ, քո վարդն արդեօք չի՞ որդնել։

SOMERSET.
Ռիչա՛րդ, քո վարդը փուշ չունի՞ արդեօք։

PLANTAGENET.
Շատ սուր է, ծակող, որ նեցուկ լինի ճշմարտութեանը, մինչդեռ, քո հիւծող որդը ապրում է քո ստի հաշուին։

SOMERSET.
Լաւ, ես կը գտնեմ ինձ բարեկամներ ովքեր կը կրեն վարդերն արնաներկ եւ կը հաստատեն իմ ճշմարտութեան խօսքն ամէնուրեք, ուր չես յանդգնի նոյնիսկ երեւալ, Օ՛, Պլանտագենետ։

PLANTAGENET.
Երդւում եմ ձեռքիս այս անբիծ ծաղկով՝ անգոսնում եմ քեզ եւ ընկերներիդ, պարծենկո՛տ տղայ։

SUFFOLK.
Քո արհամարհանքն այս կողմի վրայ մի՛ ուղղիր երբեք։

PLANTAGENET.
Պարկեշտ ձեւացող, ես ձեզ երկուսիդ արհամարհում եմ։

SUFFOLK.
Իմ մեծ բաժինը ուղարկելու եմ ես քո կոկորդը։

SOMERSET.
Հեռացի՛ր, բարի վիլեամ դը լա պոլ, շնո՞րհ է՝ խօսել անտաշ մարդու հետ։

WARWICK.
Երդւում եմ աստծով, վիրաւորում ես նրան, Սոմերսետ։ Կը լարենսի դուքս լինելը նրա մեծ հայրն է եղել, անգլիոյ թագաւոր էդուարդ երրորդի երրորդ զաւակը։ Միթէ՞ այսպիսի ազնիւ արմատից կարող է սերուել անտաշ մի ռամիկ։

PLANTAGENET.
Նա օգտւում է սրբազան վայրի արգելումներից, այլապէս վախկոտն այսպէ՛ս չէր խօսի։

SOMERSET.
Աստուա՛ծ է վկայ, որ կը կրկնեմ դարձեալ բառերս քրիստոնէական ամէն մի արդար հողակոյտի վրայ։ միթէ՞ հայրդ չէր ռիչարդ քեմբրիջը, ում հենրու օրօք որպէս դաւաճան մատնեցին մահուան, միթէ՞ քեզ, ռիչա՛րդ, այդ դաւաճանութեամբ չապականեցին եւ չխլեցին քո ազնուական տիտղոսն հինաւուրց, հօրդ յանցանքը դաւաճանօրէն ապրում է քո մէջ, եւ դու, քանի դեռ չես վերականգնուած, կը մնաս ռամիկ։

PLANTAGENET.
Այո՛, իմ հօրը ամբաստանել են, բայց նա մեղք չունէր, մահուան են մատնել որպէս դաւաճան, բայց դաւաճան չէր, ես կ՝ապացուցեմ, Սոմերսետ, քեզնից լաւագոյն մարդկանց, երբ վրայ հասնի ժամն իմ

ցանկութեան։ Արդ, քեզ դառնալով եւ կցորդ պոլիդ, իմ յիշողութեան գրատախտակին ես պէտք է գրեմ ձեր անունները, որ խելքի բերեմ ձեզ այդ սինլքոր նենգութեան համար, ուստի լաւ յիշէք, որ ես նախապէս ձեզ զգուշացրի։

SOMERSET.
Այո՛, կը գտնես դու մեզ միշտ պատրաստ, եւ կարմիր գոյնով պէտք է ճանաչես թշնամիներիդ, զի բարեկամներս՝ ի հեճուկս քեզ, այդ գոյնն են կրում։

PLANTAGENET.
Երդւում եմ ահա ընկերներիս հետ իմ ամբողջ հոգով, ի նշան սրտիս խոր ատելութեան, յաւրէժ կը կրեմ այս դալուկ վարդը, քանի դեռ ինձ հետ նա չի թորշոմել իմ գերեզմանում կամ թէ չի ծաղկել փառքիս բարձունքին։

SUFFOLK.
Գնա՛ եւ խեղդուիր փառասիրութեամբ, դե՛հ, մնա՛ս բարով, ցնոր հանդիպում։ [Exits.]

SOMERSET.
Գնա՛նք, վիլեամ պոլ։ Մնացէք բարեաւ, փառամո՛լ ռիչա՛րդ։ [Exits.]

PLANTAGENET.
Ինձ անպատւում են, բայց պէտք է տոկամ։

WARWICK.
Այս նախատինքը, որով անարգուեց ձեր ազնիւ տոհմը, պէտք է մաքրուի խորհրդարանի հետեւեալ նիստում, որտեղ գլոստերին եւ ուինչեստերին պէտք է հաշտեցնեն։ Եւ եթէ այնտեղ քո հին անունը չվերականգնեն, թող ինձ չկոչեն այլեւս վորուիկ։ Ի նշան սիրոյս, որ տածում եմ քեզ, եւ ի հեճուկս վիլեամ դը պոլի ու սոմերսետի, ես պիտի կրեմ համախոհներիդ այս վարդը սպիտակ։ Արդ, գուշակում եմ՝ այս գժտութիւնը, որ խիստ բորբոքուեց թեմպլի պարտէզում, կարմիր ու սպիտակ վարդերի միջեւ, պէտք է ուղարկի անթիւ հոգիներ մահուան մութ աշխարհ։

PLANTAGENET.
Օ՛, բարի վեռնոն, ձեզ եմ պարտական քանզի իմ օգտին պոկեցիք մի վարդ։

VERNON.
Ի նշան ազնիւ հաւատարմութեան՝ ես պիտի կրեմ ձեր վարդը սպիտակ։

LAWYER.
Ես էլ, պարոններ։

PLANTAGENET.
Շնորհակալութիւն, ազնիւ բարեկամ։ Գնանք ճաշելու։ Ինձ մտահոգում է, որ գժտութիւնն այս ծարաւ է

արեան։

*[They exit.]*

][][

## ACT II. SCENE V.

London. The Tower. Mortimer enters, brought in a chair by Gaolers.

### MORTIMER.

Հանգչող ու տկար իմ տարիների բարի հսկողներ, թողէք մերձիմահ մորտիմերն այստեղ քիչ հանգստանայ։ Այնպէս է տնքում իմ ողջ մարմինը, ասես թէ նոր են ազատ արձակել ինձ խոշտանգումից։ Իսկ գորշ մազերս՝ բանբերներն, աւա՜ղ, մօտալուտ մահուան, որ ճերմակել են տառապանքներից, ինչպէս նեստորը, մահն են գուշակում կոմս մորտիմերիս։ Այս աչքերն անիւղ կանթեղների պէս հանգչում են արդէն շուտով կը պատի մշուշը նրանց, վշտի բեռան տակ ուսերս են ծռուել, եւ բազուկներս կախուել են անզօր, ինչպէս խաղողի ոստերն ազազուն, նոյնիսկ ոտքերս չեն կարող կրել կաւէ զանգուածն այս, որ իմ ցանկութեան թեւով ձգտում է դէպի գերեզման, կարծես թէ գիտեն, որ չունեմ ուրիշ մխիթարութիւն, բայց ասա, կը գա՞յ քրոջս որդին։

### GAOLER I.

Գալու է, տէր իմ, ռիչարդն, անշուշտ, մարդ ենք ուղարկել նրա մօտ թեմպլ, պատասխանն եկաւ, որ գալու է նա։

### MORTIMER.

Այնժամ իմ հոգուն կ՝իջնի խոր անդորր։ Անբա՛խտ երեխայ, պատիժ կրեցիր ինձ հետ հաւասար։ Տարիներ առաջ փառքս թնդում էր կռիւների մէջ, բայց երբ որ հենրի մոնմութը իշխեց, այս նզովապարտ մեկուսացումը ինձ առաւ գիրկը, այնժամ ռիչարդը խիստ նսեմացաւ, զրկուեց իր պատուից, ժառանգութիւնից։ Բայց վհատութեան հաշտարարուհին՝ մարդկանց վշտերի ազնիւ միջնորդը՝ մահն արդարամիտ, տալով ցանկալի ազատութիւնս, ինձ բաց է թողնում այս խաւար բանտից։ Ես կ՝ուզենայի, որ նրա վիշտն էլ յաւիտեան հանգչէր եւ կորսուածը ձեռք բերէր նորէն։

*[Richard Plantagenet enters.]*

### GAOLER I.

Տէր իմ, ձեր սիրած քրոջ որդին եկաւ։

### MORTIMER.

Եկա՞ր դու, ռիչարդ, ազնիւ բարեկամ։

### PLANTAGENET.

Այո՛, մօրեղբայր։ Ինչպէ՜ս անպատկառ վարուեցին քեզ հետ։ Եկաւ անարգուած քո քրոջ որդին։

MORTIMER.

Ձեռքերս ուղղէք, որ գրկեմ նրան եւ նրա կրծքին արձակեմ վերջին իմ հառաչանքը։ Օ՛, ասէ՛ք, երբ են շուրթերս հպուելու նրա այտերին, որ կարողանամ բարեսիրութեան մի թոյլ համբոյր տալ, իսկ այժմ ասա, եորքի մեծ տոհմի քնքուշ շառաւիղ, ինչո՞ւ վերջերս քեզ անարգեցին։

PLANTAGENET.

Նախ՝ ծերունական քո մէջքը հակիր դէպի ձեռքերս, որ թեթեւութեամբ տանես նոր վիշտս։ Այսօր վիճելով մի խնդրի շուրջը՝ ես լուրջ խօսեցի սոմերսետի հետ, նա ազատ քակեց զազրելի լեզուն եւ ինձ կշտամբեց իմ հօրս մահով այդ զրպարտանքով նա կապանք դրեց իմ լեզուի վրայ, ես անզօր եղայ խօսք հատուցելու։ Բարի մօրեղբայր, ի սէր մեր տոհմի եւ իմ հօր պատուոյն, որպէս մի ստոյգ Պլանտագենետ, յայտնիր, թէ ինչու քեմբրիջի կոմսին գլխատման տարան։

MORTIMER.

Առիթն այն եղաւ, որ բանտ նետեցին թշուառականիս իր ջահէլութեան անհոգ օրերին։ Անիծեալ բանտում իմ կեանքը մաշուեց, եւ այդ զնդանն էլ եղբօրս մահուան գործիքը դարձաւ։

PLANTAGENET.

Պատմիր ամենայն մանրամասնութեամբ, քանզի չեմ կարող ոչինչ կռահել։

MORTIMER.

Շատ բարի, եթէ շնչառութիւնս թոյլ տայ խօսելու, եւ վրայ հասնող մահը չկտրի թելն իմ պատմութեան։ Հենրի չորրորդը՝ այս թագաւորի հարազատ պապը, գահընկէց արաւ իւր եղբօրորդի ջահէլ ռիչարդին՝ Էդուարդ երրորդի առաջնեկ որդուն որն օրինաւոր թագաժառանգն էր։ Մեծ պերսիները՝ հիւսիսում տիրող, տեսնելով, որ նա անարդարութեամբ թագն յափշտակեց, ջանացին գահին ինձ բարձրացնել։ Բայց ինչը՞ դրդեց պատերազմասէր այդ իշխաններին պատճառը դարձաւ գահընկէց արուած ջահէլ ռիչարդը, որ մի հարազատ ժառանգ չէր թողել իրենից յետոյ, իսկ ես ծնունդով ու ազգակցութեամբ ժառանգորդն էի, որ մօրս կողմից իմ պապն եղել է դուքս կլարենսը՝ Էդուարդ երրորդի երրորդ զաւակը, բայց հենրի չորրորդ արքայի տոհմն է սերւում ջոն գոնտից, որ հերոսական այդ ազգատոհմի չորրորդ որդին է։ Իմացիր, որդիս, պերսիներն յանդուգն քայլեր արեցին որ գահ բարձրանար օրինապատշաճ թագաժառանգը, բայց ես կորցրի իմ ազատութիւնը, իսկ նրանք՝ կեանքը։ Շատ տարիներ անց, երբ թագաւորեց հենրի հինգերորդը, հայրդ՝ քեմբրիջը, որ Էդմունդ լենգլու տոհմից էր սերուած, իմ քրոջն առաւ իրեն կնութեան, որ քեզ մայր դարձաւ։ Նա, կարեկցելով իմ թշուառ բախտին, նորից հնչեցրեց ռազմի շեփորներ, որպէսզի փրկէր ինձ տառապանքից եւ հանդիսաւոր շուքով ինձ կարգէր երկրի թագաւոր։ Բայց այլոց նման այդ ազնիւ կոմսը նոյնպէս գլխատուեց, ում պատկանում էր տիտղոսն արքայի։ Այսպէս, զաւա՜կս, մորտիմերները, ովքեր ունէին տիտղոս եւ անուն, մի կողմ նետուեցին։

PLANTAGENET.

Մօրեղբա՛յր, դո՛ւք էք այդ տոհմի վերջին արժանաւորը։

MORTIMER.
Այո՛, եւ չունեմ օրինաց ժառանգ, եւ իմ թալկացող բառերն են կարդում մահուան վճիռս, դու ես ժառանգն իմ կ՝ուզեմ՝ ամէն ինչ քո ձեռքը առնես եւ շրջահայեաց ու խոհեմ լինես ձգտումներիդ մէջ։

PLANTAGENET.
Ես կը հետեւեմ քո իմաստալից, վսեմ խորհուրդին։ Բայց իմ հարազատ հօր գլխատումը ոչ այնքան նուազ, քան արիւնալի վայրագութիւն է։

MORTIMER.
Եղիր լռակեաց մի քաղաքագէտ, լանկաստերների տոհմն է անսասան եւ լեռան նման կանգնած է անշարժ, բայց մօրեղբայրդ աշխարհին է լքում, ինչպէս լքում են արքաներն իրենց ապարանքները, երբ ձանձրանում են միեւնոյն տեղում երկար մնալուց։

PLANTAGENET.
Օ՜, կարենայի ջահէլ օրերիս մի մասը քեզ տալ, միայն թէ քեզնից մահը հեռանար, բարի՜ մօրեղբայր։

MORTIMER.
Դու մեղք ես գործում մարդասպանի պէս, որ կուրծքն է խոցում բազում վէրքերով, երբ մէկն էլ բաւ է։ Դու լաց մի լինիր, մահը փառք է ինձ, սիրասուն որդի, ռիչա՛րդ, թաղումիս հետեւիր կարգին։ Դե՛հ, մնա՛ս բարեաւ։ Թող քո յոյսերը միշտ պայծառ շողան, յաջողակ եղիր խաղաղութեան մէջ եւ ռազմի դաշտում։

*[Dies.]*

PLANTAGENET.
Թող խաղաղութեամբ միշտ մնայ հոգիդ, դու մութ զնդանում ուխտաւոր եղար, կեանքդ ապրեցիր ճգնաւորի պէս։ Իմ հոգում պիտի խորհուրդդ պահեմ, եւ ինչ խորհեցի, կը հանգչի այստեղ։ Հէ՜յ, պահապաննե՛ր, տարէ՛ք մարմինը, ես պիտի ջանամ, որ թաղումն անցնի աւելի շքեղ, քան կեանքն էր նրա։

*[Gaolers exit with Mortimer's body.]*

PLANTAGENET [cont.]
Ահա հանգչում է իմ խեղճ մօրեղբօր ջահը թախծալի, օրին թշնամու փառամոլ ոգին խեղդամահ արեց, այս վիրաւորանքն ու այս ցաւալի ամօթանքները, որ սոմերսետը տոհմիս հասցրեց, կը տեսնեն ինձնից պատշաճ հատուցում։ Դրա համար էլ ես շտապում եմ դէպի պառլամենտ, որ վերադարձնեն իրաւունքն իմ տան, կամ շահս գտնեմ սրով չարութեան։ [Exits.]

## ACT III. SCENE I.

London. The Parliament House. The King enters with Exeter, Gloucester, Warwick, Suffolk, the Bishop of Winchester and Richard Plantagenet. Gloucester begins to post a bill but the Bishop grabs it and tears it up.

### WINCHESTER.

Միթէ՞, գլոստեր, եկել ես այստեղ՝ կանխամտածուած նամակներ ձեռքիդ, եւ յօրինել ես փութեռանդօրէն պարսաւագրեր։ Եթէ ուզում ես որեւէ բանով ինձ մեղադրել կամ ինձ հետ չափուել, դու գործի անցիր, պէտք չէ նախապէս երկար պատրաստուել, քանզի կարող եմ քեզ պատասխանել մի ակնթարթում, խիստ յանկարծակի։

### GLOUCESTER.

Ժպի՛րհ քահանա՛յ, վայրը սրբազան ստիպում է ինձ համբերող լինել, թէ ոչ՝ զայրոյթը այս անարգանքի դու կը տեսնէիր։ Մի՛ կարծիր, որ ես, եթէ գրաւոր շարադրել եմ քո թշնամական պիղծ արարքների ձեւերը բոլոր, ի վիճակի չեմ բանաւոր կրկնել։ Ո՛չ։ Եպիսկոպո՛ս։ Այնպէս յանդուգն է քո չարութիւնը, քո ապականիչ շուայտութիւնը, ստոր արարքը, որ մանուկներն էլ քո գոռոզութեան մասին են խօսում։ Դու կործանարար վաշխառու ես մի, բնութեամբ դաժան եւ խաղաղութեան անարգ թշնամի, աւելի շուայտ եւ ապականուած, քան պատշաճում է նման մի մարդու դիրք ու պաշտօնին։ Ի՞նչ կ՝ասես այժմ դաւաճանական գործերիդ մասին դու չէի՞ր արդեօք կամրջի վրայ եւ թաուերում գողունի սարքել ծուղակ կեանքիս դէմ։ Բացի այդ, եթէ մտքերդ մաղեն, ես վախենում եմ, որ թագաւորն էլ՝ տէրը գերագոյն, ազատ չէր բնաւ քո գոռոզ սրտի չարակն ու նախանձ խարդաւանքներից։

### WINCHESTER.

Այպանում եմ քեզ։ Իշխաննե՛ր, լսէք, թէ ինչ պատասխան կը տամ ես նրան։ Եթէ ես, իրաւ, մի փառամոլ եմ, ընչասէր, ագահ, ինչպէս նա ասաց, ապա ես ինչո՞ւ աղքատ եմ այսքան, ինչո՞ւ երդումիս միշտ հաւատարիմ՝ չեմ ձգտում երբեք բարձր պաշտօնի։ Գալով այս վէճին ո՞վ է նախընտրում խաղաղութիւնը ինձնից առաւել, թէ ինձ չեն քաշում խորքը գժտութեան։ Ո՛չ, ո՛չ, իշխաններ, սա չէ չարութեան պատճառը բնաւ, եւ սա չէր կարող բորբոքել դուքսին պատճառը այն է, որ նա ուզում է իշխել միայնակ եւ չի կամենում՝ որեւէ մէկը մօտ լինի հենրուն։ Ահա թէ ինչու նրա պիղծ հոգում ամպրոպ է ծնւում, ինչն ստիպում է զրպարտանքներով անվերջ որոտալ։ Թող նա իմանայ, որ ես իրենից պակաս չեմ երբեք։

### GLOUCESTER.

Պակաս չե՞ս երբեք։ Դու ապօրինի որդին չե՞ս պապիս։

### WINCHESTER.

Այո՛, ամբարիշտ, իսկ դո՛ւք, դո՛ւք ո՞վ էք։ Եթէ ոչ այլոց թագին աչք տնկող։

### GLOUCESTER.

Յանդուգն տէրտէր, ես չե՞մ հովանին։

WINCHESTER.
Ես եկեղեցու առաջնորդը չե՞մ։

GLOUCESTER.
Այո՛, քեզ պէս է աւազակն ապրում այն ամրոցի մէջ ուր թաքցնում է իր կողոպուտը։

WINCHESTER.
Սրբապի՛ղծ գլոստե՛ր։

GLOUCESTER.
Անպի՛ղծը դու ես իբրեւ կրօնաւոր, սակայն ոչ՝ վարքով։

WINCHESTER.
Դրա պատասխանն հռովմից կը գայ։

WARWICK.
Ուրեմն՝ հռովմ դու աճապարիր։

SOMERSET.
Տէր իմ, ձեր պարտքն է լինել ողջախոհ։

WARWICK.
Այո՛, բայց տեսէք, ինչպէ՛ս է պահում եպիսկոպոսը։

SOMERSET.
Ո՛, տէրն իմ պէտք է բարեպաշտ լինէր, եւ պարտքն իմանար հաւուր պատշաճին։

WARWICK.
Կարծում եմ, պէտք է լինէր շատ խոնարհ եւ իրեն պահէր առաջնորդը զուսպ։

SOMERSET.
Այո՛, բայց այդքան չի վիրաւորել սրբազան հայրը։

WARWICK.
Ո՛, սուրբ է, թէ ոչ, այդ միեւնոյն է, միթէ՞ դուքսը չէ խնամակալը մեր թագաւորի։

PLANTAGENET.
[Aside.] Ինչպէս տեսնում եմ, ռիչարդ, պէտք է որ քո լեզուն զսպես, որպէսզի չասեն՝ խօսիր, երբ հարկն է, եւ մի խառնուիր յանդուգն կարծիքով այս իշխանների խօսք ու զրոյցին, այլապէս պէտք է դառնօրէն հեգնես եպիսկոպոսին։

KING HENRY.
Ձեզ՝ հօրեղբայրներ, մեր մեծ տէրութեան յատուկ պաշտպաններ, ես կը խնդրէի, եթէ խնդրանքս կարող է իշխել, որ ձեր սրտերը միանան սիրով ու մտերմութեամբ։ Օ՜, ինչ ամօթանք մեր թագ ու գահին, երբ նման երկու ազնիւ իշխաններ վիճում են այսպէս։ Ինձ հաւատացէք, թէեւ ջահէլ եմ, բայց պիտի ասեմ, որ քաղաքային խռովութիւնը թունոտ որդի պէս կրծում է ներսը ամէն տէրութեան։

*[From off-stage shouts can be heard: "Down with the tawny coats!"]*

KING HENRY [cont.]
Ի՞նչ աղմուկ է սա։

WARWICK.
Ես յանդգնում եմ ասել՝ խռովութիւն։ Սա առաջնորդի մարդիկ են սարքել։

*[More shouting of, "Stones! Stones!" The Mayor of London enters.]*

MAYOR.
Օ՜, ազնիւ տեարք իմ եւ բարի հենրի դուք մեզ գթացէք եւ մեր քաղաքին։ Եպիսկոպոսի եւ դուքս գլոստերի կողմնակիցները, որոնց վերջերս խիստ արգելուած էր զէնքեր պահելու, քար ու խիճ լցրին իրենց գրպանը եւ, երկու ներհակ խմբեր կազմելով, այնպէս փութեռանդ ու խեղապատակ խփեցին իրար, որ շատերն իրենց յիմար ուղեղը գլխից թափեցին։ Եւ փողոց նայող պատուհանները ջարդ-փշուր եղան վախից փակեցինք խանութները մեր։

*[Bloodied supporters of Gloucester and Winchester enter, fighting.]*

KING HENRY.
Պատուիրում եմ ձեզ՝ ի նշան խոնարհ հպատակութեան, թող դադար առնեն ձեր ձեռքերն արնոտ, եւ խաղաղութիւն հաստատուի այստեղ։ Աղերսում եմ ձեզ, ազնիւ հօրեղբայր, վերջ տուէք կռուին։

SERVANT I.
Եթէ չէք թողնում քարերով կռուել, ապա ցոյց կը տանք մեր ատամները։

SERVANT II.
Դեհ, համարձակուէք, չենք զիջի երբեք։

*[They begin fighting again.]*

GLOUCESTER.
Իմ տան ծառաներ, թողէք դիւրաբորբ այս գժտութիւնը եւ մի կողմ ձգէք կռիւն անպատշաճ։

SERVANT II.

Տէր իմ, մենք գիտենք, որ դուք մի ազնիւ ու շիտակ մարդ էք, եւ ձեր ծնունդով զիջում էք միայն արքային բարի։ Մենք չենք հանդուրժի ձեզ պէս իշխանին՝ մեր մեծ տէրութեան հօրը բարեգութ, մի սեւահոգի արատաւորի։ Եւ մենք բոլորս՝ երեխայ ու կին, պատրաստ ենք նետել մեր մարմինները թշնամու առաջ։

SERVANT I.

Այո՛, եւ նոյնիսկ մեր եղունգները կը փորեն դաշտը, երբ մենք չենք լինի։

*[They start to fight once more.]*

GLOUCESTER.

Սպասէք, եթէ դուք սիրում էք ինձ, ինչպէս ասացիք, լսէք ու թողէք այս գժտութիւնը։

KING HENRY.

Օ՛, այս գժտութիւնն ինչպիսի՛ վիշտ է պատճառում հոգուս դուք, եպիսկոպոս, կարող էք տեսնել իմ արտասուքը եւ հառաչանքը, միթէ՞ չէք ուզում մեղմանալ հոգով։ Ո՞վ պէտք է գթայ, ա՛խ, եթէ ոչ դո՛ւք, կամ թէ ո՞վ պիտի մեզ մատուցանի խաղաղութիւնը, թէ եկեղեցու բարձրադիրք մարդիկ հաճոյք են գտնում խռովութեան մէջ։

WARWICK.

Զիջէ՛ք, հովանի, զիջէ՛ք, առաջնո՛րդ, եթէ չէք ուզում կամակորութեամբ դուք հրաժարուել ձեր վեհափառի սպանութիւնից եւ կործանումից մեր իշխանութեան։ Միթէ՞ չէք տեսնում ձեր թշնամութեամբ ծնուեցին այսքան մահ ու կոտորած, հաշտուէ՛ք, խնդրում եմ, եթէ ձեր հոգին ծարաւ չէ արեան։

WINCHESTER.

Թող նա հաշտուի, թէ ոչ՝ չեմ զիջի։

GLOUCESTER.

Իմ սէրն առ արքան՝ պատուիրում է ինձ լուռ հնազանդուել, այլապէս նախքան նրան ներելը, ես կը պոկէի նրա սիրտը պիղծ։

WARWICK.

Նայի՛ր, առաջնո՛րդ, դուքսը իր սրտից վանել է արդէն խիստ անագորոյն մոլեգնութիւնը, նրա ճակատին կնճիռներ չկան, ինչո՞ւ ես այսքան մռայլ ու դժգոհ։

GLOUCESTER.

Լորդ ուինչեստեր, մեկնում եմ ձեռքս։

KING HENRY.
Ամօ՜թ, հօրեղբա՜յր։ Քարոզել էք միշտ, որ չարութիւնը մեղք է դառնագին։ Միթէ՞ չէք ուզում ձեր քարոզները գործով պաշտպանել, թւում է՝ նրանց ախոյեանն էք մեծ։

WARWICK.
Սիրելի արքայ, դուք առաջնորդի նկատմամբ եղաք չափազանց բարի։ Ամօ՜թ է, հաշտուէք, լորդ ուինչեստեր։ Միթէ՞ երեխան ձեզ պէտք է ասի՝ ինչ էք անելու։

WINCHESTER.
Շատ բարի, գլոստեր։ Ես կամենում եմ քեզ հետ հաշտուել։ Տալիս եմ ազնիւ սէրս քո սիրոյն ու ձեռքս՝ ձեռքիդ։

GLOUCESTER.
[Aside.] Այո՜, բայց, աւա՜ղ, վախենում եմ ես, որ դատարկ սրտով։ Դուք նայէք այստեղ, իմ բարեկամներ եւ իմ սիրելի հայրենակիցներ, ահա նշանն այն, որ պէտք է լինի հաշտութեան դրօշ համախոհներիս ու մերոնց միջեւ։ Աստուած է վկայ՝ հոգիս է մաքուր։

WINCHESTER.
[Aside.] Աստուած է վկայ, հոգիս մաքուր չէ։

KING HENRY.
Օ՜, իմ սիրասուն, ազնիւ հօրեղբայր, բարի գլոստեր, որքան ուրախ եմ ձեր այս հաշտութեամբ։ Հէ՜յ, մարդի՜կ, ցրուէ՜ք, մի վրդովէք մեզ, բայց ձեր սրտերը բարեկամաբար ձուլէք իրարու, ինչպէս արեցին ձեր տէրերն ազնիւ։

SERVANT I.
Լաւ, ես կը գնամ վիրաբոյժի մօտ։

SERVANT II.
Ես նոյնպէս, տղե՛րք։

SERVANT I.
Իսկ ես կը փնտրեմ դեղը պանդոկում։

*[Servants and the Mayor exit.]*

WARWICK.
Տէր իմ, ընդունէք հիւսակն գրոց, ձեր արքայական վեհութեանն ի տես ներկայացնում ենք ռիչարդի կողմից։

GLOUCESTER.
Սքանչելի քայլ, իմ ազնիւ վորուիկ։ Ձերդ մեծութիւն, դուք ծանր ու թեթեւ անելուց յետոյ կ՝իմանաք գործի էութիւնն ամբողջ, եւ դուք կ՝ունենաք հիմքերը բոլոր, որպէսզի ռիչարդն իր դիրքն ստանձնի։ Յատկապէս, տէր իմ, նկատի առէք այն հանգամանքը, որ ձեզ ասացի Էլթեմ պալատում։

KING HENRY.
Այս պատճառները, բարի հօրեղբայր, զօրաւոր են խիստ, ահա թէ ինչու, ազնիւ իշխաններ, հանելի է մեզ, որ արենակից իւր տոհմը կրկին ռիչարդը դառնայ։

WARWICK.
Թող վերադառնայ ռիչարդն իր տոհմը, նա կը հատուցի հօր վրէժի համար։

WINCHESTER.
Ինչ ուրիշներն են կամենում, տէր իմ, նոյնն էլ ուզում է ուինչեստերը։

KING HENRY.
Թէ, ռիչարդ, մնաս ինձ հաւատարիմ, ոչ միայն իրաւունքդ, այլեւ քեզ կը տամ եորքի բովանդակ ժառանգութիւնը, որի արմատից քո ճիւղն է ծլել։

PLANTAGENET.
Քեզ ազնիւ ծառադ հնազանդօրէն երդում է տալիս, որ կը ծառայի մինչեւ իր մահը։

KING HENRY.
Խոնարհուի՛ր, ռիչա՛րդ, եւ ծունր իջիր իմ գահի առջեւ ի հաստատումն քո հնազանդութեան՝ մէջքիդ եմ կապում եորքի մեծ սուրը։ Բարձրացի՛ր, ռիչարդ, որպէս իսկական Պլանտագենետ, բարձրացի՛ր, նորից քեզ շնորհուել է եորքի անունը։

PLANTAGENET.
Թող ձեր թշնամուն ոչնչացնի յաջողութիւնս, ես կը կատարեմ պարտքն իմ սրբազան, կը կորչեն, տէր իմ, չարակամ մարդիկ, ովքեր ձեր հանդէպ քէնով են լցուած։

EVERYONE.
Ողջո՛յն, բարձրատոհմ, հզօր եորքի դուքս։

SOMERSET.
[Aside.] Կորսուի՛ր, նուաստ, եորքի ստոր դուքս։

GLOUCESTER.
Ամենաբարի առիթն է հիմա, ձերդ մեծութիւն, որ անցնէք ծովը եւ ֆրանսիայում կարգուէք թագաւոր։ Ձեր ներկայութեամբ սէր կ՝արթնացնէք ձեր հպատակների, բարեկամների ուղղամիտ սրտում եւ կը սարսափեցնէք թշնամիներին։

KING HENRY.
Երբ գլոստերն է այս բառերն ասում, ուրեմն կը մեկնեմ երբ խրատներն են ազնիւ ու բարի, չկայ թշնամի քո ճանապարհին։

GLOUCESTER.
Տէր իմ, պատրաստ են ձեր նաւերն արդէն։

*[All exit save Exeter.]*

EXETER.
Այո՛, անգլիայում կամ ֆրանսիայում պէտք է մենք լինենք, բայց, աւա՜ղ, ի՞նչ է մեզ սպասելու, յայտնի չէ բնաւ։ Այս գժտութիւնը, որ խիստ բորբոքուեց լորդերի միջեւ, այրւում է դանդաղ՝ նենգադաւ սիրոյ մոխրով անթեղուած եւ պէտք է մի օր բռնկի բոցով, ինչպէս որ դանդաղ մարմինն է փտում, քանի չեն թափուել ոսկորն ու միսը, այսպէս էլ պէտք է այս չար ու ստոր վէճը ծաւալուի։ Սարսափում եմ ես ճակատագրական գուշակութիւնից, որը հնչում էր ծծկեր տղայոց կաթոտ շուրթերին երբ որ իշխում էր հենրի հինգերորդն իր տէրութիւնը *«Հենրի հինգերորդն ինչ որ վաստակեց, վինձորում ծնուած հենրին կը վատնի։»* այս ամենն այնքան պարզ է ու որոշ, որ երազում է էքսետերն արդէն աւելի արագ օրերն աւարտել, քան թէ կը տեսնի այդ դժբախտ օրը։ [Exits.]

][][

ACT III. SCENE II.
France. Before Rouen. Pucelle and four Soldiers enter, dressed like farmers, with sacks upon their backs.

PUCELLE.
Դարպասներն ահա ռուան քաղաքի։ Խորամանկութեամբ պէտք է թափանցել դռների ետեւ։ Արդ, զգոյշ եղէք, թող ձեր բառերը ձեր դիրքը յուշեն խօսէք հասարակ գիւղացու նման, որն իր ցորենը շուկայ է բերել ծախելու համար։ Եթէ ներս թողնեն, եւ մեզ պարզ դառնայ, որ պահակները անուշադիր են, ես կը հաղորդեմ ազդանշանով բարեկամներիս որ մեր դոֆինը գրոհը սկսի։

SOLDIER I.
Կ՝օգնեն պարկերը, որպէսզի քաղաքն առնենք պարկի մէջ, եւ մեր տէրութիւնն այնտեղ հաստատենք։ Ուրեմն, բախենք։ [Knocks.]

GUARD
[From within.] Ո՞վ է այնտեղ։

PUCELLE.
Խեղճ գիւղացիներ, որ իրենց ցորենն ուզում են ծախել։

GUARD
[Opening the doors.] Դե՛հ, շո՛ւտ ներս մտէք շուկայի զանգը խփել է արդէն։

PUCELLE.
Արդ, ռուան քաղաք, ես պիտի ցնցեմ քո հիմքերն ամուր։

*[As Pucelle and her Soldiers enter Charles, Alencon, Reignier, the Bastard and their Army rush the stage.]*

CHARLES.
Սուրբ դենի, օրհնիր հնարքն երջանիկ, եւ մենք ապահով նորից կը քնենք ռուան քաղաքում։

BASTARD.
Ներս մտաւ ժաննան զինուորների հետ, այնտեղ է հիմա, բայց նա ինչպէ՞ս է ցոյց տալու տեղը, թէ մենք որտեղից կարող ենք խուժել աւելի յաջող։

REIGNIER.
Նա աշտարակից կը պարզի ջահը, որը ցոյց կը տայ՝ իր գտած տեղից աւելի դիւրին ճանապարհ չկայ։

*[Pucelle enters on top of the Wall with a burning torch.]*

PUCELLE.
Նայէք, երջանիկ պսակադրութեան բոցավառ ջահին կապում է ռուանն իր ժողովրդին։ Բայց տոլբոտների մահն է գուշակում։ [Exits.]

BASTARD.
Նայի՛ր, ազնիւ շառլ, մեր բարեկամը նշան է անում, այն աշտարակից լոյս է երեւում։

CHARLES.
Թող փայլի ջահը վրէժխնդրութեան գիսաստղի նման եւ մեր թշնամու մահը գուշակի։

REIGNIER.
Յապաղման ժամ չէ՛։ Յապաղումն ունի ծանր հետեւանք։ Պէտք է ներս խուժենք եւ իսկոյն կոչենք՝ թագաժառա՜նգը։ Ապա վերջ կը տանք պահակախմբին։

*[They enter the city. Talbot confronts them and they begin to fight.]*

TALBOT.
Դաւաճանութեան համար, ֆրանսիա՛, դու պէտք է ողբաս, եթէ տոլբոտը նորից ողջ մնայ քո մատնութիւնից։ Ժաննա դ՝արկը՝ այս գեհենապարտ դժնի վհուկը, այս դժոխային փորձանքը յանկարծ բերեց մեր գլխին, եւ մենք հազիւհազ ճողոպրեցինք գոռոզ թշնամուց։

*[As Talbot exits Bedford is brought in, dying, in a chair. Talbot and Burgundy re-enter. Pucelle, Charles, Alencon, Reignier and the Bastard remain on the Wall.]*

PUCELLE.
Բարի՛ լոյս, քաջե՛ր, ցորեն չէ՞ք ուզում ձեր հացի համար, բուրգունդիաի դուքսը կը գերադասի անվերջ ծոմ պահել, քան թէ այդ գնով ցորեն ձեռք բերել։ Որոմ եմ խառնել, չէ՞ք բարեհաճի։

BURGUNDY.
Հեգնիր, ստոր դե՛ւ, անզգամ պոռնիկ, ես քեզ կը խեղդեմ քո հացով հիմա եւ դու ստիպուած՝ բերքդ կ՝անիծես։

CHARLES.
Մինչեւ այդ գուցէ, ձերդ մեծութիւն, սովից մահանաք։

BEDFORD.
Օ՛, թո՛ղ սխրանքը, ոչ թէ բառերը մեր վրէժն առնի նենգութեան համար։

PUCELLE.
Չե՞ս ուզում բարի, սպիտակ մորուք, ջարդել մի նիզակ, կռուել մահուան հետ բազկաթոռի մէջ։

TALBOT.
Դու դե՛ւ ֆրանսիայի, վհո՛ւկ չարութեան, դու, շրջապատուած տռփոտ ու վաւաշ սիրեկաններով, փորձում ես ծաղրել նրա փառաւոր քաջ ծերութիւնը եւ յանդիմանում կիսամեռ մարդուն երկչոտութեան մէջ, լսի՛ր դու, պոռնի՛կ, եթէ ես նորից քեզ հետ չկռուեմ, թող մեռնի տոլբոտն այս ամօթանքից։

PUCELLE.
Միթէ՞ դուք այսքան շուտ էք բռնկւում։ Ժաննա, դու պէտք է խիստ զգոյշ լինես, եթէ տոլբոտն է շանթում, որոտում, անձրեւ սպասիր։

*[The English whisper together in council.]*

PUCELLE [cont.]
Աստուած յաջողէ խորհրդարանին։ Ո՞վ է լինելու խօսողն առաջին։

TALBOT.
Դուք յանդգնո՞ւմ էք դուրս գալ քաղաքից ու կռուել մեզ հետ։

PUCELLE.
Միթէ՞ մենք այնքան յիմար ենք, պարոն, որ նորից ստուգենք՝ մե՞րն է մեր կայքը, թէ՞ ուրիշինն է։

TALBOT.
Ո՛չ թէ խօսում եմ չար հեկատէի, այլ քեզ եւ ուրիշ զինուորների հետ, սինեօր ալանսոն։ Չէ՞ք ուզում կռուել զինուորի նման։

ALENCON.
Օ՛, երբե՛ք, սինեօր։

TALBOT.
Կորէք իմ աչքից, դուք՝ ֆրանսիայի ստոր ջորեպաններ, ասես թէ լինեն գեղջուկ ծառաներ, որ թաքնւում են պատերի ետեւ, երբ հարկ է լինում մի տեղ ուղարկել եւ չեն յանդգնում ասպետի նման զէնքը ձեռքն առնել։

PUCELLE.
Հրամանատարներ, իջնենք պարսպից, տոլբոտի հայեացքն երբեք բարութեան ակնարկ չի անում։ Տէր ընդ ձեզ, պարոն։ Եկանք ասելու, որ մենք այստեղ ենք։

*[The French exit from the Wall.]*

TALBOT.
Մենք էլ շատ շուտով կը լինենք այդտեղ, թէ ոչ՝ մեծ փառքս պիտի անարգուի։ Երդուի՛ր բուրգունդցի քո տոհմի պատուով, որն անարգուած է ողջ ֆրանսիայում, քաղաքն ետ կ՝առնես կամ թէ կը մեռնես։ Եւ ուխտն իմ ճիշտ է, ինչպէս որ հենրին ապրում է կեանքում, ինչպէս որ նրա հայրն այստեղ յաղթեց, ինչպէս որ հէնց նոր դաւաճանութեամբ առած քաղաքում մեծ առիւծասիրտ ռիչարդն է հանգչում։ Ես էլ եմ երդւում քաղաքն ետ առնել կամ մեռնել, տէր իմ։

BURGUNDY.
Իմ երդումները քո խոստումների ընկերն են շիտակ։

TALBOT.
Բայց մինչ մեկնելդ նայիր այս մեռնող մեր դուքս բեդֆորդին։ Միլորդ, ձեզ համար մենք պէտք է ընտրենք ապահով մի տեղ, ինչպէս յարմար է հիւանդութեանը ու ծեր տարիքին։ Դո՛ւ, իշխան տոլբոտ, անպատւում ես ինձ, ես պիտի նստեմ այս քաղաքի տակ եւ կիսեմ քեզ հետ վիշտ ու խնդութիւն։

BURGUNDY.
Անվեհեր բեդֆորդ, աղերսում եմ ձեզ, համոզուէք, որ դուք ։

BEDFORD.
Ո՛չ մի քայլ, պարոն։ Ես կարդացել եմ, որ քաջ պենտրագոն՝ հիւանդ ու տկար, դաշտ է գնացել իր պատգարակով եւ իր թշնամուն պարտութեան մատնել։ Կարծում եմ, որ ես կարող եմ ուժ տալ զինուորի սրտին, քանզի նրանց մէջ ինձ եմ տեսել միշտ։

TALBOT.
Օ՛, անվա՛խ ոգի՝ մեռնող կրծքի տակ, թող այդպէս լինի, եւ ծեր բեդֆորդին երկինքը հսկէ։ Արդ, քան երբեւէ, բուրգունդիայի դուքս, պէտք է հաւաքել ցիրուցան եղած բանակները մեր եւ խիստ հարուածել գոռոզ թշնամուն։

*[All exit except Bedford and his Servants. Sir John Fastolf and a Captain soon enter.]*

CAPTAIN.
Ուր էք շտապո՞ւմ, միլորդ ջոն ֆաստոլֆ։

FASTOLFE.
Ուր եմ շտապո՞ւմ, կաշիս փրկելու։ Կարծես թէ նորից մեզ պիտի ջարդեն

CAPTAIN.
Ի՞նչ։ Կամենում էք փախչել այստեղից եւ մենակ թողնել իշխան տոլբոտի՞ն։

FASTOLFE.
Այո՛, աշխարհի ողջ տոլբոտներին։ Ես կեանքս եմ փրկում։ [Exits.]

CAPTAIN.
Քեզ, վախկոտ ասպետ, թող միշտ ուղեկցի բախտը չարագոյժ։

*[The French and English fight, street by city street.]*

BEDFORD.
Հիմա, երբ աստծու կամքն է այսպիսին, կարող ես հանգչել, խաղաղուած հոգի, քանզի ես տեսայ փախչող թշնամուն։ Որտե՞ղ են արդեօք խելագարների ուժն ու հաւատը, նրանք, որ յաճախ մեզ ծաղրում էին, գոհ են, որ կեանքն են փրկում փախուստով։

*[Bedford dies. His Servants carry him off-stage. Talbot and the Duke of Burgundy enter.]*

TALBOT.
Մէկ օրում կորցնել, նորից ետ բերել՝ փառք է կրկնակի, բուրգունդիայի դուքս։ Օրհնենք երկնքին յաղթութեան համար։

BURGUNDY.
Ռազմասէր ու քաջ իշխան իմ տոլբոտ, բուրգունդիաի դուքսը պէտք է իր սրտում քեզ յաւէրժ պահի եւ կանգնեցնի այնտեղ արարքիդ անմահ յուշարձան։

TALBOT.
Շնորհակալութիւն, սիրելիդ իմ դուքս։ Բայց ո՞ւր է կոյսը, կարծեմ նիրհում է նրա չար ոգին, ո՞ւր է

բաստարդի խիզախութիւնը, ո՞ւր է դոֆինի ծաղր ու ծանակը։ Ի՞նչ։ Մահացե՞լ են։ Ռուանը վշտից գլուխն է կախել, որ մի այսպիսի կտրիճ զօրախումբ փախել է արդէն։ Տէր իմ, քաղաքում մենք կարգ ու կանոն պէտք է հաստատենք եւ դնենք այնտեղ հմուտ սպաներ եւ մեկնենք փարիզ՝ թագաւորի մօտ, ուր ժամանել է մեր ջահէլ հենրին իւր շքախմբով։

BURGUNDY.
Ինչ կամենում է իշխան տոլբոտը, հաճոյ է, անշուշտ, բուրգունդիաի դուքսին։

TALBOT.
Մեկնելուց առաջ մենք պէտք է յիշենք ազնիւ բեդֆորդին, որ այստեղ կնքեց իր մահկանացուն, եւ պէտք է պատուով թաղենք ռուանում։ Ո՛չ մի քաջ ռազմիկ չէր կարող ջարդել նրա պէս նիզակ, ո՛չ մի ազնիւ սիրտ դեռ չի բաբախել գահերի առաջ, բայց արքաներն էլ եւ հզօր մարդիկ պէտք է մահանան բոլորին կեանքում սպասում է լոկ մի ցուրտ գերեզման։

*[They exit]*

][][

ACT III. SCENE III.
The plains near Rouen. Charles enters with the Bastard, Alencon and Pucelle.

PUCELLE.
Իշխաննե՛ր, բնաւ մի ահաբեկուէք այս պատահարից եւ մի վշտանաք, որ նրանք նորից ռուանը առան վհատութիւնը սպեղանի չէ, այլ թոյն է դառն, երբ հնար չկայ գործերն ուղղելու։ Թող խելացնոր տոլբոտը ցնծայ կարճ ժամանակով, պոչը տարածի սիրամարգի պէս։ Մենք քամուն կը տանք փետուր ու բմբուլ, կը պոկենք պոչը, եթէ դոֆինը եւ ուրիշները իմ ետեւից գան։

CHARLES.
Ցարդ դու ես, ով կոյս, մեզ առաջնորդել, եւ չենք կասկածել քո ուժի վրայ մէկ յանկարծակի վրիպումն երբեք պատճառ չէ բնաւ անվստահութեան։

BASTARD.
Գործի դիր նորից քո ուժն ու խելքը, մենք կը տարածենք քո փառքն աշխարհով։

ALENCON.
Արձանդ պիտի դնենք տաճարում եւ երկրպագենք քեզ՝ իբրեւ մի սուրբ, եթէ, քաղցր կոյս, մեր վիշտն ամոքես։

PUCELLE.
Ահա թէ ինչ է ժաննան որոշում պէտք է գեղեցիկ, մեղրահամ խօսքով գլխահան անել բուրգունդիաի դուքսին, որպէսզի լքի ընդմիշտ տոլբոտին եւ մեզ միանայ։

CHARLES.
Այո՛, սիրելիս, թէ կարողանանք դա գլուխ բերել ապա մեր երկրում հենրիի զօրքը տեղ չի ունենայ, եւ այդ ժողովուրդն էլ չի պարծենայ, մեր գաւառներից դուրս կը վռնդենք։

ALENCON.
Կը քշենք ընդմիշտ նրանց մեր հողից, եւ թող չունենան նոյնիսկ կոմսութեան ոչ մի իրաւունք։

PUCELLE.
Կը տեսնէք, ինչպէս ես կ՝անցնեմ գործի, որ ձեզ հասցնեմ ափը բաղձալի։

*[Drum sounds afar off.]*

PUCELLE [cont.]
Լսէք, այդ ձայնով կարող էք զգալ, որ նրանց զօրքը մեկնում է փարիզ։

*[First an English march while Talbot and his forces cross the stage; then a French march as Burgundy and his troops cross.]*

PUCELLE [cont.]
Դուքսը իր զօրքով գալիս է վերջից մեր բախտը բերեց, որ նա ետ մնաց։ Դեհ, բանակցութեան փողեր հնչեցրէք, մենք ցանկանում ենք նրա հետ խօսել։

*[Trumpets sound a parley.]*

CHARLES.
Բուրգունդիայի դուքս, մենք կամենում ենք ձեզ հետ բանակցել։

BURGUNDY.
Ո՞վ է ցանկանում խօսել դուքսի հետ։

PUCELLE.
Տէ՛ր իմ, ֆրանսիայի թագաժառանգը, հայրենակիցդ։

BURGUNDY.
Ի՞նչ պէտք է ասես, շտապում եմ, շառլ։

CHARLES.
Խօսիր, չքնա՛ղ կոյս, եւ քո բառերով հմայիր նրան։

PUCELLE.
Արիասիրտ դուքս, ֆրանսիայի յոյս, կա՛ց, խոնարհ ծառադ ուզում է խօսել։

BURGUNDY.
Խօսիր, բայց հակիրճ։

PUCELLE.
Նայիր քո երկրին, նայիր արգաւանդ հարազատ հողիդ, տե՛ս, թէ ինչպէս է թշնամին դաժան քո քաղաքները, ամրոցներն այրում։ Ա՛խ, նայի՛ր մաշող հիւանդութեանը քո հայրենիքի այնպէս նայում է մայրը մանկանը, երբ մահն է փակում նրա քնքշագին մեռնող աչքերը։ Նայիր վէրքերին խիստ օրհասական, որ դու բացում ես նրա ցաւոտ կրծքին։ Օ՜, եա դարձրու շեղբը դաշոյնիդ եւ խոցիր նրան, ով վէրք է տալիս ոչ թէ երկրիդ նեցուկ զինուորին։ Քո հայրենիքի կրծքից դուրս ժայթքած արեան ամէն շիթ պէտք է աւելի քեզ վիշտ պատճառի, քան թէ օտարի գետերը արեան։ Դարձիր, արցունքիդ առատ հեղեղով սրբիր քո երկրի բիծն արատաւոր։

BURGUNDY.
[Aside.] Ես կախարդուեցի նրա՞ բառերով, թէ՞ բնութիւնն է իմ խիղճը շարժում։

PUCELLE.
Ամբողջ ֆրանսիան նայում է քեզ արդ՝ խիստ կասկածելով քո օրինաւոր ծնունդի վրայ, դու դաշն ես կնքել գոռոզ ազգի հետ, որ վստահում է քեզ լոկ շահոյթի նպատակներով։ Երբ որ տոլբոտը ոտքն ամրացնի մայր հողի վրայ եւ քեզնից ձուլի չարութեան գործիք, ո՞վ պէտք է իշխի այստեղ տիրաբար, եթէ ոչ՝ հենրին։ Եւ որպէս թշուառ մի փախստական՝ քեզ կը վռնդեն։ Որպէս ապացոյց՝ բերում եմ մի փաստ Օ՜, ասա՛, միթէ՞ քո թշնամին չէր դուքսն օռլէանի եւ միթէ՞ նա չէր գերուած անգլիայում, բայց երբ իմացան, որ թշնամիդ է, բաց թողին նրան՝ չառնելով նոյնիսկ ոչ մի փրկագին՝ ի հեճուկս քեզ եւ քո բազմաթիւ բարեկամների։ Նայի՛ր, կռւում ես ընդդէմ քո երկրի՝ դաշինք կնքելով դահիճներիդ հետ դարձի՛ր, ե՛տ դարձի՛ր, ով մոլորեալ դուքս քեզ կ՝առնեն իրենց թեւերի վրայ թագաժառանգը եւ իշխանները։

BURGUNDY.
[Aside.] Ես պարտուած եմ։ Նրա բառերը սիրտս խոցեցին, յանց հրանօթի ռռնացող արկեր, եւ ստիպեցին, որ ծունր իջնեմ։ Ների՛ր հայրենիք, ներէ՛ք, իմ բարի հայրենակիցներ, իսկ դուք՝ իշխաններ, ընդունէք անկեղծ ողջագուրանքս, ես ձեզ եմ յանձնում իմ սուրն ու զօրքը։ Դե՛հ, մնա՛ս բարեաւ, քեզ չեմ վստահում այլեւս, տոլբոտ։

PUCELLE.
[Aside.] Ահա իսկական մի ֆրանսիացի, պտոյտ է գալիս այստեղ ու այնտեղ։

CHARLES.
Բարի՛ վերադարձ, արիասի՛րտ դուքս, յարութիւն առանք բարեկամութեամբ։

BASTARD.
Մեր սիրտը լցրիր դու նոր քաջութեամբ։

ALENCON.
Ժաննան հմտութեամբ իւր դերը խաղաց եւ արժանի է նա ոսկեայ թագի։

CHARLES.
Այժմ, իշխաններ, գնանք միանանք մեր քաջ բանակին։ Եւ խորհենք՝ ինչպէս ջարդել թշնամուն։

*[They exit.]*

]0[

ACT III. SCENE IV.
Paris. The Palace. The King enters with Gloucester, Winchester, York, Suffolk, Somerset, Warwick, Exeter, Vernon and Basset. They are followed by Talbot and his troops.

TALBOT.
Վեհափառ արքայ, իշխաններ յարգոյ, ես, լուր առնելով, որ ժամանել էք այս տէրութիւնը, միառժամանակ դադար տուեցի իմ կռիւներին, որպէսզի պարտքս անկեղծ հատուցեմ իմ միապետին։ Ի նշան սիրոյ՝ ահա բազուկն իմ, որ ետս կոչեց ձեր տէրութեանը հինգ տասնեակ բերդեր, երկտասան քաղաք եւ եօթ ամրոցներ, ապա հինգ հարիւր անուանի գերի թող սուրը դնի ձեր ոտքերի տակ։

*[He kneels.]*

TALBOT [cont.]
Ես սրտիս ազնիւ հաւատարմութեամբ յաղթանակներիս փառքերը բոլոր նախ՝ աստծուն, ապա՝ ձեզ եմ պարգեւում։

KING HENRY.
Սա այն տոլբո՞տն է, հօրեղբա՛յր գլոստեր, որ Ֆրանսիայում ապրում է վաղուց։

GLOUCESTER.
Այո՛, եթէ ձեզ հաճոյ է, տէր իմ։

KING HENRY.
Բարո՛վ էք եկել, ազնիւ զօրավար, յաղթապանծ իշխան։ Երբ ջահել էի, ձեր չեմ հիմա էլ, յիշում եմ, հայրս յաճախ էր ասում, որ չկայ քեզ պէս անվեհեր մարտիկ։ Տարիներ ի վեր հաւատում էինք ձեր ազնւութեանը, ձեր վստահելի ծառայութեանը, ձեր հմտութեանը պատերազմներում, բայց չէք ճաշակել դուք ի տրիտուր եւ չէք ստացել շնորհակալութեան մեր խօսքերն անկեղծ, քանզի ձեր դէմքը չէինք տեսել ցարդ, ուստի վեր կացէք։ Գալով ձեր բարի ծառայութեանը՝ ձեզ այսուհետեւ մենք կոչելու

ենք կոմս շրուսբերի, թագադրութեան սրբազան ժամին ձեր բարձը գտէք։

*[All exit except Vernon and Basset.]*

VERNON.
Տէր իմ, դուք ծովում սաստիկ տաքացաք՝ խիստ անարգելով այն գոյնը, որ ես կրում եմ հիմա՝ ի պատիւ եորքի։ Կարո՞ղ էք արդեօք համարձակօրէն նորից պահպանել ոճը ձեր խօսքի։

BASSET.
Այո՛, կարող եմ, եթէ յանդգնէք ձեր լպիրշ լեզուի անկուշտ հաչոցը ուղղել իմ ազնիւ դուքս սոմերսետին։

VERNON.
Տիրոջդ եմ յարգում, ինչպիսին որ կայ։

BASSET.
Այսինքն՝ ինչպէ՞ս։ Չէ՞ որ նա եորքից պակաս չէ բնաւ։

VERNON.
Լսի՛ր, պակաս է։ Ահա ապացոյց։

*[Slaps him.]*

BASSET.
Սրիկա՛յ, գիտես օրէնքը ռազմի, ով սուր է քաշում, նա պէտք է մեռնի եթէ այդ հարուածն այսպիսին լինէր, ես կը թափէի քո սրտից արիւն։ Բայց պէտք է գնամ թագաւորի մօտ ու խնդրեմ նրան, որ վրէժն առնեմ վիրաւորանքիս, այնժամ կը տեսնես՝ քեզ կը հանդիպեմ դժբախտ օրերիդ։

VERNON.
Դեհ, լա՛ւ, ապիրա՛տ, ես էլ եմ գնում, եւ նորից շուտով քեզ կը հանդիպեմ, քան կարող էիր ինքդ ցանկանալ։

*[They exit.]*

][[

ACT IV. SCENE I.
Park. The palace. Pomp. The King enters with Gloucester, Winchester, York, Suffolk, Somerset, Warwick, Talbot, Exeter and the Governor of Paris.

GLOUCESTER.
Լորդ եպիսկոպոս, պսակէք նրա գլուխը թագով։

WINCHESTER.
Աստուած ձեզ պահի հենրի վեցերորդ։

GLOUCESTER.
Փարիզի պարէտ, երդուէք ծնրադիր, պարէտը ծունր է իջնում։ Որ չէք ճանաչի մէկ ուրիշ արքայ, որ ձեզ բարեկամ դուք կը համարէք միմիայն նրա բարեկամներին եւ չէք ունենայ ոչ մի թշնամի, բացի նրանցից, ովքեր չարանենգ նայում են նրա իշխանութեանը։ Այսպէս էլ գործէք աստուած օգնական։

*[As the Governor exits Sir John Fastolf enters.]*

FASTOLF.
Բարեգութ արքայ, երբ ես կալէից շտապում էի ձեր թագադրման արարողութեանը, ինձ ճանապարհին մի նամակ տուին բուրգունդիաի դուքսից, որ յանձնեմ ձերդ ողորմածութեանը։

TALBOT.
Հազա՛ր ամօթանք բուրգունդիաի դուքսին եւ քեզ, մորթապաշտ, ես երդուել էի, թէ ինձ յաջողուէր քեզ նորից տեսնել, խլել քեզանից քո ծնրակապի շքանշանը։

*[He snatches the Garter off Fastolf's leg.]*

TALBOT [cont.]
Այսպէս վարուեցի, քանզի դու երբեք արժանի չէիր այդ բարձրաստիճան ու վսեմ դիրքին։ Ներէ՛ք ինձ, արքայ, եւ դուք, իշխաններ, այս վախկոտ սիրտը պատէի ծանր ճակատամարտում, երբ ես ունէի վեց հազար զինուոր, իսկ ֆրանսիացիք՝ գրեթէ տասը մեր մէկի դիմաց, ու մինչ յարձակման կ՝անցնէր զօրքը մեր, ու կը պատրաստէր հարուածն առաջին, փախաւ նորավարժ զինակրի նման։ Մարտում սպանուեց երկու հազար մարդ, ես գերի ընկայ իշխանների հետ։ Ինքներդ դատէք, մեծարգոյ տեարք իմ, ես վա՞տ վարուեցի, միթէ՞ կարող է վախկոտը կրել զարդն ասպետութեան։

GLOUSTER
Ճիշտն ասած՝ սա մի արարք է ստոր, որ չի պատշաճում հասարակ մարդուն, առաւել եւս՝ մի առաջնորդի ու մի ասպետի։

TALBOT.
Ազնիւ իշխաններ, երբ սահմանուեց այս շքանշանը, Օ՛, ծնրակապի ասպետներ կային ազնիւ ծնունդով նրանք քաջ էին, խիստ առաքինի եւ արիասիրտ, կռիւներն էին նրանց ստուգում, չէին սարսափում մահուան աչքերից, նրանց չէր բռնում եւ ոչ մի փորձանք, խիզախում էին ամենածանր վտանգի ժամին։ Իսկ նա, ով զուրկ է այդ արժանիքից, շորթում է ազնիւ անունն ասպետի՝ սրբապղծելով ամենավսեմ այս շքանշանը։ Եթէ ես լինեմ դատաւորն արդար, բարձընկէց կ՝անեմ նրան ողջաբար, ինչպէս պատի տակ ծնուած գեղջուկին, որ կարծում է, թէ իր երակներում ազնուականի արիւն է հոսում։

KING HENRY.
Ամօ՛թ քո երկրին։ Լսիր վճիռը քո ճակատագրի, քեզ, նախկին ասպե՛տ, դուրս ենք վռնդում եւ տարագրում սարսափով մահուան։

*[Fastolf exits.]*

KING HENRY [cont.]
Լորդ խնամակալ, կարդայ նամակը, որ ուղարկել է մեր հօրեղբայրը՝ բուրգունդիաի դուքսը։

GLOUCESTER.
Ի՞նչ է մտածել, որ փոխել է նա ընդունուած ձեւը ոչինչ աւելի, քան թէ՝ «արքային։» մոռացել է նա, որ դուք իր տէրն էք։ Գուցէ այս կոպիտ, անպատշաճ ոճը յուշում է, որ նա հաւատարիմ չէ իր տիրոջ հանդէպ։ Ի՞նչ է նա գրում։ [Reads.] «յատուկ պատճառով, եւ կարեկցելով վիշտն իմ հայրենի եւ նրա ողբը՝ սրտաշարժ ու խոր, որ սնւում են ձեր կեղեքումներից, լքում եմ ձեր խումբն յանցապարտ ու նենգ, եւ միանում եմ դոֆինին, տէր իմ, ով ֆրանսիայի օրինապատշաճ միակ արքան է։» Օ՛, ճիւաղային դաւաճանութիւն, հնարաւո՞ր է այսպիսի արարք։ Միթէ՞ դաշինքի, բարեկամութեան եւ երդումների դիմակը ստոր ներընդունակ է սքօղել նման դաւաճանութիւն։

KING HENRY.
Ի՞նչ, իմ հօրեղբայր բուրգունդիաի դուքսը ըմբոստացե՞լ է,

GLOUCESTER.
Այո՛, եւ դարձել, տէ՛ր իմ, թշնամիդ։

KING HENRY.
Սա չարագո՞յնն է, որ ներկրում է այս նամակը պիղծ։

GLOUCESTER.
Տէր իմ, բոլորից վատթարագոյնը եւ իմաստն ամբողջ։

KING HENRY.
Լա՛ւ, թող տոլբոտը նրա հետ խօսի եւ արժանաւոր պատիժ հատուցի խաբէութեանը։ Ի՞նչ կ՝ասէք, իշխա՛ն, բաւարարուած չէ՞ք։

TALBOT.
Գոհ եմ, օ՛հ, այո՛, բայց ինձ կասեցրիք երազում էի այդ մասին հայցել։

KING HENRY.
Զօրքդ հաւաքիր, գնա նրա դէմ, թող նա իմանայ, որ մենք չենք ներում դաւաճանութիւն, եւ չի կարելի դրժել դաշինքը բարեկամութեան։

TALBOT.
Գնում եմ, տէր իմ եւ ամբողջ հոգով տենչում եմ տեսնել պարտութիւնները թշնամիներիդ։

*[As Talbot exits Vernon and Basset enter.]*

VERNON.
Ողորմած արքայ, տուէք իրաւունք մենամարտելու։

BASSET.
Ինձ էլ թոյլ տուէք, վեհափառ տէր իմ։

YORK.
Սա իմ ծառան է լսեցէք նրան, արքաղ իմ ազնիւ։

SOMERSET.
Իսկ սա էլ՝ իմն է, սիրասուն հենրի, եղէք բարեհաճ։

KING HENRY.
Համբերէք, տեարք իմ, թող նրանք խօսեն։ Ասացէ՛ք, ի՞նչն է պատճառն աղմուկի ո՞ւմ հետ էք ուզում կռուել եւ ինչո՞ւ։

VERNON.
Տէր իմ, նրա հետ, ինձ վիրաւորեց։

BASSET.
Տէր իմ, նրա հետ, ինձ վիրաւորեց։

KING HENRY.
Ի՞նչ առիթ ունէք վիրաւորանքի։ Նախ՝ պէտք է լսել եւ ապա՝ միայն ձեզ պատասխանել։

BASSET.
Երբ գալիս էինք ծովով ֆրանսիա, այս անպիտանի չարախօս լեզուն ինձ պախարակեց այս վարդի համար։ Ասաց, որ նրա թերթերն արիւնոտ արտացոլում են շիկնանքն ամօթի, որ բորբոքուել էր իմ բարի տիրոջ այտերի վրայ, երբ նա հերքել է իրաւունքների մի ստոյգ խնդիր՝ ծագած մեր եորքի ու նրա միջեւ։ Ուրիշ խայտառակ խօսքեր էլ ասաց, տէր իմ, թոյլ տուէք, որ մենամարտեմ, որպէսզի հերքեմ կշտամբանքը բիրտ եւ պաշտպան կանգնեմ իմ տիրոջ պատուին։

VERNON.
Մեր բարի արքայ, այս է խնդրանքս, թէեւ նա ջանաց խորամանկութեամբ անսովոր փայլ տալ յանդուգն արարքին, բայց դուք իմացէք, պատճառը նա է, եւ նա առաջինն ինձ յանդիմանեց այս

վարդի համար՝ ասելով ծաղկի գունատութիւնը մատնում է եորքի փոքրոգութիւնը։

YORK.
Վերջ չի՞ լինելու քո նենգութեանը, պարոն Սոմերսետ։

SOMERSET.
Որքան էլ փորձէք խորամանկօրէն թաքցնել ձեր նենգ թշնամութիւնը, միեւնոյն է, եորք, երեւում է նա։

KING HENRY.
Աստուա՜ծ իմ, այս ի՞նչ յիմարութիւն է մտել այս մարդկանց ուղեղը խելառ, երբ այդքան չնչին, անմիտ առիթը պատճառ է դառնում նման գժտութեան։ Խնդրում եմ հաշտուէք, եորք ու Սոմերսետ։

YORK.
Նախ՝ թող կռիւը այս վէճը լուծի, ապա, տէր իմ, դուք մեզ կը հաշտեցնէք։

SOMERSET.
Այս գժտութիւնը մեզ է պատկանում եւ մենք էլ պէտք է մեր միջեւ լուծենք։

YORK.
Ահա գրաւն իմ, վերցրո՛ւ, Սոմերսետ։

VERNON.
Ինչով սկսուեց, թող նրանով էլ վէճը աւարտուի։

BASSET.
Այսպէս հաւաստիր, մեծարգոյ պարոն։

GLOUCESTER.
Այսպէս հաւաստե՞լ, անիծեալ լինի ձեր գժտութիւնը, չքացէք եւ դուք ձեր ժպիրհ խօսքով, լկտի վասալներ, դուք չէք ամաչում, որ ձեր անպատկառ նախատինքներով վրդովեցնում էք արքային ու մեզ։ Իսկ դուք, իշխաննե՛ր, լաւ բան չէք անում, երբ հանդուրժում էք նրանց չարամիտ կռիւն ու վէճը։ Ինչն է ամենից ցաւալին երբ դուք նրանց շուրթերով խռովութիւն էք բորբոքում ձեր մէջ, խորհուրդ եմ տալիս լինել ողջախոհ։

EXETER.
Մի վշտացրէք մեր տիրոջն ազնիւ, բարի իշխաններ, դարձէք բարեկամ։

KING HENRY.
Դուք, որ ուզում էք կռուել իրար հետ, եկէք այս կողմը, եթէ յարգում էք մեր երախտիքը, պատուիրում եմ ձեզ մոռանալ վէճը ու շարժառիթը։ Իսկ դուք, իշխաններ, յիշէք, որ հիմա մենք գտնւում ենք օտարի երկրում, սաստիկ անկայուն, անվճռական ազգի շրջանում, նրանք կը տեսնեն մեր աչքերի մէջ վէճ ու

գժտութիւն, կ՝իմանան, աւա՜ղ, որ միաբան չենք։ Օ՜, ինչպէս պիտի գրգռուեն նրանց ստամոքսները ապստամբութեան եւ ընդվզումի յամառութիւնից։ Ի՞նչ անպատւութիւն, երբ օտար երկրի իշխաններն այստեղ յանկարծ իմանան, որ մի աննշան, չնչին պատճառով հենրու տէրութեան պայազատները եւ աւագանին մորթում են իրար՝ ձեռքից թողնելով ամբողջ ֆրանսիան։ Օ՜, յիշէք իմ հօր յաղթանակները, ջահէլ օրերս, եւ տանուլ մի՛ տաք ինչ ձեռք է բերուել հեղուած արիւնով։ Թողէք՝ ես դառնամ ձեր վէճին միջնորդ։ Եթէ ես կրեմ այս կարմիր վարդը ...

*[Pins on a red rose.]*

KING HENRY [cont.]
... Միթէ՞ ձեզանից որեւէ մէկը պէտք է կասկածի, որ սոմերսետին եորքից աւելի համակրում եմ։ Նրանք երկուսն էլ հարազատ են ինձ, սիրում եմ նրանց։ Չ՞է որ այս դէպքում կարող են ինձ էլ իմ թագի համար խիստ վիրաւորել, զի շոտլանդիայի արքան թագ ունի։ Բայց կարող է ձեր խոհեմութիւնը աւելի արագ համոզել, քան թէ իմ քարոզները։ Եւ քանի որ մենք եկել ենք այստեղ լոկ խաղաղութեամբ, թողէք սիրով էլ մենք խաղաղ մնանք։ Շնորհափայլ եորք, մենք կարգում ենք քեզ այստեղ կուսակալ։ Իսկ դուք, իմ բարի իշխան Սոմերսետ, ձեր հեծեալներին միացրէք նրա հետիոտն զօրքին։ Որպէս ձեր տոհմի ազնիւ զաւակներ եւ հաւատարիմ ինձ հպատակներ՝ գնացէք մէկտեղ եւ ձեր կատաղի մաղձը թափեցէք թշնամու վրայ։ Լորդ խնամակալ, քիչ հանգիստ կ՝առնենք, առանց յապաղման կը դառնանք կալէ, եւ ապա՝ անգլիա։ Յոյս ունեմ այնտեղ ձեր յաղթանակով նուէր կը բերէք թագաժառանգին, կոմս ալանսոնին՝ դաւաճանների ամբողջ վոհմակով։

*[All exit save York, Warwick, Exeter and Basset.]*

WARWICK.
[To York.] չե՞ս գտնում արդեօք, որ թագաւորը հաճելիօրէն ճարտարախօսի իւր դերը խաղաց։

YORK.
Դուք ճիշտ էք, սակայն իմ սրտով չեղաւ, որ սոմերսետի նշանը կրեց։

WARWICK.
Օ՜, ոչինչ, դատարկ մի հով էր, անցաւ մի մեղադրի։ Արքան միտք չունէր վատ բան անելու։

YORK.
Թէ հաւատայի։ Բայց թողնենք, վորուիկ, արդ, պէտք է ուրիշ գործով զբաղուել։

*[All exit save Exeter.]*

EXETER.
Լաւ ես քեզ զսպում, ռիչարդ, դուքս եորքի։ Եթէ քո սրտի կիրքը բռնկէր, վախենում էի, որ կը տեսնէինք այնպիսի մոլի, ահեղ գժտութիւն եւ վրիժառու, խոր ատելութիւն, որպիսիք չէինք կարող պատկերել։ ինչ էլ որ լինի, նոյնիսկ հասարակ մարդիկ տեսնում են այս իշխանների գժտութիւնները վայրագ ու

մոլի, նրանց դաւերը պալատի ներսում, եւ նրանց մօտիկ սիրելի մարդկանց լկտի վարմունքը եւ չեն կասկածում, որ դրանք մի օր պէտք է ունենան չարագոյժ վախճան։ Անբախտութիւն է, երբ գայիսոնը մանուկն է բռնում, բայց աւելի վատ, երբ քէնն է ծնում չար թշնամութիւն՝ բերելով իր հետ աւեր ու խռովք։ [Exits.]

][][

## ACT IV. SCENE II.

France. Before Bordeaux. Talbot enters with a trumpeter and summons the French to a parley. A French General enters on the Wall.

### TALBOT.

Իշխանս տոլբոտ, անգլիոյ զօրավար, որ ծառայում է ռազմի դաշտերում հենրի արքային ասում է՝ բացէ՛ք դուռը քաղաքի եւ խոնարհաբար ձեր ճանաչումը բերէք տիրոջն իմ եւ յարգէք նրան որպէս հնազանդ, հլու հպատակներ։ Այնժամ արնատենչ իմ զօրքերի հետ ես ետ կը քաշուեմ, բայց թէ մատուցուած խաղաղութիւնը յանկարծ անգոսնէք, իմ երեք ծառան՝ մսազուրկ սովը, խոշտանգող սուրը, մագլցող հրդեհը, խիստ կը զայրանան։ Եւ եթէ մերժէք մեր սիրոյ ընծան, մի վայրկեան չանցած՝ ձեր շքեղափայլ եւ երկնասլաց աշտարակները կը կորչեն երկրի երեսից ընդմիշտ։

### GENERAL.

Մահուան չարագոյժ, ահաւոր բուէճ, մեր ազգի սարսափ, արնոտ խարազան, արդ, քո բռնութեան վախճանն է հասել։ Դու որպէս դիակ կարող ես միայն քաղաքը մտնել։ Հաւաստում եմ քեզ, կանգնած ենք ամուր, եւ ուժեր ունենք քեզ հետ կռուելու նոյնիսկ բաց դաշտում։ Եթէ նահանջես, թագաժառանգը իւր բանակներով քեզ կը թնջուկի ռազմի թակարդով։ Նա ամէնուրեք զօրքեր է շարել, որ քո փախուստը պատնէշի ամուր ո՛ր կողմն էլ նայես, չունես փրկութեան ոչ մի ճանապարհ, մահն է սպասում՝ բացայայտօրէն կանգնած քո դիմաց։ Պէտք է դէմառդէմ հանդիպես գունատ քո կործանումին, եւ ֆրանսիացիք ՝ թուով տասն հազար, ուխտել են արդէն սուրբ հաղորդութեամբ, որ իրենց ահեղ հրանօթները չեն ուղղի երբեք քրիստոնէական հոգիների վրայ, բացի տոլբոտից։ Տեսնում եմ, ահա՛, կանգնել ես իմ դէմ կենդանի կտրիճ, դու անպարտելի, աննկուն ոգի։ Ես վերջին անգամ փառքդ եմ գովերգում, թէեւ թշնամի։ Նայի՛ր, վազում է աւազն անօթով, բայց մինչեւ հոսքի աւարտը լրիւ այս իմ աչքերը, որ տեսնում են քեզ արդ՝ կեանքով լեցուն, կը տեսնեն արեամբ, սառցով ծածկուած, որպէս պաղ դիակ։

*[The sound of a drum can be heard off in the distance.]*

### GENERAL [cont.]

Լսի՛ր, թմբուկն է թագաժառանգի, զգուշացումի զանգն է ահարկու, հնչում է ծանր նուագ քո հոգուն, իսկ ես կ՝աւէտեմ ազդը քո մահուան։

*[The General exits.]*

TALBOT.

Նա ինձ չի խաբում, մօտ է թշնամին հեծեալնե՛ր, դիտէք թեւերն ուշադիր, Օ՛, անփո՛յթ, անհոգ կարգապահութիւն։ Մենք ասես լինենք անգլիոյ խղճահար եղջերուների մի փոքրիկ նախիր, որ մակաղել է խարխուլ փարախում գաճաճ շների հաչող վոհմակը։ Եթէ մենք անգլիոյ եղջերուներ ենք, ապա թող լինենք ազնուագոյն ցեղ, եւ ո՛չ նրանցից, ովքեր, նուաղած առաջին զարկից, ընկնում են իսկոյն։ Բայց խենթ, կատաղի եղջերուի նման մեր ճակատները պողպատից ամուր, ուղղենք շներին արիւնածարաւ, այդ վախկոտները կը փախչեն հեռու։ Եթէ ինձ պէս թանկ ծախէք կեանքը ձեր, նրանք կ՝իմանան, թէ որքան թանկ է մեր մի եղջերուն։ Աստուա՛ծ, սուրբ գեւո՛րգ, անգլիոյ իրաւունք եւ անվա՛խ տոլբո՛տ, թող օրհնի փառքը մեր դրօշները այս ահեղ կռւում։

*[They exit.]*

][][

## ACT IV. SCENE III.

Plains in Gascony. York enters with his Soldiers. A Messenger enters.

YORK.

Չե՞ն երեւացել դիտազօրները, որոնք քայլ առ քայլ հետապնդում են դոֆինի զօրքին։

MESSENGER

Վերադարձել են, յայտնում են, տէր իմ, որ նա իր զօրքով գնում է բորդո, որպէսզի կռուի քաջ տոլբոտի հետ։ Ինչպէս ասում են դիտազօրները, ճամփին տեսել են երկու մեծ ջոկատ՝ թագաժառանգի զօրքից շատ ուժեղ, որ միանանալով նրա բանակին՝ շարժւում է բորդո։

YORK.

Սոմերսետ, այրուե՛ս ժանտախտի տենդով, ո՞ւր են խոստացած քո հեծեալները, որ խիստ պէտք էին պաշարման համար։ Փառապանծ տոլբոտն ինձ է սպասում, բայց դաւաճանն է ինձ յիմարացնում եւ ես չեմ կարող օգնութիւն ցոյց տալ ազնիւ ասպետին։ Աստուա՛ծ, դու եղիր նրան զօրաւիգ այս փորձութեան մէջ, եթէ նա ընկնի, մնաս բարով դու, մեր դատ ֆրանսիայում։

*[Sir William Lucy enters.]*

LUCY.

Օ՛, մեծ առաջնորդ, զօրութիւն անգլիոյ, այսպիսի կարիք չէինք զգացել ֆրանսիական հողում։ Մենք պէտք է փրկենք ազնիւ տոլբոտին, ում մէջքն է սեղմել օղակն երկաթեայ, եւ դաժան մահն է պաշարել նրան։ Ո՛վ ռազմասէր եորք, մեկնեցէք բորդո, կամ մնաս բարեաւ ասէք տոլբոտին, անգլիայի պատուին ու ֆրանսիային։

YORK.

Օ՛, աստուա՛ծ, եթէ տոլբոտի տեղակ լինէր սոմերսետն այդ նեղ վիճակում, որ խանգարում է իմ

ջոկատների առաջխաղացման, մենք կը փրկէինք մի քաջ զօրավար՝ ջուրը զցելով մի նենգ դաւաճան։ Խելագար զայրոյթն ու մոլուցքն անզուսպ ստիպում են ինձ մեր անկասելի կորուստը ողբալ, իսկ դաւաճանը նիրհում է անհոգ։

LUCY.
Օգնէ՛ք իշխանին, նեղութեան մէջ է։

YORK.
Կործանւում է նա, խօսքս եմ ետ առնում։ Ոսոխն է հրճւում, իսկ մենք ողբում ենք այս ծանր ժամին այսքան տառապանք, կսկիծ ու աղէտ դու պատճառեցիր, մատնիչ Սոմերսետ։

LUCY.
Աստուած, դու փրկիր տոլբոտի հոգին եւ նրա որդուն՝ ջոնին պատանի։ Երկու ժամ առաջ ես տեսայ նրան իր ռազմասէր հօր մօտ էր վազում։ Եօթ տարուց ի վեր չէր տեսել որդուն, պէտք է հանդիպեն մահուան հետ արթուն։

YORK.
Աւա՜ղ, տոլբոտին չի համակելու ոչ մի խնդութիւն, նա գերեզմանում պէտք է հանդիպի իր ջահէլ որդուն։ Խեղդւում եմ արդէն, չեմ կարող շնչել վշտից դժնդակ, հարազատներն են իրար տեսնելու մահուան աչքի տակ։ Դե՛հ, մնա՛ք բարեաւ։ Չեմ կարող անել ոչինչ աւելի, քան թէ նզովել մեզ չօգնող մարդուն նենգ ու եղկելի։ Մենք, պուատիեն, տուրն ու բլուան կորցրինք յաւէտ, եւ դու բոլորի պատճառը եղար, մատնիչ Սոմերսետ։

*[York exits with his Soldiers.]*

LUCY.
Քանի դեռ անգղը երկպառակութեան այսպիսի ազնիւ զօրավարների կուրծքն է ծուատում, քանի դեռ քնկոտ անհոգութիւնը խլում է մեզնից յաղթանակները հենրի հինգերորդ աշխարհակալի, ում յիշատակը պիտ յաւէրժ ապրի, քանի դեռ քէն կայ իրար նկատմամբ, ամէն ինչ պէտք է դառնայ փոշու ամպ։ [Exits.]

][][

ACT IV. SCENE IV.
Other plains of Gascony. Somerset and this Soldiers enter. Soon an Officer enters.

SOMERSET.
Չափազանց ուշ է չեմ կարող զօրքս նրանց ուղարկել տոլբոտն ու եորքը խիստ հապճեպութեամբ ձեռնարկեցին այս արշաւանքն, աւա՜ղ։ Ի վիճակի չեն մեր ուժերն ամբողջ քաղաքի գրոհը նորից ետ վանել։ Յանդուգն տոլբոտն այս անմիտ, անփոյթ ու բիրտ արարքով արատաւորեց փառքն իր վաղեմի, եւ եորքը նրան մղեց կռուելու, որպէսզի նրա խայտառակ մահով կրի մեծ եորքի անունն աշխարհում։

OFFICER
Ահա սըր լիւսին։ Եկել է ինձ հետ, որ պարտուող զօրքին օգնութիւն ցոյց տայ։

*[Sir William Lucy enters.]*

SOMERSET.
Ձեզ, պարոն վիլեամ, ո՞վ է ուղարկել։

LUCY.
Ո՞վ է ուղարկել։ Իշխան տոլբոտը՛, ում որ ծախեցին, ով դժբախտութեամբ շրջապատուած է։ Նա կոչ է անում վեհանձն եորքին ու սոմերսետին, որ մահուան գրոհին իր թոյլ գնդերից ետ վանեն շտապ, եւ այն ժամանակ, երբ որ պատուարժան զօրավարն այնտեղ հիւծւում է դանդաղ, արեան շիթեր են հոսում մարմնից, հաւատում է ձեր օգնութեանն ազնիւ, դո՛ւք, որոնց հետ նա յոյսեր է կապել, փառապանծ անգլիոյ հաւատ ու նեցուկ, քաշուել էք մի կողմ, վանէք ձեզանից նախանձն անարժան, թող ձեր անձնական գժտութիւնները մոռացուեն ընդմիշտ, եւ դուք ուղարկէք նրան օգնութիւն, չ՞է որ փառապանծ ազնիւ իշխանը մենակ է մղում մարտն անհաւասար։ Շրջապատել են նրան դոֆինը, բուրգունդիաի դուքսը, բաստարդն ու ռենէն, կոմս ալանսոնը, ձեր անհոգութեամբ դատապարտել էք տոլբոտին մահուան։

SOMERSET.
Եորքն է հրահրել, թող եորքն էլ օգնի։

LUCY.
Իսկ եորքը ձեզ է մեղաւոր գտնում՝ երդուելով, որ դուք հեծեալ բանակը կանխամտածուած բռնել-պահել էք։

SOMERSET.
Ստում է եորքը։ Կարող էր, անշուշտ, հեծեալն ուղարկել ես նրա հանդէպ չունեմ պարտք ու սէր չեմ ուզում նրան քծնել օգնութեամբ։

LUCY.
Ոչ թէ թշնամու հզօրութիւնը, այլ խարդախ անգլիան ծուղակն է գցել ազնիւ տոլբոտին, եւ նա հայրենիք չի վերադառնայ երբեք կենդանի մեռնում է, աւա՛ղ, ձեր օրհասական գժտութիւններից։

SOMERSET.
Դե՛հ, լա՛ւ։ Հեծեալներ կ՝ուղարկեմ իսկոյն վեց ժամից յետոյ այնտեղ կը հասնեն։

LUCY.
Ուշ է։ Գերել են կամ սպանուել է։ Չէր կարող փախչել, եթէ ուզենար, իսկ թէ կարենար, չէր փախչի երբե՛ք։

SOMERSET.
Եթէ, քաջ տոլբոտ, մեռել ես արդէն, դե՛հ, գնա՛ս բարով։

*[Somerset and his Soldiers exit.]*

LUCY.
Քեզ բիւր նախատինք։ Թնդում է նրա փառքը աշխարհով։ [Exits.]

][][

ACT IV. SCENE V.
The English camp near Bordeaux. Talbot and his son, Young Talbot, enter.

TALBOT.
Օ՜, կրտսեր տոլբոտ, ես քո ետեւից մարդ եմ ուղարկել, որ ռազմահնար քեզ ուսուցանեն, որպէսզի քեզնով տոլբոտի անունն յարութիւն առնի երբ իմ անկարող, թոյլ անդամները եւ ծեր տարիքը քո հօրը գամեն սառը անկողնուն։ Բայց, Օ՜, չարագո՛յժ, մահաշունչ աստղեր, եկել ես, աւա՜ղ, մահուան խնջոյքի, որտեղ վտանգն է անխուսափելի։ Չաւա՛կս, հեծի՛ր ձին իմ քաջընթաց ես քեզ ցոյց կը տամ, թէ ինչպէս պէտք է դու փրկուես կռուից։ Դե՛հ, շտապ մեկնի՛ր, պէտք չէ յապաղել։

YOUNG TALBOT.
Միթէ՞ ինձ մարդիկ տոլբոտ չեն կոչում, միթէ՞ որդիդ չեմ։ Ես ինչպէ՞ս փախչեմ։ Օ՜, եթէ, հայր իմ, սիրում ես մօրս մի՛ պախարակիր նրա պատուարժան, ազնիւ անունը եւ ինձ մի կոչիր անօրէն զաւակ կամ թէ թուլամորթ։ Չէ՞ որ ինձ կ՝ասեն՝ չունի տոլբոտի ազնիւ արիւնը ապականում է իր հօր անունը։

TALBOT.
Փախիր, որ լուծես հօրդ վրէժը, թէ ընկնեմ մարտում։

YOUNG TALBOT.
Ով այդպէս փախչի, նա չի հասնի տուն։

TALBOT.
Թէ մնանք այստեղ, մենք պիտի տեսնենք մեր մահն անպատճառ։

YOUNG TALBOT.
Թող ինձ, թող մնամ, դու գնա կռուից, սիրելի իմ հայր չէ՞ որ քո մահով դու մեծ կորուստ ես մերոնց պատճառում ո՞վ պիտի զգայ մահն իմ աննշան այս մեծ աշխարհում, իմ փոքրիկ մահով չի հպարտանայ թշնամին արդէն։ Քո մահն է ուզում քեզ հետ կը հանգչեն մեր յոյսերն ամէն։ Այդ փախուստն երբեք չի աղարտելու փառքդ վաստակած իսկ ինձ կ՝աղարտի, քանզի ես չունեմ սխրանքներ քաջաց, ամէն մարդ կ՝ասի, որ քո փախուստը ունի խոր իմաստ, իսկ թէ ես փախչեմ, ինձ

պիտի կոչեն վախկոտ ու նուաստ։ Ապրելու յոյսերն ընդմիշտ կը հանգչեն, թէ առաջինը ես կռուից փախչեմ։ Օ՜, լաւ է ընկնել հերոսի մահով քան ապրել ահով։

TALBOT.
Ուզո՞ւմ ես մօրդ յոյսերը բոլոր յաւիտեան դնել գերեզմանը խոր։

YOUNG TALBOT.
Դա լաւ է, քան թէ պէտք է նզովեմ մօրս արգանդը արարքով նսեմ։

TALBOT.
Իմ օրհնանքը քեզ, գնա՛, զաւա՛կս։

YOUNG TALBOT.
Այո՛, դէպի մարտ, սա է փափագս։

TALBOT.
Քեզ հետ կը փրկես հայրիկիդ կեանքը։

YOUNG TALBOT.
Օ՜, ո՛չ, կը տանջի ինձ ամօթանքը։

TALBOT.
Դու դեռ փառք չունես, նախատինքն երբեք չի սպառնայ քեզ։

YOUNG TALBOT.
Միթէ՞ կարող է, իմ սիրելի հայր, փախուստը եղծել քո փառքը անմար։

TALBOT.
Իմ հրամանը, իմ զաւա՛կ, իմ կեա՛նք, կը մաքրի քեզնից ամէն ամօթանք։

YOUNG TALBOT.
Ո՞վ կը հաստատի, թէ գնդակը նենգ քեզ խոցի յանկարծ։ Ուրեմն, փախչենք, երբ էլ չենք կարող մահից խուսափել։

TALBOT.
Իսկ ընկերնե՞րս։ Չեմ կարող լքել։ Ես ծեր եմ, երբեք ինձ չեն անարգել։

YOUNG TALBOT.
Ա՛խ, միթէ՞, հայր իմ, տարիքս ջահէլ կարող է ամօթ, պարսաւանք տանել։ Ոչ ոք չի կարող քեզնից զատել ինձ, ինչպէս չես կարող զատուել քեզանից։ Սպասիր, արա՛, ինչ հաճոյ է քեզ, նոյնն էլ, իմ հայրիկ, պէտք է անեմ ես։ Եթէ չի ապրում հայրիկս ինձ հետ, իմ ջահէլ կեանքը կը հանգչի յաւէտ։

TALBOT.
Ես հրաժեշտի խօսք եմ ասում քեզ, զաւակս բարի, ծնուեցիր, աւա՜ղ, որ այս կէսօրին կեանքդ խաւարի։ Գնա՛նք, կողք կողքի ապրենք կամ մեռնենք, թող դրախտ թռչի մեր հոգին աննենգ։

*[They exit]*

]0[

ACT IV. SCENE VI.
The battlefield. Young Talbot enters, hemmed in on all sides. Talbot rescues him.

TALBOT.
Կռուէ՛ք սուրբ գեւորգ, վսեմ յաղթանակ, կռուէ՛ք, զինուորներ, տոլբոտին տրուած խոստումը դրժեց դուքս կուսակալը՝ մեր դէմ ուղղելով անարգ թշնամու սրերի փայլը։ Որտե՞ղ է ջոնն իմ։ Սպասի՛ր, շունչ ա՛ռ, քեզ կեանք տուեցի եւ քեզ փրկեցի մահուան աչքից չար։

YOUNG TALBOT.
Ես քո կրկնակի որդին եմ, իսկ դու՝ հայրն իմ կրկնակի, ա՜խ, կորցնում էի առաջին կեանքս, որ ինձ տուեցիր, բայց քո յաղթ սրով, ի հեճուկս չար ճակատագրի, վերուստ սահմանուած ժամն իմ գոյութեան կրկնապատկեցիր։

TALBOT.
Երբ դու քո սրով թագաժառանգի գոռ սաղաւարտից շանթեր պոկեցիր, հօրդ ծեր սիրտը բորբոքուեց նորից սուրբ յաղթանակի անհուն ցանկութեամբ։ Պատանու նման ոգեւորուելով մարտական հրով ու քէնով վառման՝ ես ետ վանեցի կոմս ալանսոնին, բուրգունդիաի դուքսին՝ փրկելով կեանքդ գոռոզ գալլերի երազներից սին, եւ օռլէանի այդ պոռնկորդուն՝ խենթ ու մոլեգին, որ քո անաղարտ արիւնը հեղեց, զաւա՛կս անգին, ում հետ քաջաբար խաչաձեւեցիր սուրդ կուսական, կանգնեց իմ առաջ, փոխանակեցինք հարուածներ, սակայն ես արագօրէն նրա պիղծ արիւնն հեղեցի մարտում եւ քամահրանքով այդպէս ասացի այդ պոռնկորդուն «ես քո անօրէն, ստոր, վարակուած արիւնն եմ թափում իմ արեան դիմաց, որ դու հեղեցիր իմ քաջ զաւակից։» ուր որ է՝ պէտք է հեռանար կեանքից, բայց բախտը բերեց, օգնութեան եկան։ Ասա՛ քո հօրը, ինչպէ՞ս ես զգում, չի՞ յոգնեցրել քեզ այս բոլորը, գուցէ դու հիմա, երբ ասպետութիւնն օրհնեց քեզ մարտում թողնես կռիւը, ազնի՛ւ զաւակս, փախչես անտրտում, փախի՛ր, որ մահուան իմ վրէժն առնես, երբ չեմ լինի ես ի՞նչ պիտի անի ջրի կաթիլը ծովին փրփրադէզ, Օ՛, խելքի բան չէ, երբ սպառնում է վտանգն ահագին, բոլորի բախտը յանձնում են փոքրիկ, խարխուլ նաւակին։ Եթէ թշնամու ահեղ զայրոյթն ինձ այսօր չսպանի, վաղը տարիքս ցոյց կը տայ ճամփան իմ գերեզմանի։ Իմ մահով երբեք ոչինչ չի շահի թշնամին վայրի, միայն մէկ օրով իմ կեանքը պէտք է մի քիչ երկարի, իսկ քեզ հետ, որդիս, կը հանգչի մայրդ, մեր տան անունը մեր երկրի փառքը, հօրդ վրէժը, պատանութիւնդ։ Աւա՜ղ, ամէն ինչ կը մատնենք հրի, եթէ չփախչես եւ մնաս դաշտում, զաւակս բարի։

YOUNG TALBOT.
Բաստարդի սուրը ինձ չպատճառեց երբեք սաստիկ ցաւ բայց քո բառերը իմ սրտից արիւն քամեցին անբաւ թո՛ղ ինձ անգոսնէ ամօթանքն անգամ թո՛ղ ֆրանսիացի մի գեղջուկ դառնամ, թո՛ղ կռւում ընկնի իմ ձին վարանոտ թէ պիտի փախչեմ մարտից արիւնոտ, որպէսզի փրկեմ կեանքն իմ աննշան, Օ՛, այպանելով կեանք մի սրբազան։ Երդւում եմ ես քո փառքերով բոլոր, թէ փախչեմ դաշտից, որդին չեմ իմ հօր։ Խօսել այդ մասին՝ չունի նպատակ, ես պիտի մեռնեմ քո ոտքերի տակ։

TALBOT.
Ե՛կ, իմ հետեւից, տարաբա՛խտ իկար, քո ջահէլ կեանքը թանկ է ինձ համար, դու պէտք է կռուես հայրիկիդ կողքին, հրաժեշտ կը տանք փառքով մեր կեանքին։

*[They exit.]*

]0[

ACT IV. SCENE VII.
Another part of the field. Talbot and a Servant enter.

TALBOT.
Որտե՞ղ է, ասա՛, իմ միւս կեանքը, կորաւ իմն, աւա՛ղ, որտե՞ղ է ջոնն իմ, ջահէլ տոլբոտը, ասպետն իմ անվախ։ Օ՛ քեզ, յաղթող մահ՝ յաւէրժ անարգուած քո կապանքներով, ծաղրում եմ ահա կրտսեր տոլբոտիս բիւր սխրանքներով։ Չէ՞ որ, երբ տեսաւ ինձ ծնկին ծալուած ու երեսնիվայր, նա շողացրեց իմ գլխի վերեւ իր սուրն արնավառ, եւ ինչպէս քաղցած, ամեհի առիւծ, ցատկեց զայրագին՝ դիմելով ցասման ու կատաղութեան ահեղ արարքին։ Բայց երբ պաշտպանն իմ նկատեց յանկարծ, որ ինձ հետ դաշտում միայնակ մնաց, մթնեցին նրա աչքերը տրտում, եւ մի կոյր զայրոյթ փոթորկուեց սրտում, թռաւ իմ կողքից, սլացաւ ի մարտ, անարգ թշնամուն հարուածեց հպարտ, այդ արեան ծովում որդիս ամոքեց իր այրուող ոգին, եւ փառքով մեռաւ իմ քա՛ջ իկարը, իմ ծաղի՛կն անգին։

SERVANT.
Արիեցեալ տէր իմ, բերում են ահա որդուդ դիակը։

*[Soldiers enter, carrying Young Talbot's body.]*

TALBOT.
Օ՛, խեղկատակ մա՛հ, որ ուղղել ես մեզ քո բիրտ ծաղրանքը, շուտով կը տեսնես, թէ քո բռնութեան զնդանից ազատ, ինչպէս կը ձուլենք յաւիտենութեան շղթան սրբազան, եւ տոլբոտները մաքուր երկնքով եթեր կը թռչեն, ի հեճուկս քեզ՝ մահուան զնդանից հեռու կը փախչեն։ Օ՛, դու, ում վէրքերն արնոտ բոյն դարձան ժանտատես մահուան, խօսի՛ր հօրդ հետ, մինչեւ որ մահուան ձեռքե՛րն երեւան։ Խօսի՛ր նրա հետ, թէկուզ յայտնուի նենգ ճանապարհով, պատկերացրու քո ֆրանսիացուն նրա կերպարով։ Իմ թշուա՛ռ զաւա՛կ, կարծես ժպտադէմ կ՝ուզէ բարբառել «թէ մահն ունենար գաղիացու կերպար, վաղուց էր մեռել։» բերէք իմ որդուն, բերէք հօր գիրկը իր քաջ զաւակին, չի կարող տանել այս

մեծ կորուստը ծերունու հոգին դե՛հ, մնա՛ք բարով, ազնիւ զինուորներ, բախտն եղաւ դաժան, իմ բազուկները ջահէլ տոլբոտիս դարձան գերեզման։ [Dies.]

*[Charles, Pucelle, Alencon, Burgundy and the Bastard enter.]*

CHARLES.
Եթէ սոմերսետն ու եորքն օգնէին, մեր այսօրն արնոտ օր պիտի լինէր։

BASTARD.
Տոլբոտի լակոտն անզուսպ ու վայրի, մեր արեամբ ներկեց իր սուրը խղճուկ։

PUCELLE.
Ես հանդիպեցի նրան մի անգամ, այսպէս ասացի «ով կոյս պատանի, դու պիտի ընկնես մի կոյսի սրով,» բայց պատասխանեց տղան հեգնաբար «կրտսեր տոլբոտը չի եկել աշխարհ, որ աւար դառնայ պոռնիկին անսանձ։» եւ ինձ գտնելով իրեն անարժան՝ քաջաբար նետուեց կռուի մէջ դաժան։

BURGUNDY.
Անշո՛ւշտ, կը դառնար ասպետ փառապանծ։ Նայի՛ր, պառկել է գիրկը այն մարդու որ դժբախտութիւն պատճառեց որդուն։

BASTARD.
Կտրատէք նրանց, սղոցէք մէկ-մէկ ոսկորներն արնոտ, ովքեր անգլիային փառք շնորհեցին, գաղիային՝ ամօթ։

CHARLES.
Ո՛, ո՛չ։ Ետ կանգնէք։ Պէտք չէ անարգել դիերն այն մարդկանց, ովքեր կենդանի մեզ ստիպեցին փախչել գլխաբաց։

*[Sir William Lucy and a French Herald enter.]*

LUCY.
Դու, հերալդ, տար ինձ վրանն արքայորդու որպէսզի տեսնեմ, թէ ով վաստակեց փառքը այսօրուայ։

CHARLES.
Հպատակուելո՞ւ համար էք եկել։

LUCY.
Հպատակուելո՞ւ։ Դա ֆրանսիական մի դատարկ բառ է, նրա իմաստը չգիտենք երբեք։ Եկա՛յ, որ տեսնեմ, թէ ում էք գերել, եւ զոհուածների դիերը զննել։

CHARLES.
Գերինե՞րն են քեզ հետաքրքրում գերի չենք վերցնում, նրանց դժոխք ենք միայն ուղարկում։ Բայց խոստովանիր, ո՞ւմ ես որոնում։

LUCY.
Որտե՞ղ է, ասա՛, ճակատամարտի մեծ ալքիդեսը, մեր քաջակորով իշխան տոլբոտը՝ կոմս շրուսբերին, ում սակաւագիւտ սխրանքի համար պատերազմներում շնորհուեց մեծ կոմս ուոտերֆորդի եւ վալենսիայի ո՞ւր է գուդրիգի ու էրչինֆիլդի իշխան տոլբոտը, իշխան վերդենը, իշխան ստրենջը, իշխան կրոմուելը, շէֆիլդի իշխան քաջ ֆեռնիւալը, երիցս յաղթող փառապանծ իշխան ֆոկոնբրիջը, այդ քաջ ասպետի կուրծքն են զարդարում *«սրբազան գեւորգ»* շքանշանը, խիստ երեւելի *«սուրբ միքայէլը»* ու *«ոսկեայ գեղմը,»* հենրի վեցերորդն հռչակեց նրան մեծն մարաջախտ, որ ֆրանսիայում բոլոր մարտերի գլուխն էր անցել։

PUCELLE.
Յիրաւի, անմիտ ճառ բարբաջեցիր, թուրքը, որ ունի յիսունեւերկու թագաւորութիւն, այսպիսի ճոռոմ ոճով չի գրում։ Իսկ նա, ում բազում պատուատիտղոսով փառաբանում ես, նեխում է հիմա՝ ճանճերը վրան, մեր ոտքերի տակ։

LUCY.
Միթէ՞ սպանուեց մեր քաջ տոլբոտը՝ ֆրանսիացիների մտրակը միակ ձեր մեծ տէրութեան ահեղ սարսափը, սեւ նեմեսիսը։ Օ՜, եթէ արճիճ դառնան աչքերիս բիբերն հրացայտ, ես մոլեգնօրէն կ՝ուղղեմ ձեր դէմքին եթէ քաջերին մի սուրբ հրաշքով կեանքի կոչէի, բաւ էր, որ նորից ֆրանսիան դողար։ Բայց նրա պատկերն այստեղ թող մնայ, որպէսզի ձեզնից ամենագոռոզն ապշահար լինի։ Տո՛ւր դիակները, որ տանեմ ինձ հետ եւ հողին յանձնեմ փառքով արժանի։

PUCELLE.
Աստուա՜ծ իմ, կարծես այս շատախօսը ծերուկ տոլբոտի քաջ ոգին լինի, թէ ոչ՝ այսպիսի խիստ հրամայող ոճով չէր խօսի։ Ի սէր աստծո՛յ, տուէք դիերը, նրանք փտում են, օդն ապականում։

CHARLES.
Գնա՛, վերցրու դիերը ձերոնց։

LUCY.
Կը տանեմ, քանզի նրանց աճիւնից յարութիւն կ՝առնի իբրեւ մի փիւնիկ, եւ ողջ ֆրանսիան կը դողայ դարձեալ։

CHARLES.
Պէտք է ազատուել այդ դիակներից։ Վարուիր նրանց հետ, ինչպէս որ կամիս։ Արդ, դէպի փարիզ։ Սա յաղթանակի ճամփան է անշեղ, մերն է ամէն ինչ չէ՞ որ սպանուեց տոլբոտն արնահեղ։

*[They all exit.]*

## ACT V. SCENE I.

London. The Palace. The King enters with Gloucester, and Exeter.

KING HENRY.
Դուք կարդացե՞լ էք այն նամակները, որ առաքել են կոմս արմանեակը, պապը եւ կայսրը։

GLOUCESTER.
ի հարկէ, տէր իմ։ Ահաւասիկ նրանց բուն նպատակը խնդրում են նրանք ձեզ խոնարհաբար, որպէսզի երկու տէրութեանց միջեւ կնքուի բարեպաշտ մի խաղաղութիւն։

KING HENRY.
Ինչպէ՞ս էք նայում այդ առաջարկին, ազնիւ հօրեղբայր։

GLOUCESTER.
Բարութեամբ, տէր իմ, նրանք ուզում են քրիստոնէական արիւն չթափել եւ ամէնուրեք հաստատել կայուն խաղաղութիւնը։

KING HENRY.
Լաւ է, հօրեղբայր։ Ես խորհել եմ միշտ, որ բնական չէ, անազնիւ է խիստ, երբ նոյն հաւատքի տէրութեանց միջեւ տիրում է արնոտ եւ անմարդկային երկպառակութիւն։

GLOUCESTER.
Բացի այդ, տէր իմ, որպէսզի արագ իրականանայ եւ ամուր լինի բարեկամութեան այս կապը ազնիւ, կոմս արմանեակը՝ թագաժառանգի մօտ ազգականը որ ֆրանսիայում մեծ կշիռ ունի, առաջարկում է միակ աղջկան ձեզ ի կնութիւն, բազմածախ ու ճոխ, հարուստ օժիտով։

KING HENRY.
Աւա՜ղ, հօրեղբա՛յր, դեռ ջահէլ եմ ես, ինձ վայելում են ուսումն ու գիրքը, քան զուարճանքը սիրած կնոջ հետ, բայց կանչէք այստեղ դուք դեսպաններին եւ նրանց տուէք պատշաճ պատասխան։ Սրտիս մօտ կ՝առնեմ բաւականութեամբ ամէն ընտրութիւն, եթէ նա աստծոյ ու հայրենիքիս փառքն է բարձրացնում։

*[The Pope's Envoy, two Ambassadors and Winchester in his Cardinal costume all enter.]*

EXETER.
[Aside.] Ի՞նչ, միթէ՞ արդէն ձեռնադրել են եպիսկոպոսին, եւ մեծարում են կարդինալական բարձր աստիճանով։ Ինչպէս տեսնում եմ, ճիշտ է դուրս գալիս, ինչ գուշակում էր հենրի հինգերորդն իր ժամանակին «*եթէ նա մի օր դառնայ կարդինալ, գլխարկն հաւասար կը պահի գահին։*»

KING HENRY.
Պարոն դեսպաններ, մենք քննարկեցինք ձեր առաջարկը հաւուր պատշաճի, ձեր նպատակն է բարի ու խոհեմ։ Ուստի մենք ստոյգ կանխագծել ենք բարեկամութեան պայմաններն արդէն եւ կամենում ենք կարդինալի հետ դրանք առաքել դէպի ֆրանսիա։

GLOUCESTER.
Գալով ձեր կոմսի բուն առաջարկին՝ զեկուցել եմ ես իմ տիրոջն ազնիւ, որ առաքինի տիրուհին ունի բարի նպատակ, ե՛ւ գեղեցկութիւն, եւ հարուստ օժիտ, եւ նա միտք ունի նրան հռչակել անգլիոյ թագուհի։

KING HENRY.
[To the Ambassadors.] Իբրեւ ապացոյց ու վկայութիւն մեր այս դաշինքի՝ թող նրա կրծքին գոհարն այս շողայ՝ առհաւատչեան իմ ազնիւ սիրոյ։ Լորդ խնամակալ, զինեալ ջոկատով ճանապարհ դրէք, որ դուււր հասնեն նրանք ապահով եւ նստեն նաւեր։ Այնտեղից ապա իրենց կը յանձնեն ծովի քմայքին։

*[The King, Gloucester, Exeter and Ambassadors exit.]*

WINCHESTER.
Կա՛ց, լորդ պատուիրակ, նախ՝ դուք ստացէք այն մեծ գումարը, որ խոստացել եմ նորին սրբութեանն ով իմ ուսերին վերջերս գցեց այս մեծ թիկնոցը։

ENVOY.
Ես ձեզ ծառայ եմ, միլորդ կարդինալ։

WINCHESTER.
[Aside.] Ո՛չ, ուինչեստեր, չես հնազանդուի եւ դու չես զիջի ամենագոռոզ դուքսերից մէկին։ Հիմա, գլոստեր, դու պէտք է տեսնես, որ ո՛չ ծնունդով, ո՛չ ազդեցութեամբ չես կարող յաղթել եպիսկոպոսին պէտք է ստիպեմ քեզ ծնկի բերել կամ խռովութեամբ երկիրն աւերել։

*[They exit.]*

]()[

ACT V. SCENE II.
France. Plains in Anjou. Charles enters with Burgundy, Alencon, the Bastard, Reignier and Pucelle.

CHARLES.
Այս լուրն, իշխաններ, բոցավառում է մեր հանգչող հոգին, զի փարիզեցիք ապստամբուել են, նորից դառնում են քաջ ու ռազմատենչ ֆրանսիացիներ։

ALENCON.
Օ՛ն, անդր, փարիզ, փառապանծ տէր իմ, զօրքդ մի՛ պահի գրկում զգուանքի։

PUCELLE.
Թող գրկի նրանց խաղաղութիւնը, եթէ ուզում են ընդառաջ գալ մեզ, հակառակ դէպքում նրանց պալատներն աւէր կը դառնան։

[A Scout enters.]

SCOUT.
Մեր կորովասիրտ քաջ առաջնորդին՝ յաջողութիւններ, իսկ նրա խիզախ զինակիցներին՝ բախտաւորութիւն։

CHARLES.
Խնդրում եմ, ասա՛, ի՞նչ լուր են բերել հետախոյզները։

SCOUT.
Թշնամու զօրքը, որ բաժանուել էր ճիշտ երկու մասի, համախմբուելով պատրաստ է արդէն ձեզ հետ կռուելու։

CHARLES.
Սա անակնկալ լուր է, իշխաններ, մենք պէտք է իսկոյն առաջներն առնենք։

BURGUNDY.
Տէր իմ, էլ չկայ տոլբոտի ոգին, եւ առիթ չունենք վախի զգացման։

PUCELLE.
Ամենաստոր զգացմունքներից վախն է անիծեալ, հրամայիր, դոֆին, եւ յաղթանակը քոնը կը լինի, թող հենրին զղջայ, եւ աշխարհն արար յաւէրժ դժգոհի։

CHARLES.
Առա՛ջ, իշխաններ, թող յաղթանակը մեզ միշտ ուղեկցի՛։

*[They exit.]*

]0[

ACT V. SCENE III.
Before Angiers. Pucelle enters alone.

PUCELLE.
Ա՜խ, կուսակալը յաղթում է նորից, իսկ ֆրանսիացիք փախչում են, աւա՜ղ։ Արդ, օգնեցէք ինձ, սուրբ համայիլներ, իսկ դուք, իմ ընտրեալ, սատար ոգիներ, ցոյց տուէք գալիք փորձութիւնների նշաններն ամէն։ Դուք արագաշարժ իմ աջակիցներ, որ ենթարկւում էք հիւսիսի բարձր ամենակալին, յայտնուէք փութկոտ եւ ձեռք մեկնէք ինձ այս դժուար պահին։

*[With a boom of thunder the Spirits appear.]*

PUCELLE [cont.]
Այսքան խիստ արագ ձեր յայտնութիւնը վկայում է ձեր փութաջանութիւնն անձիս նկատմամբ։ Արդ, իմ հարազատ, ազնիւ ոգիներ, որ երկրի խորքից դուք յայտնուել էք հզօր բանակով, այս անգամ էլ ինձ օգնէք, որպէսզի ֆրանսիան յաղթի։

*[The Spirit say nothing as they circle Pucelle.]*

PUCELLE [cont.]
Օ՜, ինձ մի՛ տանջէք ձեր քար լռութեամբ, չ՞է որ իմ արեամբ կերակրել եմ ձեզ, պատրաստ եմ կտրել իմ ձեռքի մէկն էլ ու ձեզ շնորհել, որպէս թէ յոյսի մեծ գրաւական, միայն թէ օգնէք։

*[The Spirits remain silent.]*

PUCELLE [cont.]
Ինձ չէ՞ք սփոփում յոյսի մի շողով։ Ձեզ կը պարգեւեմ ամբողջ մարմինս, եթէ կատարէք դուք իմ խնդրանքը։

*[The Spirits shake their heads.]*

Միթէ՞ մարմինն իմ եւ միթէ՞ արնոտ իմ ողջակէզը ձեզ չեն թախանձում այդ դէպքում առէ՛ք հոգիս, մարմինս։ Առէ՛ք ամէն ինչ։ Միայն մի՛ թողնէք, որ անգլիացիներն յաղթանակ տանեն։

*[The Spirits vanish.]*

PUCELLE [cont.]
Աւա՜ղ, լքեցին ոգիները ինձ, հասաւ ժամն արդէն, պէտք է ֆրանսիան փետրազարդ, գոռոզ կատարը կախի եւ ծունր իջնի անգլիայի առջեւ։ Իմ նախկին թովչանքն անզօր է արդէն, չեմ կարող կոտրել կամքը դժոխքի, ֆրանսիա, ընկաւ փառքդ գետնիվար։

*[As Pucelle exits the British and French return to fighting. Pucelle enters, fighting York hand to hand. She's*

*knocked to the ground and made prisoner.]*

YORK.
Օ՛, գեղեցկուհի, ես քեզ ճանկեցի, ազատ արձակիր քո նզովապարտ ոգիներն հիմա, գուցէ շնորհեն քեզ ազատութիւն: Օ՛, դեւին վայել փառահեղ դու որս, տես, թէ ինչպէս է յօնքերը կիտում վհուկն այլանդակ, կարծես ուզում է կիրկէի նման կերպարն իմ փոխել:

PUCELLE.
Անկարելի է մի այլ՝ գարշելի կերպարանք գտնել:

YORK.
Օ՛, թագաժառանգն այր է գեղեցիկ, կարող է դուր գալ սիրուն աչքերիդ:

PUCELLE.
Թող մահը տանի դոֆինին ու քեզ եւ արնոտ ձեռքով խեղդի երկուսիդ, երբ քնած լինէք դուք ձեր անկողնում:

YORK.
Լեզուդ պապանձուի, նզովեա՛լ վհո՛ւկ:

PUCELLE.
Թոյլ տուր անիծեմ:

YORK.
Կ՝անիծուես, վհո՛ւկ, խարոյկի վրայ:

*[As they exit Suffolk and Margaret enter.]*

SUFFOLK.
Ով էլ որ լինես՝ դու իմ գերին ես: Նայում է մարգարիտին: Օ՛ գեղեցկուհի, դու մի՛ վախենա, մի՛ փախչիր ինձնից: Ձեռքերս են անձիդ դիպչում յարգալիր ես համբուրում եմ մատներդ բարակ, որպէս հաշտութեան ազնիւ երաշխիք, համբուրում է նրա ձեռքը: Եւ կամաց գնում քնքուշ իրանիդ նազուկ երկայնքով: Ո՞վ ես դու, ասա՛, որ քեզ մեծարեմ:

MARGARET.
Ով էլ որ լինես, ինձ մարգարիտ են մարդիկ անուանում, ես նէապոլի արքայի դուստրն եմ:

SUFFOLK.
Ես կոմս եմ, եւ իմ անունն է սեֆոլկ: Ինձ մի՛ նախատիր, բնութեա՛ն հրա՛շք, երբ բախտի կամքով դարձել ես գերիս այսպէս կարապն է իր ձագուկներին իր թեւերի տակ պահում քնքշօրէն: Բայց այդ գերութիւնն եթէ համարես քեզ վիրաւորանք, ազատ ես նորից, գնա քո տունը որպէս բարեկամ:

[Margaret begins to exit.]

SUFFOLK [cont.]
[Aside.] չեմ կարող նրան բաց թողնել։ Գուցէ ձեռքերս ազատ արձակեն, բայց սիրտս՝ երբեք։ Այս շքեղափայլ գեղեցկութիւնը ասես թէ լինի խաղացող արեւ աչքերիս ծովում, որ շողշողում է ճառագայթի պէս՝ արտացոլուելով հայելու գրկում։ Ա՜խ, սիրատածել կ՝ուզէի նրան, բայց չեմ յանդգնում։ Մտքերիս համար ես պէտք է ճարեմ գրիչ ու թանաք։ Ամօ՜թ քեզ, լա պոլ։ Բայց մի՛ վհատուիր, չունե՞ս դու լեզու, միթէ՞ գերիդ չէ այդ գեղեցկուհին, միթէ՞ սոսկում ես կնոջ հայեացքից։ Իրա՛ւ, այսպիսի իշխանավայել ու մեծապայծառ գեղեցկութիւնը բանտում է լեզուս, սիրտս խռովում։

MARGARET.
Ասա՛ կոմս սէֆոլկ, եթէ քո անունն այդպէս է, իրաւ, քեզ ի՞նչ փրկագին պէտք է վճարեմ, որ ինձ ազատես, չէ՞ որ ես հիմա, ինչպէս տեսնում եմ, գերիդ եմ դարձել։

SUFFOLK.
[Aside.] Ի՞նչ գիտես, որ նա քեզ պիտի մերժի, երբ դու չես փորձել սէրդ խոստանալ։

MARGARET.
Ինչո՞ւ չես խօսում, քեզ ի՞նչ փրկագին պիտի վճարեմ։

SUFFOLK.
[Aside.] Գեղեցիկ կին է, դեհ, սիրաբանիր, կնոջն էլ այդպէս կարող ես յաղթել։

MARGARET.
պէտք է ընդունե՞ս փրկագինն արդեօք։

SUFFOLK.
[Aside.] Ով անմիտ, յիշիր, որ դու կին ունես, սա քո սիրուհին ինչպէ՞ս կը դառնայ։

MARGARET.
նա ինձ չի լսում, պէտք է հեռանալ։

SUFFOLK.
[Aside.] Կորաւ ամէն բան ինձ բաժին ընկաւ շատ վատ խաղաթուղթ։

MARGARET.
Խօսում է անկապ, գժուած է կարծես։

SUFFOLK.
[Aside.] Գուցէ կարող եմ յաղթանակ տանել։

MARGARET.
Գուցէ կը հաճէ՞ք ինձ պատասխանել։

SUFFOLK.
[Aside.] Պէտք է նուաճեմ այս չքնաղ կոյսին, սակայն ո՞ւմ համար, արքայի համար։ Լռի՛ր դու, յիմա՛ր, տախտակդ է պակաս։

MARGARET.
Տախտա՞կ է ասում, միթէ՞ նա հիւսն է։

SUFFOLK.
[Aside.] Ես դեռ կարող եմ քմահաճոյքիս բաւարարում տալ եւ խաղաղութիւն հաստատել երկու տէրութեանց միջեւ։ Բայց դժուարութեան դեռ մի հիւլէ կայ։ Թէեւ աղջկայ հայրը վեհափառ անժուի, մենի դուքսն է անուանի եւ նէապոլի արքան է նաեւ, սակայն աղքատ է, մեր աւագանին կը մերժի նման ամուսնութիւնը։

MARGARET.
Միթէ՞, կապիտա՛ն, դու ինձ լսելու ժամանակ չունես։

SUFFOLK.
[Aside.] Թող արհամարհեն ամուսնութիւնը պէտք է կայանայ, հենրին ջահէլ է, եւ հեշտ կը լինի նրան համոզել։ Տիրուհի՛, լսէք, ձեզ գաղտնիք ունեմ թաքուն ասելու։

MARGARET.
[Aside.] Թող գերուած մնամ, ասպետ է կարծես, ոչ մի արարքով ինձ չի անպատուի։

SUFFOLK.
Արքայադուստր, ականջ խոնարհէք իմ ասելիքին։

MARGARET.
[Aside.] Ինձ ֆրանսիացիք գուցէ ազատեն, այնժամ ինձ բնաւ հարկաւոր էլ չէ սիրալիրութիւն։

SUFFOLK.
Քնքուշ տիրուհի, ուզում եմ ասել։

MARGARET.
[Aside.] Սը՛ս, նախկինում էլ գերել է կանանց։

SUFFOLK.
Ներեցէք, լէդի, ինչի՞ մասին էք դուք այսպէս խօսում։

MARGARET.
Ներեցէք, միլորդ, ծագեց մի փոքրիկ թիւրիմացութիւն։

SUFFOLK.
Դուք գերութիւնը չէի՞ք համարի բախտաւորութիւն, թէ նա ձեզ մի օր կարգէր թագուհի։

MARGARET.
Լինել թագուհի եւ այն էլ՝ գերուած չկայ աւելի մեծ անպատւութիւն, քան ստրուկ լինել ստրկութեան մէջ, արքաներն ազատ միշտ պէտք է լինեն։

SUFFOLK.
Եւ դու կը ստանաս ազատութիւնը, եթէ ազատ է անգլիայի արքան։

MARGARET.
Ի՞նչ առնչութիւն ունեմ նրա հետ։

SUFFOLK.
Ես այնպէս կ՝անեմ, որ դու հենրիի թագուհին դառնաս, եւ արքայական ոսկեայ մականը քո ձեռքին պահես, անչափ ուզում եմ քեզ թագադրել թանկագին թագով, թէ բարեհաճես իմը լինելու։

MARGARET.
Ի՞նչ։

SUFFOLK.
Նրա սէրը։

MARGARET.
Ես արժանի չեմ ազնիւ հենրիի կինը դառնալու։

SUFFOLK.
Օ՜, իմ տիրուհի, ես՝ անարժանս, իրաւունք ունեմ այսքան գեղեցիկ տիկնոջից խնդրել իր բարի ձեռքը արքայի համար այս ընտրութեան մէջ ես բաժին չունեմ։ Դուք ի՞նչ էք ասում, գոհ չէ՞ք ձեր բախտից։

MARGARET.
Թէ hopu հաճոյ է, ես համաձայն եմ։

SUFFOLK.
Հէ՜յ, կանչէք այստեղ զօրավարներին։

*[They approach the Wall. Reignier can be seen up on it.]*

SUFFOLK [cont.]
[Calling.] Տեսնո՞ւմ ես, ռենէ, գերուած աղջկադ։

REIGNIER.
Այդ ո՞վ է գերել։

SUFFOLK.
Ես՝ կոմս սեֆոլկը։

REIGNIER.
Ինչպէ՞ս քեզ օգնեմ։ Ես մի ռազմիկ եմ, չեմ կարող ողբալ կամ թէ անիծել իմ բախտն անհաստատ։

SUFFOLK.
Այո՛, օգնութեան միջոց կայ, պարոն։ Ի սէր քո պատուի՝ դու համաձայնիր, որ՝ քո աղջկան կը տաս արքայիս։ Ես նուաճել եմ մեծ դժուարութեամբ քո չքնաղ դստերն իմ տիրոջ համար։ Եւ այս կարճատեւ, հեշտ գերութիւնը արքայավայել ազատութիւն է տալիս աղջկադ։

REIGNIER.
Ասում ես, սեֆոլկ, ինչ մտածո՞ւմ ես։

SUFFOLK.
Չքնաղ մարգարիտն իրաւամբ գիտի, որ կոմս սեֆոլկը չի շողոքորթում, չի ձեւացնում եւ չի խարդախում։

REIGNIER.
Իջնում եմ ահա քո՛ իշխանական վճռին ընդառաջ որ պատասխան տամ քո առաջարկին։ Ռենէն պարսպից իջնում՝ է։

SUFFOLK.
Այստեղ կը սպասեմ ես քո գալստեան։

*[Reignier exits the Wall and approaches Suffolk and Margaret.]*

REIGNIER.
Ողջո՛յն քաջ կոմսին մեր հողի վրայ։ Ինչ որ կամենաս, պահանջիր այստեղ։

SUFFOLK.
Շնորհակալութի՛ւն։ Բախտաւոր ես դու, քանզի անուշիկ մի դուստր ունես, դուստր՝ արժանի միայն թագուհու։ Ի՞նչ պատասխան ես կամենում ինձ տալ։

REIGNIER.
Քանի որ, սեֆոլկ, բարեհաճում ես ընտրել այս փոքրիկ ոչնչութիւնը քո տիրոջ համար որպէս հարսնացու, ապա աղջիկս թող նրան լինի, եթէ հաճոյ է հենրիին, իրաւ։ Բայց այն պայմանով, որ կարողանամ ես իմ սեփական կոմսութիւններում, անժուում, մենում, տիրութիւն անել հանգիստ ու խաղաղ, առանց պատերազմ։

SUFFOLK.
Թող սա աղջկադ փրկագին լինի, ես ազատում եմ։ Գալով քո երկու կոմսութիւններին՝ ես յանձն եմ առնում, որ այսուհետեւ դրանք վայելես դու խաղաղութեամբ։

REIGNIER.
Ես էլ իմ հերթին, հենրու անունով քեզ՝ առաքեալիդ, ի նշան անկեղծ հաւատարմութեան, տալիս եմ տիա նշանադրուած աղջկաս ձեռքը։

SUFFOLK.
Ռենէ, ընդունիր շնորհակալութեան խօսքը արքայի, ում ծառայում եմ ես ազնուօրէն։ [Aside.] ա՛խ, թւում է ինձ, որ կարող էի այդ խնդրոյ շուրջը լինել խելամիտ սեփական միջնորդ։ Այս լուրերն ինձ հետ կը տանեմ անգլիա, որ ամուսնութեան ծէսն այնտեղ լինի։ Դե՛հ, մնա՛ս բարեաւ, փառապանծ ռենէ, պահիր ադամանդն, ինչպէս վայել է ոսկեայ դղեակում։

REIGNIER.
Ես գրկում եմ քեզ ինչպէս տիրոջդ, թէ այստեղ լինէր արքան քրիստոնեայ։

MARGARET.
Մնացէ՛ք բարեաւ, բարի մաղթանքներ, աղօթք, աղաչանք, սրանցով միայն ձեզ պիտի յիշի դուստրը ռենէի։ Ուզում է գնալ։

SUFFOLK.
Մնացէ՛ք բարեաւ, չքնաղ տիրուհի։ Բայց դուք, մարգարիտ, չէ՞ք ուզում արդեօք ողջոյն առաքել իմ թագաւորին։

MARGARET.
Յղում եմ նրան այնպիսի ողջոյն, որ պատշաճում է անաղարտ կոյսին, նրա սպասուհուն։

SUFFOLK.
Բառե՛ր քաղցրագին, բառե՛ր խիստ պարկեշտ, սակայն տիրուհի, ձեզ պէտք է նորից անհանգստացնեմ։ Սիրոյ ի՞նչ գրաւ առաքում էք դուք իմ թագաւորին։

MARGARET.
Օ՛, բարի՛ միլորդ, անաղարտ մի սիրտ, որ երբեք սիրով դեռ չի համակուել։

SUFFOLK.
Չի՞ էլ համբուրուել։

*[Suffolk gives Margaret a long and highly inappropriate kiss.]*

MARGARET.
Այդ համբոյրը՝ քեզ։ Ես չեմ յանդգնում այսպիսի չնչին սիրոյ գրաւական յղել արքային։

*[Reignier and Margaret exit.]*

SUFFOLK.
Օ՜, եթէ աստուած քեզ ինձ պարգեւէր։ Սպասի՛ր, սեֆոլկ։ Պէտք չէ քեզ բնաւ մտնել բաւիղն այս, ուր դարանում են մինոտաւրոսը եւ խիստ գարշելի դաւաճանութիւնը։ Դու մարգարիտի զարմանահրաշ արժանիքներով կը դիւթես հենրուն, յիշի՛ր դու նրա արժանիքները, եւ արուեստները նսեմացնող հրապոյրները, երբ նաւ կը նստես, յիշիր գեղեցիկ այս պատկերները, որպէսզի, երբ դու ծունր իջնես գահին, այդ սուրբ հրաշքով դու կարողանաս գրաւել հենրուն։ [Exits.]

][][

ACT V. SCENE IV.
Camp of York in Anjou. York, Warwick and Pucelle enter. Pucelle has been sentenced to burn. Soon a Shepherd enters.

YORK.
Բերէք վհուկին, ում պէտք է այրել խարոյկի վրայ։ Մտնում են ժաննա դ՝արկը՝ զինեալ պահապանի ուղեկցութեամբ, եւ մի հովիւ։

SHEPHERD
Ա՛խ, ժաննա, հորդ սիրտն ես սպանում։ Միթէ՞ փնտրեցի քեզ ամէնուրեք, որ դաժան բախտն իմ ցոյց տար այս հողում քո անագորոյն, վաղաժամ մահը։ Աղջի՜կս, ժաննա, քեզ հետ կը մեռնեմ։

PUCELLE.
Զառամեալ աղքատ, ստոր անզգամ, աշխարհ եմ եկել ես ազնիւ տոհմից, դու ո՛չ իմ հայրն ես, ո՛չ բարեկամս։

SHEPHERD
Օ՜, լռի՛ր։ Լորդեր, թոյլ տուէք ասել՝ նա սուտ է խօսում ծխական ամբողջ համայնքը գիտի, որ նրա հայրն եմ։ Ա՛խ, դեռ ապրում է նրա խեղճ մայրը եւ կը հաստատի, որ սա առաջին պտուղն է եղել իմ ամուսնութեան։

WARWICK.
Լի՛րբ, ուրանո՞ւմ ես քո ծնողներին։

YORK.
Սա ցոյց է տալիս նրա ապիրատ եւ ամօթալի կեանքի պատկերը, եւ նա այսպէս էլ կը մեռնի մի օր։

SHEPHERD
Ամօ՛թ քեզ, ժաննա պէտք չէ յամառել։ Ա՛խ, աստուած գիտի որ դու մարմնիս փոքրիկ մի մասն ես, քո բախտի համար ես շատ եմ լացել, ինձ մի՛ ուրանա, ժաննա՛, կ՝աղաչեմ։

PUCELLE.
Հեռացի՛ր, գեղջուկ։ Կարողացել էք որսալ այս մարդուն, որպէսզի ազնիւ ծնունդս անարգէք։

SHEPHERD
Այն առաւօտեան, երբ պսակուեցի քո մայրիկի հետ, մի նոբլ տուեցի մեր քահանային չոքիր իմ առաջ, առ օրհնութիւնս, աղջիկս բարի, չե՞ս լսում հորդ։ Սեւ լինէր այն օրն, երբ աշխարհ եկար, ինչպէս կ՝ուզէի, երբ մորդ կրծքից կաթ էիր ծծում՝ լինէր օձի թոյն կամ երբ հայրենի կանաչ դաշտերում իմ դառներն էիր արածացնում, քեզ արիւնարբու գայլը յօշոտէր։ Հօ՞րդ ես ուրանում, նզովեալ պոռնիկ, Օ՛, այրէ՛ք, այրէ՛ք, կախելը քիչ է։ [Exits.]

YORK.
Դուրս տարէք սրան, չափից աւելի երկար է ապրել՝ լցնելով աշխարհն ապականութեամբ։

PUCELLE.
Թոյլ տուէք ասել, ո՞ւմ էք պարսաւում։ Չեմ ծնուել հովուի խղճուկ հիւղակում, ես արքաների տոհմից եմ սերուել։ Ես սուրբ եմ, պարկեշտ, ընտրեալն երկնքի, երկնային ոգու հուրն է ինձ պսակել որ երկրի վրայ հրաշք արարեմ։ Չար ոգիներն ինձ չեն տեսել երբեք, բայց դուք, որ մոլի տարփանքով եղծուած անմեղ զոհերի արիւն էք թափում, եւ հազարերորդ անառակութեամբ պղծում ամէն ինչ, զրկուած յաւիտեան աստծոյ շնորհից կարծո՞ւմ էք հրաշք կարող են գործել չար ոգիների օգնութեամբ միայն, ո՛չ, մոլորւո՛ւմ էք։ ժաննա դ՝արկը դեռ ջահէլ օրից կոյս է մնացել, մաքուր է նոյնիսկ իր խոհերի մէջ։ Նրա արիւնը՝ հեղուած դժնօրէն, պէտք է երկնքի դռների առջեւ իր վրէժն առնի։

YORK.
Լա՛ւ, բաւական է դէպ խարոյկ տարէք։

WARWICK.
Լսէ՛ք, պարոններ, եթէ կոյս է մի, փայտ մի՛ խնայէք, լցրէք խուրձ առ խուրձ։ Ձիւթով տակառներ դրէք մահաբեր խարոյկի վրայ, որպէսզի նրա տառապանքները կարճատեւ լինեն։

PUCELLE.
Միթէ՞ ոչ մի բան չի ազդում անգութ ձեր սրտի վրայ։ Այդ դէպքում, ժաննա, յայտնիր դու նրանց քո

թուլութիւնը, որով քեզ օրէնքն ընդմիշտ կը փրկի յղի եմ, արնոտ մարդասպաններ, եւ մի՛ սպանէք պտուղն արգանդիս, թէեւ հրում էք ինձ գիրկը մահուան։

YORK.
Աստուա՛ծ ողորմի, երեխայով կո՞յս։

WARWICK.
Բիւր հրաշքներից սա մեծագո՞յնն էր, միթէ՞ դու սրան յանգեցիր, ով կոյս, քո սրբութիւնով։

YORK.
Շառլը եւ ժաննան եղել են, անշո՛ւշտ, փորձուած ձեռնածու, հաւատում էի, որ արքայորդուն նա կ՝ապաւինէր։

WARWICK.
Մեզ ապօրինի զաւակներ պէտք չեն, մանաւանդ, երբ որ դոֆինը նրա հայրն է լինելու։

PUCELLE.
Մոլորուած էք դուք, իմ երեխայի հայրն ալանսոնն է, որ վայելում էր իմ սրտի սէրը։

YORK.
Վա՜յ մեզ, ալանսոն, դու տխրահռչակ մաքիաւելի, պէտք է մահանայ պտուղն անպայման, թէկուզ հազար կեանք հրաշքով ունենայ։

PUCELLE.
Թողութիւն տուէք, ես ձեզ խաբեցի, ո՛չ, մեղաւոր չեն դուքսն ու դոֆինը, ինձ նէապոլի արքան համոզեց։

WARWICK.
Ամուսնացած մարդ՝ հանդուրժելի չէ։

YORK.
Ահա քեզ աղջիկ։ Օ՜, այնքան շատ են, որ նա չգիտի՝ ում մեղադրի։

WARWICK.
Սա ցոյց է տալիս, որ նա եղել է ազատ ու շռայլ։

YORK.
Այնուամենայնիւ, կո՜յս է անարատ։ Պոռնի՛կ, բառերդ քեզ են անարգում եւ քո լակոտին, իզուր են արդէն աղերսանք ու լաց։

PUCELLE.
Դե՛հ, տարէ՛ք, ես ձեզ անէծքս եմ թողնում։ Թող փառաւորեալ արեւը երբեք չարձակի շողեր ձեր երկրի

վրայ, ուր ապրում էք դուք, թող մահուան ստուերն ու մութն անթափանց այնքան ժամանակ ձեզ խիստ պարուրեն, որ դժբախտութիւնն ու վհատումը ձեզ մղեն դէպի մահ ու կախաղան։

*[Pucelle and her Guards exit for the last time.]*

YORK.
Կտրատուես մեկէն ու մոխիր դառնաս, դժոխքի կերտոտ, անիծեալ ծառայ։

*[Winchester and Beaufort enter.]*

WINCHESTER.
Լորդ խնամակալ, ողջունում եմ ձեզ նորին մեծութեան լիազօրութեամբ։ Իմացէք, տեարք իմ, քրիստոնէական տէրութիւնները, որ թշնամական այս կռիւներից տանջւում են սաստիկ, աղերսահայցեաց խնդրում են կայուն մի խաղաղութիւն՝ մեր եւ յանդուգն ֆրանսիայի միջեւ։ Թագաժառանգը իւր շքախմբով մեզնից հեռու չէ, նա ընձեռում է այս խնդրոյ շուրջը խօսելու առիթ։

YORK.
Միթէ՞ մեր ամբողջ եռանդն սպառեցինք այս բանի համար։ Ինչքան զինուորներ, դուքսեր, իշխաններ ընկան այս կռւում եւ հատուցեցին ի սէր հայրենեաց իրենց արիւնը, միթէ՞ մենք պիտի կնքենք իգացեալ մի խաղաղութիւն, միթէ՞ նենգութեամբ, դաւաճանութեամբ ու խարդաւանքով մենք չկորցրինք այն քաղաքների մեծագոյն մասը, որ մեր պապերն են վաղուց նուաճել։ Ա՛խ, վորուի՛կ, վորուի՛կ, ես մի տխրութեամբ գուշակում էի, որ ամբողջովին պէտք է կորցնենք մեր տէրութիւնը։

WARWICK.
Համբերութի՛ւն, եորք, թէ կնքելու ենք մի խաղաղութիւն, ապա այնպիսի սուղ պայմաններով պէտք է այն լինի, որ ֆրանսիացիք շատ քիչ բան շահեն։

*[Charles, Alencon, the Bastard and Reignier all enter.]*

CHARLES.
Անգլիոյ իշխաններ, քանի որ արդէն մենք ձեռք ենք բերել համաձայնութիւն, որով մեր երկրում պէտք է հաստատուի զինադադարը, ուստի եկել ենք մենք իմանալու, թէ դուք հաշտութեան ի՞նչ պայմաններ էք մեզ առաջարկում։

YORK.
Խօսի՛ր, կարդինալ, այրող ցասումը կոկորդս է սեղմում, ձայնս խեղդւում է, երբ մեր անիծեալ թշնամիներին տեսնում եմ նորից։

WINCHESTER.
Շառլ եւ դուք, լորդեր, լսէք վճիռը մեր նկատի առնելով, որ հենրի արքան խիստ բարեգութ է եւ անյիշաչար, համաձայնել է փրկել ձեր երկիրն աղէտեալ կռուից։ Հանդուրժում է նա, որ դուք

պտղաբեր խաղաղութիւնը ճաշակէք իրաւ, եւ դառնաք նրա հպատակները։ Եւ եթէ դուք, շառլ, հարկ վճարելով ենթարկուէք նրան որպէս փոխարքայ, ապա կ՝օգտուէք ձեր արքայական բարձր տիտղոսից։

ALENCON.
Նա պէտք է դառնայ սոսկ իր ստուերը՞։ Եւ զարդարելով ճակատն արքային ոչ վայել թագով՝ նա, ըստ էութեան, մի մարդ է դառնում, որ չունի կշիռ, հեղինակութիւն։ Անհեթե՜թ, անմի՜տ առաջարկութիւն։

CHARLES.
Յայտնի է, լորդեր, որ ես գաղիայի մեծագոյն մասին իշխում եմ վաղուց, եւ ճանաչում են ինձ այնտեղ արքայ։ Միթէ՞ մնացեալ հողերի համար, որ չեն նուաճուած, ես պէտք է զիջեմ իրաւունքներս, ինչ է թէ միայն կոչուեմ փոխարքայ։ Ո՜, ո՜չ։ Լորդ-դեսպան, աւելի լաւ է իմ ձեռքին պահեմ, ինչ այժմ ունեմ, քան աչքս շատին՝ ես միանգամից զրկուեմ եղածից։

YORK.
Ո՜, յանդուգն շառլ, դու չէ՞ս գաղտնօրէն միջնորդ ուղարկել, որպէսզի մեզ հետ հաշտութիւն կնքեն։ Եւ այժմ, երբ գործն համաձայնութեամբ գլուխ է գալիս, քաշուել ես մի կողմ, չափում ձեւո՞ւմ ես։ Քո յափշտակուած տիտղոսն ընդունիր իբրեւ թանկ նուէր հենրիի կողմից, դու չես նուաճել թագն իրաւունքով։ Գիտցիր, անդադար պատերազմներով քեզ կը չարչարենք։

REIGNIER.
[Separately, to Charles] Տէր իմ, իզուր ես այդպէս յամառում, պէտք չէ պայմանի նկատմամբ լինել այսքան քմահաճ ու բծախնդիր։ Հաւատա դու ինձ հարիւրից տասը՝ չենք կարող գտնել նման մի առիթ։

ALENCON.
[Separately, to Charles] Ճշմարիտն ասած՝ նրբամտութեամբ դու պէտք է փրկես քո ժողովրդին նման սպանդից եւ անագորոյն արնահեղումից, որ տեսնում ենք մենք մեր ամենօրեայ թշնամութիւնից, ուստի ընդունիր զինադադարի այս պայմանները, չէ՞ որ կարող ես ուզածդ պահին չեղեալ համարել։

WARWICK.
Ի՞նչ ես ասում, շառլ, ընդունո՞ւմ ես դու մեր պայմանները։

CHARLES.
Այո՛, բայց միայն վերապահումով, որ չէք իշխելու մեր ամրոցներին։

YORK.
Ուրեմն երդուիր հաւատարմօրէն մեր վեհապետին եւ որպէս ասպետ դու այսուհետեւ չես ըմբոստանայ անգլիոյ գահի դէմ։ Խոստացիր, որ դու, քո աւագանին չեն ապստամբուի մեր տէրութեան դէմ։

*[The French all swear fealty.]*

YORK [cont.]
Այսպէս, արձակիր քո բանակները, երբ որ կամենաս, իջեցրու դրօշները, թող լռեն ընդմիշտ ձեր թմբուկները, քանզի մենք այստեղ պիտի հաստատենք շքեղահանդէս խաղաղութիւնը։

*[They all exit.]*

]{}[

ACT V. SCENE V.
London. The Palace. Suffolk and the King enter, in heated conversation. They are followed by Gloucester and Exeter.]

KING HENRY.
Ազնուաբարոյ կոմս, դուք մարգարիտի չքնաղ դիմագիրն այնպէս գծեցիք, որ հիացած եմ։ Այդ կոյսն, օժտուած առաքինութեամբ, որ բիւր թովչանքներ ունի մարմնի, վառեց կրծքիս տակ սիրոյ անհուն կիրք։ Եւ ինչպէս ահեղ փոթորկի սլացք, որ հզօր նաւն է քշում հոսանքին ուղիղ հակառակ, այդպէս ինձ նրա համբաւն է մղում հեղեղաբեկուել կամ թէ հասնելու նրա մեծ սիրոյ նաւահանգիստը։

SUFFOLK.
Ով բարի իմ տէր, սա թեթեւակի պատմութիւն է մի, բայց մի նախերգանք՝ նրա արժանի գովաբանութեան։ Այդ հրաշք կոյսի կատարելութեամբ, թէ ունենայի մի հմուտ արուեստ, ես կը կազմէի հոյակապ մի գիրք, որ հրապուրուէր բթամիտն անգամ։ Նա չի արարուած հաճոյքի համար, խիստ հեզամիտ է, խաղաղ ու բարի, ձեր իշխանութեանն հլու կը մնայ, ձեզ կը ծառայի անկեղծ ու խոնարհ, եւ ձեզ կը սիրի, ինչպէս տիրոջն իր։

KING HENRY.
Հենրին ուրիշ կերպ չէր էլ սպասում լորդ-խնամակալ, հաւանութիւն տուր, որ մարգարիտը դառնայ անգլիայի եւ իմ թագուհին։

GLOUCESTER.
Օ՜, եթէ տայի, կը նշանակէր աջակցել մեղքին։ Չէ՞ որ դուք արդէն, ողորմած իմ տէր, մի արժանաւոր հարսնացու ունէք, ինչպէ՞ս ետ առնենք մեր տուած խօսքը, որ ձեր պատիւը չանարգուի բնաւ։

SUFFOLK.
Ինչպէս՝ կը վարուէր տէրը անօրէն իր խոստումներով ինչպէս՝ ասպետը հսկայ կրկէսում, թէեւ երդուել է յաղթել մրցակցին, բայց նկատելով իր ուժն առաւել՝ լքում է դաշտը։ Խեղճ կոմսի դուստրը հաւասար չէ քեզ, եւ առանց մեղքի կարող ես տուած խոստումն ետ առնել։

GLOUCESTER.
Ասացէք, խնդրեմ, ի՞նչ գերապատիւ առաւելութիւն մարգարիտն ունի։ Կոմս է նրա հայրն՝ աւել կամ

պակաս, թէեւ փառահեղ տիտղոսներ ունի։

SUFFOLK.
Այո՛, դուք գիտէք, որ նրա հայրը երուսաղեմի եւ նէապոլի արքան է ստոյգ, եւ նա ֆրանսիայում մեծ կշիռ ունի։ Պէտք է նրա հետ ազգական լինել, որ ֆրանսիացիք մնան շարունակ մեզ հաւատարիմ։

GLOUCESTER.
Սա արմանեակն էլ կարող է անել, քանզի դոֆինի մօտ ազգականն է։

EXETER.
Բացի այդ, նրա հարստութիւնը ապահովում է ահագին օժիտ եւ աւելի շատ ռենէն կ՝առնի, քան թէ կը բաշխի։

SUFFOLK.
Օժի՞տ, պարոններ։ Մի՛ խայտառակէք ձեր թագաւորին։ Միթէ՞ նա այնքան ստոր կը լինի, գծուծ ու աղքատ, որ հարստութիւնն համարի բարձր կատարեալ սիրուց։ Հենրին կարող է հարստացնել իր հարսնացուին եւ ոչ թէ փնտրել մեծատան աղջիկ։ Այսպէս խղճալի գիւղացիներն են առեւտուր անում, երբ կին են ուզում, ինչպէս շուկայում ձիեր, ոչխարներ կամ եզ վաճառող։ Ամուսնութիւնը դժուար խնդիր է, ոչ մի բարեխօս չի կարող լուծել պէտք չէ մեր կամքը նրան փաթաթել։ Ում որ ցանկանայ վեհափառ արքան, թող նրա հետ էլ հարսանեկան առագաստ մտնի։ Ուստի, իշխաններ, քանի որ հենրին սիրում է նրան, եւ սա գլխաւոր պատճառն է, անշո՛ւշտ, մենք պարտ ենք տալու համաձայնութիւն, թող մարգարիտը լինի հարսնացուն։ Օ՛, միթէ՞ բռնի ամուսնութիւնը դժոխք չէ, կռուի բոյն, մշտնջենաւոր երկպառակութիւն։ Սիրոյ առագաստն երջանկութիւն է եւ խաղաղութեան երկնային տիպար։ Ո՞ւմ պիտի ընտրենք հենրիի համար, որ ինքն է արքայ, եթէ ոչ միայն հեզ մարգարիտին՝ դուստրն արքայի։ Նրա աննման դէմքն ու ծնունդը, որ պատշաճում են լոկ թագաւորին, նրա անվեհեր խիզախութիւնը եւ անվախ ոգին, որ սովորաբար քիչ է կանանց մօտ, կ՝արդարացնեն մեր յոյսերն համակ։ Հենրին զաւակ է աշխարհակալի, եւ մեզ կը ծնի նոր աշխարհակալ, եթէ վեհանձն, ուժեղ կնոջ հետ, ինչպիսին չքնաղ արքայադուստրն է, շղթայուի սիրով։ Զիջէ՛ք, պարոններ, եւ ձեր վճիռը արձակէք այստեղ, որ մարգարիտը լինի թագուհին։

KING HENRY.
Չեմ կարող ասել, իմ ազնիւ սեֆոլկ, պատճառն ինչ եղաւ, ձեր զրո՞յցն ազդու, թէ՞ պատանեկան տարիներն անհոգ, երբ ինձ չէր այրել բոցավառ սիրոյ կիրքը բորբոքուն, բայց իմ կրծքի տակ յոյսի ու վախի տարտամ զգացմամբ կայ մի խենթ տագնապ, եւ տկար եմ ես բուռն խոհերիս անդուլ տքնանքից։ Ահա թէ ինչու, իմ ազնիւ միլորդ, մեկնէք ֆրանսիա, հասէք այն բանին, որ համաձայնեն պայմանների հետ, եւ մարգարիտը շնորհէ իր ջերմ հաւանութիւնը՝ անգլիա մեկնելու, պսակն ընդունելու, դառնալով հենրու կինն հաւատարիմ, իսկ ձեր ծախքերը, բաւական խնամքը թող ժողովուրդը հոգայ տասն անգամ։ Դե՛հ, ճամփայ ընկէք։ Մինչեւ տուն դառնաք, հազար ու մի հոգս ինձ պիտի տանջէ։ Իսկ դուք, հօրեղբա՛յր, դուրս վանէք ձեզնից վիրաւորանքը։ Թէ ձեր անցեալով իմ մասին դատէք, գիտեմ, ինձ պիտի հեշտութեամբ ներէք այս անակնկալ որոշման համար։ Տարէ՛ք ինձ հեռու, մի խաղաղ անկիւն, որ կարողանամ իմ տխրութեանը յանձնուել մենակ։ [Exits.]

GLOUCESTER.
Այո՛, տիրութիւն։ Ես վախենում եմ սկզբից մինչեւ վերջ։

*[Gloucester and Exeter exit.]*

SUFFOLK.
Յաղթեցիր, սեֆոլկ, եւ դու գնում ես, ինչպէս գնում էր ջահէլ պարիսը դէպի յունաստան, այն պայծառ յոյսով, որ սէր կը գտնի, բայց դու աւելի բախտաւոր եղար, քան տրոյացին։ Այժմ կը դառնայ մարգարիտն հենրու կինն օրինաւոր եւ կ՝իշխի նրան, իսկ ես, ես կ՝իշխեմ ե՛ւ թագաւորին, ե՛ւ նոր թագուհուն, ե՛ւ ամբողջ երկրին։ [Exits.]

][][

BOOK 2

## ACT I. SCENE I.

London The Palace The King enters, followed by Duke Humphrey of Gloucester, Salisbury, Warwick and Cardinal Beaufort, on the one side; the Queen, Suffolk, York, Somerset and Buckingham, on the other

SUFFOLK.

Երբ արքայական ձեր հրամանով ես մեկնում էի դէպի ֆրանսիա, դուք պատուիրեցիք ինձ՝ փոխանորդիդ, որ ձեր փոխարէն նշանադրուեմ արքայադուստր մարգարիտի հետ։ Եւ հռչակաւոր հին քաղաք տուրում, ուր ներկայ էին արքայք՝ ֆրանսիոյ եւ սիցիլիայի, եւ ազնիւ դուքսեր բրիտանայի եւ կալաբրիայի ե՛ւ օռլէանի, ե՛ւ ալանսոնի, եօթ յայտնի կոմսեր, տասներկու բարոն, քսան բարեպաշտ եպիսկոպոսներ, ես կատարեցի պարտքս սրբազան՝ ինձ պսակեցին։ Արդ, խոնարհաբար ծունր իջնելով, հայեացքս յառած մեր աւագանուն, ձեզ եմ փոխանցում իմ իրաւունքը թագուհու վրայ ձեր բարեշնորհ, ազնիւ ձեռքերին, որոնց ստուերն եմ ինքս պատկերում, նման թանկագին ընծայ չի բերել եւ ոչ մի վասալ, նման թագուհի երբեք չի տեսել ոչ մի թագաւոր։

KING HENRY.

Վեր կա՛ց, իմ սեֆոլկ, ողջո՛յն թագուհի, ես քնքշօրէն կարող եմ միայն սէրս արտայայտել քնքուշ համբոյրով։ Օ՜, աստուա՛ծ, որ ինձ կեանք ես պարգեւել, տո՛ւր երախտիքով առլեցուն մի սիրտ, դու այս գեղեցիկ դէմքով բաշխում ես հոգուս՝ երկնային բիւր օրհնանքների մի ամբողջ աշխարհ, երբ մեր սրտերն են միանում իրար։

QUEEN MARGARET.

Մեծ արքայ անգլիոյ, տէր իմ բարեգութ, այն զրոյցները փոխադարձ ու ջերմ, որ ես մտովի՝ գիշեր թէ ցերեկ, քուն թէ արթմնի անց էի կացնում քեզ հետ միասին, իմ երազներում, իմ աղօթքներում, ինձ ներշնչում են համարձակութիւն, որ ես իմ մտքի խիստ պարզ բառերով եւ ուրախ սրտով ողջոյն յղեմ քեզ։

KING HENRY.

Կախարդում է ինձ հայեացքը նրա, բայց նրա խօսքի զարդն հրապուրիչ, բառերն՝ օժտուած վեհ իմաստութեամբ, ինձ ստիպում են՝ զարմանքից ապշած, անձնատուր լինել լացին խնդութեան տեա՛րք իմ, ցնծագին ողջունեէք սէրս։

EVERYONE.

[Kneeling down.] Թող երկա՛ր ապրի մեր թագուհին՝ յոյսը անգլիայի։

QUEEN MARGARET.

Շնորհակալութի՛ւն։

SUFFOLK.

Լորդ-խնամակալ, ձեր թոյլտուութեամբ չէ՞ք բարեհաճի բարձրաձայն կարդալ պայմանն հաշտութեան

որ տասնութ ամսով փոխադարձաբար կնքել են շառլը ու երկիրը մեր։

GLOUCESTER.
[Reads.] *«Առաջին՝ ֆրանսիայի թագաւոր շառլը եւ վիլեամ դը լա պոլը, մարկիզ սեֆոլկը, անգլիայի թագաւոր հենրիի դեսպանը համաձայնել են, որ վերոյիշեալ հենրին ամուսնանում է նէապոլի, սիցիլիայի ու երուսաղեմի թագաւոր ռենէի դուստր լէդի մարգարիտի հետ եւ նրան պսակում է թագուհի ոչ ուշ, քան սոյն մայիսի երեսունը։ Այնուհետեւ՝ նրանք համաձայնել են անժու եւ մեն դքսութիւնները ազատել ու յանձնել թագաւորին՝ նրա հօրը։»*

*[The paper falls from Gloucester's hands.]*

KING HENRY.
Քեզ ի՞նչ պատահեց, բարի՛ հօրեղբայր։

GLOUCESTER.
Տէր իմ, ներեցէ՛ք, յանկարծ զգացի սրտի ծակոցներ, որ աղօտացրին լոյսը աչքերիս, չեմ կարող կարդալ։

KING HENRY.
Բարի՛ հօրեղբայր, խնդրում եմ կարդալ։

CARDINAL.
[Reads.] *«Այնուհետեւ՝ համաձայնել են անժու եւ մեն դքսութիւնները ազատել ու յանձնել թագաւորին՝ նրա հօրը, եւ մարգարիտին ուղարկել անգլիական թագաւորի անձնական հաշուին, առանց որեւէ օժիտի։»*

KING HENRY.
Պայմաններն, անշուշտ, հաճելի են մեզ։ Ծունր իջի՛ր, մարկիզ շնորհում ենք քեզ սեֆոլկ դքսութեան բարձր տիտղոսը, յանձնում քեզ սուրը։ Հօրեղբօր զաւակ, եորք իմ հարազատ, ձեզ ֆրանսիայից մենք ետ ենք կանչում մինչեւ որ տասնութ ամիսներն անցնեն։ Շնորհակալութի՛ւն ձեզ, ուինչեստեր, հօրեղբայր գլոստեր, բուկինգեմ ու եորք, վորուիկ, Սոմերսետ եւ սօլսբերի, ես իմ գոհութեան խօսքն եմ ուղղում ձեզ որ դուք արժանին հատուցիք այստեղ՝ ի սէր թագուհու։ Դե՛հ, գնա՜նք, փութով անելիքն հոգանք թագադրութեան։

*[King, Queen and Suffolk exit.]*

GLOUCESTER.
Ազնիւ տեարք անգլիոյ, սիւներ տէրութեան, հեմֆրին ուզում է բանալ իւր վիշտը, օ՛ ո՛չ ձեր վիշտը եւ վիշտն հայրենեաց։ Միթէ՞ հենրին չէր, եղբայրն իմ ազնիւ որ ռազմի դաշտում վատնեց անխնայ ե՛ւ ջահէլութիւն, ե՛ւ խիզախութիւն, ե՛ւ փող, ե՛ւ զինուոր, յաճախ չմնա՞ց նա բաց երկնի տակ ձմեռուայ ցրտին ու տապին խանձող, որ նուաճելով ֆրանսիան՝ դառնար տէրն օրինաւոր, միթէ՞ չյարեց

բեդֆորդն ուղեղը, որ ձեռքին պահէր, ինչ նուաճել էր իմ հենրին զէնքով, միթէ՞ դուք չէիք, Սոմերսետ, քաջ եորք, եւ սօլսբերի, բուկինգեմ, վորուիկ, որ ֆրանսիայում եւ նորմանդիայում խոր վէրք ստացաք, միթէ՞ իմ քեռի բոֆորտը ու ես մեր արքայական խորհրդարանում գիշեր ու ցերեկ չէինք քննարկում, թէ ինչպէս պահել ահ ու դողի մէջ ֆրանսիացիներին, միթէ՞ մեր արքան՝ դեռ անչափահաս, ի հեճուկս թշնամու, չթագադրուեց փարիզ քաղաքում, միթէ՞ հենրիի յաղթանակները եւ քաջ բոֆորտի զգօնութիւնը պէտք է մահանան, եւ միթէ՞ պիտի կորչեն ջանք ու փառք ու սխրանք ռազմի։ Օ՜, տեա՛րք իմ, դաշինքն այս ամօթալի եւ ամուսնութիւնն այս օրհասական սեւ բիծ են դնում ձեր փառքի վրայ, ջնջում ձեր անունն յուշերի գրքից, տէր խիզախութեան պատկերը քերում եւ այլանդակում յաղթանակներիդ յուշարձանները, կարծես չեն եղել աշխարհի վրայ։

CARDINAL.
Իմ եղբօր որդի, ինչո՞ւ ես այսպէս դու կրքոտ խօսում եւ ամենայն դէպք պատմում մէկ առ մէկ, մերն է ֆրանսիան, այն դեռ կը պահենք։

GLOUCESTER.
Այո՛, հօրեղբայր, մենք կարելոյն չափ այն պէտք է պահենք, բայց այդ չենք կարող։ Աւա՛ղ, նորաթուխ մեր դուքս սեֆոլկը, որ դիւրութեամբ է մարդկանց հաւատում, յանձնել է արդէն մենը եւ անժուն թշուառ ռենէին, ում մեծ տիտղոսը չի հաշտւում նիհար իր քսակի հետ։

SALISBURY.
Երդւում եմ հիմա յիսուսի մահով, ով խաչուեց մի օր բոլորիս համար, ա՜խ, նորմանդիայի բանալին էին այս երկրները, բայց դու ինչո՞ւ ես արտասւում, վորուիկ, իմ կտրիճ զաւա՛կ։

WARWICK.
Վշտից, որ նրանց կորցրինք անդարձ։ Թէ շողայ մի յոյս, որ նրանք նորից ետ ենք առնելու, սուրս կը թափի արեան տաք գետեր, ես չեմ արտասուի։ Մենը եւ անժուն ես եմ գրաւել։ Այդ քաղաքները իմ բազուկներն են նուաճել արեամբ, միթէ՞ վէրքերի գնով վաստակած այդ քաղաքները մենք պէտք է յանձնենք խաղաղ խօսքերով։ երդւում եմ տիրոջ մահով։

YORK.
Թող դուքս սեֆոլկը խեղդամահ լինի, զի մթագնում է պատերազմասէր այս կղզու փառքը։ Թող ֆրանսիացիք սիրտն իմ ծուատեն, միայն թէ ի չիք դառնայ դաշինքն այս։ Անգլիայի բոլոր արքաներն ազնիւ ստանում էին իրենց կանանց հետ ոսկու մեծ գումար եւ հարուստ օժիտ, մինչդեռ մեր հենրին իր կայքն է տալիս, որն, աւա՛ղ, բնաւ օգուտ չի բերում։

GLOUCESTER.
Օ՜, ինչ անպատեհ, չլսուած ծաղրանք սեֆոլկը նրան բերելու համար ուզում է, անշուշտ, տասնհինգ բաժինք։ Նա լաւ կը լինէր մնար ֆրանսիայում, այնտեղ էլ քաղցից նուաղէր, քան թէ։

CARDINAL.
Միլորդ գլոստեր, չափից աւելի շատ էք տաքանում, բոլորն արուած է արքայի կամքով։

GLOUCESTER.
Լորդ ուինչեստեր, ձեր միտքը գիտեմ ոչ թէ խօսքերս են ձեզ վրդովեցնում, այլ պարզապէս ի՛մ ներկայութիւնը։ Ոխն է դուրս յորդում։ Գոռոզ կարդինալ, տեսնում եմ դէմքիդ մոլեգնութիւնը։ Թէ մնամ այստեղ երկար ժամանակ, մենք պէտք է մեր հին վէճը սկսենք։ Դե՛հ, մնա՛ք բարեաւ, ազնիւ իշխաններ, երբ ես չեմ լինի, իմ խօսքերն յիշէք շուտով ֆրանսիան պէտք է կորցնենք։ [Exits.]

CARDINAL.
Գնում է ահա մեր խնամակալն անչափ մոլեգնած։ Դուք արդէն գիտէք, որ նա դարձել է երդուեալ թշնամիս։ Օ՛, ո՛չ, աւելին, նա թշնամի է նոյնիսկ բոլորիդ ես վախենում եմ, որ բարեկամ չէ նաեւ արքային։ Խորհէ՛ք, իշխաններ, նա մօտ է արեամբ եւ գահի ժառանգ կարող է դառնալ թէ հենրին շահէր իւր ամուսնութեամբ մի ողջ կայսրութիւն եւ արեւմուտքի երկրներն հարուստ, դարձեալ գլոստերը դժգոհ կը մնար։ Զգո՛յշ, իշխաննե՛ր, չթողնէք նրան ձեր սիրտը դիւթի շողոմ խօսքերով, եղէք իմաստուն եւ շրջահայեաց։ Ի՞նչ փոյթ՝ ամբոխը սիրում է նրան ու կոչում *«Հեմֆրի, բարի դուքս գլոստեր։»* եւ ծափահարում, գոչում բարձրաձայն, *«Յիսո՛ւս, պահպանի՛ր մեր թագաւորին, աստուած պահպանի մեր բարի դուքսին։»* ես վախենում եմ, որ կեղծ են, տեարք իմ, խօսքերն այս շողոմ նա վտանգաւոր հովանի կը լինի։

BUCKINGHAM.
Պէտք չէ հենրիին արդէն հովանի, զի այն տարիքն է բոլորել արքան, երբ ինքը իրեն կարող է իշխել։ Եղբա՛յր Սոմերսետ, միացիր դու ինձ, եւ մենք միասին դուքս Սեֆոլկի հետ հեմֆրուն իր թամքից շուռ կը տանք շուտով։

CARDINAL.
Նման մի մեծ գործ պէտք չէ ձգձգել, իսկոյն կը գնամ դուքս Սեֆոլկի մօտ։ [Exits.]

SOMERSET.
Բուկինգեմ, թէեւ գոռոզ է հեմֆրին, փորձանք է նրա դիրքը մեր գլխին, բայց պիտի հսկենք մենք կարդինալին, զի նա աւելի յանդուգն է ու չար, քան թէ իշխաններն ամբողջ անգլիայի։ Եթէ գլոստերը պաշտօնանկ լինի, կը դառնայ իսկոյն նա խնամակալ։

BUCKINGHAM.
Ո՛չ, խնամակալ դու պէտք է դառնաս կամ ես, Սոմերսետ հակառակ հեմֆրու եւ կարդինալի։

*[Buckingham and Somerset exit.]*

SALISBURY.
Գնաց առջեւից գոռոզութիւնը, փառասիրութիւնն հետեւեց նրան։ Քանի դեռ նրանք իրենց բարձրացման գործով են հիմա սաստիկ զբաղուած, պէտք է հետեւենք մեր տէրութեանը։ Երբեք չեմ տեսել, որ դուքս գլոստերն իրեն վեր դասէր մի ազնուականից։ Բայց կարդինալը, յաճախ եմ տեսել, ասես թէ լինի յանդուգն զինուոր, քան եկեղեցու ազնիւ ծառայող, հպարտ է, գոռոզ, կարծես բոլորի

տէրն է ինքնիշխան։ Անգամի պէս հայհոյել գիտի ու վիրաւորել ասես չլինի երկրի ղեկավար։ Վորուի՛կ, իմ որդի՛, ծեր տարիներիս քա՛ղցր սփոփանք, քո արարքները, խոհեմութիւնը, անկեղծութիւնը քեզ ժողովրդի սիրելին դարձրին, քեզ հետ կը մրցի միայն դուքս հեմֆրին։ Եորք, սխրանքներդ իռլանդիայում, ուր հաստատեցիր դու կարգ ու կանոն, յաղթանակներդ ֆրանսիայի սրտում, ուր մեր տէրութեան կուսակալն էիր, ներշնչեցին քո հանդէպ յարգանք ու խոնարհութիւն։ Լինենք միաբան՝ վասն հայրենեաց, ահա՛ թէ ինչով կարող ենք սանձել գոռոզութիւնը ուինչեստերի ու դուքս Սեֆոլկի, փառամոլութիւնը բուկինգեմի ու սոմերսետի։ Որքան կարող ենք, պէտք է դուքս հեմֆրուն միայն աջակցենք, զի պաշտպանում է շահերը երկրի։

WARWICK.
Դժոխային ուժերը օգնում են Ուորվիկին, քանի որ նա սիրում է իր երկրի հողը և ընդհանուր շահը։

YORK.
[Aside.] նոյնն է եորքն ասում, զի աւելի մեծ նպատակ ունի։

SALISBURY.
Դե՛հ, աճապարենք, պէտք է քննել հարցը գլխաւոր։

*[Warwick and Salisbury exit.]*

YORK.
Գլխաւո՞ր հարցը։ Օ՜, մենը, հայր իմ, կորցրել ենք, աւա՜ղ, որ դժուարութեամբ վորուիկը առաւ եւ պիտի պահէր, քանի դեռ շունչ կար նրա բերանում։ Գլխաւոր հարցի մասին ես խորհում, մենն է կարեւոր։ Պէտք է ետ առնեմ, հակառակ դէպքում, հա՛յր իմ, կը մեռնեմ։ Գնում են վորուիկն ու սօլսբերին։ Թշնամուն տրուեց մենը եւ անժուն փարիզը կորցրինք, եւ նորմանդիայի դիրքն է անկայուն նրանց կորստով։ Սեֆոլկը կնքեց հաշտութեան պայման, համաձայնել են իշխաններն արդէն, եւ հենրին երկու դքսութիւնները հաճոյքով փոխեց ինչ-որ մի դքսի սիրուն դստեր հետ։ Չեմ կարող նրանց ես մեղադրել, միեւնոյնը չէ՞ այդ մարդկանց համար չէ՞ որ տալիս են քոնը ուրիշին։ Ծովահէնները չեն դողում իրենց աւարի վրայ, առնում են նրանք փողով բարեկամ ու տալիս բոզին եւ իշխանի պէս նստում խնջոյքի, մինչեւ որ վատնեն կողոպուտն ամբողջ, իսկ թշուառ տէրը կորցրած ապրանքի լալիս է անօգ, ձեռքերը ջարդում եւ մի կողմ քաշուած՝ գլուխն օրօրում, մինչեւ որ տանեն իր բարիքները, եւ նա պատրաստ է սովամահ լինել, բայց չի յանդգնում ձեռք տալ իր գոյքին։ Այսպէս էլ եորքը, լեզուն կծելով, պէտք է լուռ նստի, մինչեւ որ ծախեն իր տիրոյթները։ Ո՛չ։ Թւում է ինձ՝ ֆրանսիան, իռլանդիան ու բրիտանիան այնպէս են ձուլուած միս ու արիւնիս, ինչպէս մոխրացած ոստն ալթէայի կալիդոն երկրի իշխանի սրտին։ Մենը եւ անժուն տուին թշնամուն, այդ օրհասական լուրն է ինձ այրում, քանզի իմ միակ յոյսն է ֆրանսիան, յոյսն իմ, ինչպէս եւ բարեբեր անգլիան։ Եւ կը գայ օրը, երբ կը պահանջի եորքն իրաւունքն իր։ Ահա՛ թէ ինչու ես պիտի կանգնեմ նեւիլների մօտ եւ սէրս ցոյց տամ հպարտ դուքս հեմֆրուն։ Բայց ես կ՝որսամ պահն յարմարառիթ եւ կը պահանջեմ անգլիայի թագը, քանզի ոսկեղէն նպատակն այս է։ Ո՜չ, չի կողոպտի իրաւունքներս լանկաստերն հպարտ, չի՛ բռնի մանկան ձեռքով գայիսոն, եւ չի զարդարի ճակատը թագով, ում աղօթասէր բնոյթը հոգու պատշաճ չէ թագին։ Համբերի՛, դու եորք, կը գայ ժամն, անշու՛շտ երբ ուրիշները քնած կը լինեն,

դու հսկիր արթուն, ձգտիր թափանցել երկիր իշխելու գաղտնիքների մէջ։ Սպասի՛ր։ Հենրին մինչ իր կնոջից սիրոյ բերկրանքի յագուրդը կ՝առնի այդ ամուսնութիւնն, աւա՜ղ, թանկ նստեց տէրութեան վրայ, մինչ գլոստերը իշխանների հետ կը սկսի գժտուել, դու բարձրացրու վարդը կաթնաթոյր, թող նրա բոյրով օդը արբենայ։ Դրօշիս վրայ պէտք է փողփողայ զինանշանս, երբ կռուի մտնեմ լանկաստերի գոռոզ տոհմի հետ, եւ ես կը ստիպեմ, որ թագն ինձ զիջի կամա-ակամայ քանզի գրքային օրէնքներով է անգլիան կործանում։ [Exits.]

]0[

## ACT I SCENE II

Gloucester's house The Duke and Duchess, Eleanor, enter

### DUCHESS.

Ինչո՞ւ է տէրը իմ այսպէս խոնարհուել, ասես թէ լինի մի հասուն ցորեն գլուխը թեքել մայր ցերերայի առատ շնորհից, ինչո՞ւ է մեծ դուքսն յօնքերը կիտել, կարծես հերքում է բարիքն աշխարհի, ինչո՞ւ է տէրն իմ աչքերը յառել չարաշուք գետնին, կարծես տեսնում է իր մռայլութեան պատճառը այնտեղ։ Ի՞նչ ես դու տեսնում։ Գուցէ հենրիի թագը՞ ոսկեձոյլ՝ զարդարուած անթիւ փառքով աշխարհի։ Եթէ այդպէս է, դու ձգտի՛ր նրան, գետնաքարշ սողա՛, սողա, մինչեւ որ թագը զարդարի քո ճակատն հպարտ։ Տարածի՛ր ձեռքդ, նուաճի՛ր, տէր իմ, այդ վսեմ ոսկին, բայց միթէ՞ ձեռքդ կարճ է, չի հասնում այն դէպքում ես իմ ձեռքը կ՝երկարեմ։ Եթէ երկուսով մենք բարձրացնենք թագը ոսկեձոյլ, գիտցիր, երկուսով մեր գլուխները կ՝ամբառնան երկինք, եւ չենք խոնարհի մեր հայեացքն երբեք եւ գէթ մի ակնարկ չենք նետի գետնին։

### GLOUCESTER.

Օ՜, նել, քա՜ղցր նել, թէ սիրում ես ինձ, վանի՛ր փառասէր մտքերիդ որդը։ Ա՜խ, թէ ուզենամ չարութիւն գործել իմ թագաւորի եւ եղբօրորդու՝ ազնիւ ու պարկեշտ հենրու նկատմամբ, թող վերջին շունչն իմ այստեղ աւարտեմ, անցուոր աշխարհում։ Ա՜խ, այս գիշերուայ խռովեալ երազն ինձ շատ է տանջում։

### DUCHESS.

Ի՞նչ երազ, ասա՛, ես կը հատուցեմ իմ առաւօտեան քաղցր երազով։

### GLOUCESTER.

Ինձ թուաց, թէ մէկն այս գաւազանը՝ սիմուոլն իմ դիրքի, երկու կէս արեց, բայց նրա դէմքը ես պարզ չեմ յիշում, կարծես թէ լինէր լորդ կարդինալը։ Կոտրած մականի երկու ծայրերին տեսայ Սեֆոլկի ու սոմերսետի գլուխն արիւնոտ։ Սա իմ երազն էր, աստուած կ՝իմանայ՝ ինչ է գուշակում։

### DUCHESS.

Տէր իմ, փուչ բան է, սա ցոյց է տալիս, թէ ով կը փորձի ծառի ճիւղ ջարդել գլոստերի այգում, նա կը հատուցի միայն իր գլխով։ Բայց լսիր, հեմֆրի, սիրելի իմ դուքս, երազում տեսայ, որ արքայական գահին եմ բազմել վեստմինստերի շքեղ տաճարում, ուր արքաները, թագուհիներն են թագով պսակւում, ուր հենրին տիկին մարգարիտի հետ խոնարհւում է ինձ, եւ պսակում է ճակատս թագով։

GLOUCESTER.
Պէտք է նախատեմ քեզ, իմ Էլէանոր, փառասէր դու կին, անխի՛ղճ Էլէանոր, միթէ՞ տէրութեան երկրորդ կինը չե՞ս, կինը հովանու, որ սիրում է քեզ, միթէ՞ աշխարհի հաճոյքներն ամէն ծառաներդ չեն, որ վեր են քո բիւր ցանկութիւններից, բայց նորի՞ց դաւ ես դու ուզում հիւսել, որ քո ամուսնուն եւ քեզ գլորես փառքի գագաթից անդունդն ամօթի։ Հեռացիր, ոչինչ չեմ ուզում լսել։

DUCHESS.
Ի՞նչ, ի՞նչ, սիրելի՛ս, բարկանո՞ւմ ես դու քո կնոջ վրայ լոկ այն պատճառով, որ նա քեզ պատմեց իր մէկ երազը։ Լա՛ւ, յաջորդ անգամ ես լուռ կը մնամ, որ չկշտամբես։

GLOUCESTER.
Ո՛չ մի՛ վշտանայ, բարկութիւնս անցաւ։

*[Messenger enters.]*

MESSENGER
Լորդ խնամակալ, նորին մեծութեանն հաճելի է խիստ, որ պատրաստ լինէք մեկնել սուրբ օլբենս, ուր բազէներով մեր բարի արքան իր թագուհու հետ որսի է գնում։

GLOUCESTER.
Ես հիմա կը գամ։ Դեհ, գնանք նելլի, չէ՞ որ ուզում ես։

DUCHESS.
Այո՛, սիրելիս, քեզ կը հետեւեմ։

*[Gloucester and Messenger exit.]*

DUCHESS [cont.]
Պէտք է հետեւեմ։ Չեմ կարող հիմա քեզ առաջնորդել, քանի դեռ հեմֆրին ունի այդպիսի մտածելակերպ։ Թէ ես լինէի տղամարդ, մի դուքս կամ թէ արիւնով արքային շատ մօտ, այնժամ այս տաղտուկ եւ ինձ խանգարող արգելքներն ամբողջ ես կը փշրէի ու կը հարթէի իմ ճանապարհը նրանց անգլուխ ուսի վրայով։ Բայց կին լինելով՝ ես պէտք է դարձեալ փութամ խաղալու ճակատագրի շքեղ հանդէսում ստանձնած դերս։ Որտե՞ղ ես դու, ջոն։ Օ՛, մի՛ վախենա, մենք միայնակ ենք ոչ մի մարդ չկայ։

*[Hume enters.]*

HUME.
Ձերդ վեհութեան յիսուսն օգնական։

DUCHESS.
Ի՞նչ ասացիր դու վեհութի՞ւն, ա՛խ, ոչ։ Ծառադ իմ, ասա՝ ձերդ մեծութիւն։

HUME.
Բայց աստծոյ բարի ողորմածութեամբ, իւմի խորհրդով ձերդ մեծութեան տիտղոսն անկասկած պէտք է բազմանայ։

DUCHESS.
Ի՞նչ ես ասում դու։ Միթէ՞ խորամանկ կախարդ մարջերին, վիուկ ռոջերը խոստացել են քեզ՝ ինձ նեցուկ լինել։

HUME.
Ձերդ մեծութիւն, նրանք խոստացան մի ոգի կանչել երկրի ընդերքից, որը պատրաստ է բոլոր հարցերիդ պատասխան տալու։

DUCHESS.
Բա՛ւ է։ Կը խորհեմ այս հարցերի շուրջ։ Երբ սուրբ օլբենսից մենք վերադառնանք, գլուխ կը բերենք գործն ամբողջովին։ Ահա՛ քո վարձը, վերցրո՛ւ, ջոն իւմ, եւ ուրախացի՛ր ընկերներիդ հետ այս խիստ կարեւոր գործի առիթով։ [Exits.]

HUME.
Ջոն իւմը պէտք է դքսուհու ոսկով լաւ ուրախանայ, այդպէս էլ կ՝անեմ։ Բայց զգո՛յշ դո՛ւ, իւմ, շուրթերդ կնքիր, գործն է պահանջում համր ու անշշունչ գաղտնապահութիւն։ Հպարտ դքսուհին ոսկի է տալիս, որ ես վիուկին բերեմ իրեն մօտ, պէտք է վերցնել, թէկուզ տալիս է ոսկին սատանան։ Ոսկի ճանճերը թռչում են ինձ մօտ եւ ուրիշ ափից, ես չեմ յանդգնում ասել, թէ ոսկին գրպանս են դնում կարդինալն հարուստ եւ դուքս սեֆոլկը՝ նորաթուխ ու մեծ։ Բայց դա այդպէս է։ Ճշմարիտն ասած։ Լաւ ճանաչելով հպարտ դքսուհու փառատենչ ոգին՝ կաշառել են ինձ, որ դքսուհու դէմ ես դաւեր լարեմ ու խարդաւանքի մասին շշուկով ականջը լցնեմ։ Ասում են՝ կեանքում ճարպիկ խաբեբան երբեք չի զգում միջնորդի կարիք, բայց ես Սեֆոլկի ու կարդինալի միջնորդն եմ դարձել։ Իւ՛մ, զգո՛յշ եղիր։ Դու յանդգնում ես նրանց երկուսին խաբեբայ կոչել։ Այո՛, այդպէս է գործի վիճակը։ Բայց վախենում եմ, որ ես դքսուհուն խաբեբայութեամբ կործանեմ ընդմիշտ եւ նրա հետ էլ՝ հռչակը դուքսի։ Ինչ փոյթ, ես պէտք է ստանամ ոսկի։ [Exits.]

][][

ACT I. SCENE III.
London. The Palace. Three Petitioners enter along with Peter, the Armourer's man.

PETITIONER I.
Աւելի մօտիկ կանգնենք, պարոններ։ Լորդ խնամակալը այս ճանապարհով անցնելու է հիմա, եւ մենք կարող ենք յանձնել մեր խնդրագրերը։

PETITIONER II.
Ի հարկէ, աստուած նրան պահի։ Նա բարի մարդ է։ Յիսո՛ւս օրհնիր նրան։

PETER.
Կարծես գալիս է, հետն էլ՝ թագուհին։ Տես, առաջինը ես եմ մօտենում։

*[Suffolk and the Queen enter.]*

PETITIONER II.
Ետ դարձիր, ապո՛ւշ, սա դուքս սեֆոլկն է եւ ոչ թէ պարոն խնամակալը։

SUFFOLK.
Ի՞նչ ես կամենում, բարեկա՛մ, որեւէ բա՞ն ես ինձանից խնդրում։

PETITIONER I
Ներեցէք, տէր իմ, ձեզ լորդ խնամակալի տեղը դրեցի։

QUEEN MARGARET.
[Reads] *«Լորդ խնամակալին։»* Դու դիմում ես նորին մեծութեանը՞։ Ինձ տուր, տեսնեմ։ Ի՞նչ ես խնդրում։

PETITIONER I
Ձերդ մեծութեան թողտւութեամբ՝ ես բողոքում եմ ջոն գուդմենի՝ լորդ կարդինալի ծառայի դէմ, որովհետեւ նա խլել է իմ տունը, իմ հողը, իմ կնոջը եւ ամբողջ ունեցուածքս։

SUFFOLK.
Նոյնիսկ կնո՞ջդ։ Սա իսկապէս անիրաւութիւն է։ Իսկ դու ի՞նչ ես ուզում։ Տեսնե՛մ։ [Reads] *«Ես բողոքում եմ դուքս Սեֆոլկի դէմ, որովհետեւ, նա ցանկապատել է մելֆորդի արօտավայրերը։»* Սա ի՞նչ է նշանակում, սրիկա՛յ։

PETITIONER II
Ես, պարոն, մեր ամբողջ քաղաքի անունից լոկ մի խեղճ խնդրարկու եմ։

PETER.
[Handing over the petition.] Բողոքը իմ տիրոջ՝ թոմաս հոռների դէմ է։ Իբրեւ նա ասել է, թէ դուքս եորքը գահի օրինաւոր ժառանգն է։

QUEEN MARGARET.
Ի՞նչ։ Ի՞նչ ես ասում։ Դուքս եո՞րքն է յայտարարել, թէ ինքը գահի օրինաւոր ժառանգն է։

PETER.
Ո՞վ, ի՞մ տէրը։ Ո՛չ, ազնիւ խօսք, ո՛չ նա։ Իմ տէրն ասում է, թէ եորքն է ասել, որ թագաւորը գահն է յափշտակել։

SUFFOLK.
Հէ՜յ, ո՞վ կայ այնտեղ։

*[A Servant enters.]*

SUFFOLK [cont.]
Տարէ՛ք այս մարդուն եւ ոստիկան ուղարկեցէք նրա տիրոջ ետեւից։ Մենք կը լսենք քո գործը թագաւորի ներկայութեամբ։

*[The Servant and Peter exit.]*

QUEEN MARGARET.
Դո՛ւք, որ փնտրում էք նորին մեծութեան զոյգ թեւերի տակ խնամակալութիւն, դրէք վերստին ձեր պահանջները եւ դիմէք նրան։

[Tears up their petitions.]

QUEEN MARGARET [cont.]
Դուրս, անպիտաններ։ Սեֆոլկ, վռնդէ՛ք նրանց այստեղից։

[The Petitioners exit.]

QUEEN MARGARET [cont.]
Ասա՛ ինձ, սեֆոլկ, այսպէ՞ս է կարգը, այսպէ՞ս է արդեօք ծէսը արքունի, միթէ՞ այսպէս են այս կղզին վարում, այսպէ՞ս է իշխում արքան ալբիոնի։ Միթէ՞ երեխայ կը մնայ հենրին եւ կ՝իշխէ նրան հեմֆրին դժնադէմ։ Միթէ՞ թագուհու տիտղոսն եմ կրում, որ դառնամ դուքսի հպատակն հլու։ Քեզ եմ ասում, պոլ, երբ տուր քաղաքում իմ սիրոյ պատուին կոտրեցիր նիզակ, եւ ֆրանսիոյ կանանց սիրտը գողացար, ես կարծում էի՝ թագաւոր հենրին քեզ նման քաջ է, սիրալիր ու կիրթ քո հասակն ունի։ Բայց, աւա՜ղ, նրա միտքն ամբողջովին սրբերն են տարել, շշնջում է նա *«Ավե Մարիա,»* համրիչը ձեռքից չի գցում երբեք, նրա նեցուկն են առաքեալներն ու մարգարէները, նրա զէնքերն են դասերը սրբոց, նիզակախաղը՝ ուսումն երազած, եւ սէրն է սրբոց պատկերքն արոյրէ։ Ա՜խ, ես կ՝ուզէի՝ կարդինալների ժողովն իմաստուն նրան պապ ընտրէր ու տանէր հռոմ, որպէսզի եռեակ խոյրով պսակուէր։ Սա է պատշաճում այս մոլեռանդին։

SUFFOLK.
Տիկի՛ն, համբերէ՛ք։ Ես պատճառ դարձայ, որ ֆրանսիայից դուք եկաք անգլիա, ես էլ կը ջանամ, որ դուք գոհ լինէք։

QUEEN MARGARET.
Բացի ամբարիշտ խնամակալից, այստեղ կան մարդիկ՝ բոֆորտը գոռոզ՝ դուքս սոմերսետը, դժկամակ եորքը ու բուկինգեմը, որոնցից նոյնիսկ ամենափոքրը աւելի ուժեղ դիրք ունի երկրում, քան ինքը՝ արքան։

SUFFOLK.
Սրանցից նոյնիսկ ամենաուժեղն անգլիայում չունի նեւիլների պէս մեծ իշխանութիւն։ Չ՞է որ վորուիկը, եւ սօլսբերին դուքս չեն հասարակ։

QUEEN MARGARET.
Այս իշխաններից ոչ ոք ինձ այնպէս չի նեղում, որչափ հեմֆրու կինն հպարտ։ Նա սիրուն տիկնանց շքախմբերով այնպէս է սահում սրահից սրահ, ասես թէ լինի երկրի տիրուհին, ոչ թէ դքսուհի իսկ արքունիքում օտարերկրացիք կարծում են, թէ նա, նա՛ է թագուհին։ Այդ կինը դքսի ողջ եկամտով իր անձն է պճնում, մեր աղքատութիւնն ասես թէ ծաղրում, միթէ՞ չեմ ապրի այնքան ժամանակ, մինչեւ որ առնեմ վրէժս նրանից։ Չէ՞ որ այդ ստոր, նողկալի կինը իր քծնողների գարշ միջավայրում պարծեցել է խիստ, թէ իր հասարակ զգեստի քղանցքն աւելի արժէ քան թէ հայրիկիս կալուածքներն ամբողջ, քանի դեռ սեֆոլկն երկու դքսութիւն չէր տուել նրա աղջկայ համար։

SUFFOLK.
Տիրուհի՛, ինքս եմ թակարդը լարել, եւ հրապուրիչ թռչնոց մի երամ դրել եմ այնտեղ, որ երբ նա լսի դայլայլը նրանց, չկարողանայ տեղից բարձրանալ, ձեզ վշտացնի։ Մոռացէ՛ք նրան, լսէ՛ք, տիրուհի, ես յանդգնում եմ ձեզ տալ մի խորհուրդ թէեւ բոֆորտի աչքի լոյսը չենք, բայց պէտք է նրան եւ իշխաններին իսկոյն միանանք, մինչեւ որ հեմֆրին թագընկէց լինի։ Գալով դուքս եորքին, ապա հազիւ թէ վերջին գանգատից նա մի բան շահի։ Այսպէս կը ջնջենք բոլորին հերթով, ղեկը տէրութեան ձեր ձեռքը կ՝առնէք։ Շեփորներ։

*[The King, Gloucester, Beaufort, Buckingham, York, Somerset, Salisbury, Warwick and Duchess all enter.]*

KING HENRY.
Ազնիւ իշխաններ, ես սոմերսետի ու եորքի միջեւ չեմ դնում երբեք ոչ մի խտրութիւն։

YORK.
Թէ ֆրանսիայում՝ եորքի գործերը վատ են ընթացել, թող հրաժարուի իշխանութիւնից։

SOMERSET.
Եթէ սոմերսետն յարմար չէ տեղին, ապա թող եորքը կուսակալ լինի, զիջում եմ նրան։

WARWICK.
Դուք արժանի՞ էք, թէ՞ ոչ, այդ մասին պէտք չէ վիճարկել։ Եորքն է արժանի։

CARDINAL.
Փառասէր վորուիկ, թող մեծը խօսի։

WARWICK.
Կռւում կարդինալն ինձանից մեծ չէ։

BUCKINGHAM.
Բայց ներկաները շատ մեծ են քեզնից։

WARWICK.
Վորուիկը կ՝ապրի բոլորից էլ շատ։

SALISBURY.
Հանգիստ զաւա՛կս։ Բուկինգեմ, ցոյց տո՛ւր որեւէ մի փաստ, որ սոմերսետին մենք բարձր ենք դասում մեր ազնիւ եորքից։

QUEEN MARGARET.
Չի թագաւորն է այդպէս կամենում։

GLOUCESTER.
Տիրուհի՛ արքան մեծ է բաւական, եւ նա կարող է իր կարծիքն ասել։ Սա կնոջ գործ չէ։

QUEEN MARGARET.
Եթէ նա արդէն այր է մի հասուն, ապա ձեզ նման խնամակալի կարիքը չունի։

GLOUCESTER.
Ես հովանին եմ նրա տէրութեան, եթէ նա ուզի, ձերդ մեծութիւն, տեղս կը զիջեմ։

SUFFOLK.
Թող տեղդ, հետն էլ յանդգնութիւնդ։ Այն օրից, ինչ դու դարձար թագաւոր (ո՞վ էր, ո՞ր արքան եթէ ոչ հեմֆրին) երկիրն օրէցօր դու տարար անկման։ Մեզ ծովից այն կողմ դոֆինն էր յաղթում, իսկ մեր տէրութեան իշխաններն ամէն ձերդ մեծութեան ստրուկներն էին։

CARDINAL.
Դու ժողովրդին խիստ թալանեցիր, եւ եկեղեցու գանձատունն հարուստ սաստիկ նիհարեց քո շորթումներից։

SOMERSET.
Քո կնոջ զարդերն ու պալատներդ վնաս բերեցին մեր գանձարանին։

BUCKINGHAM.
Քո դաժանութիւնն այնպէս էր պատժում յանցաւորներին, որ օրէնքն անգամ նսեմանում էր այդ քեզ են յանձնում ողորմածութեանն արդար օրէնքի։

QUEEN MARGARET.
Դու ֆրանսիայում պաշտօն ես ծախել եւ քաղաքների առեւտուր արել եթէ հաստատուի այդ մեծ յանցանքը, դու առանց գլխի պէտք է ցատկոտես։

*[As Gloucester exits the Queen drops her fan.]*

QUEEN MARGARET [cont.]
[To the Duchess.]Տո՛ւր իմ հովհարը։ Չե՞ս ուզում, թռչնի՛կ։

*[As the Duchess bends to collect the fan the Queen slaps her.]*

QUEEN MARGARET [cont.]
Ա՛խ, այդ դո՞ւք էիք ներէք, դքսուհի։

DUCHESS.
Այո՛, ես ինքս, գոռոզ ֆրանսուհի։ Թէ ինձ յաջողուէր քո գեղեցկութեանն ընդհուպ մօտենալ իմ եղունգներով, ապա քո դէմքին կը կնքէի տասը պատուիրանները։

KING HENRY.
Բարի հօրաքոյր, դուք հանգստացէք, նա սխալ վարուեց։

DUCHESS.
Օ՛, սխալ վարուեց։ Ողորմած արքայ, պէտք է սթափուել, ձեզ կը բարուրի եւ ձեզ կ՝օրօրի երեխայի պէս։ Ա՛խ, թէեւ այստեղ տէրը գլխաւոր չի հագնում տաբատ, բայց Էլէանորը կ՝առնի իր վրէժն ապտակի համար։ [Exits.]

BUCKINGHAM.
Կարդինալ, պէտք է սրան հետեւեմ տեսնեմ, թէ հեմֆրին ինչ է անելու, այնպէս նա խոցուեց, որ այժմ նրա կատաղութիւնը կարիք չի զգում ոչ մի խթանի նա քառասմբակ վարգում է դէպի իր կործանումը։ [Exits.]

*[Gloucester re-enters.]*

GLOUCESTER.
Այժմ, իշխաններ, երբ իմ բարկութիւնն անց կացաւ լրիւ, քանզի միայնակ ես զբօսնեցի բակում պալատի, եկայ, որ խօսենք պետական գործից։ Գալով ձեր քինոտ եւ խիստ ստայօդ ամբաստանանքին, ապա ցոյց տուէք, եւ ես կ՝ենթարկուեմ օրէնքին, տեա՛րք իմ։ Թող աստուած

վարուի հոգուս հետ այնպէս ինչպէս սիրում եմ իմ թագաւորին ու իմ երկիրը։ Բայց դառնանք գործին, որ ձեռք ենք զարնել ասում եմ, տէր իմ, բոլոր լորդերից եորքն է միակը, որ ֆրանսիայում կարող է լինել ձեր կուսակալը։

SUFFOLK.
Նախքան ընտրութիւնն ինձ թողէք, որ ես ցոյց տամ կարեւոր մի քանի պատճառ, թէ ինչու եորքը բնաւ յարմար չէ այդ տեղի համար։

YORK.
Կ՝ասեմ, թէ ինչու յարմար չեմ, սեֆոլկ նախ որ չեմ քծնում հպարտութեանդ, ապա՝ եթէ ինձ այդ պաշտօնը տան, ինձ լորդ սոմերսետն այնտեղ կը պահի առանց պարէնի, առանց դրամի, մինչեւ որ դոֆինն յաղթի այդ երկրում։ Ես վերջին անգամ նրա երգի տակ պարեցի այնքան, մինչեւ փարիզը ընկաւ հիւծուելով։

WARWICK.
Կարող եմ ասել, ոչ մի դաւաճան նման նողկալի արարք չի գործել իր երկրի հանդէպ։

SUFFOLK.
Լռի՛ր, կամակոր ու յամառ վորուիկ։

WARWICK.
Զազրելի՛ պատկեր, ստիպում ես ինձ լռել քո առաջ։

*[Horner and Peter enter, under guard.]*

SUFFOLK.
Ահա այն մարդը՝ դաւաճանութեան ամբաստանութեամբ, տայ աստուած, որ դուքս եորքն արդարանայ։

YORK.
Բայց կա՞յ մէկն այստեղ ինձ մեղադրող։

KING HENRY.
Ի՞նչ ես ակնարկում, սեֆոլկ, ասա ինձ, ովքե՞ր են սրանք։

SUFFOLK.
Ազնիւ վեհապետ, ձեր թողտուութեամբ, ահա այն մարդը, որ իր տիրոջը ամբաստանում է որպէս դաւաճան ահա՛ եւ նրա բառերը բոլոր եորքն օրինաւոր ժառանգն է գահի, իսկ դուք՝ թագաւոր, թագ յափշտակող։

KING HENRY.
Ով մա՛րդ, ասե՞լ ես դու այդ բառերը։

HORNER.
Ներեցէք, ձերդ ողորմածութիւն, ես երբեք չեմ ասել ու չեմ մտածել նման որեւէ բան։ Աստուած է վկայ, որ այս սրիկան ինձ զրպարտում է։

PETER.
[Holding up his hand.] Երդւում եմ, իշխաններ, այս տասը ոսկորով, որ նա է ինձ ասել մի գիշեր, երբ ձեղնայարկում մաքրում էինք դուքս եորքի զէնքերը։

YORK.
Ստոր աղբահա՛ն, կեղտոտ սրիկայ, այս խօսքիդ համար պէտք է հատուցես միայն քո գլխով։ Ձերդ մեծութիւն, աղերսում եմ ձեզ նրան օրէնքի խստութեամբ պատժել։

HORNER.
Աւա՛ղ, տէր իմ, թող ինձ կախեն, եթէ երբեւէ ես եմ ասել այս բառերը։ Ինձ մեղադրողն իմ ենթավարպետն է։ Օրերս, երբ նրան իր մեղքի համար պատժեցի, նա երդուեց, որ ինձ հետ հաշիւ կը մաքրի։ Այդ կարող են վկայել արդարախօս մարդիկ, ուստի ձերդ վեհութեանը պաղատում եմ, որ չկորցնէք մի ազնիւ մարդու՝ մի սրիկայի ամբաստանութեամբ։

KING HENRY.
Հօրեղբայր, օրէնքն ի՞նչ է պահանջում նման դէպքերում։

GLOUCESTER.
Ահաւասիկ, տէր իմ, վճիռն իմ արդար թող սոմերսետը լինի կուսակալ ողջ ֆրանսիայում, զի կասկածում էք դուքս եորքի վրայ։ Գալով այս մարդկանց՝ սահմանէք մի օր եւ յարմար մի տեղ մենամարտելու, որովհետեւ տէրն ապացոյց ունի, որ ոխակալ է ծառան իր հանդէպ այսպէս է օրէնքն ու վճիռն հեմֆրու։

KING HENRY.
Թող այսպէս լինի։ Իշխան Սոմերսետ, ձեզ հաստատում ենք որպէս կուսակալ։

SOMERSET.
Ես խոնարհաբար շնորհակալ եմ, ձերդ մեծութիւն։

HORNER.
Ես ընդունում եմ մարտն յօժարութեամբ։

PETER.
Աւա՛ղ, տէր իմ, չեմ կարող կռուել։ Ի սէր աստծոյ, ինձ գթացէք։ Մարդկային ոխը խորտակում է ինձ։ Օ՛,

աստուա՛ծ, ինձ խնայի՛ր։ Ես չեմ կարող նոյնիսկ մի հարուած հասցնել։ Օ՛, աստուա՛ծ, իմ սիրտը։

GLOUCESTER.
Սրիկա՛յ, պէտք է դու մենամարտես կամ թէ կախաղան շուտով բարձրանաս։

KING HENRY.
Տարէք նրանց բանտ։ Թող մենամարտեն յաջորդ ամսուայ ճիշտ վերջին օրը։ Գնա՛նք, Սոմերսետ, քեզ պէտք է ճամփենք։

*[They exit.]*

]{}[

ACT I. SCENE IV.
London. Gloucester's garden. The witch, Margery Jourdain, enters with two priests, Hume and Southwell, as well as Bolingbroke.

HUME.
Եկէ՛ք, սիրելինե՛րս, ասում եմ ձեզ, որ դքսուհին ձեր խոստումի կատարմանն է սպասում։

BOLINGBROKE.
Պարոն իմ, պատրաստ ենք։ Դքսուհին արդեօք ուզո՞ւմ է դիտել մեր ոգեհարցուկը։

HUME.
Ի հարկէ։ Այլ կերպ՝ ինչպէ՞ս կը լինի։ Վստահէք նրա քաջութեանը։

BOLINGBROKE.
Լսել եմ, որ այդ կինը աննկուն ոգի ունի։ Բայց յարմար է, որ դուք, պարոն իմ, կանգնէք նրա գլխավերը, քանի դեռ մենք զբաղուած կը լինենք ներքեւում։ Եւ այսպէս, գնացէք, տէր ընդ ձեզ, մեզ թողէք մենակ։

*[Hume exits.]*

BOLINGBROKE [cont.]
մայրիկ ջորջեն, պառկի՛ր՝ երեսդ գետինն ի վար, իսկ դու, ջոն սոութուել, սկսիր կարդալ։ Դե՛հ, գործի անցնենք։

*[Duchess and Hume enter.]*

DUCHESS.
Շատ լաւ, պարոննե՛ր։ Ձեզ բարի գալուստ։ Ի՛ գործ։ Երկաթը տաք-տաք են ծեծում։

BOLINGBROKE.
Բարի տիրուհի՛, համբերէք մի պահ, վհուկներն իրենց ճիշտ ժամը գիտեն սեւաթոյր գիշեր, գիշերուայ անբառ խորունկ լռութիւն, երբ հրդեհւում էր ամբողջ տրոյան, երբ որ բուերն են կանչում ողբաձայն, երբ որ շներն են ոռնում անդադար, երբ ոգիներն են թափառում անտես, եւ ուրուականներն ելնում են իրենց գերեզմաններից, այդ ժամանակն է ամենայարմար այն ազնիւ գործի, որ ձեռնարկում ենք։ Տիրուհի, նստէ՛ք ու մի՛ վախենաք։

*[They form a circle and start to perform a summoning ritual. Bolingbroke reads from a grimoire. Thunder and lightning. A Spirit rises up before them.]*

MARGERY JOURDAIN.
Լսի՛ր, ով ասմաթ։ Յանուն աստծոյ ի յաւիտենից, ում իշխանութեան եւ անուան առջեւ սասանում ես դու, պատասխանի՛ր ինձ զի չես գնայ դու, մինչեւ չխօսես։

SPIRIT.
Հարց տուր, ինչ կ՝ուզես, միայն թէ քեզնից արագ ազատուեմ։

BOLINGBROKE.
[Reads.]«*Ամէնից առաջ կ՝ուզեմ իմանալ՝ ի՞նչ է սպասում մեր թագաւորին։*»

SPIRIT.
Դուքսն ապրում է դեռ, որ թագաւորին գահընկէց անի բայց նա շատ կ՝ապրի եւ կը մահանայ բռնադատ մահով։

BOLINGBROKE.
[Reads.] «*Ի՞նչ է վիճակուած Սեֆոլկին արդեօք։*»

SPIRIT.
Ջրից կը մեռնի, եւ ջուրն էլ նրա վերջը կը դառնայ։

BOLINGBROKE.
[Reads.] «*Ի՞նչ է սպասում դուքս սոմերսետին։*»

SPIRIT.
Թող յաւէրժ խոյս տայ նա դղեակներից։ Աւազուտներում կ՝ապրի ապահով, քան այն վայրերում, ուր դղեակներն են բարձրադիր կանգնած։ Դեհ, վերջացրո՛ւ, արդէն չեմ կարող, ժամն է գնալու։

BOLINGBROKE.
Իջի՛ր ի խաւար եւ լիճն հրավառ։ Գնա՛, չար ոգի։ Որոտ ու կայծակ։

*[Thunder and lightning. As the Spirit exits Suddenly York, Buckingham and Soldiers burst into the room.]*

YORK.
Բռնէ՛ք այս ստոր դաւաճաններին, յետներն էլ՝ իրենց խեշերանքներին, ջադո՛ւկ, քայլ առ քայլ հետեւել ենք քեզ։ Օհ〇՛, տիրուհի, դուք էլ է՞ք այստեղ։ Ձեզ թագաւորը եւ պետութիւնը խորապէս պարտ են այս գործի համար ես չեմ կասկածում, որ լորդ հովանին ձեզ կը հատուցի այս գործի համար հաւուր պատշաճի։

DUCHESS.
Վատ չէ այս գործը կիսով չափ անգամ, քան թէ այն, որ դու, դուքս վտանգաւոր, դաւեր ես նիւթում հենրու նկատմամբ առանց պատճառի։

*[She shows Buckingham her papers.]*

BUCKINGHAM.
Դո՛ւրս տարէք նրանց։ Թող զնդան դնեն ու պահեն զատ-զատ։ Իսկ դուք, տիրուհի, գալու էք մեզ հետ։ Լսի՛ր, ստեֆորդ, տա՛ր նրան քեզ հետ։ Մենք դատարանում կը դիտենք ձեր այս խաղալիքները։ Դե՛հ, շուտ գնացէք։

*[All exit save York and Buckingham.]*

YORK.
Ազնիւ բուկինգեմ, կարծես թէ նրան լաւ հետեւեցիք։ Գեղեցի՛կ հնարք, որն օգուտ կը տայ մեր նպատակին։ Արդ, միլորդ, կարդանք վճիռը սատանայի տեսնենք, թէ ինչ կայ։ [Reads.] *«Դուքսն ապրում է դեռ, որ թագաւորին գահընկէց անի, բայց նա շատ կ՝ապրի եւ կը մահանայ բռնադատ մահով։»* Իսկ եւ իսկ սա է՝ *«Aio te, aeacida, romanos vinecere posse»* Լաւ, մի տես վերջը *«Ի՞նչ է վիճակուած Սեֆոլկին արդեօք։» «Ջրից կը մեռնի, եւ ջուրն էլ նրա վերջը կը դառնայ։» «Ի՞նչ է սպասում դուքս սոմերսետին։» «Թող յաւէրժ խոյս տայ նա ղղեակներից։ Աւազուտներում կ՝ապրի ապահով, քան այն վայրերում, ուր ղղեակներն են կանգնած բարձրադիր։»* Այո՛, պարոննե՛ր, մեզ դժուարութեամբ այս վճիռն հասաւ, դժուարութեամբ էլ պէտք է հասկանալ։ Թագաւորն այժմ առաջանում է դէպի սենտ օլբենս, հետն էլ՝ ամուսինն այս չքնաղ կնոջ։ Որքան կարող են, ձիուց էլ արագ, այնտեղ են տանում լուրերն այս տխուր, որ թունոտ մի ճաշ կը դառնան հեմֆրուն։

BUCKINGHAM.
Թոյլ չի՞ տայ արդեօք եորքի մեծ դուքսը, որ ես այս անգամ լինեմ սուրհանդակ, յոյս ունեմ, որ նա ինձ կը հատուցի։

YORK.
Թէ հաճոյ է ձեզ, իմ բարի իշխան։ Հէ՛յ, ո՞վ կայ այնտեղ։

*[A Servant enters.]*

YORK [cont.]
Խնդրիր վորուիկին ու սօլսբերուն, որ ինձ հետ ընթրեն վաղն երեկոյեան։

*[They all exit.]*

][][

## ACT II. SCENE I.

Saint Albans. The King and Queen enter, out on a hunt, followed by Gloucester, Cardinal, and Suffolk, with falconers *hallooing* in the background.

QUEEN MARGARET.
Հաւատացէք ինձ, ազնիւ իշխաններ, եօթ տարուց ի վեր ես չէի տեսել այսպիսի յաջող թռչունների որս։ Բայց ի բարձունս փչում էր քամին, չէր կարող նոյնիսկ ծեր բազէն թռչել։

KING HENRY.
Բայց ինչպէ՛ս ճախրեց, միլորդ, ծեր բազէն, եւ ինչպէ՛ս նետուեց նա բոլորից վեր։ Ինչպէ՛ս է աստծոյ արարքն երեւում հէնց իր արարած էակների մէջ, ե՛ւ մարդ, ե՛ւ թռչուն բարձունք են ձգտում։

SUFFOLK.
Ես չեմ զարմանում, որ լորդ հովանու բազէներն այսքան բարձրից են ճախրում, զի նրանք գիտեն, որ իրենց տէրը սիրում է ճախրել բարձունքներն ի վեր եւ իւր մտքերով իր բազէներից հեռու սլանալ։

GLOUCESTER.
Միլորդ, միայն նենգ ու ստոր ոգին չի ձգտում ճախրել թռչունից բարձր։

CARDINAL.
Այո՛, տենչում է ամպերից նա վեր։

GLOUCESTER.
Իսկ դուք, կարդինալ, ի՞նչ էք մտածում, միթէ՞ չէք ուզում երկինք համբառնալ։

KING HENRY.
Յաւէրժ բերկրանքի գանձատուն մտնել։

CARDINAL.
Դու երկրի վրայ գտար երկինքդ, քո աչքն ու միտքը գամուած են թագին՝ գանձատանն հոգուդ։ Դու վտանգաւոր լորդ խնամակալ, չարակամ իշխան, քծնում ես անվերջ ե՛ւ թագաւորին, ե՛ւ ժողովրդին։

GLOUCESTER.
Միթէ՞, կարդինալ, պատշաճում է քեզ գոռոզութիւնը tantaene animis caelestidus irae?1 պէտք է

բարեպաշտն այսպէս տաքանա՞յ։ Բարի հօրեղբայր, գուցէ թաքցնես քո չարութիւնը հէնց քո սրբութեամբ։

SUFFOLK.
Օ՛, չարութիւն չէ, բայց քիչ աւելի, քան ինչ վայել է մի արդար կռուի եւ նոյնքան մի վատ ազնուականի։

GLOUCESTER.
Ինչպէս ո՞վ, միլորդ։

SUFFOLK.
Այո՛, ինչպէս դուք։ Որ լորդ հովանու մեծ տիտղոս ունէք։

GLOUCESTER.
Սեֆոլկ, անգլիայում բոլորը գիտեն, որ լպիրշ ես դու։

QUEEN MARGARET.
Իսկ դու՝ փառասէր։

KING HENRY.
Խնդրում եմ, հանգիստ, բարի թագուհի։ Պէտք չէ գրգռել այս խիստ մոլեգին իշխաններին, զի երանելի հաշտարարներ են ի վերա երկրի։

CARDINAL.
Այո՛, թող կոչուեմ ես երանելի, զի խաղաղութիւն կարգում եմ սրով՝ ընդդէմ այս գոռոզ խնամակալի։

GLOUCESTER.
[Aside to Cardinal] Օ՛, սուրբ հօրեղբայր, հաւատա դու ինձ, երազում եմ ես դրան հասնելու։

CARDINAL.
[Aside to Gloucester] Կարո՞ղ ես, փորձի՛ր։

GLOUCESTER.
[Aside to Cardinal] Դու խառնակիչներ չբերես քեզ հետ, սեփական անձդ թող պատասխանի վիրաւորանքիդ։

CARDINAL.
[Aside to Gloucester] Դու չես յանդգնի, եթէ յանդգնես, ուրեմն՝ կը գաս հէնց այս երեկոյ ծայրը պուրակի։

KING HENRY.
Ի՞նչ էք զրուցում, բարի իշխաններ։

CARDINAL.
Հաւատա, գլոստեր, եթէ քո ծառան հաւքը չբռնէր խիստ յանկարծակի, մեր որսն աւելի յաջող կը լինէր։ [Aside to Gloucester] Կը բերես քեզ հետ քո սուրը ռազմի։

GLOUCESTER.
Անշո՛ւշտ, հօրեղբայր։

CARDINAL.
[Aside to Gloucester] Տե՛ս, չմոռանաս ծայրը պուրակի։

GLOUCESTER.
[Aside to Cardinal] Շատ լաւ, կարդինալ։

KING HENRY.
Ի՞նչ էք զրուցում, հօրեղբայր գլոստեր։

GLOUCESTER.
Շատախօսում ենք մեր բազէներից եւ ուրիշ ոչինչ։ [Separately to Cardinal] երդւում եմ, տէրտէ՛ր, աստուածամօրով, դու հասցրել ես ինձ վիրաւորանք, գիտցիր, ես պիտի մօրուքդ խուզեմ, թէ չեմ մոռացել ձեռքս սուր առնել։

CARDINAL.
[Aside to Gloucester] Լորդ խնամակալ, ինքդ քեզ խնամիր։

KING HENRY.
Քամին սաստկացաւ, նրա հետ, տեարք իմ, ձեր բարկութիւնն էլ։ Այս ի՞նչ տաղտկալի երաժշտութիւն է սիրտս սղոցում։ Երբ որ այսպիսի լարեր են բախւում, ներդաշնակութեան ոչ մի յոյս չկայ։ Թոյլ տուէք, տեարք իմ, ձեզ հաշտեցնել։

*[A Citizen of St. Albans enters, shouting "Miracle!"]*

GLOUCESTER.
Այս ի՞նչ աղմուկ է։ Ա՛յ մարդ, ի՞նչ հրա՛շք, ի՞նչ ես քարոզում։

CITIZEN.
Օ՜, հրա՜շք, հրա՜շք։

SUFFOLK.
Մօտ եկ արքային ու պատմիր նրան հրաշքիդ մասին։

CITIZEN.
Երդուում եմ, տէր իմ, չի անցել կէս ժամ, երբ սենտ օլբենսի խորանի առաջ մի մարդ, որ կեանքում աչքի լոյս չունէր, հրաշքով տեսաւ։

KING HENRY.
Օրհնեալ է աստուած, զի հաւատացեալ ոգուն լոյս կը տայ գրկում խաւարի, իսկ վհատեալին՝ մխիթարութիւն։

*[Mayor of Saint Albans and his brethren enter, bearing Simpcox between them in a chair; his Wife and a multitude follow.]*

CARDINAL.
Ահա՛ գալիս են քաղաքացիներն արարողութեան որպէսզի մարդուն ձեզ ներկայացնեն, ձերդ մեծութիւն։

KING HENRY.
Մեծ է այս մարդու սփոփանքն այստեղ՝ երկրային հովտում, բայց տեսողութեամբ բազմապատկւում են նրա մեղքերը։

GLOUCESTER.
Ճանապարհ բացէ՛ք։ Մօ՛տ բերէք նրան, արքան ուզում է նրա հետ խօսել։

KING HENRY.
Բարի մարդ, պատմիր, թէ ինչպէս եղաւ, որ մենք էլ քեզ հետ մեծարենք աստծուն։ Ի՞նչ։ Եղե՞լ ես կոյր։ Եւ տեսնո՞ւմ ես արդ։

SIMPCOX.
Ձերդ մեծութիւն, ես կոյր եմ ծնուել։

WIFE.
Այո՛, նա կոյր էր։

SUFFOLK.
Ո՞վ է այս կինը։

WIFE.
Այս մարդու կինն եմ, ձերդ մեծութիւն։

GLOUCESTER.
Եթէ լինէիր դու մայրը նրա, ապա ամէն ինչ կ՝ասէիր ճշտիւ։

KING HENRY.
Որտե՞ղ ես ծնուել։

SIMPCOX.
Բերուիկում, տէր իմ։

KING HENRY.
Խե՛ղճ մարդ։ Քեզ աստուած բարութեամբ նայեց, դու ամէն գիշեր եւ ամէն ցերեկ, յիշիր, թէ ինչպէս քեզ օգնեց աստուած։

QUEEN MARGARET.
Ասա՛, բարի մարդ, եկար սուրբ խորան դու պատահաբա՞ր, թէ՞ աստուած դրդեց, որ աղօթք անես։

SIMPCOX.
Ա՛խ, աստուած գիտի, աղօթքի համար։ Ինձ հազար անգամ, նոյնիսկ աւելի, սուրբ օլբեսն էր քնիս մէջ ասել «սիմպկոքս, դու յաճախ իմ խորանն արի, քեզ կ՝ապաքինեմ։»

WIFE.
Ճշմարտութիւն է։ Յաճախ եմ լսել, թէ այդ ձայնն ինչպէս կանչում էր նրան։

CARDINAL.
Ի՞նչ, դու ե՛ւ կա՞ղ ես։

SIMPCOX.
Այո՛, թող աստուածն ամենակարող օգնի թշուառիս։

SUFFOLK.
Ինչպէ՞ս պատահեց։

SIMPCOX.
Ծառից վայր ընկայ։

WIFE.
Սալորի ծառից, ձերդ բարձրութիւն։

GLOUCESTER.
Վաղո՞ւց դու կոյր ես։

SIMPCOX.
Ես կոյր եմ ծնուել։

GLOUCESTER.
Եւ կարողացար ծառը մագլցե՞լ։

SIMPCOX.
Տէր իմ, մի անգամ իմ ամբողջ կեանքում, երբ ջահէլ էի։

WIFE.
Նա ճիշտ է ասում, եւ մագլցելը թանկ նստեց վրան։

GLOUCESTER.
Դու, անշո՛ւշտ, շատ ես սալորներ սիրել եւ դրա համար կեանքդ ես վտանգել։

SIMPCOX.
Աւա՜ղ, բարի տէր, իմ կինն է սաստիկ սիրում սալորներ եւ ինձ ստիպեց իմ կեանքի գնով ծառը մագլցել։

GLOUCESTER.
Ճարպիկ խաբեբա՛յ, դրանով ոչինչ դու չես վաստակի։ Ցոյց տուր աչքերդ, թարթիր, բաց արա, ըստ իս՝ հիմա էլ դու լաւ չես տեսնում։

SIMPCOX.
Այո՛, շատ պարզ է, ինչպէս ցերեկը, փա՜ռք քեզ, փա՜ռք աստուած, փա՜ռք քեզ, սուրբ օլբենս։

GLOUCESTER.
Ուրեմն, այդպէ՞ս։ Դէ հիմա ասա թիկնոցիս գոյնը։

SIMPCOX.
Կարմիր, ալ կարմիր, ինչպէս արիւնը։

GLOUCESTER.
Շատ լաւ ասացիր։ Իսկ ի՞նչ գոյն ունի իմ այս զգեստը։

SIMPCOX.
Սեւ է ածխի պէս, սեւ, ինչպէս սեւ սաթ։

KING HENRY.
Ինչպէ՞ս։ Դու գիտե՞ս՝ սաթն ինչ գոյն ունի։

SUFFOLK.
Կարծում եմ, որ նա չի տեսել սեւ սաթ։

GLOUCESTER.
Բայց նա տեսել է մինչեւ այս օրը բազում թիկնոցներ ու բազում զգեստ։

WIFE.
Մինչեւ այս օրը երբեք չի տեսել իր ամբողջ կեանքում։

GLOUCESTER.
Ասա ինձ, ա՛յ մարդ, ի՞նչ է անունս։

SIMPCOX.
Աւա՛ղ, չգիտեմ։

GLOUCESTER.
Նրա անունը՞։

SIMPCOX.
Չգիտե՛մ, պարոն։

GLOUCESTER.
Կամ թէ նրանը՞։

SIMPCOX.
նոյնպէս չգիտեմ։

GLOUCESTER.
Իսկ անունդ ի՞նչ է։

SIMPCOX.
Սանդեր սիմպկոքս թէ հաճոյ է ձեզ, ձերդ մեծութիւն։

GLOUCESTER.
Ուրեմն, սանդեր, այստեղ, յանձին քեզ, նստած է քրիստոնեայ աշխարհի ամենասրիկայ խաբեբան։ Եթէ դու կոյր ծնուած լինէիր, այնուամենայնիւ, կարող էիր իմանալ մեր բոլորի անունները, ինչպէս եւ ճանաչել մեր զգեստների գոյնը։ Տեսողութեամբ կարելի է զանազանել գոյները, բայց հնարաւոր չէ բոլորի անունը միանգամից տալ։ Միլորդներ, սենտ օլբենսը հրաշք կատարեց բայց միթէ՞ նա, ով կը կարողանայ վերադարձնել այս կաղի ոտքերը, հմուտ վարպետ չէ՞։

SIMPCOX.
Ո՛, տէր իմ, եթէ կարողանայիք։

GLOUCESTER.
Սենտ օլբենսցիներ, միթէ՞ ձեր քաղաքում չկան դահիճներ ու այնպիսի բան, որ կոչւում է խարազան։

MAYOR.
Ինչպէ՞ս կարող է չլինել, տէր իմ։

GLOUCESTER.
Այդ դէպքում նրանցից մէկին այստեղ ուղարկէք։

MAYOR.
Հէ՜յ, դու, դահիճի ետեւից վազիր։ Գնում է ծառաներից մէկը։

GLOUCESTER.
Այժմ մի նստարան բերէք այստեղ։ [A bench is brought.] սրիկա՛յ, եթէ ուզում ես ինքդ քեզ փրկել մտրակից, ապա թռիր այս նստարանի վրայով եւ փախիր։

SIMPCOX.
Ա՜խ, առանց յենակ չեմ կարող կանգնել, պարո՛ն, ապարդիւն ինձ մի՛ չարչարէք։

*[An Executioner enters with a whip in her hand.]*

GLOUCESTER.
Լա՛ւ, պարոն, մենք քեզ կը ստիպենք, որ գտնես ոտքերդ։ Հէ՜յ դահի՛ճ, մտրակի՛ր, մինչեւ որ թռչի նստարանի վրայով։

EXECUTIONER.
Լսում եմ, տէր իմ։ Հանի՛ր բաճկոնդ։

SIMPCOX.
Աւա՜ղ, պարո՛ն, ի՞նչ անեմ, չեմ կարող կանգնել։

*[Simpcox jumps over the bench and escapes after being hit by the Executioner. The people follow him, shouting "Miracle!"]*

KING HENRY.
Աստուա՛ծ, այս ամէնն ինչպէ՞ս ես տեսնում եւ դու ինչպէ՞ս ես այդքան հանդուրժում։

QUEEN MARGARET.
Ծիծաղելի՜ է, թէ ինչպէս փախաւ։

GLOUCESTER.
Հետապնդեցէ՛ք այդ սրիկային, իսկ այս բոզին էլ այստեղից քշէք։

WIFE.
Այսպէս վարուեցինք՝ կարիքից դրդուած։

GLOUCESTER.
Թող նրանց մտրակեն բոլոր շուկաներում, քանի դեռ չեն հասել բերուիկ, որտեղից եկել են։

*[Mayor, Wife and Executioner all exit.]*

CARDINAL.
Դուքս հեմֆրին հրաշք կատարեց այսօր։

SUFFOLK.
Կաղին ստիպեց փախչել գլխիկոր։

GLOUCESTER.
Ձերի մօտ իմը հրաշք չէ՛, օ՛, ո՛չ, զի դուք մէկ օրում փախցրիք, պարոն, բազում քաղաքներ։

*[Buckingham enters.]*

KING HENRY.
Ի՞նչ լուր է բերել մեր բուկինգեմը։

BUCKINGHAM.
Այնպիսի լուրեր, որ սիրտս է դողում։ Չար մարդկանց մի խումբ հովանու կնոջ՝ լէդի էլէանորի առաջնորդութեամբ ու մասնակցութեամբ, որն այս խուժանի գլուխն է անցել, ձեր տէրութեան դէմ խիստ վտանգաւոր չարիք է նիւթում, գործելով, աւա՜ղ, վհուկների հետ բռնեցինք նրանց յանցանքի վայրում երբ կանչում էին երկրի ընդերքից չար ոգիներին եւ նրանց հարցնում թագաւոր հենրու կեանքից ու մահից, ձերդ վեհութեան մօտիկ մարդկանցից, որոնց մասին դուք աւելի ստոյգ կ՝իմանաք յետոյ։

CARDINAL.
Ուստի ձեր կինը, լորդ խնամակալ, պէտք է անյապաղ լոնդոնում կանգնի օրէնքի առաջ։ Առանձին գլոստերին։ Կարծեմ այս լուրը ձեր զէնքի ծայրը շեղեց մի այլ կողմ այնպէս որ, պարոն, հազիւ թէ ինձ հետ այգում հանդիպէք։

GLOUCESTER.
Փառամո՜լ տէրտէ՛ր, սիրտս մի՛ խոցիր, ա՜խ, ջլատել են ցաւն ու կսկիծը ուժերս բոլոր։ Եւ ես պարտուած եմ, արդ քեզ եմ զիջում, ինչպէս, իմացիր, ես կը զիջէի մի ձիապանի։

KING HENRY.
Օ՛, բարի աստուած, ի՜նչ դժբախտութիւն եւ ի՜նչ աղէտ են չար մարդիկ նիւթում, դրանով իրենց կեանքը կործանում։

QUEEN MARGARET.
Հեմֆրի, գարշ հոտ է փչում քո թոյնից, նայի՛ր ինքդ քեզ, որ մնաս անբիծ։

GLOUCESTER.
Տիկին, ինձ համար, երկինքն է վկայ, ուրիշ մի արքայ, մի երկիր չկայ։ Գալով կնոջն իմ, աւա՛ղ, չգիտեմ, ինչ է պատահել, ինչ որ լսեցի, ինձ վիշտ պատճառեց։ Վեհանձն կին է, բայց եթէ իրաւ, մոռանալով նա առաքինութիւն, գտել է նրանց, ովքեր մրում են մեզ ձիւթի նման, կը վանեմ նրան իմ առագաստից, իմ տոհմիկ տնից, եւ կը դարձնեմ օրէնքին աւար, զի աղարտում է տոհմիս անունը։

KING HENRY.
Տեարք իմ, այս գիշեր կը մնանք այստեղ, իսկ առաւօտեան կը մեկնենք Լոնդոն, որպէսզի գործը նայենք մանրախոյզ եւ պիղծ ու խառնակ յանցագործներին անզիջում կանչենք ի պատասխանի։ Պէտք է կշռել այս դատն օրէնքի արդար նժարով, որպէսզի տեսնենք, թէ ով է արդար եւ ով չարանենգ։

*[They all exit.]*

][][

ACT II. SCENE II.
London. York's garden. York, Salisbury and Warwick enter.

YORK.
Այժմ, իշխաններ, իմ բարի վորուիկ ու սօլսբերի, երբ աւարտել ենք ընթրիքը համեստ, թոյլ տուէք այստեղ ձեզ հետ զրուցել, ձեզնից իմանալ ձեր կարծիքն անխախտ՝ չունե՞մ իրաւունք թագը կրելու։

SALISBURY.
Տէր իմ, այդ մասին ուզում եմ լսել մանրամասնօրէն։

WARWICK.
Սիրելի եորք իմ, պատմիր մէկ առ մէկ, եթէ քո պահանջն արդար է, իրաւ, ապա նեւիլներն աջակից են քեզ։

YORK.
Լսէ՛ք, իշխաններ, Էդուարդ երրորդը եօթ զաւակ ունէր առաջնեկն Էդուարդ, սեւ արքայազն էր՝ իշխանն ուէլսի, երկրորդը ծնուեց վիլեամ հետֆիլդը, ապա՝ լիոնելը, դուքս կլարենսը, նրանից յետոյ գոնտն աշխարհ եկաւ, դուքս լանկաստերը։ Հինգերորդն՝ Էդմոնդ լենգլին, դուքս եորքը, վեցերորդն

եղաւ թոմաս վուդստոքը, դուքս գլոստերը, իսկ վերջում ծնուեց վիլեամ վինձորը։ Սեւ արքայազնը հօրից շուտ մեռաւ՝ միակ ռիչարդին թողնելով ժառանգ։ Սա թագաւորեց Էդուարդ երրորդի մահուանից յետոյ, քանի դեռ հենրի բոլինբրոկը՝ դուքս լանկաստերը, ժառանգը գոնտի եւ աւագ որդին՝ թագադրուած հենրի չորրորդի անուամբ, գահը չգրաւեց, թագընկէց չարեց արքային օրինաւոր, չուղարկեց նրա դժբախտ թագուհուն դէպի ֆրանսիա, ռիչարդին՝ պոմֆրետ, որտեղ, ինչպէս դուք բոլորդ գիտէք, դաւաճանօրէն կեանքից զրկուեց։

WARWICK.
Հայր իմ, ինչ պատմեց դուքսն, ամբողջովին ճշմարտութիւն է լանկաստերները այս ձեւով թագը հափշտակեցին։

YORK.
Որն այժմ նրանք պահում են ուժով, ոչ՝ իրաւունքով։ Երբ մեռնի որդին սեւ արքայազնի, գահ պէտք է ելնի այդ նոյն սերնդի զաւակը յաջորդ։

SALISBURY.
Բայց վիլեամ հետֆիլդն անժառանգ մեռաւ։

YORK.
Երրորդ զաւակը, դուքս կլարենսը, ումից ես հիմա գահ եմ պահանջում, ունէր ֆիլիպա անունով աղջիկ, սա ամուսնացաւ մորտիմերի հետ, որ կոմսն էր մարչի, իսկ նրանց որդին՝ ռոջեր մարչն ունէր երեք զաւակներ՝ Էդմոնդը, աննան եւ Էլէանորը։

SALISBURY.
Բայց այս Էդմոնդը բոլինբրոկի տէրութեան օրօք, ինչպէս կարդացի, թագն է պահանջել, եւ նա կը դառնար թագաւոր, անշուշտ, եթէ գլենդուերը չպահէր նրան բանտի խցիկում մինչեւ մեռնելը։ Բայց վերադառնանք մնացեալներին։

YORK.
Նրա աւագ քոյր աննան, իմ մայրը, ժառանգը գահի,ամուսնացաւ ռիչարդ քեմբրիջի հետ, որ Էդմոնդ լենգլու որդին էր, այո՜, Էդուարդ երրորդի զաւակն հինգերորդ։ Ես աննայից եմ թագը պահանջում միակ ժառանգից կոմս մարչ ռոջերի, որ մորտիմերի զաւակը եղաւ սա ամուսնացաւ ֆիլիպայի հետ, ում հայրն էր, տեարք իմ, դուքս կլարենսը։ Ուստի, թէ կարգ է, որ աւագ որդին պէտք է գահ ելնի կրտսերից առաջ, ուրեմն ես եմ թագաւորն անգլիոյ։

WARWICK.
Օ՜, չիք աւելի պարզ բան, քան թէ սա։ Հենրին ջոն գոնտից՝ չորրորդ զաւակից, թագն է պահանջում, իսկ եորքն՝ երրորդից։ Եւ լինելի սերունդը ազնիւ քանի դեռ ողջ է, նա չպէտք է իշխի։ Սերունդը ողջ է, փթթում է քո մէջ, քո որդոց սրտում, որ ասես լինեն հաստաբուն ծառի գեղեցիկ ոստեր։ Հայր, սօլսբերի, ծունր իջնենք այստեղ եւ այս մեկուսի խաղաղ պարտէզում թող օրինաւոր մեր թագաւորին մենք առաջինը ողջունենք պատուով, քանզի նա վերուստ իրաւունք ունի թագը կրելու։

BOTH.
Կեցցէ՛ ռիչարդը՝ թագաւորն անգլիոյ։

YORK.
Շնորհակալութի՛ւն, բայց դեռ արքայ չեմ, քանզի, ազնիւ տեարք, չեմ թագադրուել եւ լանկաստերեան տոհմի արիւնով չի ներկուել սուրս։ Բայց պէտք չէ բնաւ շուտափոյթ գործել, այլ գաղտնի, զգոյշ, այս վտանգաւոր օրերին եղէք ինձ նման, տեա՛րք իմ, իբրեւ չէք տեսնում դուքս սոմերսետի լպիրշութիւնը ոչ էլ՝ Սեֆոլկի յանդգնութիւնը, աչք գոցէք դիտմամբ դուք կարդինալի լրբութեան առաջ, թող բուկինգեմը, վոհմակը նրանց ձեր տեսողութեան դաշտից վրիպեն, քանի դեռ hոտի հովիւն է ապրում՝ պարկեշտ իշխանը, բարի դուքս հեմֆրին։ Նրանք փնտրում են նրա մահն հիմա։ Սակայն փնտրելով՝ կը գտնեն իրենց մահն անագորոյն, եթէ իրաւ է եորքը գուշակում։

SALISBURY.
Միլորդ, բաւ է արդ, պարզ է ամէն ինչ։

WARWICK.
Սիրտս ինձ ասում է, որ կոմս վորուիկը մի օր դուքս եորքին կը թագադրի։

YORK.
Իսկ ես, իմ նեւիլ, հաւատում եմ, որ ռիչարդի ձեռքով վորուիկն անգլիայում արքայից յետոյ մեծ մարդ կը դառնայ։

*[They exit.]*

][][

ACT II. SCENE III.
London. The Hall of Justice. The King enters with the Queen, Gloucester, York, Suffolk and Salisbury. The Duchess enters with guard, along with Margery Jourdain, Hume, Southwell, and Bolingbroke.

KING HENRY.
Մօտ ե՛կ, էլէանոր, դուքս գլոստերի կին, ողորմած աստծոյ եւ հենրու առաջ մեծ յանցանք ունես։ Ուրեմն, ընդունիր վճիռն օրէնքի քո մեղքի համար, որ ինչպէս աստծոյ գրքում է գրուած, քեզ սպասում է լոկ մահապատիժ։ (ջորջենին եւ միւսներին։) իսկ դուք չորս հոգով բանտ վերադարձէք, ուրկից կը տանեն ձեզ կառափնարան։ Եւ սմիթֆիլդում կ՝այրեն վհուկին, իսկ ձեզ երեքիդ՝ դէպի կախաղան։ Դքսուհի գլոստերին։ Դու, տիկին, ազնիւ ցեղից ես սերուել, երեք օր մեղքդ բազմութեան առաջ քաւելուց յետոյ կ՝ապրես պատուազուրկ։ Դու պէտք է ապրես ցմահ աքսորեալ հեռու մեն կղզում, որտեղ ստենլին քեզ պիտի հսկի։

DUCHESS.
Ես ողջունում եմ ե՛ւ աքսոր, ե՛ւ մահ։

GLOUCESTER.
Քեզ, իմ Էլէանոր, օրէնքն է պատժում, իսկ ում օրէնքն է պատժում խստագոյն, չեմ կարող նրան արդարացնել։

*[The Duchess and the others exit, accompanied by their armed guards.]*

GLOUCESTER [cont.]
Աչքերս են լեցուն աղի արցունքով, սիրտս՝ կսկիծով։ Ա՛խ, այս տարիքիս այս պարսաւանքը գլուխս է թեքում։ Ձերդ վեհութի՛ւն, ես աղերսում եմ, թոյլ տուէք գնալ, զի սփոփանք են վշտերս ուզում, իսկ տարիներս՝ խաղաղ ապաստան։

KING HENRY.
Կա՛ց, դուքս գլոստեր, գնալուց առաջ տուր գաւազանդ հենրին կը լինի իր իսկ հովանին, իսկ բարի աստուած՝ յոյսն իմ, նեցուկն իմ եւ իմ ռահուիրան, որ լոյս շաղ կը տայ իմ ճանապարհին տէր ընդ քեզ, հեմֆրի։ Ես սիրում եմ քեզ այժմ ոչ պակաս, քան երբ արքայիդ հովանին էիր։

QUEEN MARGARET.
Ես չեմ նկատում որեւէ պատճառ, որ ցոյց է տալիս, թէ հարկաւոր է հասուն արքային մի խնամակալ, ինչպէս մանկանը։ Թող կառավարեն աստուած եւ հենրին, տո՛ւր գաւազանդ, իսկ թագաւորին՝ իր տէրութիւնը։

GLOUCESTER.
Իմ գաւազա՛նը։ Աիաւասիկ, տէր։ Ես յօժարակամ վերադարձնում եմ, ինչպէս ինձ տուեց քո հայրը՝ հենրին։ Ես յօժարակամ այդ գաւազանը դնում եմ ահա քո ոտքերի տակ, ինչպէս ուրիշներն այն կը վերցնէին՝ փառասիրութեան մոլուցքից դրդուած դե՛հ, մնա՛ս բարեաւ, իմ բարի արքայ, երբ ես չեմ լինի, թող պատուով փառօք խաղաղութիւնը քո գահը հսկէ։ [Exits.]

QUEEN MARGARET.
Տեարք իմ, հենրին է հիմա թագաւոր, իսկ մարգարիտը՝ նրա թագուհին։ Դուքս հեմֆրին դարձաւ խրտուիլակն իր իսկ՝ գզգզուած ու հաշմ։ Օ՛, միանգամից երկու մեծ հարուած նախ՝ կինն աքսորուեց, ապա՝ իւր ծառի մի ոստը հատուեց, թռաւ իր ձեռքից ցուպը պատուական։ Թող գաւազանը հենրու մօտ մնայ, զի սկզբանէ այդպէս է եղել։

SUFFOLK.
Այսպէս թօշնում է երկնաձիգ սոճին՝ կախելով ի վար ճիւղերն ազազուն, այսպէս խամրում է գոռոզ դքսուհու հպարտութիւնը ջահէլ օրերում։

YORK.
Աստուած նրա հետ։ Թոյլ տուէք ասել, ձերդ մեծութիւն, որ վճռուած է մենամարտն այսօր։ Արդ, բողոքարկուն ու պաշտպանեալը` քաջ զինագործը եւ նրա ծառան, պատրաստ են կռուին։ Արդեօք չէ՞ք ուզում այս մարտը տեսնել։

QUEEN MARGARET.
Հէնց այդ պատճառով, իմ բարի իշխան, պալատն եմ թողել, որպէսզի տեսնեմ, թէ ինչպէս է այդ մարտը աւարտւում։

KING HENRY.
Օ՛, ի սէր աստծոյ, ձեր շուրջը նայէք, որ ամենայն ինչ լինի իր տեղում, թող վէճն էլ այստեղ իսկոյն վերջանայ, եւ աստուած լինի արդարին նեցուկ։

YORK.
Չեմ տեսել երբեք աւելի վախկոտ կամ մենամարտից խուսափող մի մարդ, քան այս հայցուորն է, այս զինագործի ծառան, իշխաններ։

*[Through one door Horner and his Neighbors enter, very drunk. He has a bag of sand attached to his staff. Through a different door Peter (who isn't drunk) enters. He, too, has a bag of sand attached to his staff.]*

NEIGHBOR I.
Ահա՛, դրացի հոռներ, ես քո կենացն եմ խմում կանարեան զինով, եւ մի՛ վախենա, դրացի, ամէն ինչ լաւ կը վերջանայ։

NEIGHBOR II.
Ահա՛ եւ, դրացի, լիսաբոնեան մի գաւաթ։

NEIGHBOR III.
Ահա՛ մի կուժ թունդ գարեջուր։ Խմի՛ր, դրացի եւ մի՛ վախենա քո հակառակորդից։

HORNER.
Դէպի՛ գործ։ Եւ խաչը վկայ, ես կը խմեմ բոլորիդ կենացը, իսկ դու, պիտեր, գլխիդ կը տաս։

MINISTER I.
Ահա՛, պիտեր, կենացդ եմ խմում, մի՛ վախենա։

MINISTER II.
Ուրախ կաց, պիտեր եւ մի՛ վախենա քո տիրոջից։ Կռուով պաշտպանիր ենթավարպետներիդ պատիւը։

PETER.
Շնորհակալութի՛ւն բոլորիցդ։ Խմէ՛ք եւ, խնդրում եմ, աղօթէք ինձ համար։ Կարծես թէ խմել եմ իմ վերջին ումպը այս աշխարհում։ Ահա՛, ռոբին, թէ մեռնեմ, վերցրու իմ գոգնոցը, իսկ դու, վիլ, մուրճս։ Թո՛մ, քեզ եմ թողնում իմ ունեցած բոլոր փողերը։ Օ՜, աստուա՛ծ, օրհնիր ինձ։ Աստուած, ինձ օգնի՛ր, որովհետեւ ես չեմ կարող իմ տիրոջը հարուածել։ Նա մենամարտել գիտէ քաջ։

SALISBURY.
Թողէք խմելը, սկսէք կռուել։ Հէ՛յ, տղայ, անունդ։

PETER.
Պիտեր, ազնիւ խօսք։

SALISBURY.
Պիտեր, ոչինչ աւելի՞։

PETER.
Այսքան։

SALISBURY.
Տես, հա, տիրոջդ մի լաւ հարուածես։

HORNER.
Պարոններ, եկայ ես այստեղ, այսպէս ասած, իմ ենթավարպետի զրպարտութեամբ, որպէսզի ցոյց տամ, որ նա մի սրիկայ է, իսկ ես՝ ազնիւ՝ մարդ։ Ինչ վերաբերում է դուքս եորքին, թող մեռնեմ, թէ չարութիւն եմ՝ կամեցել նրան, թագաւորին կամ թագուհուն։ Ուստի, պիտեր, պատրաստուիր հարուածն ընդունել։

YORK.
Փութացէք, այս անզգամի լեզուն կապ ընկաւ։

*[They fight. Peter strikes down Horner, much to everyone's amazement.]*

HORNER.
Կա՛ց, պիտեր, կա՛ց։ Ես խոստովանում եմ, ես խոստովանում եմ դաւաճանութիւնս։ [Dies.]

YORK.
Տարէ՛ք նրա զէնքը։ Ա՛յ մարդ, շնորհակալութիւն յայտնիր աստծուն ու թունդ գինուն, որ տիրոջդ խելքն էր առել։

PETER.
Օ՜, աստուա՛ծ, միթէ՞ ես յաղթեցի իմ թշնամուն այս ատեանի առաջ։ Օ՜, պիտեր, դու շահեցիր

ճշմարտութիւնը։

KING HENRY.
Տարէք մեր աչքից այս դաւաճանին, զի նրա մահով մենք ճանաչեցինք յանցանքը նրա, եւ աստուած արդար բացեց մեր առաջ անմեղութիւնը այս թշուառ մարդու, օրին ուզում էր անարդարացի հոռներն սպանել։ Եկ մեզ հետ, ա՛յ մարդ, ե՛կ, որ ստանաս պարգեւդ արժանի։

*[They all exit.]*

][][

ACT II. SCENE IV.
London. A street. Humphrey and his Servants enter in mourning clothes.

GLOUCESTER.
Այսպէս երբեմն ամենապայծառ օրն է մռայլում սեւաքօղ մի ամպ, եւ յաջորդում է ամռանն յարաժամ ձմեռն անպտուղ, սառնաշունչ ու խենթ։ Ա՛խ, ինչպէս տարուայ եղանակները, անցնում գնում են խնդութիւն ու հոգս։ Ժամը քանի՞սն է։

SERVANT
Ճիշտ տասը, տէր իմ։

GLOUCESTER.
Տասը այն ժամն է, որ պէտք է տեսնեմ խստօրէն պատժուած իմ խեղճ դքսուհուն։ Սիրեցեա՛լ իմ նել, ցաւ կը պատճառի այդ խուժանն անարգ քո ազնիւ հոգուն, երբ կը ծիծաղի չարախնդութեամբ քո բախտի վրայ, նա, որ դեռ երէկ քեզ էր ուղեկցում, քո հպարտ կառքին երբ անցնում էիր դու յաղթանակած։ Բայց կամա՛ց, կարծես մօտենում է նա։ Պէտք է պատրաստուել, որպէսզի լացող աչքերով դիտեմ վիշտը դքսուհու։

*[The Duchess Gloucester enters, barefoot, naked, with a label of shame on her back, a burning candle in her hand. With her are Sir John Stanley, a Sheriff and her Guards.]*

SERVANT
Եթէ թոյլ կը տաք, մենք ետ կը խլենք նրան շէրիֆից։

GLOUCESTER.
Ո՛չ, չշարժուես, թէ կեանքդ թանկ է։ Թող անցնի գնա։

DUCHESS.
Եկե՞լ ես, տէր իմ, որպէսզի տեսնես իմ ամօթանքը այս համընդհանուր։ Արդ, ապաշխարանք դու էլ ես կրում, տե՛ս թէ ինչպէս է ամբոխն յեղամիտ, աչքն յառած դէմքիդ, ձեռքերը շարժում։ Աղերսում եմ ես,

թաքնուի՛ր նրանց չար հայեացքներից, եւ գոց սենեակում ողբայ ամօթն իմ, եւ դու նզովի՛ր մեր նենգ թշնամուն։

GLOUCESTER.
Համբերի՛ր, իմ նել, վիշտդ մոռացի՛ր։

DUCHESS.
Ա՛խ, ուսուցանիր, որպէսզի ես ի՛նձ ընդմիշտ մոռանամ։ Կարծեմ թէ ես քո կինն եմ օրինաց իսկ դու՝ մի իշխան, երկրի հովանի ուրեմն, պէտք չէր այսպէս ինձ տանել խայտառակօրէն, մէջքիս ամօթի պիտակ փակցուած այս խաժամուժի չարախնդութեամբ, որ արցունքներս եւ հառաչն իմ խոր տենչում է տեսնել։ Քայլելիս անգութ քարերն են կտրում ոտքերս քնքուշ, եւ ես սոսկում եմ, իսկ այդ ամբոխը չարակն է ժպտում, խորհուրդ է տալիս՝ ինձ քայլել զգոյշ։ Ա՛խ, ինչպէ՞ս տանեմ լուծն ամօթանքի, կարո՞ղ եմ, ասա՛, առաջուայ նման աշխարհին նայել եւ ինձ համարել արեւի շողով ժպտացող մի կին։ Ո՛չ, ո՛չ, ցերեկս գիշեր կը դառնայ, եւ լոյսս՝ խաւար, իմ փառքի մասին կը դատեն միայն մռայլ դժոխքով, երբեմն կ՝ասեմ, որ ես եղել եմ կինը դուքս հեմֆրու, ով մի իշխան էր, երկրի ղեկավար բայց նա այնպիսի մի խղճուկ մարդ էր եւ այնպէս վարեց գործերը երկրի, որ մի կողմ քաշուեց, իսկ նրա անբախտ դքսուհին դարձաւ ծաղրի առարկայ ամէն մի ստոր սրիկայի համար։ Բայց եղիր խոնարհ եւ իմ ամօթից մի՛ շիկնիր երբեք եւ մի՛ վշտանայ, քանի դեռ մահուան կացինը գլխիդ վրայ չի կախուել, իսկ այդ բանն, անշուշտ, կը լինի շուտով, քանզի սեֆոլկը ամենակարող մարդն է այն խմբում, որն ատում է քեզ։ Եւ գոռոզ եորքը, բոֆորտն ամբարիշտ՝ այդ ապօրինի ստոր քահանան, թեւերիդ արդէն օղակ են դրել, որ ուր էլ թռչես, քեզ պիտի բռնեն։ Բայց մի՛ վախենա, քանի դեռ նրանք ոտքդ չեն կապել, եւ դու մի՛ ջանա թշնամիներիդ դաւերը կանխել։

GLOUCESTER.
Ա՛խ, նե՛լ, համբերի՛ր, դու ճիշտ չես խփում առաջ ես նրանց կը վշտացնեմ, յետոյ թող փորձեն ինձ վիրաւորել։ Թէ ունենայի հազար թշնամի՝ ամէնքն էլ հազար անգամ զօրաւոր, էլի չեն կարող իմ մազին դիպչել, քանզի դեռ հեմֆրին ազնիւ է, անմեղ։ Ա՛խ, դու ուզո՞ւմ ես որ քեզ փրկէի վիրաւորանքից, բայց չէի կարող ջնջել աշխարհից քո ամօթանքը։ Դրժելով օրէնքն՝ ես պիտի կեանքս սաստիկ վտանգեմ։ Սիրելի իմ նել, միայն հանգիստը կը դառնայ նեցուկ։ Ես աղերսում եմ, որ դու դաշնակցես քո բարի սրտի համբերութեան հետ, այս քիչ օրերի տառապանքները շուտով կ՝անցկենան։

*[A Herald enters.]*

HERALD.
Կանչում եմ ձերդ պայծառափայլութեանը նորին մեծութեան պառլամենտ, որ հրաւիրուում է բերիում՝ գալիք ամսուայ առաջին օրը։

GLOUCESTER.
Սակայն նախապէս չեն առել ինձնից համաձայնութիւն, գաղտնի են գործել։ Շատ լաւ։ Ես ներկայ կը լինեմ։

*[The Herald exits.]*

GLOUCESTER [cont.]
Դե՛հ, մնա՛ս բարեաւ, սիրելի իմ Նել։ Խնդրում եմ, շէրիֆ, թող պատժի չափը չաւելացնեն։

SHERIFF.
Ձերդ մեծութիւն, թոյլ տուէք ասել, այստեղ էլ ահա պարտքս է վերջանում։ Արդ, ջոն ստենլին կ՝ուղեկցի նրան որոշուած կղզին։

GLOUCESTER.
Դուք պէտք է, պարոն, իմ կնոջն հսկէ՞ք։

STANLEY.
Այո՛, խնամքը ինձ է յանձնուած։

GLOUCESTER.
Ես թախանձում եմ, որ դուք նրա հետ շատ վատ չվարուէք, բայց ոչ այն բանից, որ աղերսում եմ։ Աշխարհը դարձեալ կարող է ժպտալ։ Կնոջս բաշխած քո բարութեանը ես կը հատուցեմ միայն բարութեամբ, դե՛հ, մնա՛ք բարեաւ, պարոն ստենլի։

DUCHESS.
Ի՞նչ, դու գնում ես եւ ինձ չե՞ս ասում հրաժեշտի խօսք։

GLOUCESTER.
Տե՛ս, թէ ինչպէս է արցունքս յորդում։

*[Gloucester and his Servants exit.]*

DUCHESS.
Եւ դու գնացի՞ր՝ տանելով քեզ հետ յոյսերս բոլոր։ Ա՛խ, ինձ այլեւս ոչինչ չի մնում, մահն է բերկրանքն իմ, մահը, որից ես վախենում էի, մինչ տենչում էի երկրային կեանքի յաւէրժութիւնը։ Պարոն ստենլի, տա՛ր ինձ այստեղից, հիմա ինձ համար նոյնն է ամէն ինչ, ես չեմ աղերսում ոչ մի գթութիւն, տա՛ր ինձ, ինչպէս որ հրամայել են։

STANLEY.
Դէպի մեն կղզին, որտեղ, տիրուհի, քեզ հետ կը վարուեն՝ համաձայն դիրքիդ։

DUCHESS.
Հէնց սա էլ վատ է։ Պատուազուրկ եմ ես, միթէ՞ անպատիւ կը վարուեն ինձ հետ։

STANLEY.
Կը վարուեն, ինչպէս հարկն է, տիրուհի, դուք հեմֆրու կինն էք ազնիւ դքսուհի։

DUCHESS.
Դե՜հ, բարի շէրիֆ, մնացէ՛ք բարեաւ, ապրէք ինձանից աւելի ուրախ, թէեւ ուղեկիցս եղաք ամօթիս։

SHERIFF.
Իմ պարտքն է տիկին, խնդրում եմ ներէք։

DUCHESS.
Մնացէ՛ք բարեաւ, դուք կատարեցիք ձեր պարտքը արդէն։ Գնա՛նք, ստենլի, ժամանակը չէ՞։

STANLEY.
Դուք արդեն ապաշխարել եք: Հագեք ձեր հագուստը նորից։ Ճանապարհով ճանապարհորդելու համար դուք պետք է հագնված լինեք։

DUCHESS.
Իմ ամօթանքը չի կարող փոխուել այդ պատանքի հետ։ Այն պիտի կախուի իմ ամենաճոխ, շքեղ զգեստից, որ միշտ երեւայ՝ ինչ էլ որ հագնեմ։ Տա՛ր ինձ, տենչում եմ իմ բանտը տեսնել։

*[They exit.]*

][][

ACT III. SCENE I.
The Abbey at Bury St. Edmunds. The King and Queen enter, followed by Cardinal, Suffolk, York, Buckingham, Salisbury and Warwick.

KING HENRY.
Ես զարմանում եմ, թէ մինչեւ հիմա ինչո՞ւ չի եկել լորդ գլոստերը նա սովորութիւն չունի, միլորդներ, վերջինը գալու։ Գուցէ մի առիթ պահում է նրան։

QUEEN MARGARET.
Միթէ՞ չէք տեսնում կամ չէք կամենում նկատել, թէ նա ինչ տարօրինակ ձեւով է փոխուել, ինչ վեհութիւն է շնորհել իրեն, ինչ լպիրշ դարձել եւ ինչ համարձակ, այդ գոռոզ մարդը նման չէ իրեն։ Ու երբ մենք հեռուից, թէկուզ մի հայեացք գցէինք վրան, նա ծունր էր իջնում, նրա հեզութեամբ պալատն էր ապշել։ Բայց հիմա փորձէք նրան հանդիպել, նոյնիսկ առտուան, երբ որ մաղթում են մարդիկ բարի լոյս, յօնքերն է կիտում եւ մի զայրացկոտ հայեացք նետելով՝ անցնում է ձգուած, չի էլ խոնարհւում՝ արհամարհելով պարտքն իր սրբազան։ Երբ փոքրիկ շունն է ցոյց տալիս ատամ, վրան չես նայում, սակայն մեծ մարդիկ սոսկում են, երբ որ առիւծն է մռնչում։ Իսկ հեմֆրին փոքրիկ մարդ չէ անգլիայում։ Յիշի՛ր, որ արեամբ քո յաջորդն է նա, եւ, եթէ ընկնես, նա կը բարձրանայ։ Կարծում եմ՝ բնաւ

խոհեմութիւն չէ, երբ նա քո հանդէպ լցուած է ոխով եւ քո մահուան մէջ իր շահն է փնտրում, թողնել, որ ազատ շուրջդ պտտուի կամ մուտք ունենայ բարձր ատեանում։ Նա մարդկանց սիրտն է շահել շողոմով, եւ երբ հաճենայ, ապստամբելով կը տանի ամբոխն հէնց իր ետեւից։ Հիմա գարուն է, մոլախոտերը դեռ չեն տարածել արմատներ հողում, եւ եթէ նրանց անվնաս թողնես, կը խեղդեն այգու բոյսերն անխնայ։ Խոնարհիանուէր մտատանջութիւնն իմ տիրոջ հանդէպ ստիպում է ինձ, որ այս վտանգը տեսնեմ դուքսի մէջ եթէ կասկածս ապարդիւն է խիստ, կոչիր այն կնոջ լոկ վախկոտութիւն, եւ թէ կարող ես, զօրեղ փաստերով փարատիր վախս։ Ես խոստանում եմ դուքս հեմֆրու առաջ մեղքերս բոլոր։ Իշխաններ սեֆոլկ, բուկինգեմ ու եորք, ինձ մեղադրէք, եթէ կարող էք, կամ խոստովանէք, որ իմ խօսքերը իրաւացի են։

## SUFFOLK.

Ձերդ մեծութիւն, դուք թափանցել էք դուքսի հոգու մէջ։ Եթէ թոյլ տրուէր ինձ առաջինը արտայայտուելու, կարծում եմ՝ նոյնը պէտք է ասէի իմ թագաւորին։ Արեւս վկայ, ամուսնո՛ւ դրդմամբ դքսուհին սարքեց դաւն հրէշային։ Ասենք թէ հեմֆրու մատը խառը չէ, բայց մեծարելով ծագումն իր բարձր՝ չէ՞ որ նա գահի ժառանգն է յաջորդ, այդ սնապարծը իր կնոջն անմիտ կը դրդէր, որ նա ստոր միջոցով մեր թագաւորի մահը պատրաստէ։ Փախի՛ր այն ջրից, որ չի աղմկում, գիտցիր, մունջ կատուն շատ մուկ է բռնում բնաւ չի հաչում, երբ մօտենում է աղուէսը գառին։ Ո՛չ, ո՛չ, վեհապետ, դուքսը մութ մարդ է, լեցուն է նրա սիրտը նենգութեամբ։

## CARDINAL.

Միթէ՞ օրէնքին հակառակ՝ նա չէր անսովոր մահով պատժում այն մարդկանց, ովքեր աննշան մեղք էին գործում։

## YORK.

Միթէ՞ երբ դուքսը խնամակալ էր, մեծ գումար չառաւ իր պետութիւնից, որպէսզի վարձ տար զօրքին ֆրանսիայում, բայց այն չուղարկեց, որի պատճառով ընդվզում էին քաղաքներն յաճախ։

## BUCKINGHAM.

Ինչ են այս բոլոր չնչին մեղքերը այն յանցանքների համեմատութեամբ, որ դեռ անյայտ են, բայց ժամանակը կը յայտնաբերի դրանք հեմֆրու մէջ։

## KING HENRY.

Ազնիւ իշխաններ, գովելի է ձեր ներքին մղումը, երբ դուք ուզում էք այն փուշը պոկել, որ կարող է մեր ոտքն արիւնոտել։ Բայց, խղճի մտօք այնպէս ազնիւ է մեր գլոստերը արքայի հանդէպ որ կարծես լինի մի անմեղ գառնուկ կամ թէ աղաւնի։ Դուքսն առաքինի ու բարի մարդ է, հազիւ թէ չար բան մտքով անց կենայ կամ թէ իմ մահը թաքուն պատրաստէ։

## QUEEN MARGARET.

Չկայ աւելի վտանգաւոր բան, քան թէ այդ սիրոյ վստահութիւնը։ Կարծո՞ւմ ես անմեղ աղաւնի է նա, այլոց փետուրն է նրան սքօղել։ Անմեղ գառնո՞ւկ է։ Ո՛, նրա մորթին փոխ է առնուած քանզի բնութեամբ նա անկուշտ գայլի ախորժակ ունի։ Չի՞ կարող արդեօք խաբեբայ մարդը կրել մի դիմակ։

Ա՜խ, տէր իմ, զգո՜յշ, մեր բարօրութիւնն ասում է՝ պէտք է սանձել թշնամուն։

*[Somerset enters.]*

SOMERSET.
Արեւշատութիւն տիրոջն իմ վսեմ։

KING HENRY.
Բարով ես եկել, իշխան Սոմերսետ, ի՞նչ լուր ֆրանսիայից։

SOMERSET.
Ձեր ամբողջ տիրոյթն այդ հողի վրայ դուք կորցրեցիք։ Ամէն ինչ կորա՜ւ։

KING HENRY.
Վատ լուր ես բերել, իշխան Սոմերսետ, սակայն եղիցի կամքը աստծոյ։

YORK.
[Aside.] Աւա՜ղ, վատ լուր է նաեւ ինձ համար, մեծ յոյսեր էի կապում նրա հետ, ինչ խոստանում է անգլիան պտղաբեր։ Այսպէս խամրում է կոկոն ծաղիկս, իսկ տերեւներս թրթուրն է ուտում, բայց ես կը շտկեմ իմ գործը շուտով կամ թէ դամբարան ես կը կառուցեմ իմ փառքի համար։

*[Gloucester enters.]*

GLOUCESTER.
Ձեզ կեանք բախտաւոր, իմ տէր ու արքայ ներեցէք, որ ես ուշացայ այսքան։

SUFFOLK.
Ո՜չ, ո՜չ, գլոստեր, չափից աւելի դու շուտ ես եկել ու թէ չես դարձել աւելի ազնիւ, քան առաջ էիր, քեզ կալանում եմ դաւաճանել ես պետութեանը մեր։

GLOUCESTER.
Սեֆոլկ, կալանքով ինձ չես գրգռի, երբեք չես տեսնի դէմքս այլայլուած, հեշտ չէ անաղարտ սիրտն աիաբեկել, վճիտ աղբիւրը կարող է պղծուել, բայց ես տիրոջն իմ չեմ դաւաճանի, ո՞վ կարող է ինձ մեղքի մէջ գցել, ո՞րն է յանցանքս։

YORK.
Ասում են, երբ դու հովանի էիր, կաշառք ես առել ֆրանսիացիներից եւ զինուորների վարձը չես տուել։ Դրա պատճառով արքան կորցրեց ամբողջ ֆրանսիան։

GLOUCESTER.
Ասո՜ւմ են։ Սակայն ովքե՞ր են դրանք։ Երբեք չեմ կորզել վարձը զինուորի, նոյնիսկ մի պենի կաշառք

չեմ առել։ Աստուած է վկայ, թէ ինչպէս էի գիշերներն անքուն ես անցկացնում, որ բարգաւաճէր հայրենի անգլիան։ Թէ շորթել եմ ես իմ թագաւորից նոյնիսկ մի պենի կամ իւրացրել անօրէն մի բան, թող կանգնեցնեն ինձ դատի առաջ։ Ո՜չ։ Իմ սեփական յատուկ պաշարից ես բաժին տուի պահակազօրին, որ ժողովրդին հարկերից փրկեմ, եւ չխնդրեցի ոչ մի հատուցում։

CARDINAL.
Միլորդ, կարիք կա՞յ այդքան շատ խօսել։

GLOUCESTER.
Ես ճիշտ եմ ասում, աստուած, ինձ օգնիր։

YORK.
Ասում են, երբ դուք հովանի էիք, յանցագործներին պատժելու համար կեանքի կոչեցիք տանջանքի ձեւեր, եւ ամէնուրեք անգլիան յորջորջուեց բռնութեան երկիր։

GLOUCESTER.
Բայց դուք լաւ գիտէք, որ այդ ժամանակ իմ միակ մեղքը իմ գթութիւնն էր։ Ես մեղապարտի արցունք տեսնելիս մեղմանում էի, նա աղօթքներով իր մեղքն էր քաւում։ Ու թէ չի դարձել նա մարդասպան կամ պիղծ ոճրագործ, որ ճամփին աղքատ մարդ է կողոպտում, այդ նրանից է, որ ես չեմ տուել արժանի պատիժ։ Իրաւ, մարդասպան ես յորջորջուեցի, քանզի աւելի բարբարոս չեղայ, քան մի ոճրագործ։

SUFFOLK.
Այս մեղքերն հեշտ է արդարացնել։ Բայց ձեզ, իմացէ՛ք, ամբաստանում են աւելի ծանր յանցանքների մէջ, որոնք չէք կարող հեշտութեամբ հերքել։ Նորին մեծութեան անունից ես, արդ, կալանում եմ ձեզ, ու մինչեւ դատը ձեզ պիտի հսկէ լորդ կարդինալը։

KING HENRY.
Հօրեղբայր գլոստեր, ես հաւատում եմ, որ կը փարատէք կասկածները այդ, իմ խիղճն ասում է, որ անմեղ էք դուք։

GLOUCESTER.
Ա՜խ, վտանգաւոր օրեր են, տէր իմ։ Առաքինութիւնն այստեղ խեղդուած է փառասիրութեամբ, գութն ատելութեան ձեռքով է խաչուած, կեղծ երդումներն են իշխում ամէնուր, արդարութիւնն է երկրից աքսորուած։ Գիտեմ, կեանքիս դէմ դաւեր են նիւթւում։ Եթէ իմ մահով ես կարող եմ տալ հարազատ երկրիս բախտաւորութիւն եւ կապանք դնել բռնութեան վրայ, ապա կ՝ընդունեմ մահն յօժարութեամբ։ Բայց մահս նրանց խաղի նախերգն է, քանզի բիւր կեանքեր, որ դեռ չեն զգում վտանգն ահաւոր չեն կարող նրանց ողբերգութեանը յագուրդ պատճառել։ Բոֆորտի կարմիր, փայլուն աչքերը գաղտնիքն են յայտնում չարակամ սրտի, Սեֆոլկի խոժոռ դէմքն ասես լինի բուռն ատելութիւն, նենգ բուկինգեմը սրտի վրայից նախանձոտութեան բեռն է շպրտում սրամիտ լեզուով, իսկ մռայլ եորքը, որ յանդգնաբար ձգտում է լուսին, ում ձեռքն համարձակ ես ետ վանեցի, ուղղում է իմ դէմ կեղծ մեղադրանք դուք էլ, թագուհի, այլոց հետ մէկտեղ, առանց պատճառի ինձ պարսաւեցիք եւ ձեր

լաւագոյն ջանքն ի գործ դրիք, որ թշնամանայ ինձ հետ իմ արքան, իմ բարի արքան։ Այո՛, բոլորդ էք այդ բանը խորհել, խորհել միասին, ինքս լուրն առայ գաղտնի ժողովի ուզում էք անմեղ կեանքս խորտակել։ Պէտք չէ կեղծ վկայ, որ անձիս հանդէպ վճիռ արձակի, ոչ էլ դրուժան, որ բազմապատկի իմ յանցանքները, քանզի իմաստուն առածն ասում է շանը ծեծելու փայտ միշտ կը ճարուի։

CARDINAL.
Օ՛, իմ վեհապետ, նա անտանելի չար լեզու ունի եթէ այն մարդիկ, որ արքայական ձեր անձն են հսկում դաւաճանութեան թաքուն դաշոյնից, ստոր մատնիչի կատաղութիւնից խօսքեր են լսում իրենց հասցէին յանդիմանութեան ու կշտամբանքի, իսկ յանցագործի լեզուն չի սանձւում, պարզ է, արքայից քիչ-քիչ կը սառչեն։

SUFFOLK.
Միթէ թագուհուն չյանդիմանե՞ց հմտութեամբ հիւսուած անարգ բառերով, իբրեւ նա է մեզ թաքուն հրահրել, որ մենք զրպարտենք դուքս գլոստերին, որպէսզի նրան զրկի իր դիրքից։

QUEEN MARGARET.
Թող յանդիմանէ պարտուողն իրեն։

GLOUCESTER.
Ճշմարտութիւնից դուք շատ աւելի խօսքեր ասացիք։ Այո՛, պարտուեցի։ Նզո՛վք յաղթողին, զի խաբէութեամբ այս խաղը տարաւ։ Ինձ նման պարտուողն իրաւունք ունի ձեզ կշտամբելու։

BUCKINGHAM.
Կարող է միտքը նա խեղաթիւրել եւ ամբողջ օրը մեզ պահել այստեղ։ Միլորդ կարդինալ, տարէ՛ք ձեր գերուն։

CARDINAL.
Հէ՛յ, տարէք դուքսին եւ խստիւ հսկէք։

GLOUCESTER.
Ա՛խ, բարի հենրի, դեռ քո մարմինը ամուր չի կանգնած ոտքերիդ վրայ, բայց դու նետում ես քո անթացուպը։ Աւա՜ղ, քո հովուին խլում են քեզնից գայլերն են ոռնում, որ քեզ յօշոտեն, ա՛խ, երանի թէ վախս զուր լինէր, բայց չեմ կասկածում, իմ բարի արքայ, ես սարսափում եմ կորստիդ համար։ Գնում է գլոստերը պահակների ուղեկցութեամբ։

KING HENRY.
Ինչ ձեզ թւում է աւելի խոհեմ, այն էլ կատարէք, ի հարկէ այնպէս, ինչպէս եթէ մենք լինէինք այստեղ։

QUEEN MARGARET.
Ի՞նչ։ Միթէ՞, տէր իմ, ուզում էք լքել խորհրդարանը։

KING HENRY.
Այո՛, մարգարիտ, սիրտս է վշտով լի, նրա հեղեղն է յորդում աչքերս, վիշտն է պաշարել իմ մարմինն ամբողջ ինչը՞ կարող է վշտից աւելի ցաւատանջ լինել։ Հօրեղբայր հեմֆրի, ես դէմքիդ վրայ տեսնում եմ քարտէզն առաքինութեան, հաւատարմութեան ու ճշմարտութեան։ Իմ բարի հեմֆրի, միթէ՞ եկել է այն ժամը, որ ես պէտք է կասկածեմ անկեղծութեանդ։ Ա՛խ, ի՞նչ սեւ աստղ է նախանձում դիրքիդ, որ նշանաւոր այս իշխանները, իմ մարգարիտը քո անմեղ կեանքի մահին են որոնում։ Չար բան չես արել նրանցից մէկին։ Ա՛խ, նրանք տարան իմ բարի հեմֆրուն, ինչպէս տանում է մսագործն հորթին եւ հարուածում է, երբ նա շեղւում է սպանդանոցի արնահեղ ճամփից։ Եւ ինչպէս կովն է տխուր վազ տալիս, նայում իր անմեղ հորթի ետեւից, եւ նա չի կարող ոչ մի բան անել, բացի հորթուկի կորուստն ողբալուց, այսպէս էլ ես եմ իմ անօգնական արցունքով ողբում անբախտ գլոստերին եւ տխուր նայում նրա ետեւից, բայց ես չեմ կարող հօրեղբօրս օգնել, քանզի ուժեղ են երդուեալ թշնամիք։ Բախտդ կը սգամ եւ հառաչելով կ՝ասեմ աշխարհին՝ ով է մատնիչը, բայց ո՛չ գլոստերը։ [Exits.]

QUEEN MARGARET.
Ազնիւ իշխաննե՛ր, պաղ ձիւնն է հալւում արեգակի տաք ճառագայթներից։ Եւ հենրին պաղ է մեծ գործի հանդէպ, նա լի է անմիտ գթասիրութեամբ, նրան խաբում է կեղծաւոր դուքսը, ինչպէս լաց լինող կոկորդիլոսը, որ հառաչելով ծուղակ է շինում իրեն կարեկցող ճամփորդի համար, կամ՝ ինչպէս փայլուն խատուտիկ օձը, որ թաւալուելով ծաղկաւէտ դաշտում՝ մանկանն է խայթում, իսկ նա կարծում է, թէ օձն է բարի իր գեղեցկութեամբ։ Ազնիւ իշխաննե՛ր, ինձ հաւատացէք, եթէ չլինէր ձեր թագուհուց էլ մէկը խելացի, իսկ ես այդ գործում համարում եմ ինձ բաւական խելօք, աշխարհը դարձեալ պէտք է ազատուէր այս գլոստերից, իսկ մենք՝ այն վախից, որ նա լցնում էր մեր սիրտն ու հոգին։

CARDINAL.
Եւ դա կը լինէր ամէնքից խոհեմ, բայց մահուան համար մեզ հարկաւոր է ինչ-որ պատրուակ, նա պէտք է պատժուի օրէնքի ուժով։

SUFFOLK.
Բայց ես կարծում եմ, որ դա չէր լինի խորամանկութիւն արքան կը ջանայ նրա կեանքը փրկել, գուցէ նոյն բանն է ժողովուրդն ուզում։ Նրան պատժելու մեղադրանքը չափից թեթեւ է, միայն կասկածն է մեզ առաջնորդում։

YORK.
Ուրեմն, ելնելով այդ բանից, սեֆոլկ, դու չես կամենում գլոստերի մահը։

SUFFOLK.
Ա՛խ, եորք, աշխարհում չկայ մի այլ մարդ, որ ինձ պէս ուզէր։

YORK.
[Aside.] Եորքը նրա մահն ուզելու բազում պատճառներ ունի, քան մէկ ուրիշը։ Բայց, լորդ կարդինալ, եւ դուք, լորդ սեֆոլկ, ձեր կարծիքն ասէք ինձ անկեղծօրէն գլոստերին թողնել հենրուն հովանի, միթէ՞

նոյնը չէ, ինչ քաղցած արծուին պաշտպան են կարգում, որ նա պահպանի անմեղ վառեկին՝ գիշատիչ ցինից։

QUEEN MARGARET.
Ուրեմն, թշուառ վառեկը բնաւ չի կարող խույս տալ վերահաս մահից։

SUFFOLK.
Այո՛, տիրուհի։ Ի՜նչ անմտութիւն, երբ պահ են տալիս հաւնոցն աղուէսին, նա, ով նենգամիտ սպանութեան մէջ ամբաստանեալ է, իզուր է կարծում, որ անպատիժ է մեղքը մնալու, քանզի իր միտումն ի գործ չի դրուել։ Ո՛չ, ո՛չ, թող մեռնի՛, չէ՞ որ աղուէս է, եւ իր բնութեամբ՝ հաւին թշնամի։ Այո՛, թող մեռնի, քանի դեռ երախն արնով չի ներկուել։ Չէ՞ որ այսպիսի դիտաւորութիւն գլոստերն ունէր իմ տիրոջ հանդէպ։ Կարիք էլ չկայ երկար մտածել, թէ ինչպէս պէտք է նրան սպանել ինչ ձեւ էլ ընտրենք, խորամանկութիւն, որոգայթ, դարան, կամ ինչ ժամանակ՝ քուն թէ արթմնի, այդ միեւնոյն է, միայն թէ մեռնի քանզի խաբելուց այն մարդն է շահում, ով առաջինն է որոշել խաբել։

QUEEN MARGARET.
Երիցս ազնիւ, փառապանծ սեֆոլկ, դու խիզախաբար արտայայտուեցիր։

SUFFOLK.
Ո՛չ խիզախաբար, քանզի դեռեւս ոչինչ չի արուած, յաճախ գործն ու խօսքն իրար չեն բռնում, բայց համաձայն է սիրտս լեզուիս հետ, քանզի այս սխրանքն արժէ գովեստի, եւ պէտք է փրկել իմ վեհապետին անարգ թշնամուց։ Մի բառ ասացէք, եւ ես կը լինեմ այդ հպարտ դուքսին խոստովանահայր։

CARDINAL.
Բայց ես կ՝ուզէի, որ նա շուտ մեռնէր, քան կը ստանձնէիք խոստովանահօր դերը սրբազան։ Թէ համաձայն էք եւ հաւանութիւն տալիս էք գործին, կը գտնեմ ինքս ձեռներէց մի մարդ։ Այսպէս եմ փրկում կեանքը իմ տիրոջ։

SUFFOLK.
Ահա՛ իմ ձեռքը, գործն արժանի է ի կատար ածել։

QUEEN MARGARET.
Ես նոյնն եմ ասում։

YORK.
Ես էլ։ Եւ հիմա, երբ մենք երեքով այսպէս ենք վճռում, ի՞նչ փոյթ, թէ կ՝ուզեն մեր վճիռն հերքել։

*[Messenger enters.]*

MESSENGER
Մեծն իշխաններ, ես իռլանդիայից եկել եմ այստեղ, որպէսզի յայտնեմ ապստամբների ընդվզման մասին, սրի են քաշում անգլիացիներին։ Օգնէք ժամ առաջ եւ սանձէք նրանց մոլեգնութիւնը, քանի դեռ վէրքը անբուժելի չէ։ Երբ նոր է վէրքը, հեշտ կ՝ապաքինուի։

CARDINAL.
Վէրքը հայցում է պատշաճ օգնութիւն, ի՞նչ խորհուրդ կը տաք այս ծանր գործում։

YORK.
Լորդ սոմերսետին ուղարկէք այնտեղ որպէս փոխարքայ, այդ գործն ուզում է փորձուած կուսակալ, իսկ նա ֆրանսիայում յաջողակ էր խիստ։

SOMERSET.
Եւ եթէ եորքը՝ իր ողջ հեռատես նրբամտութեամբ, իմ տեղը լինէր որպէս փոխարքայ, կարծում եմ, այնտեղ երկար չէր մնայ։

YORK.
Որ տանո՞ւլ տայի քեզ պէս ամէն ինչ։ Ես աւելի շուտ կ՝ուզէի մեռնել, քան թէ կորցրած ամբողջ ֆրանսիան՝ վերադառնայի խայտառակութեան ահագին բեռով։ Ցոյց տուր մի սպի քո մաշկի վրայ քաջերն են կրում ե՛ւ վէրք, ե՛ւ զրահ։

QUEEN MARGARET.
Կայծից մոլեգին հրդեհ կը բռնկի, եթէ վառելիքն ու քամին նրան կերակուր բերեն։ Արդ, բաւ է, եորք իմ։ Խաղաղուի՛ր եւ դու, անգին Սոմերսետ, քո բախտից է, եորք, եթէ լինէիր այնտեղ փոխարքայ, Օ՛, կարող էին գործերդ աւելի անյաջող գնալ։

YORK.
Ոչնչութիւնից աւելի՞ վատթար։ Ամօ՛թ բոլորիս։

SOMERSET.
Քեզ հազա՛ր ամօթ, որ շատ ես ուզում։

CARDINAL.
Վատ չի լինի, եորք, որ բախտդ փորձես, վայրի կեռները զէնք են վերցրել եւ հողն են ներկում անգլիացու արեամբ, չէի՞ր կամենայ քեզ հետ իռլանդիա տանել մի ջոկատ, որ խիստ ընտրութեամբ մենք հաւաքել ենք կոմսութիւններից, եւ փորձել քո բախտն այդ պատերազմում։

YORK.
Կը փորձեմ, միլորդ, եթէ հաճենայ իմ վեհապետը։

SUFFOLK.
Մեր կամքն է նրա գործակցութեան մէջ։ Ինչ որոշում ենք, հաստատում է նա։ Ուրեմն, ազնիւ եորք, ձեռք զարկ այս գործին։

YORK.
Ես գոհ եմ։ Բերէք իմ զինուորներին, մինչ այդ, կը հոգամ գործերս բոլոր։

SUFFOLK.
Այդ ծանրութիւնը կ՝առնեմ իմ վրայ, բայց այժմ դառնանք նենգամիտ հեմֆրուն։

CARDINAL.
Բա՛ւ է այդ մասին։ Ես այդ գործն այնպէս գլուխ կը բերեմ, որ նա այլեւս մեզ չխանգարի։ Իշխաններ, գնա՛նք, օրը մթնում է, բայց ես, լորդ սեֆոլկ, այդ գործի մասին դեռեւս քեզ հետ խօսելիք ունեմ։

YORK.
Երկու շաբաթ անց պէտք է սպասեմ ես բրիստոլում իմ զինուորներին, որպէսզի նաւով իռլանդիա տանեմ։

SUFFOLK.
Ես կը հետեւեմ այդ գործին, միլորդ։

*[All exit save York.]*

YORK.
Այժմ կամ երբեք, կոփիր վեհերոտ քո մտքերը, եո՛րք, կասկածդ փոխիր վճռականութեամբ, ինչին ձգտում ես,դու նրան հասիր, կամ ինչպէս որ կաս, յանձնուիր մահուան։ Կեանքն է անարժէք, երբ դու չես հասնում քո նպատակին։ Թող գունատ դէմքով վախը բնակուի անտոհմ մարդկանց մէջ եւ արքայական սրտում չգտնի ոչ մի հանգրուան։ Գարնան յորդառատ անձրեւի նման գալիս թափւում են արքայ դառնալու մտքերն հոգուս մէջ, ուղեղս աւելի փութաջանօրէն, քան աշխոյժ մի սարդ, հիւսում է արագ՝ ոստայն թշնամուս։ Շա՛տ լաւ, իշխաննե՛ր, խորամանկութեամ ինձ արտաքսում էք զօրքիս հետ մէկտեղ, բայց վախենում եմ, որ տաքացրած ձեր կրծքի օձը՝ վաղուց անօթի, ձեր սիրտը խայթի։ Զօրք է ինձ պակաս՝ տալիս էք զինուոր, եւ ես հաճութեամբ վերցնում եմ զայն։ Բայց դուք իմացէք, որ խելագարի ձեռքն էք զէնք դնում։ Ես իռլանդիայում իմ հզօր գունդը կը կերակրեմ, իսկ բրիտանիայում կը բարձրացնեմ դաժան փոթորիկ, որ բիւր հոգիներ ուղարկի երկինք կամ դէպի դժոխք։ Եւ չի դադարի այս սեւ փոթորկի մոլեգնութիւնը, քանի դեռ ոսկեայ պսակ չեմ կրել իմ գլխի վրայ, եւ փառաւորեալ արեգակի վառ շողերի նման չեմ մեղմացրել ցասումը մրրկի։ Իմ նպատակին հասնելու համար քէնտում բնակուող ջոն քեդ անունով մի խիստ յանդուգն մարդու գնեցի, որ խռովութիւն կարող է գցել՝ իրեն կոչելով լորդ ջոն մորտիմեր։ Տեսել եմ, ինչպէս այդ յամառ քեդը դիմադրում էր կեռներին վայրի, կռւում էր բորբոք, մինչեւ այն ատեն, երբ ոզնու սուր-սուր փշերի նման սլաքներն էին ցցւում ազդրերին։ Ու երբ, վերջապէս, նրան փրկեցին, տեսայ, թէ ինչպէս նա պարեց, կարծես վայրի մի մաւր էր՝ ուժգին ցնցելով արնոտ նետերը զանգակների պէս։ Նա քանի անգամ գզգզուած մազով կեռնի շոր

հագած՝ զրոյց է արել մեր թշնամու հետ, նորից աննկատ եկել է ինձ մօտ՝ բերելով նրանց դաւերի մասին ճիշտ տեղեկութիւն։ եւ այդ սատանան կարող է այստեղ ինձ փոխարինել, զի խօսացուածքով, դէմքով ու քայլքով նա շատ նման է արդէն վախճանուած ջոն մորտիմերին։ Այսպէս կ՝իմանամ միտքն հասարակաց եւ այն, թէ ինչ են նրանք մտածում իմ իրաւունքի ու իմ տան մասին։ Ասենք, թէ յանկարծ քեղը բռնուեց, բայց ո՛չ մի տանջանք։ Ո՛չ մի կեղեքում, որ պէտք է նրան խոր ցաւ պատճառի, չի հարկադրի, որ խոստովանի, թէ ես եմ դրդել, որ զէնք վերցնի։ Իսկ եթէ նրա գործը յաջողուի, ես չեմ կասկածում, այն դէպքում զօրքով ես տուն կը դառնամ, որ այդ սինլքոր, փուչ արարածի ցանածը հնձեմ, չէ՞ որ իմ հերթն է, քանզի կարծում եմ՝ չկայ գլոստերը, մեկուսացուած է հենրին՝ իմ տէրը։
[Exits.]

][][

## ACT III. SCENE II.

Bury St. Edmunds. A room of state. Two Murderers scurry across the stage, having just killed Duke Humphrey.

### MURDERER I.

Դե՛հ, վազիր դէպի իշխան սեֆոլկը եւ յայտնիր նրան, որ այն աշխարհը ճամփեցինք դուքսին, ինչպէս ասել էր։

### MURDERER II.

Օ՛, ի՛նչ արեցինք։ Դու լսե՞լ էիր, որ մարդ կարող էր այսպէս երջանիկ աւանդել հոգին։

### MURDERER I.

Ահա գալիս է իշխան սեֆոլկը։

*[Suffolk enters.]*

### SUFFOLK.

Տղանե՛ր, գործը գլուխ բերեցի՞ք։

### MURDERER I.

Այո՛, բարի տէր, նա շունչը փչեց։

### SUFFOLK.

Հրաշալի՜ է։ Գնանք իմ տունը, այս խիստ համարձակ արարքի դիմաց պէտք է հատուցեմ։ Արքան ու բոլոր իշխաններն այժմ հեռու չեն մեզնից։ Կարգի բերեցի՞ք դուքսի մահիճը, ամէն ինչ արի՞ք դուք տեղը տեղին, ինչպէս ասել եմ։

### MURDERER I.

Այո՛, բարի տէր։

SUFFOLK.
Չքուէ՛ք այստեղից։

*[As the Murderers exit the King, Queen and Somerset enter.]*

KING HENRY.
Գնացէ՛ք, կանչէք մեր հօրեղբօրը, թող անմիջապէս մեզ ներկայանայ ասէք, որ այսօր մենք որոշել ենք հարցուփորձ անել, թէ նա մեղք ունի։

SUFFOLK.
Իսկոյն կը կանչեմ, իմ բարի արքայ։ [Exits.]

KING HENRY.
Տեա՛րք իմ, ձեր տեղը գրաւէք իսկոյն, եւ խնդրում եմ ձեզ, որ մեր հօրեղբօր նկատմամբ լինէք զուսպ, արդարացի։ Երբ նրա յանցանքն ակներեւաբար մեզ պարզ կը դառնայ այնժամ կարող էք վճիռ արձակել։

QUEEN MARGARET.
Թող աստուած չարի գործը խափանի եւ ազնիւ մարդուն ազատի պատժից, աստուած տայ, ամէն կասկած փարատուի։

KING HENRY.
Շնորհակալութի՛ւն, բարի՛ մարգարիտ, խօսքերիդ համար։

*[Suffolk re-enters.]*

KING HENRY [cont.]
Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես գունատ, ինչո՞ւ ես դողում, ի՞նչ կայ, ի՞նչ եղաւ, որտե՞ղ է, սեֆո՛լկ, մեր հօրեղբայրը։

SUFFOLK.
Իր մահճում մեռած։ Գլոստերը չկա՛յ։

QUEEN MARGARET.
Տէր, մի՛ արասցէ, այդ ի՞նչ ասացիր։

CARDINAL.
Աստծոյ դատաստանն անքննելի է։ Գիշերն երազիս դուքսն համրացել էր, չէր կարողանում մի բառ շշնջալ։

*[The King faints.]*

QUEEN MARGARET.
Ի՞նչ եղաւ, տէր իմ, օգնէ՛ք, իշխաննե՛ր, մեռնո՛ւմ է արքան։

SOMERSET.
Շտապ բարձրացրէք նրա մարմինը ու քիթն ոլորէք։

QUEEN MARGARET.
Հէ՛յ, վազէ՛ք, եկէ՛ք, բա՛ց աչքդ, հենրի։

SUFFOLK.
Ուշքի է գալիս, համբերէք մի քիչ։

KING HENRY.
Աստուա՛ծ երկնային։

QUEEN MARGARET.
Ինչպէ՞ս ես զգում, ողորմած տէր իմ։

SUFFOLK.
Սփոփուէ՛ք, տէր իմ, սփոփուէ՛ք, հենրի։

KING HENRY.
Սեֆո՞լկն է փորձում ինձ մխիթարել, միթէ՞ նա չեկաւ, որ ագռաւի պէս վրաս կռաւէր ու չարագուշակ ձայնով կողոպտէր ուժը իմ կեանքի եւ նա կարծում էր, որ ցախսարեկի դայլայլիկներով եւ դատարկ սրտի մխիթարութեամբ կարող է խեղդել իր ձայնն ագռաւի։ Չե՛ս կարող երբեք անուշ խօսքերով թոյնդ թաքցնել, ես քեզ ասում եմ՝ ձեռքդ հեռո՛ւ տար, քանզի այդ ձեռքը աւելի շատ է ինձ վախեցնում, քան խայթոցն օձի։ Դու, բանբեր մահուան, չքուի՛ր իմ աչքից։ Ակնագնդերիդ խորքում ցոլում է արնոտ բռնութեան դաժանութիւնը, որն սպառնում է ամբողջ աշխարհին։ Ա՛խ, ինձ մի՛ նայիր, աչքերդ են խոցում, բայց ո՛չ, մի՛ գնա, մօտ ե՛կ, բասիլիսկ եւ քո հայեացքով սպանիր զոհիդ։ Մահուան շուքի տակ ես պիտի գտնեմ մխիթարութիւն, ինձ համար կեանքը կրկնակի մահ է, քանի որ մեռաւ իմ հօրեղբայրը։

QUEEN MARGARET.
Ինչո՞ւ էք, տէր իմ, այսպէս կշտամբում իշխան Սեֆոլկին։ Թէպէտեւ դուքսն էր նրա թշնամին, բայց նա իսկական քրիստոնեայի պէս սգում է նրան, գալով ինձ՝ թէկուզ բարեկամս չէր, թէ կարող էին յորդ արցունքներս, մորմոքուող հոգուս հեկեկանքները կամ թէ արնաքամ հառաչանքներս նորից ետ բերել նրա կեանքն ազնիւ, ապա կ՝ուզէի ողբից կուրանալ, հառաչանքներից խիստ տկարանալ եւ արիւնահեղձ հեծեծանքներից թաւրընջուկի պէս սաստիկ գունատուել։ Ի՞նչ պէտք է խորհէ աշխարհն իմ մասին յայտնի է, որ մենք բարեկամ չէինք։ Նախանձոտ մարդիկ կարող են ասել, որ ես եմ դուքսի մահուան պատճառը, եւ բամբասանքի չար լեզուները ինձ կը զրպարտեն, իսկ արքայաշուք

ապարանքները կը լցուեն անձն նշաւակելու կշտամբանքներով։ Տէ՛ս, ի՞նչ շահեցի ես նրա մահից։ Վա՛յ ինձ, անբախտի՛ս, լինել թագուհի եւ թագադրուել խայտառակութեամբ։

KING HENRY.
Վա՛յ ինձ, գլոստեր, անբա՛խտ հօրեղբայր։

QUEEN MARGARET.
Վա՛յ ինձ, աւելի ես անբախտ եղայ, քան հօրեղբայրը։ Ի՞նչ։ Հեռանո՞ւմ ես իմ մօտից, տէր իմ, եւ թաքցնում ես քո հայեացքն ինձնից, բայց ես գարշելի բորոտ չեմ, նայի՛ր, միթէ՞ չես լսում, խուլ ես իժի պէս, Օ՛, թունոտ դարձիր դու նրա նման եւ քո անպաշտպան կնոջն սպանիր։ Միթէ՞ քո բոլոր ուրախութիւններն իր հետ գերեզման գլոստերը տարաւ, ուրեմն, դու ինձ չե՞ս սիրել երբեք։ Դու նրա համար արձան կառուցիր ու երկրպագիր իսկ իմ պատկերից գինետան շքեղ ցուցանակ շինիր։ Այդ բանի համար քիչ մնաց, տէր իմ, որ խորտակուէի փոթորկոտ ծովում, երբ երկու անգամ անյաջող քամին իմ նաւը քշեց անգլիայի ափից դէպի հակառակ՝ տունն իմ հայրենի։ Եւ միթէ՞ սա չէր բախտս գուշակում որ քամին ասէր «մի՛ փնտրիր երբեք բոյնը կարիճի եւ ոտք մի դնի անհիւրընկալ, բիրտ հողի վրայ։» ա՛խ, ի՞նչ արեցի ես այն ժամանակ, եթէ ոչ միայն՝ նզովքի խօսքեր շաղ տուի բարի քամու հասցէին եւ մէկ էլ նրան, ով ազատ թողեց քամուն պղնձեայ քարանձաւներից։ Խնդրեցի, որ ինձ այդ քամին տանէր ափերն անգլիայի կամ թէ հարուածէր մի խոժոռ ժայռի։ Բայց, այնուհանդերձ Էոլը չուզեց, որ ինքը դառնար արնոտ մարդասպան՝ զիջելով քեզ այդ գործն ամօթաբեր։ Ո՜հ, ալեծածան, գեղեցիկ ծովը մերժեց ինձ տանել իր մութ անդունդը՝ գիտենալով, որ քո դաժան սրտով ինձ խեղդելու ես ցամաքի վրայ, արցունքի ծովում։ Սուր ժայռը սեղմուեց երերուն ու լոյծ աւազների մէջ, եւ չկամեցաւ իւր կոշտ քարերով մարմինս ջարդել որպէսզի սիրտդ, աւելի կարծր, քան ժայռն ապառաժ ջարդէր իմ կեանքը քո ապարանքում։ Երբ փոթորիկը քո ափերից մեզ քշում էր հեռու, ես կանգնած էի մեծ նաւի վրայ ու նայում էի թէ ինչպէս էին կորչում կաւճափայլ գահաւանդները, իսկ երբ մութ երկինքն սկսեց խլել իմ ակնակառոյց տեսողութիւնից երկրիդ պատկերը, պոկեցի մանեակն իմ պարանոցից (սիրտս էր ագուցուած ադամանդներով) ու լուռ նետեցի երկրիդ ուղղութեամբ։ Ծովը փոթորկոտ ընդունեց ընծան, եւ ես ցանկացայ որ ծովի նման քո կուրծքն ընդունէր իմ սիրտը անկեղծ։ Եւ ես կորցրի գեղեցիկ անգլիան, բայց իմ աչքերին տուի հրաման, որ անմիջապէս հետեւեն սրտիս, եւ ես կոչեցի նրանց կոյր աչքեր, քանզի կորցրին տեսքը ալբիոնի։ Ես յաճախ էի խնդրում Սեֆոլկին, որ նստէր ինձ մօտ ու իր գեղեցիկ լեզուով կախարդէր (ինչ էլ քո դժբախտ անկայունութեան գործիք ծառայեց), ինչպէս ասկանին, երբ խելագարուող դիդոնին պատմեց իր հօր սխրանքը, թէ ինչպէս այդ մարդն հրդեհեց տրոյան։ Միթէ՞ նրա պէս չեմ խելագարուել եւ միթէ՞ նենգ չես նրա հօր նման։ Աւա՛ղ, չեմ կարող այլեւս համբերել։ Մեռի՛ր, մարգարիտ, հենրին տխրում է, որ ապրում ես դեռ։

*[Voices cane be heard from behind the stage. Warwick and Salisbury enter. People gather at the doorway.]*

WARWICK.
Լուրեր են շրջում, հզօր վեհապետ, որ սպանել են դաւաճանօրէն բարի գլոստերին իշխան Սեֆոլկի ու կարդինալի նենգ դրդումներով։ Ժողովուրդն ասես բիւր մեղուների պարս է զայրացած, որ կորցնելով հարազատ մօրը, ցիրուցան եղած՝ անկարգ, անկանոն խայթում է մարդկանց՝ վրէժով լեցուն։ Ես մեղմացրի նրանց կատաղի խռովութիւնը, մինչեւ որ նրանք ստոյգ իմանան պատճառը մահուան։

KING HENRY.
Որ մեռած է նա, իմ բարի վորուիկ, իրաւ է անչափ։ Բայց ինչպէ՞ս մեռաւ, այդ աստուած գիտի եւ ոչ թէ հենրին։ Մտի՛ր սենեակը ու դիտի՛ր նրա մարմինը անշունչ, պարզի՛ր, թէ ինչու նա յանկարծ մեռաւ։

WARWICK.
Շատ բարի՛, տէր իմ։ Սօլսբերի, մնա՛ բիրտ ամբոխի մօտ, մինչեւ որ դառնամ։ [Exits.]

KING HENRY.
Օ՛, դու դատաւոր ամենաբարձրեալ, միտքս ե՛տ մղիր, միտք, որ ջանում է հոգուս համոզել, որ բռնի ձեռքեր բարձրացել էին գլոստերի վրայ։ Եթէ կասկածն իմ ճիշտ չէ, ինձ ներիր, զի վերջին դատը քեզ է շնորհուած։ Ես կ՝ուզենայի հազար համբոյրով տաքացնել նրա շուրթերն անարիւն ու դէմքն հեղեղել աղի արցունքի խորունկ ովկիանով, որպէսզի սէրս շշնջամ նրա համր ու խուլ մարմնին եւ իմ մատներով շօշափեմ նրա ձեռքերն անզգայ։ Բայց զուր է վշտիս այս աղերսանքը, քանզի դիտելով դէմքը հողեղէն՝ ես պէտք է ցաւս խիստ բազմապատկեմ։

*[Warwick returns with Servants carrying Humphrey's body in a chair.]*

WARWICK.
Ե՛կ այս կողմ, տէր իմ, նայի՛ր մարմնին։

KING HENRY.
Որպէսզի տեսնեմ, թէ որքան խորն է իմ գերեզմանը՞։ Նրա հոգու հետ թռա՛ն գնացին երկրային բոլոր սփոփանքներս, քանզի նայելիս տեսնում եմ կեանքս մահուան վտանգում։

WARWICK.
Տէր իմ, ինչպէս որ ճշմարտութիւն է, հոգուս ձգտումը ապրել յաւիտեան այն արքայի հետ, որ ընդունել է մարդկային կերպար, որպէսզի փրկի իր հօր բարկացայտ անէծքներից մեզ, այդպէս էլ, իրա՛ւ, հաւատում եմ ես, որ մի բռնի ուժ ձեռք է բարձրացրել երիցս ազնիւ մի դուքսի վրայ։

SUFFOLK.
Խիստ հանդիսաւոր, ահարկու երդում, ի՞նչ ապացոյցներ վորուիկը ունի այս երդման համար։

WARWICK.
Նայի՛ր, թէ արիւնն ինչպէս է նրա դէմքը ողողել, յաճախ եմ տեսել բնական ձեւով մահացած մարդու, որ մոխրանման կերպարանք ունի, դժգոյն է, նիհար եւ արնակորոյս ամբողջ արիւնը յորդել է սիրտը որ մաքառելով գալիք մահուան հետ՝ նրանից ուժ է իզուր աղերսել իր թշնամու դէմ։ Արիւնն է սառչում սրտի հետ մէկտեղ եւ երբեք նորից չի վերադարձնում գեղեցկութիւնը, շիկնանքն այտերի։ Բայց, նայի՛ր, դուքսի դէմքն է սեւացած եւ արեամբ լեցուն, նա չունէր նման դուրս ցցուած աչքեր, որոնք նայում են խեղդուած մարդու պէս ահ ու զարզանդով, բիզ-բիզ ցցուել են նրա մազերը եւ դժուարութեամբ լայնացել ռունգերն հոգեվարքի մէջ։ Նայի՛ր, ինչպէս է ձեռքերը պրկել, կարծես կռուել

է իր կեանքի համար, բայց բռնի մի ուժ սանձել է նրան։ Նայի՛ր, մազերն են թափուած սաւանին, նրա գեղեցիկ, համաչափ խուզուած մօրուքն են փետել, այնպէս կոպտօրէն, ինչպէս մրրիկն է ամռան բերքն հնձում։ Որ սպանուել է ազնիւ դուքսն այստեղ, այս բոլորն ստոյգ ապացոյց ունեն։

SUFFOLK.
Բայց ո՞վ է, վորուիկ, սպանել դուքսին, ես հսկում էի դուքս բոֆորտի հետ նրան թշնամուց, իսկ մենք, կարծում եմ, մարդասպաններ չենք։

WARWICK.
Բայց դուք երկուսով գլոստերի երդուեալ թշնամին էիք, եւ ձեզ էր յանձնուած այդ ազնիւ դուքսի հսկողութիւնը դուք, հաւանաբար, բարեկամի պէս չէք հսկել նրան, կասկածից վեր է, որ նրան այստեղ գտաւ թշնամին։

QUEEN MARGARET.
Դուք կասկածո՞ւմ էք, որ այս լորդերը մեղք ունեն դուքսի անժամ մահուան մէջ։

WARWICK.
Երբ թարմ արեան մէջ տեսնես մի երինջ, կողքին էլ կանգնած մի բիրտ մսագործ՝ ձեռքին կացինը, պէ՞տք է կասկածել, թէ ով է մորթել խեղճ անասունին։ Երբ ցինի բնում գտնես մի կաքաւ, դու կը հասկանաս, թէ ով է խեղդել անմեղ թռչունին, թէպէտեւ ցինը ճախրում է՝ կտցին արեան ոչ մի հետք։ Նման կասկածի առիթ է տալիս ողբերգութիւնն այս։

QUEEN MARGARET.
Ուրեմն, սեֆոլկ, թէ մսագործ ես, ո՞ւր է դանակդ, իսկ բոֆորտը՝ ցին, որտե՞ղ են նրա սուր մագիլները։

SUFFOLK.
Ես քնած մարդուն մորթելու համար դանակ չեմ պահում, բայց ահա սուրս՝ սաստիկ քինայոյզ, որ ժանգոտուել է պարապ մնալուց, նա պէտք է մաքրել այն սրտի արեամբ, ով զրպարտում է ինձ ոճրագործի կարմրաշռայլ չարախօսութեամբ։ Ասա, թէ ունես համարձակութիւն, գոռոզ լորդ վորուիկ, որ ես մեղք ունեմ դուքսի մահուան մէջ։

WARWICK.
Ի՞նչ չի յանդգնի իշխան վորուիկը, եթէ առիթ տայ ստոր սեֆոլկը։

QUEEN MARGARET.
Նա չի յանդգնի ոխակալ ոգու զայրոյթը մեղմել եւ միշտ կը մնայ անկոչ մէջ ընկնող, թէկուզ սեֆոլկը տասն հազար անգամ նրան առիթ տայ։

WARWICK.
Լռէ՛ք, տիրուհի, եթէ թոյլ կը տաք ձեզ դիմել այսպէս։ Չէ՞ որ ամէն բառ, որով ուզում էք պաշտպանել նրան, ձեր արքայական դիրքը կ՚աղարտի։

SUFFOLK.
Բթամի՛տ, ստո՛ր, անարգուա՛ծ իշխան, եթէ կայ մի կին, որ դաւաճանեց, գիտցիր, քո՛ մայրն էր, որ իր յանցապարտ անկողինն առաւ մի խոժոռադէմ անտաշ ռամիկի ու ազնիւ բոյնին պատուաստեց մի շիւղ, ում եպերելի պտուղն ես, վորուիկ, ո՛չ նեւիլների ազնիւ ժառանգը։

WARWICK.
Եթէ ինձանից քեզ չպաշտպանէր քո մեղքն ահաւոր, կ՝ուզէի դահճից գողանալ նրա իրաւունքները ու քեզ ազատել տասն հազար ստոր նախատինքներից, ու թէ իմ տիրոջ ներկայութիւնը ինձ չմեղմացնէր, քեզ կը ստիպէի, երկչո՛տ ոճրագործ, որ դու ծնրադիր թողութիւն մուրաս խօսքերիդ համար, բարձրագոչ ասես, որ կասկածում ես մայրիկիդ վրայ, զի դու ես ծնուել անօրէն զաւակ։ Երբ վախկոտութեան հարկը կ՝ընդունես, քեզ կը տամ վարձդ եւ անարգ հոգիդ կ՝ուղարկեմ դժոխք, դու քնած մարդկանց արնախո՛ւմ հրէշ։

SUFFOLK.
Երբ արթուն լինես, նոր պիտի հեղեմ քո արիւնը պիղծ, թէ տղամարդ ես, դո՛ւրս եկ այստեղից։

WARWICK.
Դե՛հ, գնա՛նք իսկոյն, թէ չէ քարշ կը տամ։ Թէեւ անպէտք ես, բայց պիտի կռուեմ քեզ հետ, սրիկա՛յ։ Թող հոգեհանգիստ լինի դա հեմֆրուն։ Գնում են սեֆոլկն ու վորուիկը։

KING HENRY.
Անաղարտ սիրտն է աւելի անխոց, քան թէ ամրակուռ լանջազրահը, երիցս հզօր՝ սուրն արդարամտի, բայց ում խղճմտանքն անիրաւ գործով ապականուած է, թէկուզ երկաթեայ զրահ էլ հագնի, նա մերկ է, անզէն։

*[Noise from behind the stage.]*

QUEEN MARGARET.
Այս ի՞նչ աղմուկ է։

*[Suffolk and Warwick draw their swords.]*

KING HENRY.
Այս ի՞նչ եմ տեսնում, մեր ներկայութեամբ դուք ձեր կատաղի սրե՞րն էք հանել։ Ի՞նչ յանդգնութիւն։ Այս ի՞նչ մոլեգին աղմուկ եմ լսում։

SUFFOLK.
Հզօ՛ր վեհապետ, խուժան ամբոխով դաւաճան վորուիկն յարձակուեց վրաս։

SALISBURY.
[Addressing the crowd at the door.] Մի կողմ քաշուեցէ՛ք, թող ձեր կարծիքը արքան իմանայ։ Հզօ՛ր թագաւոր, ինձ ժողովուրդն է ուղարկել ձեզ մօտ, որպէսզի ասեմ, եթէ նենգամիտ Սեֆոլկին իսկոյն մահով չպատժէք կամ թէ չարտաքսէք չքնաղ անգլիայից, ուժով կը խլեն նրան պալատից եւ դանդաղընթաց ու դաժան մահին կը յանձնեն նրան։ Բոլորն ասում են, որ բարի դուքսին նա է սպանել, բոլորն ասում են, որ այդ մարդու մէջ ձեր մահն են տեսնում, եւ միայն սիրոյ, հաւատարմութեան բնազդը մաքուր, որ զերծ է յամառ ներհակ միտումից եւ ձեր բաղձալի տենչը կասելուց դրդում է նրանց, որ դուք աքսորէք այդ չարագործին։ Բոլորն ասում են՝ ձեր արքայական անձով մտահոգ, որ եթէ արքան ցանկանար քնել եւ մահապատժով սպառնար նրան, ով կը յանդգնէր անդորրը խռովել, ապա կ՝երեւար երկժանի լեզուով թունաւոր մի օձ, կը սահէր ձեզ մօտ անշշուկ ու լուռ։ Դրա համար էլ նրանք ջանում են, որ զարթնէք իսկոյն, զի վտանգներով լեցուն ձեր նիրհը կը դառնայ յաւէրժ։ Նրանք ջանում են ձեզ փրկել օձից, ում խիստ թունալի եւ օրհասական խայթոցը խլեց դաւաճանօրէն ձեր շատ սիրելի հօրեղբօր կեանքը, ով հազար անգամ բարձր էր Սեֆոլկից։

CITIZENS.
[From behind the scenery.] Միլորդ սօլսբերի, բեր պատասխանը մեր թագաւորից։

SUFFOLK.
Ես չեմ զարմանում, որ ժողովուրդը վայրենի ու բիրտ այսպիսի դիմում յղի արքային։ Սակայն դուք, միլորդ, ձեր ծառայութիւնն առաջարկեցիք սիրով այդ մարդկանց, որպէսզի ցոյց տաք, թէ ի՛նչ հրաշալի ատենախօս էք բայց մեծ պատիւ չէ, երբ ձեզ, սօլսբերի, թիթեղագործն է ուղարկում դեսպան թագաւորի մօտ։

CITIZENS.
[From behind the scenery.] Պատասխան տուէ՛ք, այլապէս ուժով մենք ներս կը խուժենք։

KING HENRY.
Գնա՛, սօլսբերի, իմ կողմից յայտնիր, որ զգացուած եմ նրանց քնքշալի հոգածութիւնից։ Եւ եթէ նոյնիսկ ինձ չհայցէին, ես նրանց իղձը կը կատարէի, զի ամէն վայրկեան սիրտս էր գուշակում, որ աղէտ կը գայ իմ տէրութեանը միայն Սեֆոլկից։ Ահա՛ թէ ինչու երդւում եմ աստծով, ում խիստ անարժան փոխանորդն եմ ես, որ նա կարող է՝ մահն աչքի առաջ՝ երեք օր միայն օդն ապականել իմ տէրութեան մէջ։ Գնում է սօլսբերին։

QUEEN MARGARET.
Օ՛, հենրի, թոյլ տուր չքմեղացնել ազնիւ Սեֆոլկին։

KING HENRY.
Ասում ես՝ ազնի՞ւ, անազնի՛ւ իմ կին։ Արդ, բաւ է, քանզի քո միջնորդութեամբ բազմապատկում ես զայրոյթս միայն։ Ես դատարկ տեղը խօսք չեմ շռայլում երդուել եմ՝ եւ վե՛րջ, անդրդուելի եմ։ Սեֆոլկին։ Թէ երեք օր անց քեզ տեսնեմ նորից իմ տէրութեան մէջ, դու չես ազատուի, եթէ փրկագին ողջ աշխարհը տաս։ Դէ՛հ, գնա՛նք, վորուիկ, իմ բարի՛ վորուիկ, քեզ հետ խօսելու շատ բաներ ունեմ։

*[All exit save the Queen and Suffolk.]*

QUEEN MARGARET.
Թող ձեզ ուղեկցեն վիշտն ու աղէտը թող սրտի դաժան դժկամութիւնը ու տառապանքը լինեն ձեր խաղի ընկերն անբաժան։ Որտեղ երկուս էք՝ թող սատանան էլ երրորդը լինի, թող եռապատիկ վրէժը հսկի ոտնահետքը ձեր։

SUFFOLK.
Վե՛րջ տուր անէծքիդ, անգին թագուհի, թոյլ տուր Սեֆոլկին հրաժեշտ տալ քեզ։

QUEEN MARGARET.
Վա՛յ քեզ, երկչոտ կին, փոքրոգի էակ, միթէ՞ ուժ չունես, որ նզովք նետես թշնամիներիդ։

SUFFOLK.
Ինչո՞ւ անիծել, թող ժանտամահը նրանց համբուրի։ Եթէ կարող էր նզովքն սպանել, ինչպէս հառաչը մանրագորայի, ես կը գտնէի այնպիսի կծու, թունաւոր բառեր՝ սաստիկ անախորժ ու սարսափելի ականջի համար եւ ատամներս իրար սեղմելով՝ կը շշնջայի իմ բազմահոլով ատելութիւնը, ինչպէս տխրադէմ, նիհար նախանձը՝ պժգալի ու գարշ իր քարանձաւում։ Լուրջ խօսքերիս մէջ պիտի գալարուէր կատաղի լեզուս, եւ պիտի փայլէր կայծքարի նման բոցն իմ աչքերի, եւ խելագարի վարսերի նման պիտի կանգնէին մազերս բիզ-բիզ, նոյնիսկ իմ ճնշուած սիրտը կը ջարդուէր, եթէ ես նրանց խիստ չանիծէի։ Թող ըմպելիքի փոխարէն խմեն մաղձը դառնաղի եւ թող ճաշակեն մահից աւելի դժուարահաճ բան, թող նոճիների պուրակը լինի նրանց հովանի, թող նրանց աչքերն յաւիտեան տեսնեն մահակիր ու չար բասիլիսկները թող նրանց քնքուշ հպումը թուայ ցաւալի ու բիրտ, ինչպէս մողէսի խայթոցն անախորժ, եւ թող նուագը նրանց ականջին թուայ օձերի շառաչուն ֆշշոց համերգն էլ՝ բուի ողբաձայն մի կանչ, եւ մութ դժոխքի սարսափներն ամէն։

QUEEN MARGARET.
Բա՛ւ է, սիրելիս, դու տանջում ես քեզ, չէ՞ որ դառնագին անէծքներն ասես արեւներ լինեն՝ հայելու դիմաց, կամ անչափ լցուած բիւր հրացաններ, որ ետ են դարձւում ուժգնութեամբ դէպ քեզ։

SUFFOLK.
Դու հրամայեցիր, որ ես անիծեմ, ուզում ես վե՞րջ տամ, երդւում եմ երկրով, որտեղից, աւա՛ղ, աքսորում են ինձ, որ կարող էի ձմռան մի գիշեր անվերջ անիծել, թէկուզ անզգեստ ու մերկ կանգնէի լեռան կատարին, ուր խայթիչ ցուրտը սեզեր է այրում եւ այդ գիշերն ինձ զուարճանքների վայրկեան կը թուար։

QUEEN MARGARET.
Օ՛, բաւական է, աղերսում եմ քեզ, ձեռքդ ինձ մեկնիր, որ կարողանամ իմ ողբազգաց արցունքով ցօղել, եւ թող երկնային անձրեւներ այստեղ չթափուեն երբեք չմաքրեն տանեն իմ այրող վշտի յուշարձանները։ Օ՛, կ՝ուզենայի այս տաք համբոյրը քո ձեռքին դաջուէր, համբուրում է ձեռքը։ Որ դու,

նայելով դրօշմին, սեֆոլկ, յիշէիր նրան, ով հազար անգամ քեզ է համբուրում: Ուրեմն գնա, որ կարողանամ վիշտս ճանաչել, քո ներկայութեամբ ես այն չեմ զգում կուշտ մարդն աղքատի մասին չի դատում: Քեզ ետ կը կանչեմ կամ, վստահ եղիր, ինքս ինձ պէտք է մատնեմ աքսորի առանց քեզ ես էլ մի տարագիր եմ, դե՛հ, գնա՛, գնա՛, մի՛ խօսիր ինձ հետ, Օ՛, ո՛չ, մի՛ գնա: Ա՛խ, այդպէս երկու թիապարտ ընկեր գրկում են իրար, փարւում սիրալիր եւ հազար անգամ հրաժեշտ տալիս հարիւրապատիկ հեշտ է մահանալ, քան թէ բաժանուել, բայց մնա՛ս բարեաւ, քեզ հետ հրաժեշտ տալիս եմ կեանքիս:

SUFFOLK.

Այսպէս տասն անգամ աքսորում են ինձ՝ դժբախտ Սեֆոլկիս, մէկ անգամ՝ արքան, ինը անգամ՝ դու: Ես չէի սիրի այս հողը, թէ դու չապրէիր այստեղ: Եւ անապատն ինձ կը թուայ մարդկանց բնակատեղի, թէ անբախտ սեֆոլկն ապրէր երկնային քո ապարանքում, չէ՞ որ ինձ համար քո ապրած տեղը մի ողջ աշխարհ է ուր կան մարդկային բազում հաճոյքներ: Քո տեղն առանց քեզ ցուրտ է, ամայի, բա՛ւ է, չեմ կարող: Վայելի՛ր կեանքդ, քո յաւէրժ կեանքով ես կ՝ուրախանամ:

*[Vaughn enters.]*

QUEEN MARGARET.

Ո՞ւր ես շտապում, խնդրում եմ, ասա՛, ի՞նչ լուրեր ունես:

VAUGHN.

Ես շտապում եմ թագաւորի մօտ, որպէսզի յայտնեմ, որ մահամերձ է կարդինալը մեր, ում յանկարծ բռնեց հիւանդութիւնը աչքերը չռած՝ նա օդ է որսում անիծում աստծուն ու բոլոր մարդկանց, մերթ նա խօսում է հեմֆրու հոգու հետ, մերթ թագաւորին կանչում է իր մօտ ու կարծես նրան՝ բարձին հասարակ, ծանրաբեռ հոգու իր գաղտնիքներն է անկապ շշնջում: Ես շտապում եմ թագաւորի մօտ՝ ասելու, որ նա այժմ էլ բարձրաձայն կանչում է նրան:

QUEEN MARGARET.

Գնա՛ եւ յայտնիր այս ծանր լուրը մեր թագաւորին:

*[Vaughn exits.]*

QUEEN MARGARET [cont.]

Ի՞նչ է այս կեանքը, եւ այս ի՞նչ լուր է, բայց ես ինչո՞ւ եմ թշուառ վայրկեանի կորուստը թախծում, երբ ցանձն իմ հոգու խլում են ինձնից: Ա՛խ, ինչո՞ւ, սեֆոլկ, ես արտասւում եմ քեզ համար միայն ու ես չեմ մրցում հարաւի ամպոտ անձրեւների հետ: Նրանց արցունքը հողն է սնուցում, իսկ իմը՝ վիշտս: Այժմ դու գնա, ուր որ է արքան հիմա կ՝երեւայ, եթէ քեզ տեսնի իմ կողքին, գիտցիր, կործանուած ես դու:

SUFFOLK.

Ես քեզնից հեռու չեմ կարող ապրել, բայց քո տաք գրկում, հայեացքիդ ներքոյ իմ մահը ասես քաղցր քուն լինի: Ծնկներիդ վրայ կը հանգչի հոգիս այնպէս մեղմօրէն, այնպէս հեզաբար, ինչպէս օրորցքում մեռնող մանկիկը՝ մօր կուրծքը շուրթին: Ա՛խ, քեզնից հեռու ես պիտի կանչեմ խելագարի պէս, որ ինձ

մօտ դու գաս, աչքերս գոցես ու քո շուրթերով փակես բերանս, որպէսզի թռչող հոգիս ետ բերես, թէ չէ մարմնիդ մէջ իմ հոգին կ՝ապրի, կամ թէ դրախտում: Քեզ մօտ մեռնելը կատակ է միայն, իսկ քեզնից հեռու՝ մահից աւելի խոր տառապանքներ թող մնամ քեզ մօտ, ինչ կ՝ուզէ, լինի:

QUEEN MARGARET.
Իսկոյն հեռացի՛ր: Թէեւ բաժանումն այրող դեղ է մի, բայց այն դնում են մահացու վէրքին: Դէպի Ֆրանսիա, սիրելի սեֆոլկ, թող ես քեզանից նոր լուրեր առնեմ: Ուր էլ որ լինես այս մեծ աշխարհում, Օ՜, իմ իրիդան քեզ պէտք է գտնի:

SUFFOLK.
Գնում եմ:

QUEEN MARGARET.
Քեզ հետ իմ սիրտն ես տանում:

*[They kiss passionately.]*

SUFFOLK.
Նման մի գոհար երբեք չի տեսել այսպիսի խղճուկ ոչ մի զարդատուփ: Մենք բաժանւում ենք երկու կէս արուած մէկ նաւի նման, այս ճանապարհով գնում եմ դէպ մահ:

QUEEN MARGARET.
Իսկ ես՝ այս կողմը:

*[They exit in different directions.]*

][][

ACT III. SCENE III.
London. Beaufort's bedchamber. The King enters with Salisbury and Warwick, to find the Cardinal in bed.

KING HENRY.
Ինչպէ՞ս ես զգում, խօսի՛ր, կարդինալ, քո արքայի հետ:

CARDINAL.
Եթէ դու մահն ես, քեզ կը տամ անգլիոյ գանձերը բոլոր, որ կարողանաս վերստին գնել նման մի կղզի, միայն թէ կեանք տուր ու ցաւս ամոքիր:

KING HENRY.
Ա՛խ, սա նշան է միայն վատ կեանքի, երբ սարսափով ես նայում դու մահուան:

WARWICK.
Կարդինա՛լ, քեզ հետ խօսում է արքան։

CARDINAL.
Տուէք ինձ դատի, եթէ ուզում էք միթէ՞ չի մեռել նա իր անկողնում իսկ ուրիշ որտե՞ղ նա պէտք է մեռնէր։ Կարո՞ղ եմ մարդկանց ստիպել ապրել։ Օ՛, ինձ մի՛ տանջէք, կ՝ասեմ ամէն ինչ։ Յարութի՞ւն առաւ, ո՞ւր է, ցոյց տուէք, գանձերս կը տամ, որ տեսնեմ նրան։ Նա աչքեր չունի, լցուած է հողով։ Սանրէ՛ք մազերը։ Օ՛, նայէ՛ք, նրանք բիզ-բիզ են կանգնել ձիւթած ճիւղի պէս, որպէսզի բռնեն իմ թռչող հոգին, ջո՛ւր տուէք, խմեմ։ Թող դեղագործը բերի վաղուցուայ առած իմ թոյնը։

KING HENRY.
Օ՛, դու երկնային շարժիչ յաւիտեան, նայիր բարութեամբ այս խեղճ էակին, Օ՛, վանի՛ր հեռու սատանային չար, որ յամառօրէն ջանում է տիրել անբախտի հոգուն, ու սրտից հանիր այս մռայլադէմ վհատութիւնը։

WARWICK.
Տե՛ս, թէ ինչպէ՛ս է կրճտացնում իր ատամները մահուան ցաւի մէջ։

SALISBURY.
Մի՛ տանջէք նրան, թող խաղաղութեամբ աւանդի հոգին։

KING HENRY.
Թող հանգչի խաղաղ, եթէ այսպէս է աստուած կամենում։ Կարդինա՛լ, թէ դու դրախտի մասին խորհում ես հիմա, ձեռքդ բարձրացրու որպէս թէ յոյսի արտայայտութիւն։

*[The Cardinal dies.]*

KING HENRY [cont.]
Ձեռքն էլ նոյնիսկ չի շարժում։ Օ՛, աստուա՛ծ, ներէ՛ր։

WARWICK.
Ով հրէշային կեանք է ունեցել, նա էլ մեռնում է այսպէս տանջալից։

KING HENRY.
Մի՛ կարգիր այլոց դու քեզ դատաւոր, չէ՞ որ բոլորս էլ մեղաւորներ ենք, փակէ՛ք աչքերը եւ վարագոյրը դանդաղ իջեցրէք թող մենք էլ գնանք, յանձնուենք խոհին։

*[They exit.]*

ACT IV. SCENE I.
Off the coast of Kent. Fight at sea. Heavy weapons discharge. Lieutenant enters with a Shipmaster and his Mate, as well as Walter Whitmore, with Suffolk and other Gentlemen as prisoners.

LIEUTENANT.
Սուզւում է ծովի գիրկը պճնազարդ մեղքերով լեցուն շատախօս օրը, շուտով գայլերի կաղկանձն աիարկու կ՝արթնացնի նիհար, քնձռոտ ձիերին, որ քարշ են տալու այս եղերական տխուր գիշերը։ Նրանք քնաբեր, յամրասահ ու հեղգ, անուժ թեւերով կը գրկեն մարդկանց գերեզմանները եւ կը ներշնչեն միգոտ երախով տարափոխանցիկ, գարշահոտ մութը։ Աստ բերէք գերած մեր զինուորներին։ Քանի դեռ դուէլում խարիսխ ենք ձգել, թող տան փրկագինն աւազի վրայ, կամ արեամբ ներկեն գոյնը աւազի։ Հէ՛յ, շկիֆե՛ր, քեզ եմ ձրիաբար յանձնում այս ռազմագերուն, իսկ քեզ, ղեկապետ, սա որպէս նուէր, նա էլ՝ քեզ, վիտմոր, չաղ բաժին ընկաւ։

*[Points to Suffolk.]*

RANDOM NOBLE I.
Ի՞նչ է, շկիֆեր, թոյլ տուր իմանալ, իմ փրկագինը։

MATE.
Մէկ հազար կրօն կամ թէ գլուխդ։

MASTER.
Նոյնքան էլ քոնն է, թէ ոչ՝ կը մեռնես։

LIEUTENANT.
Կարծում էք՝ շա՞տ է երկու հազարը, դեռ ազնուական ծագո՛ւմ էլ ունէք։ Հէ՛յ, կտրէք սրանց կեղտոտ կոկորդը։ Դուք պէտք է մեռնէք։ Կարծում էք՝ այսքան չնչին գումարով դուք կը հատուցէ՞ք այն խիզախ մարդկանց որ մենք կորցրինք ճակատամարտում։

RANDOM NOBLE I.
Ես կը տամ, պարոն, կեանքս խնայէք։

RANDOM NOBLE II.
Ես նոյնպէս, իսկոյն կը գրեմ մերոնց։

WHITMORE.
Կռուի մէջ կորցրի իմ աչքի մէկը։ Սեֆոլկին։ Ես պէտք է քեզնից իմ վրէժն առնեմ։ Դու պէտք է մեռնե՛ս։ Ուրիշներին էլ ես կ՝ուղարկէի ծովի յատակը։

LIEUTENANT.
Պէտք չէ՛ շտապել։ Փրկագինը ա՛ռ եւ թոյլ տուր՝ ապրի։

SUFFOLK.
Նայիր այս ոսկեայ շքանշանիս, ազնուական եմ։ Գին դիր, կը ստանաս։

WHITMORE.
Ես նոյնպէս ունեմ ազնուական ծագում, ինձ անուանում են սըր վիտմոր վալտեր։ Ի՞նչ է, դողո՞ւմ ես, սարսափո՞ւմ մահից։

SUFFOLK.
Ես քո անունից երկիւղ եմ կրում, զի մահուան ձայնն եմ լսում նրանից։ Մի բախտագուշակ նայել է աստղիս, եւ ասել, որ ես կը մեռնեմ ջրում, բայց դու չես թափի արեան մի կաթիլ, քո անունն ստոյգ հնչում է գոթիէ։

WHITMORE .
Գոթիէ կամ վիտմոր։ Արդ, միեւնոյնն է։ Դեռ ոչ մի ստոր խայտառակութիւն չի նսեմացրել մեր անունն ազնիւ ամէն մի արատ սրով ենք մաքրում։ Ու թէ ես պիտի վաճառորդի պէս վրէժս ծախեմ, թող սուրս ջարդեն, պատիւս եղծեն եւ թող ինձ ստոր վախկոտ անուանեն։

SUFFOLK.
Սպասիր, վիտմոր, գերիդ իշխան է, ես դուքս սեֆոլկն եմ, վիլեամ դը պոլը։

WHITMORE.
Ինչպէ՞ս, սեֆոլկը՝ ցնցոտիներո՞վ։

SUFFOLK.
Այո՛, բայց քուրջերն իմ բաժինը չեն, զեւսն էլ է քայլել երբեմն ծպտեալ։

LIEUTENANT.
Զեւսը չի մեռել, բայց դու կը մեռնես։

SUFFOLK.
Ստոր, աննշան, կաթնակեր ռամիկ, գիտցիր, թագաւոր հենրու արիւնը՝ լանկաստերների արիւնը ազնիւ, չի կարող հեղել մի խեղճ ձիապան։ Դու չէի՞ր արդեօք բռնում ասպանդակն իմ ազնիւ ձիու, դու չէի՞ր արդեօք գլխաբաց վազում տապճակով ծածկուած իմ ջորու կողքով եւ քեզ համարում անչափ բախտաւոր, երբ նշան էի անում ես գլխով։ Քանի՛ անգամ ես ինձ գաւաթ բերել եւ ծունր իջած՝ կերակուր խնդրել, երբ քէֆ եմ արել իմ թագուհու հետ։ Յիշի՛ր եւ խելքդ գլուխդ պահիր, սանձիր թերածին հպարտութիւնդ։ Դու չէի՞ր կանգնում նախասրահում եւ, ըստ արժանւոյն, սպասում էիր, թէ երբ դուրս կը գամ։ Այս ձեռքը, որ քեզ փորձանքից փրկեց, յիշի՛ր ու սանձի՛ր ապստամբ լեզուդ։

WHITMORE.
Ասա՛, կապիտան, պէտք չէ՞ դաշունել այս անզգամին։

LIEUTENANT.
Նախ՝ թող բառերս խոցեն այս մարդուն, ինձ վիրաւորեց։

SUFFOLK.
Ստոր սրիկայ, բառերդ բութ են ուղիղ քեզ նման։

LIEUTENANT.
Տարէք այստեղից, գլխատէք նրան մեր նաւի վրայ։

SUFFOLK.
Դու ձեռք չե՞ս քաշում քո յիմար գլխից։

LIEUTENANT.
Այո՛, վիլեամ պոլ։

SUFFOLK.
Ի՞նչ ասացի՞ր, պո՞լ։

LIEUTENANT.
Պո՞լ, պո՞լ, պո՞լ, նեխած ջրափոս, փողոցի առու, կեղտոտ կոյուղի, քո աղտն ու ցեխը արծաթանման ակն են պղտորում, ուրկից խմում է բովանդակ անգլիան։ Այժմ կը փակեմ բացուած երախդ, որ խժռել էր թագաւորութեան ողջ գանձատունը, եւ քո շուրթերը, որ համբուրել են չքնաղ թագուհուն, արդ, պէտք է աւլեն կեղտոտ գետինը։ Դու, որ ժպտադէմ նայեցիր մեռնող բարի գլոստերին, զուր պէտք է ցոյց տաս ցից ատամներդ ծաղրաշունչ քամուն, որ պէտք է սուլի՝ քեզ անգոսնելով։ Դու պէտք է դառնաս փեսան դժոխքի, զի յանդգնեցիր պսակել հենրուն անարժան մարդու աղքատ դստեր հետ, մի խղճուկ արքայ, որ չունէր ո՛չ թագ, ո՛չ հարստութիւն, ո՛չ հպատակներ։ Դու սատանայի խորամանկութեամբ սաստիկ բարձրացար եւ խիստ փառասէր սուլլայի նման յագեցար մօրդ սրտի արիւնով, դու մենն ու անժուն ծախիր թշնամուն, դու նորմանդիայի ապստամբներին լեզու տուեցիր, որ նրանք այսօր արհամարհանքով մեզ տէր չեն կոչում, իսկ պիկարդացիք, մորթելով իրենց կուսակալներին, առել են արդէն մեր ամրոցները եւ տուն են քշում քրջոտ, վիրաւոր մեր զինուորներին։ Իսկ նեւիլները, վորուիկն արքայազն, ում սրերն ահեղ զուր չեն մերկացել, զինուել են քո դէմ ատելութիւնից։ Այրւում է հիմա վրէժխնդրութեան կրակների մէջ եորքի տունն անթագ, քանզի սպանեց անմեղ արքային մի արիւնարբու, գոռոզ բռնակալ։ Եւ նա յուսալի դրօշների վրայ առաջ է տանում մեր կէս-արեւը, որ ի հեճուկս բարձր ամպերի՝ աւելի պայծառ, վեհօրէն շողայ։ Ժողովուրդն այստեղ՝ քէնտում, զինուել է։ Գիտցի՛ր, սողոսկեց պալատն արքայի լոկ քո միջոցով խայտառակութիւն եւ աղքատութիւն։ Կորսուի՛ր։ Տարէք սրան այստեղից։

SUFFOLK.
Օ՜, ես կ՝ուզէի մի աստուած լինել, որ իմ որոտը պարպէի նուաստ, անզգամ, գծուծ այս մարդկանց գլխին։ Դատարկ գործերով հպարտանում են լոկ ստոր մարդիկ, եւ այս սրիկան, լինելով խղճուկ նաւի

կապիտան, ինձ սպառնում է աւելի ուժեղ ու յանդգնօրէն, քան բարգուլըսը՝ իլլիրիայի ծովահէնն աhեղ։ Բոռը չի ծծում արծուի արիւնը, բայց գողանում է փեթակից մեղրը անկարելի է, որ մեռնեմ անարգ ստրուկի ձեռքով, ինչպիսին դու ես։ Քո բառերն իմ մէջ զայրոյթ են վառում, բայց ոչ՝ խղճմտանք։ Ես մեր թագուհու յանձնարարութեամբ մեկնում եմ ֆրանսիա, դու պէտք է նեղուցն ինձ անցկացնես ապահովապէս։

LIEUTENANT.
Հէ՛յ, վիտմո՛ր։

WHITMORE.
Գնա՛նք։ Քեզ կ՝անցկացնեմ ես այն աշխարհը։

SUFFOLK.
Սառցէ վախն է թափանցում իմ սիրտը։ Ես վախենում եմ միայն քեզանից։

WHITMORE.
Գնալուց առաջ դեռ դու կ՝ունենաս վախի առիթներ։ Ի՞նչ, վախենո՞ւմ ես։ Հնազանդւո՞ւմ ես։

RANDOM NOBLE I.
[To Suffolk.] Ողորմա՛ծ իմ տէր, թախանձէք նրան եւ քնքշութեամբ նրա հետ խօսէ՛ք։

SUFFOLK.
Սեֆոլկի լեզուն կոպիտ է, դաժան ու հրամայող, եւ նա չգիտի երբեք թախանձել։ Աստուած էլ չանի, որ նման մարդկանց, ինչպիսին սա է, պատուենք ու յարգենք մեր քաղցր խօսքով։ Ո՛չ։ Կը նախընտրեմ կոճղը գլխատման քան ծունկի կը գամ այն մարդու առաջ, ով ո՛չ աստուած է, ո՛չ էլ թագաւոր։ Ես յօժարակամ կ՝ելնեմ արիւնոտ, սուր ցցի վրայ, քան թէ կը կանգնեմ մի կոպիտ, անտաշ ստրուկի առաջ։ Ազնուականը վախ չունի երբեք, պատրաստ եմ տանել աւելի մեծ վիշտ, քան կը պատճառես։

LIEUTENANT.
Դուրս տարէք սրան, հերի՛ք բարբաջի։

SUFFOLK.
Գնա՛նք, զինուորներ, ցոյց տուէք մարդկանց, թէ դուք ինչպիսի վայրագութիւններ կարող էք անել, որպէսզի մահս յիշուի յաւիտեան։ Յաճախ մեռնում են մեծամեծ այրերն ստոր ձեռքերով մի եղեռնագործ, հելուզակ գերու դաշոյնով ընկաւ չքնաղ տուլլիուսը, իսկ պոռնկորդի բրուտուսի ձեռքով՝ յուլիոս կեսարը։ Մեծ պոմպէոսի գլուխը կերան ցեղերը վայրի, իսկ ես մեռնում եմ այս ծովահէնի արիւնոտ ձեռքով։

*[Whitmore and Suffolk exit.]*

LIEUTENANT.
Իսկ մեզ հաճոյ է՝ փրկագին տուող սրանցից մէկին ազատ արձակել։ Հէ՜յ, դու, ինձ հետ եկ, իսկ նա թող գնայ։

*[As everyone starts to leave Whitmore returns with Suffolk's head.]*

WHITMORE.
Թող այստեղ մնայ գլուխն անիծեալ եւ մարմինն անկեանք, մինչեւ որ նրա չքնաղ սիրուհին կը յանձնի հողին։

RANDOM NOBLE I.
Օ՜, վայրագ, դաժան, արնոտ տեսարան պէտք է հասցնեմ դիակն արքային։ Օ՜, եթէ ո՛չ նա, բարեկամները վրէժը կ՝առնեն, եւ թագուհին էլ, որին սիրում էր։

*[Exits, carrying the body.]*

][][

ACT IV. SCENE II.
Blackheath. George Bevis and John Holland enter.

GEORGE
Գնա՛, քեզ համար մի սուր ճարի, թէկուզ փայտից։ Նրանք երկու օր է, ինչ ոտքի են կանգնել։

JOHN.
Ուրեմն քնելու խիստ կարիք ունեն։

GEORGE
Ես ասում եմ քեզ, որ դերձակ Ջեկ Քեդը միտք ունի պետութեան վերարկուն նորոգել, դարձնել ու նոր խաւ տալ։

JOHN.
Ժամանակն է հին վերարկուն փոխելու, որովհետեւ խաւը թափուել է։ Հաւատա, ի՞նչ ազնուականներ են անգլիայի գլուխն անցել, մի լաւ օր չենք տեսնում։

GEORGE
Օ՜, եղկելի ժամանակներ, վարպետութիւնը այլեւս ոչ մի արժէք չունի արհեստների մէջ։

JOHN.
Ազնուականները արհամարհում են կաշուէ գոգնոցները։

GEORGE
Իսկ թագաւորի խորհրդատուները լաւ խորհուրդ տուող չեն։

JOHN.
Իրաւացի ես։ Բայց ասում են՝ աշխատիր գործդ կատարել։ Սա նշանակում է, որ պէտք է իշխեն աշխատող մարդիկ, ուրեմն մենք պիտի իշխող դառնանք։

GEORGE
Ճիշտ նշանին խփեցիր, որովհետեւ խիզախ մտքի նշանը ամուր ձեռքն է։

JOHN.
Ես տեսնո՛ւմ եմ նրանց։ Ես տեսնո՛ւմ եմ նրանց։ Ահա՛ բեստի տղան, ուինգեմցի կաշեգործը։

GEORGE
Մենք նրան կը տանք մեր թշնամու կաշին, որ դաբաղի ձեռնոցի համար։

JOHN.
Ահա՛ մսագործ դիկը։

GEORGE
Ուրեմն մեղքը գետին կը տապալի եզան պէս եւ կը կտրի անարդարութեան կոկորդը հորթի պէս։

JOHN.
Ահա՛ ջուլհակ սմիթը։

GEORGE
argo։ Նրանց կեանքի թելը շուտով կը կտրի։

JOHN.
Գնա՛նք, գնա՛նք, խառնուենք նրանց։

*[Drums. Cade, Cock Robin the Butcher, Smith the Weaver and a Sawyer enter followed by infinite numbers.]*

CADE.
Մենք՝ ջոն քեդը, այսպէս կոչուած մեր ենթադրեալ հօր անունով։

COCK ROBIN.
[Aside.] Աւելի շուտ՝ գողացուած կէտ ձկան անունով։

CADE.
Մեր թշնամիները կը տապալուեն մեր առաջ։ Ոգեւորուած թագաւորներին ու իշխաններին

տապալելու ձգտումով։ Ասա՛, որ լռեն։

COCK ROBIN.
Լռութի՛ւն։

CADE.
Իմ հայրն էր մորտիմերի ցեղից։

COCK ROBIN.
[Aside.] Մի ազնիւ մարդ ու բարի պատշար։

CADE.
մայրս Պլանտագենետների տոհմից է սերուել։

COCK ROBIN.
[Aside.] Լաւ եմ ճանաչում։ Մի մանկաբարձ էր։

CADE.
կինս լեսեաց տոհմից էր սերուել։

COCK ROBIN.
[Aside.] Գիտեմ, չարչու աղջիկ էր։ ժանեակ էր ծախում։

SMITH.
[Aside.] Բայց քանի որ նա կապոցը մէջքին չի կարող քարշ գալ, տանը ուրիշի լուացքն է անում։

CADE.
Հետեւաբար ես սերուել եմ ազնիւ տոհմից։

COCK ROBIN.
[Aside.] Այո՛, ի հարկէ, դաշտն ազնիւ տեղ է, եւ նա էլ այնտեղ լոյս աշխարհ եկաւ, ցանկապատի տակ, քանի որ հայրը ուրիշ տուն չունէր, բացի բանտից։

CADE.
Կտրի՛ճ եմ։

SMITH.
[Aside.] Ի հարկէ, մուրացկանին պէտք է խիզախութիւն։

CADE.
ես շատ բան կարող եմ տանել։

COCK ROBIN.
[Aside.] Ոչ ոք չի առարկի: Յաճախ եմ տեսել, թէ ինչպէս երեք օր նրան անընդհատ մտրակում էին շուկայում:

CADE.
Ես չեմ վախենում հրից ու սրից:

SMITH.
[Aside.] Նա ինչո՞ւ վախենայ սրից: Նրա զգեստը շատ բան է տեսել:

COCK ROBIN.
[Aside.] բայց ինձ թւում է, որ կրակից պիտի վախենայ, որովհետեւ տուժել է, ձեռքը խարանել են ոչխար գողանալիս:

CADE.
Արիացէք, որովհետեւ ձեր հրամանատարը քաջ մարդ է ու երդուել է բարեփոխութիւններ մտցնել: Անգլիայում եօթ ու կէս պենիանոց հացը պէտք է վաճառուի մէկ պենիով, մի գաւաթ գարեջուրը ոչ թէ երեք, այլ տասն անգամ կը չափուի, եւ քրէական յանցագործ կը համարեմ նրան, ով թոյլ գարեջուր խմի: Տէրութեան մէջ բոլորը կը ճանաչուեն հաւասար, եւ իմ ձին կ՝արածի չիպսայդում: Իսկ ես կը դառնամ թագաւոր:

EVERYONE.
Աստուա՛ծ պահի ձերդ մեծութեանը:

CADE.
Շնորհակալութիւն, բարի՛ մարդիկ: Այն ժամանակ փող չի լինի, բոլորդ կ՝ուտէք-կը խմէք իմ հաշուին, կը հագնէք միեւնոյն զգեստը եւ կ՝ապրէք հաշտ ու խաղաղ, եղբայրների պէս եւ ինձ կ՝երկրպագէք որպէս ձեր տէրը:

COCK ROBIN.
Մեր առաջին գործը այն կը լինի, որ սպանենք բոլոր օրէնսգէտներին:

CADE.
Ո՛չ: Այդ բանը միտք ունեմ ինքս անելու: Միթէ՞ ցաւալի չէ որ մի անմեղ գառան մորթուց պատրաստում են մագաղաթ: Իսկ մագաղաթը, երբ յոռի եւ անընթեռնելի գրերով մրոտում են, կարող է մի մարդ կործանել: Ասում են՝ մեղուն խայթում է, բայց ես ասում եմ՝ խայթում է մեղրամոմը, որովհետեւ մէկ անգամ միայն մատս դրել եմ մեղրամոմի վրայ: Եւ այն օրից հանգիստ չունեմ:

*[The Scribe enters, guarded.]*

SMITH.
Չեթեմցի գրագիրն է։ Նա կարող է գրել, կարդալ ու հաշուել։

CADE.
Օ՜, խայտառակութի՜ւն։

SMITH.
Մենք նրան բռնեցինք այն ժամանակ, երբ նա ուղղում էր տղաների տետրակները։

CADE.
Ա՜յ, դու սրիկայ։

SMITH.
Գրպանում մի գիրք կայ, տառերն էլ՝ կարմիր։

CADE.
Նշանակում է՝ կախարդ է։

COCK ROBIN.
Այո՜։ Եւ նա կարող է պարտամուրհակներ կազմել ու գրել դատական ոճով։

CADE.
Շա՜տ ցաւալի է։ Երդւում եմ պատուովս՝ աչքիս վատ մարդ չի երեւում։ Եթէ ես նրան չճանաչեմ մեղապարտ, նա չի գլխատուի։ Հէ՜յ, այս կողմ արի, ես քեզ հարցուփորձ պիտի անեմ։ Ի՞նչ է անունդ։

SCRIBE.
Էմանուէլ։

COCK ROBIN.
Հէնց այս անունը գրում են նամակների ճակատին։ Այդ բանը քեզ վրայ թանկ կը նստի։

CADE.
Կա՜ց։ Քո անունը տառերո՞վ ես գրում, թէ՞ քո նշանն ունես, ինչպէս ազնիւ, հասարակ մարդիկ։

SCRIBE.
Պարոն, փա՜ռք աստծոյ, ես լաւ կրթութիւն եմ ստացել եւ կարող եմ անունս գրել։

EVERYONE.
Նա խոստովանե՜ց։ Տարէ՜ք նրան։ Նա մի սրիկայ է ու դաւաճան։

CADE.
Ես ասում եմ՝ տարէք նրան, կախէք իր գրչի հետ, թանաքամանն էլ վիզը գցէք։

*[Michael enters.]*

MICHAEL.
Որտե՞ղ է մեր հրամանատարը։

CADE.
Այստեղ եմ, զինուո՛ր իմ։

MICHAEL.
Փախէ՛ք, փախէ՛ք, փախէ՛ք։ Պարոն հեմֆրի ստեֆորդը եւ իր եղբայրը թագաւորական զօրքի հետ մի րոպէ չանցած այստեղ կը լինեն։

CADE.
Կա՛ց, սրիկա՛յ, կա՛ց, թէ ոչ՝ գետին կը տապալեմ։ Նա կը կռուի իրենից ոչ պակաս մի մարդու հետ։ Նա ասպետ է, այնպէս չէ՞։

MICHAEL.
Հէնց այդպէս։

CADE.
Որպէսզի հաւասարուեմ նրան, ես ինքս ինձ ասպետ կը կարգեմ։ [Kneels down.] վե՛ր կաց, սըր ջոն մորտիմեր։ [Rising.] Այժմ գնանք նրան ընդառաջ։

*[Drums. Sir Humphrey Stafford enters with and William, his brother.]*

STAFFORD.
Խռովեա՛լ ամբոխ, դուք քէնտի փրփուր ու գարշահոտ կեղտ, դուք կախաղանի արժանի մարդիկ, զէնքը վար դրէք, վերադարձէք տուն ու երես թեքէք այս ծիապանից։ Արքան կը ների ձեզ բարի սրտով, եթէ ետ կանգնէք։

WILLIAM.
Բայց նրա ցասումն արեան կը փոխուի, եթէ յամառէք։ Անձնատո՛ր եղէք, թէ ոչ կը մեռնէք։

CADE.
Հարկ չեմ համարում դիմել մետաքսեայ զգեստով պճնուած այդ ստրուկներին։ Ձեզ հետ եմ խօսում, իմ բարի մարդիկ, ում վրայ պէտք է տարածուի կարգը իմ իշխանութեան։ Յոյս ունեմ՝ կը գայ այդ ժամանակը, զի օրինաւոր ժառանգն եմ գահի։

STAFFORD.
Սրիկա՛յ, հայրդ գահ էր սուաղում, իսկ ինքդ հիմա ոչխար ես խուզում։

CADE.
Չէ՞ որ ադամն է եղել պարտիզպան։

WILLIAM.
Դրանից քեզ ի՞նչ։

CADE.
Այն, որ մարչի կոմս Էդմոնդ մորտիմերն առաւ իրեն կին դուքս կը լարենսի աղջկան։

STAFFORD.
Յետո՞յ։

CADE.
Եւ նա ունեցաւ նրանից զոյգ տղայ։

WILLIAM.
Ստո՛ւմ ես։

CADE.
Հարց է, թէ ով է ստում։ Բայց քեզ ասում եմ ճշմարտութիւնը։ Երկուորեակների աւագ տղային, որ յանձնուած էր ծծմօր խնամքին, գողացաւ տարաւ մուրացիկ մի կին։ Եւ չիմանալով իր տոհմի մասին՝ նա քարտաշ դարձաւ, երբ հասակ առաւ։ Տղան եմ նրա, կարող ես՝ հերքիր։

COCK ROBIN.
Ո՛չ, ամենայն ինչ ճշմարտութիւն է, եւ նա կը դառնայ թագաւորը մեր։

SMITH.
Սը՛ր, նա իմ հօր տան ծխնելոյզն էր շինում, եւ մինչեւ օրս կան այդ աղիւսները, որոնք վկայում են իսկութիւնը։ Ահա՛ թէ ինչու լաւ է՝ չվիճենք։

STAFFORD.
Դուք հաւատո՞ւմ էք այս խաբեբայի ստոր խօսքերին, որ չի իմանում՝ ինչ է դուրս տալիս։

EVERYONE.
Մենք հաւատում ենք։ Դրա համար էլ կորէ՛ք այստեղից։

WILLIAM.
Քե՛դ, ասա՛, եո՞րքն է քեզ խելքից հանել։

CADE.
[Aside.] Նա ստում է, որովհետեւ ինքս եմ հնարել։ (բարձր։) գնա, ա՛յ մարդ, ու իմ կողմից արքային ասա, որ ի սէր իր հօր՝ հենրի հինգերորդի, ում օրօք ֆրանսիական ոսկեդրամը երեխաների խաղալիք էր դարձել, համաձայն եմ, որ նա թագաւորի, բայց ես պէտք է դառնամ նրա խնամակալը։

COCK ROBIN.
Բացի այդ, մենք պահանջում ենք լորդ սեյի գլուխը, որովհետեւ նա ծախել է մենի դքսութիւնը։

CADE.
Հրաշալի՛ միտք։ Այդ բանը առիթ դարձաւ, որ անգլիան կորցնէր իր զօրութիւնը եւ քայլէր գաւազանի օգնութեամբ, եթէ ձեռք չմեկնէի։ Արքայ, եղբայրներ, ես ասում եմ, որ այդ լորդ սեյը թլպատել ու ներքինիացրել է պետութիւնը։ Բացի այդ, նա խօսում է ֆրանսերէն, նշանակում է՝ դաւաճան է։

STAFFORD.
Օ՛, ողորմելի, բիրտ տգիտութիւն։

CADE.
Ո՛չ, պատասխանի՛ր, եթէ կարող ես ֆրանսիացիները մեր թշնամիներն են, ուստի հարց եմ տալիս քեզ միթէ՞ նա, ով խօսում է թշնամու լեզուով, կարող է բարի խորհրդատու լինել։

EVERYONE.
Ո՛չ, ո՛չ։ Մենք նրա գլուխն ենք ուզում։

WILLIAM.
Երբ քաղցր բառերն անզօր են դառնում, պէտք է յարձակուել արքայի զօրքով։

STAFFORD.
Հէ՛յ, հերալդ, մտիր ամէն մի քաղաք, հռչակիր նրանց երկրի դաւաճան, ովքեր քեդի հետ զէնք են վերցրել։ Թող նրանց կախեն իրենց դռան մօտ՝ իրենց տղայոց ու կնոջ առաջ, ովքեր փախչում են դեռ մարտն անաւարտ։ Ովքեր արքայի բարեկամներն են, թող ինձ հետեւեն։

*[The two Staffords exit.]*

CADE.
Իսկ ով սիրում է հասարակ մարդկանց, թող ինձ հետեւի։ Այժմ ցոյց տուէք ինձ, ազատութեան քաջասիրտ այրեր, չեն փախչի մեզնից ո՛չ ազնուական, ո՛չ իշխան, ո՛չ դուքս պէտք է խնայել այն մարդկանց միայն, ովքեր հագնում են կարկատած կօշիկ, նրանք խնայող, ազնիւ մարդիկ են, նրանք կ՝ուզէին մեր կողմը անցնել, բայց չեն յանդգնում։

COCK ROBIN.
Նրանք, շարք կազմած, գալիս են մեր դէմ։

CADE.
Իսկ մենք խառնակ վիճակում շատ աւելի պատրաստ ենք։

*[They exit.]*

][][

ACT IV. SCENE III.
Another part of Blackheath. Drums. Fighting starts. Both Staffords are slain. Soon Cade enters.

CADE.
Որտե՞ղ է դիկը՝ աշֆորդցի մսագործը։

COCK ROBIN.
Այստեղ եմ, պարո՛ն։

CADE.
Նրանք ընկան քո առջեւ ոչխարների ու եզների պէս, եւ դու վարուեցիր նրանց հետ այնպէս, ինչպէս քո սեփական սպանդանոցում։ Ահա թէ ինչու ցանկանում եմ քեզ հատուցել։ Թող մեծ պասը կրկնակի երկար տեւի, քան այժմ է, ու քեզ արտօնութիւն տրուի սպանելու իննսունինը անասուն մէկ շաբաթում։

COCK ROBIN.
Աւելին չեմ կամենում։

CADE.
Եւ, ճշմարիտն ասած, պակասին էլ արժանի չես։ Ես պէտք է կրեմ այս յաղթանակի նշանը։ [Puts on Sir Humphrey's coat.] Իսկ նրանց մարմինը թող ձիս քարշ տայ այնքան ժամանակ, քանի դեռ չեմ մտել լոնդոն, որտեղ քաղաքագլխի սուրը կը տանեն մեր առջեւով։

COCK ROBIN.
Եթէ միտք ունէք յաջողութեան հասնել ու բարի գործ անել, պէտք է ջարդել զնդանների դռները ու ազատ արձակել բանտարկեալներին։

CADE.
Մի՛ վախենա, ես քեզ կ՝ապահովեմ։

*[They exit.]*

## ACT IV. SCENE IV.

London. The Palace. The King enters with the Queen who is holding Suffolk's head. They are followed by the Duke of Buckingham and Lord Seyyed.

QUEEN MARGARET.
Յաճախ եմ լսել, որ վիշտն է մեղմում մարդկային ոգին եւ նրան դարձնում վեհերոտ ու թոյլ: Ուրեմն խորհիր վրէժի մասին, հերի՛ք արտասուես: Բայց ո՞վ կարող է արցունքը զսպել ոճիրի առջեւ: Ես պիտի սեղմեմ բաբախող սրտիս նրա գլուխը, ո՞ւր է մարմինը, որ փարուեմ նրան:

BUCKINGHAM.
[To the King.] Ձերդ մեծութիւն, ի՞նչ պատասխան էք տալու ապստամբների աղերսագրին:

KING HENRY.
Պէտք է ուղարկեմ մի եպիսկոպոս, որ լեզու գտնի այդ ամբոխի հետ: Թող աստուած չանի, որ այսքան անմեղ հոգիներ ընկնեն սրի հարուածից: Իսկ ես քեզի հետ կը խօսեմ փութով, քան թէ արեան մէջ կը քաշենք նրանց: Բայց կաց մի վայրկեան, վերստին կարդամ աղերսագիրը:

QUEEN MARGARET.
Ա՛խ, արիւնարբու, վայրի ստրուկներ, միթէ՞, ասացէք, այս չքնաղ դէմքը, որ ղեկավարուել գիտէր ինձանով, մոլորակի պէս, չէ՞ր կարող նրանց զայրոյթը մեղմել, ՝ ովքեր այդ մարդուն արժանի չէին երբեք նայելու:

KING HENRY.
Լորդ սեյ, ջէկ քեզը գլուխդ է ուզում:

LORD SEYYED.
Յոյս ունեմ՝ մինչ այդ կը սպանէք նրան:

KING HENRY.
Ի՞նչ է, տիրուհի: Դու դեռ ողբո՞ւմ ես մահը Սեֆոլկի: Վախենում եմ ես, սէր իմ, թէ մեռնեմ, դու լաց չլինես ինձ վրայ այդպէս:

QUEEN MARGARET.
Օ՛, ո՛չ, սիրելիս, ես չէի ողբայ, վշտից կը մեռնէի:

*[Messenger I enters.]*

KING HENRY.
Ի՞նչ է պատահել, ի՞նչ լուր ես բերել: Ինչո՞ւ ես այդպէս խիստ աճապարում:

MESSENGER I.
Ապստամբները սաուլթուորկ մտան։ Փութացէ՛ք, տէր իմ, քեդն հռչակել է իրեն մորտիմեր, իբրեւ սերուել է դուքս կը լարենսի մեծանուն տոհմից։ Ձեզ յափշտակիչ, գող է անուանում, երդուել է իրեն արքայ հռչակել վեստմինստերում, նրա բանակն են կազմում անողորմ, վայրի գիւղացիք եւ քուրջեր հագած բիրտ խաժամուժը։ Նրանք, թեւ առած ստեֆորդների դժնդակ մահից, նետւում են առաջ համարձակօրէն եւ բոլորին էլ՝ լինեն գիտնական, թէ՛ ազնուական, թէ՛ պալատական կամ թէ՛ օրէնսգէտ, նրանք կոչում են ագահ թրթուրներ եւ մտադիր են նրանց սպանել։

KING HENRY.
Օ՛, անգութ մարդիկ, չեն էլ հասկանում, թէ ինչ են անում։

BUCKINGHAM.
Ողորմած տէր իմ, մեկնիր կիլինգուորթ, մինչեւ նրանց դէմ մենք բանակ հանենք։

QUEEN MARGARET.
Ա՜խ, թէ կենդանի լինէր սեֆոլկը, քէնտցի այդ բոլոր ապստամբներին իսկոյն կը սաստէր։

KING HENRY.
Դաւաճանները ատում են քեզ, սեյ։ Ուրեմն մեզ հետ մեկնիր կիլինգուորթ։

LORD SEYYED.
Ասել է՝ ձգել ձեզ վտանգի մէջ։ Իմ տեսքը նրանց ատելի է խիստ ես լաւ է մնամ այս մեծ քաղաքում եւ ապրեմ թաքուն, որքան կարող եմ։

*[Messenger II enters.]*

MESSENGER II.
Քեդը լոնդոնի կամուրջը առաւ, փախչում են մարդիկ՝ թողած տները աւարի ծարաւ խաժամուժն անգութ դաւաճանի հետ երդուել է, տէր իմ, կողոպտել քաղաքն ու ձեր պալատը։

BUCKINGHAM.
Պէտք չէ յապաղել, մեկնեցէք ձիով։

KING HENRY.
Գնա՛նք, մարգարիտ, աստուած մեր յոյսն է, մեր օգնականը։

QUEEN MARGARET.
Ա՜խ, Սեֆոլկի հետ մեռաւ իմ յոյսը։

KING HENRY.
[To Lord Seyyed.] Դե՛հ, մնաս բարեաւ, սիրելի իշխան, պէտք չէ վստահել ապստամբներին։

BUCKINGHAM.
Ոչ ոքի, զի ձեզ վախից կը մատնեն։

LORD SEYYED.
Ես հաւատում եմ անմեղութեանս, ուստի ե՛ւ քաջ եմ, ե՛ւ վճռական։

*[They all exit.]*

][][

ACT IV. SCENE V.
London. The Tower. Lord Scales enter, walking on the Tower's Wall. Two Citizens enter below.

LORD SCALES
Հը՞, ի՞նչ է, ջեկ քեդին սպանե՞լ են։

CITIZEN I
Ո՛չ, միլորդ։ Երեւի դեռ չեն սպանել։ Ապստամբները գրաւել են կամուրջը, սպանում են բոլոր նրանց, ովքեր ընդդիմանում են։ Քաղաքագլուխը հայցում է ձերդ ողորմածութեան օգնութիւնը թաուերից, որպէսզի քաղաքը պաշտպանի ապստամբներից։

LORD SCALES
Կարող եմ ձեզ տալ մի փոքրիկ ջոկատ, զի դաւաճանը ինձ էլ է նեղում։ Նրանք փորձեցին թաուերն առնել։ Մեկնէ՛ք, սմիթֆիլդ, հաւաքէ՛ք մարդիկ, կ՝ուղարկեմ այնտեղ ձեզ մետիւ գոֆին։ Քաջ կռուէք յանուն ձեր թագաւորի, ձեր հայրենիքի ու ձեր գոյութեան, դե՛հ, մնա՛ք բարեաւ, ես պիտի գնամ։

*[They exit.]*

][][

ACT IV. SCENE VI.
London. Cannon street. Cade and his rabble enter. He strikes his staff upon the ground.

CADE.
Հիմա մորտիմերն է այս քաղաքի տէրը։ Եւ այստեղ՝ լոնդոնի քարին նստելով, ես պատուիրում եւ հրամայում եմ, որ, ի հաշիւ քաղաքի, մեր իշխանութեան առաջին տարին լոնդոնի շատրուաններից ցայտեն միայն կարմիր գինի։ Եւ, այնուհետեւ, ով ինձ չկոչի լորդ մորտիմեր, նա դաւաճան է։

*[A Soldier enters at a run.]*

SOLDIER.
Ջեկ քե՜դ, ջեկ քե՜դ։

CADE.
Գետին տապալէք սրան։

*[They kill the Soldier.]*

SMITH.
Եթէ այս մարդը մի քիչ խելք ունենար, ձեզ այլեւս չէր անուանի ջեկ քեդ։ Կարծեմ նրան մի լաւ դաս տուին։

COCK ROBIN.
Տէր իմ, սմիթֆիլդում ժողոված զօրք կայ։

CADE.
Այն դէպքում գնանք ու կռուենք նրանց հետ։ Բայց նախ՝ գնա եւ այրիր լոնդոնի կամուրջը եւ, եթէ կարող ես, այրիր նաեւ թաւերը։

*[They exit.]*

][][

## ACT IV. SCENE VII.
London. Smithfield. Battle. Matthew Goffe and all the rest are slain. Cade and his rabble enter.

CADE.
Այսպէս, պարոններ։ Այժմ թող ձեզնից մի քանիսը գնան ու քարուքանդ անեն սաւոյի պալատը, իսկ միւսները՝ դատարանի շէնքերը։ Ամէն ինչ կործանէք։

COCK ROBIN.
Մի խնդիրք ունեմ, ձերդ մեծութիւն։

CADE.
Այդ մի բառիդ համար քեզ կը շնորհէի լորդի տիտղոս, եթէ կամենայիր։

COCK ROBIN.
Ես կը կամենայի, որ անգլիայի օրէնքները դուրս գային միայն ձեր բերանից։

JOHN.

[Aside.] Հիւանդ կը լինէին այդ օրէնքները, քանզի օրէնքները բերանն են խոթել նիզակով, եւ մինչեւ այսօր վէրքը ապաքինուած չէ։

SMITH.

[Aside.] Ո՛չ, ջոն, դա կը լինի գարշահոտ օրէնք, որովհետեւ նրա բերանից փչում է նեխուած պանրի հոտ։

CADE.

Այդ մասին ես արդէն խորհել եմ, եւ այդպէս էլ լինելու է։ Գնացէ՛ք, այրէ՛ք տէրութեան բոլոր արձանագրութիւնները, բերանս պիտի դառնայ անգլիայի խորհրդարանը։

JOHN.

[Aside.] Ուրեմն մենք կ՝ունենանք խայթիչ օրէնքներ, եթէ նրա ատամները չքաշեն։

CADE.

Եւ այսուհետեւ ամէն ինչ ընդհանուր է լինելու։

*[Messenger enters.]*

MESSENGER.

Տէր իմ, ինչպիսի՛ աւար, ինչպիսի՛ աւար։ Ահա՛ լորդ սեյը, այն մարդը, որ ֆրանսիայում ծախեց քաղաքները։ Նա, որ ստիպեց մեզ քսան - երեսուն անգամ տասնիհնգ տոկոսանոց հարկեր վճարել։ Եւ ամէն մի ֆունտ-ստեռլինգից մի-մի շիլլինգ կորզեց վերջին պատերազմի ծախսի համար։

*[George Bevis enters, dragging Lord Seyyed.]*

CADE.

Շատ լաւ, այդ բանի համար նա պէտք է տասն անգամ գլխատուի։ Հէ՛յ, նայիր ինձ, դու շղարշէ մահուդեայ սոսնձալաթի լորդ, այժմ դարձել ես մեր արքայական իրաւասութեան ենթական։ Ի՞նչ կարող ես պատասխանել իմ մեծութեանը այն բանի համար, որ դու նորմանդիան յանձնեցիր մսեօ բեզիմեքիւին՝ ֆրանսիայի թագաժառանգին։ Ի գիտութիւն քեզ՝ այս մարդկանց ներկայութեամբ ու իմ՝ լորդ մորտիմերիս, ես այն աւելն եմ, որով մաքրելու եմ պալատն այնպիսի գարշահոտութիւնից, ինչպիսին դու ես։ Դու նենգ մարդուց էլ աւելի ապականեցիր տէրութեան ջահէլներին՝ բացելով վարժարաններ։ Մինչդեռ մեր նախահայրերը չգիտէին ուրիշ գրքեր, բացի հաշուեփայտից։ Դու գրքերի տպագրութիւնն էլ մտցրիր։ Դու, հակառակ թագաւորի, նրա թագի ու արժանապատուութեան, կառուցեցիր թղթի գործարան։ Կ՝ապացուցեն, որ դու շրջապատել ես քեզ այնպիսի մարդկանցով, ովքեր սովորաբար խօսում են գոյականների ու բայերի մասին եւ նոյնպիսի գարշելի բառեր են օգտագործում, որ չի կարող հանդուրժել քրիստոնէական ոչ մի ականջ։ Դու կարգեցիր հաշտարար դատաւորներ, որոնք խեղճ մարդկանց կանչում էին այնպիսի պատասխանատուութեան, որ նրանք ի վիճակի չէին պատասխանելու։ Բացի այդ, դու խեղճ ժողովրդին բանտ էիր նետում, եւ, որովհետեւ

նրանք կարդալ չգիտէին, կախաղան էիր բարձրացնում, եւ հէնց միայն այդ բանի համար նրանք արժանի էին ապրելու։ Քո հեծած ձին տապճակածածկ ունի, այդպէս չէ՞։

SEYYED.
Դրանով ի՞նչ ասել կ՝ուզես։

CADE.
Այն, որ չպէտք է քո ձին ծածկէիր վերարկուով, երբ քեզնից արժանի մարդիկ քայլում են տաբատներով ու բաճկոններով։

COCK ROBIN.
Եւ տարիներով նոյն շորը հագնում, օրինակ՝ ես, մսագործիս մէկը։

SEYYED.
Լսիր, քէնտի ժողովուրդ։

COCK ROBIN.
Ի՞նչ կ՝ասես քէնտի մասին։

SEYYED.
Միայն սա հողը բերքառատ է, ժողովուրդն է վատ։

CADE.
Տարէ՛ք, տարէ՛ք սրան, տե՛ս, լատիներէն էլ է խօսում։

SEYYED.
Լսէ՛ք, թէ ինչ եմ ցանկանում ասել, յետոյ ուղարկէք ինձ որտեղ կամիք յուլիոս կեսարի «*մեկնութիւններ*» ում քէնտը նշւում է այս կղզու վրայ բարեկարգ մի վայր։ Չքնաղ երկիր է, հարուստ ու բերրի, մարդիկ՝ ձեռնառատ, ժրաջան ու քաջ, եւ այս բոլորն ինձ յոյս է ներշնչում, որ ձեզ զգացումն օտար չէ խղճի։ Չեմ ծախել մենը, ո՛չ էլ նորմանդիան, բայց կեանքիս գնով դրանք ետ կ՝առնեմ, ես դատել եմ միշտ գթառատ սրտով, լացն ու աղերսանքն իմ սիրտն են շարժել, կաշառքը՝ երբեք ու թէ մի բան եմ խնդրել ձեր ձեռքից, այդ լոկ արել եմ ես նրա համար, որ դուք եւ արքան եւ տէրութիւնը միշտ հաստատ մնան, ես գիտուններին բիւր շնորհներ եմ պարգեւել առատ, քանզի գրքերով ինքս բարձրացայ։ Աստծոյ անէծքն է տգիտութիւնը, իսկ գիտութիւնը՝ թեւերը նրա, որ ամբառնում են մեզ դէպի երկինք։ Թէ չէք ժառանգել դուք դեւի ոգին, ապա ե՛տ կանգնէք ինձ սպանելու ահաւոր մտքից, այս լեզուն օտար արքաների հետ գործի եմ դրել ձեզ համար միայն։

CADE.
Լռի՛ր, երբեւէ կռուե՞լ ես՝ ռազմի զգեստներ հագած։

SEYYED.
Բարձրադիրք մարդու ձեռքը երկար է, յաճախ չեմ տեսել թշնամիներիս, բայց տապալել եմ նրանց անվրէպ։

GEORGE BEVIS.
Օ՜, ճիւաղային երկչոտ արարած, դու հարուածել ես մարդկանց թիկունքի՞ց։

SEYYED.
Ձեր բարեկեցիկ ապրուստի համար, տեսէք, այտերս խիստ գունատուել են։

CADE.
Մի ապտակ հասցրու նրա ականջին, որ նորից շիկնեն։

SEYYED.
Խեղճ մարդկանց դատը գլուխ բերելուց ես քայքայեցի առողջութիւնս՝ բանտում նստելով։

CADE.
Քեզ կը տանք կանեփէ արգանակ ու կ՝ապաքինենք կացնով։

COCK ROBIN.
Ինչո՞ւ ես այսպէս դողում, մա՛րդ աստծոյ։

SEYYED.
Հիւանդութիւնը եւ ոչ թէ ահն է խլել իմ ուժը։

CADE.
Մի տեսէ՛ք, տեսէ՛ք, նա գլխով նշան է անում, կարծես ուզում է ասել՝ կը փոխհատուցեմ ձեզ։ Ապա տեսէք, նրա գլուխը աւելի ամուր կը կանգնի ցցի ծայրի՞ն, թէ՞ ոչ։ Տարէ՛ք նրան եւ գլխատէք։

SEYYED.
Ասէ՛ք, ինչո՞վ եմ ձեզ վիրաւորել, միթէ՞ ձգտել եմ ես հարստութեան կամ փառք եմ ուզել, միթէ՞ լցուած են իմ սնդուկները գողացուած ոսկով, միթէ՞ չափից դուրս շքեղ է զգեստս, ես ո՞ւմ եմ արդեօք չարիք պատճառել, որ մահս էք ուզում։ Այս անմեղ ձեռքերն արիւն չեն տեսել, իմ հոգում չկան նենգապիղծ մտքեր, Օ՜, թողէք ապրեմ։

CADE.
[Aside.] Այս բառերն արթնացնում են հոգուս մէջ խղճի խայթ, բայց ես կը սանձեմ այդ զգացմունքը։ Նա պէտք է մեռնի հէնց այն բանի համար, որ այդպէս լաւ է պաշտպանում իր կեանքի դատը։ [Aloud.] տարէ՛ք նրան։ Նրա լեզուի տակ սատանայ կայ։ Նա չի խօսում աստծոյ անունով։ Դե՛հ, տարէ՛ք նրան եւ անմիջապէս գլուխը կտրէք։ Իսկ յետոյ քանդէք նրա փեսայի՝ սըր Ջեմս Կրոմերի տունը։ Սրա գլուխն էլ կտրէք եւ երկուսի գլուխը ցցերին հագցրած՝ բերէք այստեղ։

EVERYONE.
Ամէն ինչ կ՝անենք։

SEYYED.
Հայրենակիցնե՛ր, ի՞նչ է սպասում ձեր մահից յետոյ ձեր թռչող հոգուն, թէ աղօթելիս աստուած էլ ձեզ պէս կարծրասիրտ լինի։ Ուստի գթացէք, մի՛ խլէք կեանքն իմ։

CADE.
Դո՛ւրս տարէք սրան ու հրամանս ի կատար ածէք։

*[Guards drag Lord Seyyed off.]*

CADE [cont.]
տէրութեան ամենահարուստ իշխանը իր գլուխը չի պահի իր ուսերի վրայ, եթէ ինձ հարկ չտայ, եւ ոչ մի կոյս չի հարսնանայ, եթէ ինձ չընծայի իր կուսութիւնը։

COCK ROBIN.
Տէր իմ, ե՞րբ ենք գնալու չիպսայդ, որ տապարներով վճարենք վերցրած ապրանքները։

CADE.
Հէնց հիմա։

EVERYONE.
Լաւ կը լինի։

*[Guards return with the heads.]*

CADE.
Բա սա աւելի լաւը չէ՞։ Թող նրանք համբուրուեն, որովհետեւ միմեանց շատ էին սիրում։ Իսկ այժմ հեռացրէ՛ք, քանի դեռ նրանք մէկմէկու հետ չեն խորհրդակցել, որ աւելի շատ քաղաքներ ծախեն ֆրանսիացիներին։զինուորնե՛ր, յետաձգէ՛ք քաղաքի կողոպուտը մինչեւ գիշեր։ Գաւազանների փոխարէն այս գլուխները մեր առջեւ զգած՝ մենք պիտի անցնենք փողոցներով եւ ամէն անկիւնում նրանց ստիպենք, որ համբուրուեն։

*[They exit.]*

]|[

ACT IV. SCENE VIII.
Southwark. Battles rage on. Cade and all his rabblement enter.

CADE.
Դէպի վե՛ր, ֆիշստրիտ փողոցով ցած իջէք սուրբ մագնուսի փողոցի անկիւնը, սպանէք բոլորին ու տապալէք գետին։ Լցրէ՛ք նրանց թեմզան։

[Drums sound a parley.]

CADE [cont.]
Այս ի՞նչ աղմուկ եմ լսում։ Ո՞վ է այսպէս լրբօրէն յանդգնել, որ աւարտի կամ բանակցութեան փող է հնչեցնում, երբ ես հրամայել եմ սպանել թշնամուն։

*[Buckingham, Old Clifford and their Soldiers all enter.]*

BUCKINGHAM.
Նրանք են, ովքեր համարձակօրէն կամենում են քո անդորրը խռովել։ Գիտցի՛ր, արքան է մեզ որպէս դեսպան ուղարկել այստեղ՝ ժողովրդի մօտ, ում խաբել ես դու։ Մենք շնորհում ենք ներում բոլորին, ովքեր, քեզ լքած, կը գնան տները խաղաղութեամբ։

OLD CLIFFORD.
Ի՞նչ էք ասում դուք, հայրենակիցնե՛ր, չէ՞ք հնազանդւում կամ չէ՞ք խոնարհւում ձեզ առաջարկուող գթութեան առաջ։ Թէ՞ ցանկանում էք, որ մի ապստամբ ձեզ մահուան յանձնի։ Նա, ով սիրում է մեր թագաւորին, սպասում ներում, թող իր գլխարկը դէպի վեր նետէ եւ ասի՝ աստուա՜ծ պահէ արքային, իսկ ով ատում է նրան եւ նրա փառաւոր հօրը, ումից դողում էր ամբողջ ֆրանսիան, թող զէնք շարժելով՝ մեր կողքից անցնի։

EVERYONE.
Աստուա՜ծ, պահի՛ր թագաւորին։ Աստուա՜ծ, պահի՛ր թագաւորին։

CADE.
Ի՞նչ։ Միթէ՞ դուք, բուկինգեմ ու կլիֆորդ, այսքան քաջութիւն ունէք, իսկ դուք, ստոր գիւղացիներ, հաւատո՞ւմ էք նրանց կամ թէ ուզում էք, որ ձեզ կախաղա՞ն բարձրացնեն՝ փակցնելով կարծեցեալ ներումը ձեր կրծքին։ Միթէ՞ իմ սրով ջարդեցի լոնդոնի դարպասը, որ դուք ինձ լքէք ուայտ հարտի մօտ, սաութուորկում։ Ես կարծում էի, թէ դուք վար չէք դնի ձեր զէնքերը, մինչեւ չնուաճէք ձեր վաղեմի ազատութիւնը։ Բայց դուք բոլորդ էլ դուրս եկաք վախկոտ եւ դասալիք։ Ձեզ հաճելի է ապրել որպէս ստրուկներ ազնուականների մօտ։ Թող նրանք ծանր բեռով ջարդեն ձեր մէջքը, տնից դուրս քշեն ու ձեր աչքի առաջ բռնաբարեն ձեր կանանց ու աղջիկներին։ Ինչ ինձ է վերաբերում, ապա ես մենակ էլ մի հնար կը գտնեմ։ Աստծոյ անէծքը թո՛ղ թափուի ձեր բոլորի գլխին։

EVERYONE.
Մենք կը հետեւենք քեզին։ Մենք կը հետեւենք քեզին։

OLD CLIFFORD.
Ա՛խ, միթէ՞ հենրի հինգերորդն ունի ջեկ քեդ անունով մի արու զաւակ, որ բղաւում էք «ուզում ենք գնալ նրա ետեւից,» միթէ՞ կը տանի նա ձեզ ֆրանսիա, եւ դուք կը դառնաք մի դուքս կամ թէ կոմս։ Աւա՛ղ, նա չունի նոյնիսկ մի խրճիթ, մի փոքրիկ անկիւն, որ պատսպարուի։ Ինքն էլ չգիտէ, ինչու է ապրում, կողոպտում է ձեզ՝ մերձաւորներիդ։ Միթէ՞ ամօթ չէ, երբ դուք վիճում էք, վախկոտ թշնամին՝ ձեզանից պարտուած, գալիս է, որ ձեզ պարտութեան մատնի։ Ինձ թւում է, որ այս քաղաքային խառնակութեան մէջ տեսնում եմ նրանց, ովքեր լոնդոնում տնօրինում են՝ հանդիպած մարդուն կոչելով գեղջուկ։ Աւելի լաւ է, որ տասը հազար խառնածին քեդեր կորչեն մի գիշեր, քան թէ թշնամուց խնդրէք գթութիւն։ Դէպի ֆրանսիա՛, դէպի ֆրանսիա՛, եւ դուք ետ առէք կորսուած հողերը՝ ձեր տունն հարազատ։ Հենրին փող ունի, իսկ դուք՝ քաջութիւն, աստուած մեր կողմն է, եւ մի՛ կասկածէք յաղթութեան վրայ։

EVERYONE.
Ապրի՛ կլիֆորդը։ Գնա՛նք թագաւորի ու կլիֆորդի ետեւից։

CADE.
[Aside.] Երբեւէ փետուրն այսպէս հեշտօրէն տարուբերուե՞լ է, ինչպէս այս ամբոխը։ Հենրի հինգերորդի անունը նրանց քաշում է դէպի հազար դժբախտութիւններ եւ ստիպում է նրանց լքել ինձ ստորաբար։ Ես տեսնում եմ, թէ նրանք ինչպէս, գլուխ գլխի տուած, խորհրդակցում են, որ ինձ բռնեն անսպասելիօրէն։ Իմ սուրը կը հարթի ճանապարհս, միտք չունի այստեղ մնալ։ Ի հեճուկս սատանաների ու դժոխքի՝ կը բանամ ճանապարհս ամբոխի միջով, եւ թող երկինքը ու պատիւս ինձ վկայ լինեն, որ ոչ թէ իմ թուլութիւնը, այլ միայն իմ կողմնակիցների ստոր ու ամօթալից դաւաճանութիւնը ինձ ստիպում է նահանջել։ [Exits.]

BUCKINGHAM.
Ի՞նչ։ Փախչո՞ւմ է նա, վազէ՛ք, ետեւից։ Ով նրա գլուխն արքային բերի, նա տասը հազար ոսկի կը ստանայ։

*[The Mob begins to break up.]*

BUCKINGHAM [cont.]
Գնա՛նք զինուորներ ու գտնենք միջոց ձեզ հաշտեցնելու ձեր արքայի հետ։

*[They all exit.]*

## ACT IV. SCENE IX.

Killingworth Castle. The King, Queen and Somerset enter.

### KING HENRY.

Արդեօք եղե՞լ է երկրի երեսին մի այլ թագաւոր, որ գահ ունենար եւ կարողութիւն՝ հրամայելու, եւ ինձնից էլ քիչ բախտից գոհանար։ Ես հազիւ էի իմ օրօրոցից ոտք դրել գետնին, երբ ինձ՝ մանկանս, կարգեցին արքայ։ Ոչ մի հպատակ այնպէս չի տենչում թագաւոր լինել, ինչպէս տենչում եմ ես մի հասարակ հպատակ դառնալ։

*[Buckingham and Old Clifford enter.]*

### BUCKINGHAM.

Տէր իմ, ձեզ ողջոյն եւ ուրախ լուրեր։

### KING HENRY.

Ի՞նչ, բռնուա՞ծ է դաւաճան քեդը, թէ՞ նահանջում է, որ ուժ հաւաքի։

*[Enter a multitude with halters about their necks.]*

### OLD CLIFFORD.

Նա փախաւ, տէր իմ։ Եւ նրա զօրքն է անձնատուր լինում տեսէք, թէ նրանք ինչ խոնարհութեամբ կանգնել են ձեր դէմ՝ օղակը վզին, եւ սպասում են ձեր արդար վճռին։

### KING HENRY.

Երկի՛նք, բաց արա դռներդ յաւէրժ, որ իմ օրհնանքի, շնորհակալութեան ընծան ընդունես։ Զինուորնե՛ր, ձեր կեանքն այսօր փրկեցիք եւ ցոյց տուեցիք, թէ դուք ինչպէս էք սիրում ձեր երկիրն ու թագաւորին։ Թող շարունակուի ձեր նման բարի մտադրութիւնը, եւ ես, ինչպիսի փորձանք էլ տեսնեմ, գիտցէք, ձեր հանդէպ չեմ լինի անգութ։ Ես ձեզ ներում եմ։ Իմ բարի խօսքով թող ամէն զինուոր իր տունը գնայ։

### EVERYONE.

Աստուա՛ծ պահի՛ թագաւորին։ Աստուա՛ծ պահի՛ թագաւորին։

*[Messenger enters.]*

### MESSENGER.

Թոյլ տուէք, տէր իմ, ձեզ ծանուցանել, որ իռլանդիայից դուքս եորքը եկաւ։ Գալլոուգլասների ու քաջ կեռների հզօր բանակով կարգ է հաստատում նա այս կողմերը։ Զէնք է վերցրել լոկ այն միտումով, որ ձեզնից ընդմիշտ նա հեռացնի դուքս սոմերսետին, ում համարում է ստոյգ դաւաճան։

KING HENRY.
Այսպիսով, տեարք իմ, իմ տէրութիւնը ընկել է եորքի ու քեդի միջեւ՝ նման այն նաւին, որ խուսափելով ահեղ փոթորկից՝ փնտրում է անդորր: Բայց այդ վայրկեանին նաւը խուժում են ծովահէնները: Հէնց նոր ետ քաշուեց քեդն իր մարդկանցով, բայց ահա եորքն է զինուած յայտնւում: Ես խնդրում եմ քեզ, բուկինգեմ, գնա, հանդիպիր նրան, հարցրու, թէ ինչո՞ւ նա զէնք է վերցրել, եւ ասա նրան, որ դուքս էդմոնդին ես բերդ կ՝ուղարկեմ, իսկ դու, Սոմերսետ, կը մնաս այստեղ, քանի դեռ եորքի զօրքը չի ցրուել:

SOMERSET.
Տէր իմ, իմացէք, որ երկրի համար ես սիրայօժար անձս եմ զիջանում ոչ միայն բանտին, այլեւ իսկ մահուան:

KING HENRY.
Ինչ էլ որ լինի, պէտք չէ եորքի հետ խօսել կոպտօրէն, քանզի կատաղի բնութիւն ունի եւ չի հանդուրժում խստագին բառեր:

BUCKINGHAM.
Շատ բարի, տէր իմ եւ մի՛ կասկածէք ամէն ինչ կ՝անեմ յօգուտ արքայիս:

KING HENRY.
Գնանք, մարգարիտ, պէտք է սովորել լաւագոյն ձեւով երկիրը վարել, թէ ոչ՝ կ՝անիծի անգլիան իմ դժբախտ իշխանութիւնը:

*[They exit.]*

]{}[

ACT IV. SCENE X.
Kent. Iden's garden. Cade enters.

CADE.
Անիծուի՛ փառասիրութիւնը, ամօ՛թ քեզ, քե՛դ: Ձեռքիս սուր ունեմ, բայց քիչ է մնում, որ քաղցից մեռնեմ: Հինգ օր է արդէն, ինչ թաքնւում եմ այս անտառներում եւ չեմ յանդգնում դուրս գալ, որովհետեւ ամբողջ երկիրն ինձ է որոնում: Բայց այժմ քաղցը ինձ այնպէս է նեղում, որ թէկուզ ինձ խոստանան հազար տարուայ կեանք, միեւնոյն է, այլեւս չեմ կարող համբերել: Ահա՛ թէ ինչու աղիւսէ պատը մագլցելով՝ իջայ այս այգին, գուցէ ճարեմ ուտելու խոտ կամ աղցան, որ վատ չէ մարդու ստամոքսը զովացնելու այս շոգ եղանակին: Կարծեմ «*աղցան*» բառը ստեղծուել է, որ ինձ բարիք շնորհի, քանզի երկար ժամանակ, եթէ աղցանի լայն թերթը չծառայէր ինձ թեթեւ սաղաւարտի փոխարէն, գանգս արեւից կը ճեղքուէր, իսկ միւս դէպքում՝ արշաւանքի ժամանակ, երբ ես մեռնում էի ծարաւից, այն ծառայել է ինձ որպէս ջրաման եւ այժմ էլ պէտք է իմ քաղցը մեղմի:

*[Iden enters with several Servants.]*

IDEN.
Ա՜խ, ո՞վ կարող է ապրել պալատի վազվզուքի մէջ եւ հաճոյք զգալ նման զբօսանքից։ Հօրս ժառանգած կալուածքն այս փոքրիկ ինձ համար արժէ մի ողջ տէրութիւն։ Ես չեմ բարձրանում այլոց անկումով, չեմ ձգտում դառնալ հարստութեան տէր, ինչ էլ որ ունեմ, բաւ է ինձ համար, աղքատն իմ շեմից հեռանում է գոհ։

CADE.
[Aside.] Ահա այգու տէրը։ Նա եկել է, որ ինձ բռնի որպէս մի թափառաշրջիկի, որն առանց թոյլտուութեան մտել է նրա կալուածքը։ Ա՜խ, դո՛ւ, սրիկա՛յ, ուզում ես ինձ բռնել ու գլխիս համար թագաւորից ստանալ հազար ոսկի՞։ Բայց իրարից բաժանուելուց առաջ ես քեզ կը ստիպեմ, որ խժռես երկաթը, ինչպէս կը խժռէիր ջայլամը, եւ կուլ տաս իմ սուրը, ինչպէս կուլ կը տայիր քորոցը։

IDEN.
Ով էլ որ լինես, քեզ չեմ մատնելու, չէ՞ որ, կոպիտ արջ, քեզ չեմ ճանաչում։ Միթէ՞ հերիք չէ, որ ցանկապատից ցատկել ես այգիս եւ գողի նման բերքս ես խժռում դեռ սպառնո՞ւմ ես լպիրշ խօսքերով։

CADE.
Քեզ սպառնա՞լ։ Այո՛։ Երդւում եմ ազնուագոյն արեամբ, որ երբեւէ հեղուել է, մօրուքդ կը փետեմ։ Ապա ինձ մի լաւ նայիր։ Հինգ օր է՝ բերանս մսի կտոր չեմ դրել, բայց փորձիր ինձ մօտենալ նոյնիսկ քո հինգ ծառաներով։ Թող աստուած այս խոտն ինձ շատ համարէ, թէ ձեզ բոլորիդ դռան մեխերի պէս չգամեմ գետնին։

IDEN.
Օ՛, ո՛չ։ Քանի դեռ կանգուն է անգլիան, չեն ասի քէնտի էքսվայր այդենը կռուեց տառապեալ սովամահի հետ։ Հակակշռիր քո խիստ սեւեռուն հայեացքը իմին ու թէ կարող ես, դիմագրաւիր ինձ քո աչքերով։ Նայի՛ր, բաղդատիր անդամ առ անդամ, դու ինձնից անչափ փոքր ես ու նուազ, ձեռքդ բռունցքիս մի մատի չափ է, ոտքդ իմ գերան ոտքի համեմատ՝ լղար մի փայտիկ իմ ոտնաթաթը քո ամբողջ մարմնի ուժն է պարփակում ու թէ բազուկս յանկարծ վեր քաշեմ, գիտցիր, փորած է քո գերեզմանը երկրի երեսին։ Գալով բառերին՝ պէտք չէ ցոյց տալու, թէ ում խօսքն ունի առաւելութիւն։ Թող սուրս խօսի՛, կամ լռի՛ լեզուս։

CADE.
Երդւում եմ իմ խիզախութեամբ, սա ամենակատարեալ քաջամարտիկն է, որի մասին երբեւէ լսել եմ։ Օ՛, իմ դաշո՛յն, եթէ բթանայ քո սուր շեղբը եւ չկարողանայ այս հաստամարմին շատախօսին կտոր-կտոր անել եզան լեշի պէս, ապա դու չպէտք է նիրհես քո պատեանի մէջ։ Ես ծնրադիր կ՝աղերսեմ աստծուն, որ քեզ նալի մեխ դարձնի։

*[They fight and Cade is wounded.]*

CADE. [cont]
Օ՛, ես մեռնում եմ։ Ա՛խ, քա՛ղցը, քա՛ղցը սպանում է ինձ։ Թող տասը հազար սատանայ գան ու կանգնեն իմ դէմ, ինձ տուէք այն տասը բաժին ճաշը, որից զրկել էք, եւ ես բոլորի հախիցը կը գամ։ Չորացի՛ր, այգի, եւ դարձի՛ր այն բոլոր մարդկանց գերեզմանը, ովքեր ապրում են այս տանը, որովհետեւ այստեղից թռաւ քեղի անպարտելի ոգին։

IDEN.
Միթէ՞ դաւաճան, զազրելի քեղին ես սպանեցի։ Դաշո՛յն իմ, խիզախ արարքիդ համար քեզ պէտք է օրհնեմ ու թէ ես մեռնեմ, դու պէտք է շողաս իմ շիրմի վրայ, չեն մաքրի շեղբից այս արիւնն երբեք, բայց այն կը կրես, ինչպէս հերալդի կարմրավառ թիկնոց, որ ազդարարի քո տիրոջ փառքը։

CADE.
Այդէն, մնա՛ս բարով։ Դու հպարտացիր քո յաղթանակով։ Յայտնիր քէնտին իմ անունից, որ ինձ կորցնելով՝ կորցրեց իր ամենալաւագոյն զաւակին եւ յորդորիր աշխարհի բոլոր մարդկանց, որ վախկոտներ դառնան, քանզի ես, որ երբեք չեմ վախեցել, պարտուեցի ոչ թէ ուժից, այլ քաղցից։ [Dies.]

IDEN.
Ո՛վ արդար երկինք, եղի՛ր դատաւոր, տե՛ս, թէ ինչպէս է ինձ վիրաւորում։ Սատկի՛ր, անզգամ։ Դու անէ՛ծք նրա, ով ծնել է քեզ։ Ինչպէս խոցեցի մարմինդ սրով, այնպէս ուզում եմ քո հոգին խոցել խաւար դժոխքում։ Քեզ բերանքսիվար ես պիտի քարշ տամ մինչեւ աղբանոց, որն էլ կը դառնայ գերեզմանը քո, որտեղ կը կտրեմ գլուխդ անամօթ։ Եւ այն կը տանեմ յաղթականօրէն թագաւորին մեր՝ թողնելով քո դին ագռաւներին կեր։

*[They exit, dragging Cade's body with them.]*

][][

ACT V. SCENE I.
Fields between Dartford and Blackheath. York and his Irish army enter.

YORK.
Զօրքը եկել է իռլանդիայից, որպէսզի հայցէ իր իրաւունքը ու խլի թագը թուլակամ հենրուց։ Բարձրաձայն զարկէ՛ք զանգերը բոլոր, վառէ՛ք կրակներ աւելի պայծառ՝ ի պատիւ անգլիոյ ստոյգ արքայի։ o, սրբազան մեծութիւն ո՞վ չի առնի քեզ թանկարժէք գնով։ Թող նա խոնարհուի, ով երկիր վարել չի կարողանում։ Այս ձեռքը ծնուեց, որ ոսկի բռնի, բառերն են դառնում զօրաւոր բռունցք, երբ որ սեղմում են սուր կամ գաւազան։ Եթէ կրծքիս տակ սիրտ է բաբախում, ես պէտք է բռնեմ ոսկեայ մականը, դրանով ցնցեմ ֆրանսիոյ շուշանը։

*[Buckingham enters.]*

YORK [cont.]
Այդ ո՞վ յայտնուեց։ Բուկինգեմ, եկար, որ ինձ խանգարե՞ս։ Արքան է, անշուշտ, նրան ուղարկել։ Պէտք է ձեւանալ։

BUCKINGHAM.
Եորք, եթէ ունես բարի նպատակ, ապա ընդունիր իմ ողջոյնն ազնիւ։

YORK.
Ես ընդունում եմ ողջոյնդ, հեմֆրի։ Դեսպա՞ն ես արդեօք, թէ՞ քո ցանկութեամբ եկել ես ինձ մօտ։

BUCKINGHAM.
Մեր վեհապետի՝ հենրու դեսպանն եմ։ Եկել եմ քեզ մօտ՝ տեսնեմ, թէ ինչպէս զէնք ես վերցրել խաղաղ օրերին, ինչո՞ւ, լինելով ինձ պէս հպատակ, ուխտադրժօրէն հաւաքել ես դու այսպիսի մի ուժ եւ յանդգնել ես այն մօտեցնել հենրու պալատին։

YORK.
[Aside.] Օ՜, այնքան խոր է իմ բարկութիւնը, որ նոյնիսկ խօսել չեմ կարողանում։ Կարողանայի՜ ժայռերը ջարդել, կռուել նրանցով, ա՜խ, բառերն անարգ ինձ զայրացրին, բայց այաքսի պէս ես կարող էի ցասումս թափել եզների կամ թէ այծերի վրայ։ Ես իմ ծնունդով բարձր եմ արքայից, ինքս եմ աւելի նման արքայի եւ արքայօրէն խորհելու ունակ։ Բայց պէտք է մի քիչ խոնարհ ձեւանալ, քանի դեռ հենրին չի տկարացել, իսկ ես՝ զօրացել։ Ների՛ր, բուկինգեմ, որ պատասխանս մի քիչ ուշացաւ, քանզի հոգիս է տանջում խոր վիշտը։ Ես զօրք եմ բերել լոկ այն պատճառով, որ հեռացնեմ նենգ սոմերսետին մեր թագաւորից, ով թշնամի է նորին մեծութեանն ու տէրութեանը։

BUCKINGHAM.
Հարկ չկայ լինել խիստ անձնապաստան։ Եթէ դու չունես մի այլ նպատակ, ապա պահանջդ չի մերժի արքան դուքս սոմերսետը բերդում է արդէն։

YORK.
Երդուիր քո պատուով, որ բանտում է նա։

BUCKINGHAM.
Երդւում եմ, որ նա բերդ է ուղարկուած։

YORK.
Այդ դէպքում զօրքիս ազատ կը թողնեմ։ [To his Soldiers.] Խիզախ զինուորներ, շնորհակալութի՛ւն, կարող էք ցրուել։ Վաղը կը հանդիպենք սենտ ջորջի դաշտում, որտեղ կը ստանաք ձեր առատ վարձը ու թանկ նուէրներ։ Թող վեհափառն իմ, ողորմած հենրին, ինձնից վերցնի իմ աւագ որդուն, ո՛չ, թէկուզ բոլոր իմ զաւակներին, գրաւ կը դնեմ վասն իւր սիրոյ, հպատակութեան։ Ես սիրայօժար կ՝ուղարկեմ նրանց։ Ամէն ինչ կը տամ՝ հող, ինչք, ձի ու զէնք, միայն թէ մեռնի դուքս սոմերսետը։

BUCKINGHAM.
Եորք, դրուատում եմ քո քնքշաբարոյ խոնարհութիւնը։ Արդ, գնանք մէկտեղ վրանն արքայի։

*[King Henry enters with a procession.]*

KING HENRY.
Բուկինգեմն իրա՞ւ չունի չար մտքեր, որ քեզ թեւանցուկ՝ քայլում է այսպէս։

YORK.
Տէր իմ, կատարեալ հնազանդութեամբ ու խոնարհումով կանգնում է ահա եորքը ձեր առաջ։

KING HENRY.
Ի՞նչ նպատակով դու զօրք ես բերել։

YORK.
Որպէսզի քշեմ նենգ սոմերսետին, կռուեմ ապստամբ հրէշ քեդի դէմ, բայց ես լսեցի, որ պարտուել է նա։

*[Iden enters with Cade's head.]*

IDEN.
Թէ թոյլ է տրուած նման հասարակ ու կոպիտ մարդուն ներկայանալու շնորհափայլին, ահա դնում եմ ձեր ոտքերի տակ դաւաճան քեդի գլուխն արիւնոտ, ում սպանեցի մենամարտելիս։

KING HENRY.
Քեդի՞ գլուխը։ Աստուա՛ծ, դու որքան արդարամիտ ես։ Օ՛, թոյլ տուր տեսնել այս դէմքը մեռեալ, որ դեռ կենդանի՝ ինձ վիշտ պատճառեց։ Ասա՛, բարեկա՛մ, իրա՞ւ այն մարդն ես, ով չարագործի գլուխը կտրեց։

IDEN.
Այո՛, վեհապետ, ձեր թոյլտուութեամբ։

KING HENRY.
Ի՞նչ է անունդ եւ ի՞նչ դիրք ունես։

IDEN.
Ինձ անուանում են ալեքսանդր այդեն, ապրում եմ քէնտում, հասարակ էքսվայր, ով շատ է սիրում իր թագաւորին։

BUCKINGHAM.
Թոյլ տուէք, տէր իմ, չէի սխալուի, եթէ հատուցուէր այս խիզախութիւնն ասպետի կոչմամբ։

KING HENRY.
Այդեն, ծունր իջիր։

*[Iden kneels.]*

KING HENRY [cont.]
Բարձրացի՛ր, ասպետ, մենք տալիս ենք քեզ պարգեւ հազար մարկ եւ կամենում ենք, որ այսուհետեւ դու մեզ ծառայես։

IDEN.
Թող հարիւր տարի այդենը ապրի, որ փոխհատուցի նման պարգեւին եւ հաւատարիմ մնայ տիրոջն իր։

KING HENRY.
Նայի՛ր, բուկինգեմ, գալիս է դուքսը իմ թագուհու հետ, թագուհուն ասա, որ սոմերսետին թաքցնի եորքից։

*[The Queen and Somerset enter.]*

QUEEN MARGARET.
Հազար եորք լինի՝ նա չի թաքնուի եւ խիզախաբար կը նայի նրան երես առ երես։

YORK.
Ի՞նչ։ Սոմերսետը շրջում է ազա՞տ, Օ՜, եորք, արձակի՛ր վաղուց շղթայած գաղտնի մտքերդ, թող հաւատարիմ մնայ քո սրտին քո ցասկոտ լեզուն։ Պէ՞տք է հանդուրժեմ դուքս սոմերսետի ներկայութիւնը։ Խարդա՛խ թագաւոր, ինչո՞ւ դրժեցիր քո խոստումը ինձ, չէ՞ որ գիտէիր, չեմ կարող տանել վիրաւորանքը։ Ինչո՞ւ կոչեցի ես քեզ թագաւոր։ Ո՛չ։ Թագաւոր չե՛ս։ Նա, ով չի կարող հաշիւը մաքրել դաւաճանի հետ, ի վիճակի չէ կառավարելու երկիր ու մարդկանց։ Բնաւ յարմար չէ թագը քո գլխին։ Դու պէտք է բռնես ուխտաւորի ցուպ, ոչ թէ արքայոց ահարկու մական, ոսկեայ պսակը պէտք է ժանեզրէ իմ այս ճակատը, ում խորշոմները, ժպիտն աքիլլեսի նիզակի նման կարող են խոցել կամ վէրք դարմանել։ Ահա՛ այն ձեռքը, որ պէտք է բարձր պահի մականը եւ իշխանական բազում օրէնքներ իրովարտակի։ Զիջի՛ր տեղդ ինձ։ Երկինքը վկայ, չես իշխի նրան, ում երկնեց աստուած արքադ լինելու։

SOMERSET.
Օ՜, ճիւաղային ստոր դաւաճան։ Կալանում եմ քեզ, զի թագաւորին դաւաճանել ես եւ նրա թագին։ Մեղքերդ քաւիր, ժպի՛րհ արարած, եւ ծունր իջիր վասն գթութեան։

YORK.
Ա՛խ, դու ուզում ես, որ ծունր իջնեմ։ Նախ՝ նրանց հարցրու, միթէ՞ կ՚ուզենան, որ ծունր իջնեմ այդ մարդու առաջ։ Հէ՜յ, տղա՛յ, կանչի՛ր իմ որդիներին։ Թիկնապահներից մէկը վազելով դուրս է գնում։ Ես գիտեմ, նրանք գրաւ կը դնեն իրենց սրերը, բայց ինձ չեն թողնի հսկողութեան տակ։

QUEEN MARGARET.
Կանչէք, թող շուտ գայ կլիֆորդն այստեղ, որպէսզի ասի միթէ՞ կարող են եորքի բճերը երաշխաւորել դաւաճան հօրը։

*[Buckingham exits.]*

YORK.
Օ՛, արնաշաղախ նէապոլեցի, դու նէապոլի վտարեալ դուստր, արնոտ խարազան հարազատ կղզուս։ Իմ որդիք բարձր են քեզնից ծնունդով եւ իրենց հօրը կ՝երաշխաւորեն։ Անէ՛ծք այն մարդուն, ով ուրանում է իր որդիներին։ Տեսէք, գալիս են եւ նրանք պէտք է ամէն ինչ շտկեն։

*[Edward and Richard enter.]*

QUEEN MARGARET.
Ահա՛ գալիս է եւ ծեր կլիֆորդը, որ գրաւականը ի չիք դարձնի։

*[Old Clifford and his Son enter.]*

CLIFFORD.
Ողջո՛յն արքային, տիրոջն իմ բարի։

YORK.
Շնորհակալութի՛ւն, ի՞նչ լուր, կլիֆո՛րդ։ Մեզ մի՛ վախեցնի դաժան հայեացքով, մենք ենք քո տէրը, ծունր իջիր նորից, սխալիդ համար մենք ներում ենք քեզ։

CLIFFORD.
Սա՛ է իմ արքան, ես չեմ սխալւում, դու ես սխալւում՝ միտքս շուռ տալով, տարէք գժանոց, միթէ՞ խենթացաւ այս մարդը, տէր իմ։

KING HENRY.
Այո՛, կլիֆորդ, փառասիրութիւնն ու խենթ բնոյթը դրդեցին նրան, որ ապստամբուի իր արքայի դէմ։

CLIFFORD.
Դաւաճան է նա, բերդ տարէք նրան եւ խելապատակ գլուխը կտրէք։

QUEEN MARGARET.
Նա բանտարկուած է, բայց չի կամենում մեղքերը քաւել։ Ասում է, իբրեւ իր որդիները պէտք է խօսքերով իրեն պաշտպանեն։

YORK.
Այսպէս չէ՞, որդիք։

EDWARD.
Այո՛, ազնիւ հայր, թէ մեր բառերը կարող են օգնել։

RICHARD.
Եթէ մեր խօսքերն անզօր գտնուեն, մենք կը գործածենք մեր սրերն այնժամ։

CLIFFORD.
Դաւաճանների այս ի՞նչ ճտեր էք խնամել այստեղ։

YORK.
Նայիր հայելուն եւ այսպէս կոչիր դէմքն երեւացող։ Ե՛ս եմ քո արքան, իսկ դու՝ մի ստոր, քարսիրտ դաւաճան։ Կանչէք իմ երկու քաջսիրտ արջերին, որ իրենց շղթան թափահարելով՝ վախեցնեն դարանող այս շան վոհմակը։

*[Warwick and Salisbury enter.]*

CLIFFORD.
Միթէ՞ սրանք են քո քաջ արջերը։ Մենք կը հալածենք ձագերդ մահով, եւ արջապահիդ կը սեղմի շղթան, եթէ յանդգնես նրանց բաց թողնել։

RICHARD.
Յաճախ եմ տեսել, թէ ինքնավստահ կատաղի շունը ինչպէս է կծում, երբ որ չեն թողնում գազանին մօտենալ բայց նա, զգալով քաջ արջի բրդոտ թաթի հարուածը, սեղմում է պոչը ոտքերի միջեւ, բարձր վնգստում։ Ահա այսպիսի խայտառակութիւն ձեզ կը վիճակուի, թէ վորուիկի հետ փորձէք բաղդատուել։

CLIFFORD.
Կորի՛ր աչքիցս, չարութեան դու կոյտ եւ չմարսուած մսի մի կտոր, գարշելի՝ հոգով ու արտաքինով։

YORK.
Քեզ կը տապակենք դժոխքի կրակով։

CLIFFORD.
Զգո՛յշ, որ չայրուես քո իսկ կրակից։

KING HENRY.
Վորուիկ մոռացա՞ր ծնկներդ ծալել, ամօ՛թ, սօլսբերի, արծաթ մազերիդ, խելագար որդու խելառ առաջնորդ։ Մահուան մահճո՞ւմ էլ ուզում ես խաղալ ոճրագործի դեր եւ աչքդ լարած՝ փնտրել քեզ համար միայն տառապանք։ Ո՞ւր է հաւատքը, ազնուութիւնը, թէ՞ արտաքսուել են ձիւնազարդ գլխից, ապա որտե՞ղ են ապաստան գտել այս երկրի վրայ։ Միթէ՞ չես ուզում փորել գերեզման, որպէսզի

թաղես պատերազմն ընդմիշտ եւ չմրոտես արժանապատիւ քո ծերութիւնը։ Ինչո՞ւ, թէեւ ծեր, կարիք ունես դեռ դու փորձառութեան իսկ եթէ ունես, ինչո՞ւ ես ուզում այն չարաշահել։ Ամօ՛թ, Օ՛, ամօ՛թ։ Երկիւղածօրէն ծունր իջիր, ծերո՛ւկ, զառամ տարիքդ քեզ գլորում է դէպի գերեզման։

SALISBURY.
Տէր իմ, ես ինքս եմ այս հռչակաւոր դուքսի իրաւունքն յաճախ նժարել, եւ, խղճի մտօք, գտնում եմ, որ նա ստոյգ ժառանգն է անգլիական գահի։

KING HENRY.
Դու ինձ չե՞ս երդուել հաւատարմութիւն։

SALISBURY.
Այո՛, երդուել եմ։

KING HENRY.
Եւ դու դրժո՞ւմ ես քո այդ երդումը երկնքի առաջ։

SALISBURY.
Օ՛, երդուել մեղքին՝ մեղք է կրկնակի, բայց մեծանում է մեղքը աւելի, ով մի յանցաւոր երդում է պահում։ Ո՞ւմ կարող ես դու ստիպել, որ նա թալանի մարդու, գողանայ կոյսի պարկեշտութիւնը, շորթի որբուկից կալուածքն հայրենի եւ որբեւայրուց՝ իր սովորոյթը այն բանի համար ով հանդիսաւոր երդում է տուել յանցագործ դառնալ։

QUEEN MARGARET.
Դաւաճանն երբեք կարիք չի զգում իմաստակութեան։

KING HENRY.
Կանչէ՛ք թող զինուի դուքս բուկինգեմը։

YORK.
Կանչի՛ քո դուքսին, բարեկամներիդ, ես որոշել եմ՝ մեռնել կամ իշխել։

CLIFFORD.
Կը մեռնես, եթէ ճիշտ է երազը։

WARWICK.
Դու լաւ է՝ նորից անկողին մտնես ու երազ տեսնես, որպէսզի փախչես փոթորկից ռազմի։

CLIFFORD.
Ես որոշել եմ աւելի ահեղ փոթորիկ կրել, քան դու կարող ես այն ցանել այսօր։ Այն պիտի գրեմ քո սաղաւարտին, երբ քեզ ճանաչեմ արնապիղծ տոհմիդ զինանշանով։

WARWICK.
Երդւում եմ ահա իմ հօր՝ նեւիլի զինանշանով արջով՝ շղթայուած խորդուբորդ սիւնից, կանգնել է ետին ոտքերի վրայ, ես այսօր պէտք է խիստ բարձր պահեմ իմ սաղաւարտը, ինչպէս սէգ լեռան կատարի մայրին, որ իր սաղարթն է պահում քամու դէմ, որպէսզի սոսկաս նրա գոռ տեսքից։

CLIFFORD.
Լռի՛ր, կը պոկեմ զինանշանդ քո սաղաւարտից եւ քամահրանքով ես կը տրորեմ իմ ոտքերի տակ, ի հեճուկս քո, արջի պաշտպանեա՛լ։

YOUNG CLIFFORD.
Ուրեմն, ի զէ՛ն, յաղթապանծ հա՛յր իմ, մենք պիտի ճնշենք ապստամբներին ու նրանց բոլոր համախոհներին։

RICHARD.
Վա՛հ, հազար ամօթ, եղէ՛ք բարեգութ, մի՛ հակառակուէք, դուք պէտք է ընթրէք քրիստոսի մօտ։

YOUNG CLIFFORD.
Օ՛, պիղծ այլանդա՛կ, այլ բան չգիտե՞ս։

RICHARD.
Թէ ոչ երկնքում, ապա դժոխքում դուք պէտք է ընթրէք։

*[They all exit in different directions.]*

]|[

ACT V. SCENE II.
Saint Albans. Warwick enters.

WARWICK.
Էհէյ, կլիֆորդ, վորուիկն է կանչում ու թէ չես կարող թաքնուել արջից, երբ շեփորն ահեղ զարկում է տագնապ, երբ օրն է լցւում մեռնող զինուորի հառաչանքներով, ես քեզ եմ ասում՝ ե՛կ, կռուիր ինձ հետ, հիւսիսի իշխան, գոռոզ բռնակալ, ձայնս է խռպոտուել՝ քո մեծութեանը կանչելով ի մարտ։

*[York enters.]*

WARWICK [cont.]
Ի՞նչ է պատահել, իմ ազնիւ իշխան, ինչո՞ւ ես քայլում դու առանց ձիու։

YORK.
Աւա՛ղ, կլիֆորդի մահաբեր ձեռքով իմ ձին սպանուեց, բայց հատուցեցի ճիշտ եւ ճիշտ նրան գիշակեր ցինի ու ագռաւների կեր դարձաւ նրա չքնաղ նժոյգը, որ շատ էր սիրում։

*[Old Clifford enters.]*

WARWICK.
Երկուսիցս մէկի ժամն է մօտեցել։

YORK.
Կա՛ց, վորուիկ, փնտրիր քեզ համար այլ որս, ես պիտի խփեմ հէնց այս եղջերուին։

WARWICK.
Սա ազնիւ բան է չէ՞ որ կռւում ես դու գահի համար։ Արնախում կլիֆորդ, որքան տենչում եմ քեզ մահ պարգեւել, նոյնքան իմ սիրտն է տխրում մոլեգին, որ չեմ կարող քեզ սպանել այսօր։ [Exits.]

CLIFFORD.
Ի՞նչ ես դու տեսնում իմ աչքերի մէջ, որ յապաղում է քո հարուածը, եո՛րք։

YORK.
Ես կը սիրէի քո քաջութիւնը, թէ չլինէիր երդուեալ թշնամիս։

CLIFFORD.
Քո քաջութիւնն էլ կարիք չէր զգայ փառաբանութեան ու դրուատանքի, թէ այն չերեւար դաւաճանութեան ու ամօթանքի բացայայտ լաթով։

YORK.
Ուրեմն թող ինձ այն դառնայ նեցուկ՝ ընդդէմ քո սրի, զի արդարութեան եւ իրաւունքի համար է շողում։

CLIFFORD.
Գործէք իրար հետ, հոգի ու մարմին։

YORK.
Դե՛հ, հաւկիթ աձան, իսկոյն պատրաստուիր։

*[They fight. Clifford is wounded.]*

CLIFFORD.
Աւարտն է պսակում գործը։ [Dies.]

YORK.
Քեզ խաղաղութիւն բերեց կռիւը, քանզի լռեցիր, թող խաղաղ հանգչի համբառնեալ հոգիդ, եթէ այդպէս է կամքը մեր աստծոյ։

*[As York exits Young Clifford enters.]*

YOUNG CLIFFORD.
Խառնաշփոթութի՛ւն եւ հազա՛ր ամօթ, վախը ծնում է խռովք ու խուճապ, սա է մեր գործին պարտութիւն բերում։ Օ՛, դու պատերազմ, ուստր դժոխքի, քեզ մոլեգնացայտ երկինքն է շինում իր համար գործիք, թափիր դու մերոնց սառնաշունչ կրծքին քինախնդրութեան կիզիչ ածուխը, թող ոչ մի զինուոր չփախչի մարտից, ով ճշմարտապէս իր բախտն է կապել քեզ հետ, պատերա՛զմ, նա եսասէր չէ։ Իսկ ով իր անձն է սիրում կաթոգին, նա պատահմամբ է քաջ մարտիկ դառնում։ Օ՛, թող կործանուի այս աշխարհը պիղծ։

*[Sees the body of his father.]*

YOUNG CLIFFORD [cont.]
Վերջի՛ն դատաստա՛ն, թող քո բոցերը ժամանակից շուտ այրեն միասին երկինք ու երկիր, թող ահեղօրէն հնչե՛ն օրհասի փողերը ուժգին՝ խեղդելով երկրի ձայները խղճուկ։ Միթէ՞ կորցրիր, հայր իմ սիրելի, ջահէլութիւնդ խաղաղ օրերին ու ձեռք բերեցիր իմաստուն կեանքիդ զգեստն արծաթեայ եւ քո ծերութեան օրերն յարգարժան, որ սպանուէիր ոճրագործ մարտում։ Ա՛խ, սա տեսնելիս սիրտս է քարանում, եւ քանի դեռ այս դաժան պատկերը կը մնայ իմ մէջ, քարսիրտ կը դառնամ։ Եորքը ծեր մարդկանց սրի է քաշում, ես էլ թշնամու մանկանց կը մորթեմ։ Կոյսի արցունքը հոգուս կրակին ջինջ ցօղ կը թուայ, գեղեցկութիւնը, որ բռնակալի կամքն է նուաճում, բոցէ ցասումիս՝ առատ վուշ ու իւղ։ Արդ, դուրս եմ վանում խիղճը իմ հոգուց եւ հանդիպելով եորքի տղային՝ ես պիտի նրան այնպէս կտրատեմ, ինչպէս մեդէան ջահէլ աբսիրտին։ Ես դաժանօրէն փառքս եմ փնտրելու։ Գնա՛նք, հին տոհմիս իմ նոր աւերակ։ Բարձրացնում է հօր դիակը։ Ինչպէս Էնէասը տարաւ անքիզին, այսպէս քաջաբար ես քեզ կը տանեմ, բայց նա կրում էր կենդանի մի բեռ, իսկ ես՝ աւելի ծանրագոյն մի վիշտ։

*[As Young Clifford exits with his father's body Richard and Somerset enter, fighting. Somerset is killed.]*

RICHARD.
Դե՛հ, մնա այստեղ։ Իր դժբախտ մահով փոքրիկ գինետան «օլբենսի դղեակ» ցուցափեղկի տակ դուքս սոմերսետը խիստ փառաբանեց թշուառ վհուկին։ Սո՛ւր, չափաւորիր քո բարկութիւնը, սիրտ իմ, մոլեգնի՛ր, քահանաները աղօթք են կարդում թշնամու համար, իսկ իշխանները՝ սպանում նրան։
[Exits.]

*[As the battle rages on the King and Queen enter.]*

QUEEN MARGARET.
Շտապի՛ր, տէր իմ, շատ ես յապաղում։ Ամօ՛թ քեզ, փախի՛ր։

KING HENRY.
Կա՛ց, կա՛ց, մարգարիտ։ Կարո՞ղ ես փախչել երկնի հայեացքից։

QUEEN MARGARET.
Ինչի՞ց ես շինուած։ Չես ուզում կռուել եւ ոչ էլ փախչե՞լ։ Արդ, արիութիւն ու խոհեմութիւն հանդէս կը բերենք, եթէ թշնամուն մենք ճանապարհ տանք եւ ըստ կարելուոյն փրկուենք մահից, իսկ փրկութիւնը փախուստի մէջ է։

*[From afar, the sound of alarms.]*

QUEEN MARGARET [cont.]
Եթէ դու գերուես, մենք կը գլորուենք մեր բախտի վիհը, իսկ եթէ փրկուենք, չեմ տարակուսում, թէ դու չալարես, կը հասնենք Լոնդոն, ուր սիրում են քեզ, ուր այս սխալը կարող է շտկուել, որ այստեղ յանկարծ հասաւ մեր բախտին։

*[Young Clifford enters.]*

YOUNG CLIFFORD.
Եթէ իմ սիրտը չզգար նոր վտանգ, ես աւելի շուտ կ՝անիծէի աստծուն, քան թէ կ՝ասէի՝ այստեղից փախէք։ Բայց պէտք է փախչէք, Օ՛, անբուժելի խռովք է ընկել մեր զօրքի սրտում, փրկէ՛ք ձեր կեանքը, մենք պէտք է ապրենք, որպէսզի տեսնենք այն օրը ուրախ, երբ մեր թշնամուն բախտն է հարուածում։ Շտապե՛նք, տէր իմ։

*[They exit.]*

]0[

ACT V. SCENE III.
Fields near Saint Albans. York, Warwick and Richard enter.

YORK.
Որտե՞ղ է հիմա դուքս սօլսբերին, ի՞նչ է պատահել այդ ծեր առիւծին, որ մոռանալով իր հին վէրքերը եւ ժամանակի սուր խոզանակը՝ ուզում է կռուել մի դեռափթիթ պատանու նման, որ յոյս է կապում պատեհութեան հետ։ Այս ուրախ օրը մեզ, չի պատկանում քանզի, եթէ նա ընկել է մարտում, մեզ չիք յաղթանակ։

RICHARD.
Իմ փառապանծ հայր, ես երեք անգամ օգնեցի նրան, որ նա ձի նստէր, եւ երեք անգամ բռնեցի նրան, որ չսայթաքէր, եւ երեք անգամ մարտից դուրս տարայ եւ համոզեցի, որ պէտք չի կռուել, բայց, այնուհանդերձ, որտեղ վտանգ կար, հէնց այնտեղ նրան ես հանդիպեցի, ինչպէս շքեղ գորգն համեստ

տնակում, այդպէս էլ նրա կամքն էր բռնանում թոյլ մարմնի վրայ, բայց քաջ ռազմիկը, տեսէ՛ք, գալիս է։

*[Salisbur enters.]*

SALISBURY.
Իմ սուրը վկայ, դու խիզախութեամբ կռուեցիր այսօր, մենք էլ՝ ոչ պակաս, շնորհակալութի՛ւն, իմ ազնիւ ռիչարդ, եւ աստուած գիտէ, թէ քանի տարի դեռ պիտի ապրեմ, բայց նա կամեցաւ, որ երեք անգամ դու ինձ փրկէիր վերահաս մահից։ Բայց մենք ամէն ինչ դեռ չենք վաստակել, բաւ չէ, որ փախաւ ոսոխն այս անգամ, նա ընդունակ է նորից կռուելու։

YORK.
Կ՝ապրենք անվտանգ, թէ հետապնդենք անարգ թշնամուն։ Ես վախենում եմ, որ թագաւորը փախել է լոնդոն, որպէսզի իսկոյն պառլամենտ կանչի։ Պէտք է շտապել, քանի դեռ վճիռ չի կայացրել։ Ի՞նչ կ՝ասէք, վորուիկ, չպէ՞տք է գնանք նրանց ետեւից։

WARWICK.
Նրա՞նց ետեւից։ Ո՛չ, ո՛չ, առջեւից, եթէ կարող ենք։ Երդւում եմ, տեար իմ, փառապանծ օր էր, դուքս եորքը շահեց օլբենսի մարտը, որ թագադրուեց սուրբ յաւէրժութեամբ։ Հնչեցրէ՛ք փողեր, օ՜ն անդր, լոնդոն, թող տեսնենք նման բազում փառատօն։

*[They all exit.]*

][][

BOOK 3

## ACT I SCENE I

London. Parliament House. Duke of York with Edward, Richard, Norfolk, Montague and Warwick. They all have white roses painted on their helmets.

WARWICK.

Ես զարմանում եմ, թէ ինչպէս փախաւ արքան մեր ձեռքից։

YORK.

Երբ մենք հիւսիսցի ձիաւորներին հալածում էինք, նա ճարպկօրէն փախուստի դիմեց՝ մենակ թողնելով իր զինուորներին։ Եւ այստեղ մեծ լորդ նորթեմբերլենդը, ում զինուորական լսողութիւնը չէր կարող տանել նահանջի տագնապ, թեւ տուեց նորից յուսահատ զօրքին եւ մեր գլխաւոր ճակատամարտի կենտրոնը նետուեց լորդեր կլիֆորդի ու ստեֆորդի հետ եւ նրանք ընկան սաստիկ հասարակ զինուորի սրից։

EDWARD.

Ստեֆորդի հայրը՝ դուքս բուկինգեմը, կամ սպանուել է, կամ թէ մահացու վիրաւորուած է, դիպուկ հարուածով ճեղքեցի նրա երեսակալը, ահաւասիկ, հայր, արիւնը նրա։

MONTAGUE.

Ահա՛, եղբայր իմ, կոմս ուիլշիրի արիւնը կեղտոտ։ Ում հանդիպեցի կատաղի մարտում։

RICHARD.

Խօսի՛ր իմ տեղակ եւ պատմի՛ր նրանց սխրանքիս մասին։

*[Richard tosses Sumerset's head onto the ground.]*

YORK.

Սիրելի ռիչարդ, դու տարբերւում ես իմ որդիներից։ Միթէ՞ մեռած էք, ձերդ մեծութիւն, իշխան Սոմերսետ։

NORFOLK.

Ջոն գոնտի տոհմն էլ այսպիսի տխուր վախճան կ՝ունենայ։

RICHARD.

Յոյս ունեմ՝ թռցնել հենրու գլուխն էլ։

WARWICK.

Ես էլ յոյս ունեմ, յաղթապանծ դուքս եորք, եւ դու քանի դեռ չես նստել գահին, որ լանկաստերներն յափշտակել են, երկինքը վկայ, այս աչքերն երբեք չպիտի գոցուեն։ Ահաւասիկ վախկոտ հենրու

պալատը, եւ գահն արքունի, տիրացի՛ր, եորք իմ։ Քեզ է պատկանում եւ ոչ թէ հենրու ժառանգորդներին։

YORK.
Օգնիր, որ տիրեմ, սիրելի վորուիկ, քանզի մենք այստեղ մտել ենք ուժով։

NORFOLK
Իսկ ով խուսափի, արժան է մահուան։

YORK.
Շնորհակալութիւն, բարեսիրտ նորֆոլկ։ Մնացէք ինձ մօտ, ազնիւ իշխաններ։ Դուք էլ, զինուորներ, այստեղ գիշերէք։

WARWICK.
Ու երբ արքան գայ, ձեռք չտաք նրան, քանի դեռ ուժով ձեզ դուրս չի քշել։

*[The Soldiers begin to leave.]*

YORK.
Թագուհին այսօր կանչել է այստեղ գերագոյն ատեան, բայց չի կասկածում, որ մենք կը լինենք խորհրդում ներկայ։ Մենք կը նուաճենք մեր իրաւունքը խօսքով կամ սրով։

RICHARD.
Զէնքը մեր ձեռքին կը մնանք այստեղ։

WARWICK.
Սա պէտք է կոչուի արիւնոտ ատեան, եթէ չդառնայ եորքը թագաւոր եւ երկչոտ հենրին չընկնի իր գահից, ում վախկոտութեամբ մեզ ծաղրում էին մեր ոսոխները։

YORK.
Ինձ մօտ մնացէք, ազնիւ իշխաններ, եղէք համարձակ ես միտք եմ դրել իմ իրաւունքը լրիւ ստանալ։

WARWICK.
Ո՛չ թագաւորը, ո՛չ նրա սաստիկ սիրեցեալ մարդը թէկուզ նա լինի լանկաստերների կողմնակիցն հպարտ, չեն համարձակուի ձեռքն իրենց շարժել, եթէ վորուիկը զանգերն իր քաշի։ Ես պէտք է գահին բարձրացնեմ քեզ թող փորձեն քո տունկն արմատով պոկել, դեհ, վճռիր, ռիչարդ, ձեռքդ թագին դիր։ Վորուիկը առաջնորդում է եորքին դէպի գահը, եորքը նստում է գահին։

*[King Henry enters with Young Clifford, Northumberland, Westmoreland and Exeter.]*

KING HENRY.

Իշխաննե՛ր, նայէք, որտեղ է բազմել խռովարարը, Օ՛, գահի վրայ։ Նա կարծում է, թէ վորուիկի ուժով, որ մի նենգամիտ ազնուական է, կարող է տիրել գահը արքայից, դառնալ թագաւոր։ Կոմս նորթեմբերլենդ, դժնդակ եորքն է քո հօրն սպանել, քո հօրը՝ նոյնպէս, իմ բարի կլիֆորդ։ Չէ՞ որ երդուեցիք դուք վրէժ առնել այդ ստոր մարդուց, նրա ողջ տոհմից։

NORTHEMBERLAND.

Այլապէս ինձնից թող երկինքն առնի իր վրէժն արդար։

CLIFFORD.

Վրէժի յոյսը ստիպում է ինձ ձեռքիս սուր պահել։

WESTMORLAND.

Ի՞նչ։ Միթէ՞ պէտք է այս բանն հանդուրժենք եկէք համարձակ նրան տապալենք սիրտս այրւում է զայրոյթի հրով Օ՛, ես չեմ կարող այլեւս համբերել։

KING HENRY.

Համբերիր, ազնիւ իմ կոմս վեստմոռլենդ։

CLIFFORD.

Համբերութիւնն է վախկոտի համար, ինչպիսին եորքն է, նա չէր յանդգնի գահը բարձրանալ, եթէ ձեր հայրը կենդանի լինէր։ Ողորմած տէր իմ, թոյլ տուէք այստեղ յարձակուենք եորքի ամբողջ տան վրայ։

NORTHEMBERLAND.

Դու լաւ ասացիր, հօրեղբօր որդի, այդպէս էլ պէտք է։

KING HENRY.

Միթէ՞ չգիտէք, որ այս քաղաքը սիրում է նրանց, եւ իրենց մէջքին զինուորներ ունեն։

EXETER.

Բայց երբ սպանուի դաւաճան դուքսը, նրանք կը փախչեն։

KING HENRY.

Ա՛խ, հենրու սիրտը չի ուզում երբեք, որ սպանդանոց ատեանը դառնայ, ազնիւ էքսետեր, ինձ զէնք կը լինեն խոժոռ հայեացքը, սպառնալիքը եւ բառերն հզօր։ Դո՛ւ, խռովեալ եորք, իջի՛ր իմ գահից ոտքերիս առաջ ծնկաչոք խնդրիր մեղքիդ թողութիւն, ես եմ քո արքան։

YORK.

Ո՛չ, ես եմ քոնը։

EXETER.
 ամօ՛թ քեզ, իշի՛ր։ Չէ՞ որ նա դարձրեց քեզ եորքի դուքսը։

YORK.
Ժառանգութիւնս էր այս դքսութիւնը եւ կոմսութիւնը։

EXETER.
Բայց դաւաճանեց քո հայրը գահին։

WARWICK.
Դու, նենգ էքսետեր, դաւաճանեցիր, քանզի գնում ես նրա ետեւից, ով թագն յափշտակեց։

CLIFFORD.
Իսկ ո՞ւմ պետք է նա հետեւէր, վորուիկ, թէ ոչ՝ օրինաց մեր թագաւորին։

WARWICK.
Իրա՛ւ ես, կլիֆորդ, օրինաւորը ռիչարդն է, եորքը։

KING HENRY.
Ես պիտի կանգնեմ, դո՞ւ գահիս նստես։

YORK.
Այդպէս պիտ լինէր, այդպէս կը լինի։ Գոհացի՛ր դրանով։

WARWICK.
Դու դարձիր դուքսը լանկաստերների, եւ թող նա դառնայ թագաւորը մեր։

WESTMORLAND.
Նա ե՛ւ արքան է, ե՛ւ լանկաստերի դուքսն օրինաւոր։ Այդ հաստատում է լորդ վեստմոռլենդը։

WARWICK.
Իսկ ես հերքում եմ։ Դուք մոռացել էք, որ կռուի դաշտից մենք ձեզ քշեցինք, մեր քաջ սրերից ձեր հայրերն ընկան, դրօշներ պարզած քաղաքի միջով՝ հասանք պալատի բաց դարպասներին։

NORTHEMBERLAND.
Վորուիկ, յիշում եմ ես դա տխրութեամբ, եւ հոգիս վկայ, քո տոհմը նրա մահը կը զղջայ։

WESTMORLAND.
Պլանտագենետ, կը խլեմ քեզնից, քո որդիներից, քո ազգ ու տակից աւելի շատ կեանք, քան թէ հայրս ունէր արեան կաթիլներ իր երակներում։

CLIFFORD.
Վե՛րջ տանք խօսքերի այս կռուին, վորուիկ, թէ ոչ՝ բառերիս տեղակ կ՝առաքեմ քեզ մի սուրհանդակ, որն ինձնից առաջ կը լուծի քեզնից վրէժը իմ հօր։

WARWICK.
Թշուառ կլիֆորդ, քամահրում եմ ես քո սպառնալիքն անարժէք՝ սաստիկ։

YORK.
Դուք կամենո՞ւմ էք, որ ապացուցենք իրաւունքը մեր։ Եթէ չէք ուզում, այն կը պաշտպանենք դաշտում սրերով։

KING HENRY.
Ո՞րն է, դաւաճան, քո իրաւունքը։ Հայրդ եղել է եորքի լոկ դուքսը, ինչպէս հիմա՝ դու, իսկ քո մեծ հայրը՝ ռոջեր մորտիմերը՛ մարչի կոմսն էր իմ հայրն էր հենրի հինգերորդ արքան, որ ծունկի բերեց թագաժառանգին ու ֆրանսիական քաղաքներն առաւ։

WARWICK.
Մի խօսիր նորից ֆրանսիայի մասին ամէն ինչ այնտեղ դու տանուլ տուիր։

KING HENRY.
Ոչ թէ ես, այլ նա՝ խնամակալը, երբ ինձ կարգեցին երկրի թագաւոր, նոր էր լրացել իմ ինն ամիսը։

RICHARD.
Դուք բաւականին հասուն էք հիմա, բայց կորցնում էք դարձեալ ամէն ինչ։ Հա՛յր, խլիր թագը յափշտակիչից։

EDWARD.
Սիրելիդ հայր իմ, թագը դիր գլխիդ։

MONTAGUE.
[To York] Բարեսիրտ եղբայր, դու զէնք ես սիրում, վերջ տանք խօսքերի այս էժան կռուին։

RICHARD.
Թմբուկներ զարկէք, որ արքան փախչի։

YORK.
Լռէ՛ք, իմ որդիք։

KING HENRY.
Լռի՛ր դու եւ թող, որ խօսի արքան։

WARWICK.
Թող Պլանտագենետն սկզբում խօսի, իսկ դուք, իշխաննե՛ր, ունկնդրէք նրան խորին լռութեամբ եւ ուշի ուշով, իսկ ով ընդմիջէ, նա ողջ չի մնայ։

KING HENRY.
Միթէ՞ կարծում ես, որ ես կը լքեմ գահն իմ արքունի, որտեղ բազմել են իմ պապն ու հայրը։ Օ՛, ո՛չ։ Կռիւը կ՝ամայացնի իմ տէրութիւնը։ Թող այս դրօշներն ինձ պատանք դառնան, որ ծածանւում են մեր կղզուց այն կողմ, իսկ այժմ այստեղ՝ մեծ վշտիս վրայ։ Ա՛խ, ինչո՞ւ, ինչո՞ւ դուք վախենում էք, չէ՞ որ, իշխաններ, իմ իրաւունքը աւելի մեծ է, քան թէ եորքինը։

WARWICK.
Ապացոյց, հենրի, եւ դու կը լինես թագաւորը մեր։

KING HENRY.
Հենրի չորրորդը գահը նուաճեց։

YORK.
Իր օրինաւոր թագաւորի դէմ ապստամբելով։

KING HENRY.
[Aside.] Ի՞նչ ասեմ։ Թոյլ է իմ իրաւունքը։ [Aloud.] Բայց միթէ՞, ասա՛, արքան չի՞ կարող ընտրել մի ժառանգ։

YORK.
Ի՞նչ ասել կազէք։

KING HENRY.
Եթէ կարող է, ես օրինաւոր ձեր թագաւորն եմ, չէ՞ որ ռիչարդը իշխանների մօտ թողեց իր թագը հենրի չորրորդին, ում ժառանգն հայրս էր, իսկ ես՝ նրանը։

YORK.
Բայց նա ընդվզեց թագաւորի դէմ եւ բռնի ուժով ստիպեց նրան, որ գահը լքի։

WARWICK.
Ասենք, այս բանը չարեց հարկադիր բայց թո՞յլ է տրուած, որ նա հէնց վնաս հասցնէ թագին։

EXETER.
Ո՛չ, նա կարող է թագից հրաժարուել, որ յաջորդ ժառանգն անցնի ու տիրէ։

KING HENRY.
Միթէ՞, էքսետեր, դու էլ ես մեզ դէմ։

EXETER.
Նա ճիշտ է, արքայ, ուստի ինձ ներիր։

YORK.
Ի՞նչ էք փսփսում, ասէք բարձրաձայն։

EXETER.
Իմ խիղճն ասում է, որ եորքն է արքան։

KING HENRY.
[Aside.] Բոլորն ինձանից երես են թեքում, եւ նրա կողմն են անցնում մէկառմեկ։

NORTHEMBERLAND.
Պլանտագենետ, չնայած բոլոր քո պահանջներին՝ մի կարծիր՝ հենրուն այսպէս հեշտօրէն գահընկէց կ՝անես։

WARWICK.
Նա, ի հեճուկս ամենայն մարդոց, պէտք է շուտափոյթ գահընկէց լինի։

NORTHEMBERLAND.
Դու մոլորուած ես։ Թէեւ դու մեծ ուժ ունես հարաւում, սեֆոլկում, քէնտում, էսեքսում, նորֆոլկում, եւ դու նրանցով դարձել ես այսքան յանդուգն ու ժպիրհ, սակայն չես կարող, կամքիս հակառակ, գահ բարձրացնել Պլանտագենետին։

CLIFFORD.
Թագաւոր հենրի, արդար է, թէ ոչ քո իրաւունքը, քեզ կը պաշտպանեմ, երդւում եմ, կռւով, թող բացուի հողը, ինձ ողջ-ողջ կուլ տայ, թէ ես խոնարհուեմ այն մարդու առաջ, ով անժամանակ իմ հօրն սպանեց։

KING HENRY.
Օ՛, իմ կլիֆորդ, իմ տխուր սրտին կեանք պարգեւեցիր։

YORK.
Հենրի լանկաստեր, զիջի՛ր քո թագը։ Իշխաննե՛ր, ի՞նչ էք այդպէս փսփսում։

WARWICK.
Հենրի, ճանաչիր եորքին թագաւոր, թէ ոչ՝ այս շէնքը կը լցնեմ զօրքով եւ գահի վրայ կը գրեմ քո պիղծ ու գուլ արիւնով իմ ազնիւ եորքի իրաւունքները։

*[He stomps on the floor and Soldiers enter.]*

KING HENRY.
Լսի՛ր ինձ, վորուիկ, լսի՛ր լոկ մի բառ տո՛ւր ինձ իրաւունք՝ երկիրն իշխելու կեանքիս ընթացքում։

YORK.
Կտակիր թագն ինձ ու ժառանգներիս դու մինչեւ մահդ կը լինես արքայ։

KING HENRY.
Ես գոհ եմ։ Ռիչարդ Պլանտագենետը գահ կը բարձրանայ իմ մահից յետոյ։

CLIFFORD.
Ի՜նչ վիրաւորանք հարազատ որդուդ։

WARWICK.
Բայց ի՜նչ բարութիւն վասն իւր անձի ու մեր հին կղզուն։

WESTMORLAND.
Թուլամիտ, երկչոտ ու նուաստ հենրի։

CLIFFORD.
Ի՜նչ վիրաւորանք հասցրիր ե՛ւ քեզ, ե՛ւ մեզ բոլորիս։

WESTMORLAND.
Չեմ կարող հաշտուել այս պայմանի հետ։

NORTHEMBERLAND.
Ես նոյնպէս։

CLIFFORD.
Գնանք, իմ ազնիւ եղբայր։ Եւ այս ամէնը պատմենք թագուհուն։

WESTMORLAND.
Օ՛, մնաս բարով, թուլամիտ արքայ, ում սառն արեան մէջ չի շողում նոյնիսկ պատուի ոչ մի կայծ։

NORTHEMBERLAND.
Այսուհետ դարձիր եորքի տան աւար ու շղթայակապ մեռիր իգացեալ արարքիդ համար։

CLIFFORD.
Դու պէտք է յաղթես այս ահեղ կռւում, թէ ոչ՝ անգոսուած ու մենակ կ՝ապրես։

*[Northumberland, Clifford and Westmoreland all exit.]*

WARWICK.
Ետ դարձիր, հենրի, մի՛ նայիր նրանց։

EXETER.
Նրանք տենչում են վրէժխնդրութիւն եւ չեն նահանջի։

KING HENRY.
Ա՛խ, իմ Էքսետե՛ր։

WARWICK.
Ինչո՞ւ էք, տէր իմ, այսպէս հառաչում։

KING HENRY.
Ոչ թէ ինձ, վորուիկ, այլ որդուս համար, որ զրկուեց ընդմիշտ գահ բարձրանալու ժառանգութիւնից։ Բայց թող լինի այն, ինչ պէտք է լինի։ Ես այստեղ յաւէրժ կարգում եմ թագն իմ քեզ, Պլանտագենետ, քո ժառանգներին, բայց մի պայմանով դու պէտք է երդուես, որ կը դադարեն եղբայրասպան գժտութիւնները, եւ մինչեւ մահս ինձ պիտի յարգես որպէս արքայիդ ու վեհապետիդ, ձեռք պիտի քաշես դաւաճանական ու թշնամական այն արարքներից, որոնք կարող են քեզ իշխանութեան գլուխ կանգնեցնել։

YORK.
Ես սիրայօժար երդում եմ տալիս եւ խօսքիս տէրն եմ։

WARWICK.
Թող երկար ապրի մեր հենրի արքան։

KING HENRY.
Ե՛ւ քեզ երկար կեանք, ե՛ւ քո քաջ որդոց։

EXETER.
Թող նա անիծուի, ով պէտք է նրանց թշնամի դարձնի։

YORK.
Մնացէ՛ք բարեաւ, ողորմած իմ տէր։ Ես պէտք է շտապ ամրոցս գնամ։

WARWICK.
Ես պիտի հսկեմ լոնդոնն իմ զօրքով։

NORFOLK.
Ես՝ դէպի նորֆոլկ՝ իմ ընկերներով։

MONTAGUE.
Իսկ ես՝ դէպի ծով, որտեղից եկայ։

*[York and all his followers exit.]*

KING HENRY.
Իսկ ես վշտիս հետ գնում եմ պալատ։

*[The Queen and Prince enter.]*

EXETER.
Ահա՛ թագուհին։ Նրա հայեացքում կայ մի խոր զայրոյթ։ Ես պիտի խոյս տամ։

KING HENRY.
Ես էլ, Էքսետեր։ [Starts to exit.]

QUEEN MARGARET.
Մի՛ գնա, ես քո ետեւից կը գամ։

KING HENRY.
Համբերող եղիր, քնքուշ թագուհի, քեզ հետ կը մնամ։

QUEEN MARGARET.
Ա՜խ, ո՞վ կարող է համբերող լինել այս պարագայում։ Թշուա՜ռ արարա՜ծ։ Աւելի լաւ էր օրիորդ մնայի, քան թէ երբեւէ հանդիպէի քեզ ու այս տղային աշխարհ բերէի, քանզի դու եղար անմարդկային հայր։ Նա ինչո՞ւ համար պէտք է կորցնէր գահ բարձրանալու իր իրաւունքը։ Եթէ դու նրան սիրէիր ինձ պէս, նոյնիսկ կիսով չափ, եւ ի սէր նրա տանէիր բոլոր այն տանջանքները, որ ես ունեցայ նրան ծնելիս, եւ կերակրէիր, ինչ ես՝ իմ արեամբ, այնժամ կը տայիր քո արիւնն ամբողջ, միայն թէ դուքսին չճանաչէիր քեզ որպէս ժառանգ՝ զրկելով, աւա՜ղ, քո միակ որդուն իր իրաւունքից։

PRINCE OF WALES.
Հայր իմ, չես կարող ինձ գահից զրկել։ Թէ դու ես արքան, ես չե՞մ ժառանգդ։

KING HENRY.
Ների՛ր, մարգարիտ, ների՛ր ինձ, որդեա՛կ, վորուիկն ու եորքը ինձ ստիպեցին։

QUEEN MARGARET.
Քեզ ստիպեցի՞ն։ Դու լինես արքայ, ու քեզ ստիպե՞ն, ես ամաչում եմ խօսքերիդ համար։ Ա՜խ, երկչոտ մարդուկ, դու կործանեցիր քեզ, որդուդ եւ ինձ, տուեցիր եորքին մի այնպիսի ուժ, ում թոյլտուութեամբ միայն կարող ես դու թագը կրել։ Գահը կտակել այդ անգութ դուքսին եւ նրա որդոց, նշանակում է, որ մարդն իր ձեռքով իր փոսն է փորում եւ իջնում այնտեղ ժամանակից վաղ։ Նայի՛ր, վորուիկը լորդ

կնքապահ է, կալէի տէրը, իսկ ֆոլկոնբրիջը նեղուցն է հսկում, եորքը տէրութեան խնամակալն է, եւ քեզ կարծո՞ւմ ես սաստիկ ապահով։ Դողահար գառը կը զգա՞յ ապահով, երբ շրջապատեն գայլերն արնախում ես՝ կարճմիտ կինս, շատ աւելի շուտ կ՝ուզէի ճճճուել տէգերի ծայրին, քան համաձայնել քո վճռի հետ։ Բայց դու ընտրեցիր պատուից առաւել քո խղճուկ կեանքը, եւ դրա համար ես հեռանում եմ քո մահճակալից եւ քո սեղանից, մինչեւ չես ջնջի խորհրդարանի գործողութիւնն այդ, որով զրկւում է իմ որդին գահից։ Հենրի, հիւսիսի այն իշխանները, որ չեն կամենում կանգնել դրօշիդ տակ, ինձ կը հետեւեն, թէ դրօշ պարզեմ, եւ կը ծածանեմ՝ ի հեճուկս քո խայտառակութեան եւ եորքի ողջ տան յաւէրժ կործանման։ Ես լքում եմ քեզ։ Գնա՛նք, զաւա՛կս, մեր զօրքերն արդէն պատրաստ են, գնանք, միանանք նրանց։

KING HENRY.
Լսի՛ր ինձ մի պահ, քնքուշ մարգարիտ։

QUEEN MARGARET.
Դու շատ խօսեցիր, հեռացիր ինձնից։

KING HENRY.
Սիրելի Էդուարդ, ինձ մօտ չե՞ս մնայ։

QUEEN MARGARET.
Որ քո թշնամիք սպանե՞ն նրան։

PRINCE OF WALES.
Երբ յաղթանակով ես դառնում կռուից, քեզ կը հանդիպեմ, ձերդ մեծութիւն, իսկ այժմ պէտք է մօրս հետ գնամ։

QUEEN MARGARET.
Գնա՛նք, զաւա՛կս, պէտք չէ՛ յապաղել։

*[Queen and Prince exit.]*

KING HENRY.
Թշուա՛ռ թագուհի։ Ա՛խ, ինչպէս նրա սէրն իմ նկատմամբ ու որդուս հանդէպ ստիպեց նրան, որ արտայայտուի այսպէս կատաղի։ Թող վրէժ առնի գարշելի դուքսից, ում ագահ ոգին, թեւ առած տենչից, ճախրում է բարձր իմ գահի վրայ, որ իմ ու որդուս մարմինն յօշոտեն քաղցած անգղի պէս։ Այս երեք լորդի մեծ կորուստները սիրտս են ծուատում, կը գրեմ իսկոյն եւ անկեղծօրէն նրանց կ՝աղերսեմ։ Գնա՛նք, Էքսետեր, դու պէտք է լինես իմ սուրհանդակը։

EXETER.
Տէր իմ, յոյս ունեմ, որ կը հաշտեցնեմ նրանց բոլորին։

*[They exit.]*

][[

## ACT I. SCENE II.

Sandal Castle, near Wakefield, in Yorkshire. Edward, Richard and Montague enter.

RICHARD.

Թէեւ կրտսերն եմ, թոյլ տուր ինձ, եղբա՛յր։

EDWARD.

Ես աւելի լաւ կարող եմ խաղալ դերն հռետորի։

MONTAGUE.

Բայց իմ փաստերն են սաստիկ զօրաւոր։

*[York enters.]*

YORK.

Ի՞նչ է, վիճո՞ւմ էք, հարազատնե՛րս։ Ո՞վ է սկսել, ինչո՞ւ էք վիճում։

EDWARD.

Վէճ չէ՛, մի փոքրիկ տարաձայնութիւն։

YORK.

Իսկ ինչի՞ շուրջը։

RICHARD.

Ձերդ մեծութիւն, ձեր զաւակների, ձեր թագի շուրջը, որ ձե՛րն է, հայր իմ։

YORK.

Օ՛, ոչ, քանի դեռ չի մեռել հենրին։

RICHARD.

Հա՛յր, կախում չունի ձեր իրաւունքը ո՛չ նրա կեանքից, ո՛չ էլ մահուանից։

EDWARD.

Դուք էք ժառանգը, ուստի օգտուէք այդ իրաւունքից։ Հէնց որ բաց թողնէք, լանկաստերները շունչ կ՝առնեն նորից, գիտցէ՛ք, ի վերջոյ, ձեզանից կ՝անցնեն։

YORK.
Երդուել եմ, որ նա պիտ խաղաղ իշխէ։

EDWARD.
Բայց ի սէր գահի՝ երդում կը դրժեն ես կը դրժէի նման բիւր երդում, միայն մէկ տարի գահն ինձ պատկանէր։

RICHARD.
Ո՛չ, աստուած չանի՝ երդմնազանց լինէք։

YORK.
Կը դրժեմ, եթէ կռուեմ բացայայտ։

RICHARD.
Եթէ ինձ լսէք, ես կ՝ապացուցեմ ճիշտ հակառակը։

YORK.
Չես կարող, որդի՛ս, անհնարին է։

RICHARD.
Երդումն ուժ չունի, երբ այն չի տրուել ճշմարիտ, արդար օրէնքի առաջ, որն իշխանութիւն եւ կշիռ ունի երդուեալի վրայ։ Հենրին անօրէն գահն է գրաւել, ու թէ ինձանից ձեր երդումն ուզի, ապա այն, հայր իմ, ոչ մի ուժ չունի։ Ուրեմն, ի զէ՜ն։ Ապա մտածիր, ի՜նչ քաղցր բան է թագ ունենալը։ Նրա ոսկեզօծ շրջանակի մէջ դրախտն է գցուած բիւր երջանկութեամբ, որ գովերգում են բանաստեղծները։ Պէտք չէ յապաղել։ Հանգիստ չեմ առնի, քանի դեռ, հայր իմ սպիտակ վարդը չեմ ներկել հենրու սրտի գաղջ արեամբ։

YORK.
Հերի՛ք է, ռիչարդ։ Ես պէտք է դառնամ մեր երկրի արքան կամ մահն համբուրեմ դու, եղբա՛յր, պէտք է լոնդոն շտապես եւ լորդ վորուիկին դրդես այս գործին, դու, ռիչա՛րդ, գնա դուքս նորֆոլկի մօտ եւ գաղտնի պատմիր մեր վճռի մասին, դու, էդուա՛րդ, մեկնիր լորդ քոբեմի մօտ, նրա հետեւից ինքնակամօրէն կը գնան քէնտցիք, ես վստահում եմ այդ զինուորներին՝ ազնիւ են, խոհեմ եւ արիասիրտ։ Մինչ դուք կը զբաղուէք, ինչ է ինձ մնում, եթէ ոչ՝ փնտրել ապաստամբութեան պատեհ ժամանակ։ Տե՛ս, հա՛, չիմանան յարձակման մասին ո՛չ թագաւորը եւ ո՛չ էլ նրա կողմնակիցները։

*[Messenger enters.]*

YORK [cont.]
Բայց կացէ՛ք, ի՞նչ լուր։ Ինչո՞ւ ես այդպէս հեւիհեւ եկել։

MESSENGER.
Տէր իմ, հիւսիսի բոլոր կոմսերը եւ իշխանները թագուհու դրդմամբ մտադրուել են ձեզ շրջապատել ձեր իսկ ամրոցում։ Նա մօտ է արդէն։ Քսան հազար մարդ ձեռքի տակ ունի, ուստի պաշտպանիր ամրոցը, տէր իմ։

YORK.
Այո՛ իմ սրով։ Ի՞նչ, մտածում ես, որ մենք վախեցա՞նք, Էդուարդ ու ռիչարդ, մնացէք ինձ մօտ, եղբայր մոնտէգիւ, շտապի՛ր լոնդոն, թող վորուիկն ազնիւ, քոբեմը բարի եւ ուրիշ լորդեր, որոնց կարգել ենք արքային պաշտպան, ուժեղացնեն իրենց դիրքերը խելացիօրէն՝ չվստահելով կարճամիտ հենրու եւ ոչ մի երդման։

MONTAGUE.
Պէտք չէ վախենալ գնում եմ նրանց ես համոզելու, արդ, խոնարհաբար ես թողնում եմ ձեզ։ [Exits.]

*[Sir John and Sir Hugh Mortimer enter.]*

YORK.
Սըր ջոն եւ սըր հիւ, իմ հօրեղբայրներ, ամրոց ենք մտնում այն ուրախ ժամին, երբ մեզ թագուհին կ՝ուզէ պաշարել։

SIR JOHN.
Իզուր է ջանում, մենք կը հանդիպենք նրա հետ դաշտում։

YORK.
Ինչպէ՞ս, հինգ հազար զինուորո՞վ միայն։

RICHARD.
Այո՛, հինգ հազար, եթէ հարկ լինի։ Ինչո՞ւ վախենալ, կինն է առաջնորդ։

*[Drums can be heard in the distance.]*

EDWARD.
Լսում եմ նրանց թմբուկի ձայնը, պէտք է մեր զօրքին շուտ դասաւորել եւ անմիջապէս կռուի դաշտ մեկնել։

YORK.
Քսանը՝ հինգի դէմ։ Չնայած մեծ է տարբերութիւնը, բայց չեմ կասկածում, ազնիւ հօրեղբայր, որ մենք կը յաղթենք, ես Ֆրանսիայում յաճախ եմ շահել ճակատամարտեր, երբ կռւում էի տասն անգամ ուժեղ իմ թշնամու դէմ, եւ ինչո՞ւ հիմա ինձ չպսակեմ յաղթանակներով։

*[They exit as the drumming draws closer.]*

]0[

ACT I. SCENE III.
Field of battle between Sandal Castle and Wakefield. Sounds of battle. Rutland and his tutor enter.

RUTLAND.
Ա՛խ, ես ո՞ւր փախչեմ, որպէսզի խոյս տամ թշնամիներից, նայի՛ր, գալիս է կլիֆորդն արնախում։

*[Clifford and Soldiers enter.]*

CLIFFORD.
Հէ՛յ, մի կողմ քաշուի՛ր, խղճո՛ւկ վանական, գիտցիր՝ քո դիրքն է փրկում քո կեանքը։ Իսկ սա՝ անիծեալ դուքսի լակոտը, ում հայրն սպանեց հօրս, պիտ մեռնի։

TUTOR
Եւ ես կը կիսեմ ճակատագիրը նրա հետ, միլո՛րդ։

CLIFFORD.
Զինուորներ, տարէ՛ք նրան։

TUTOR
Ա՛խ, մի՛ սպանիր մանկանն այս, միլո՛րդ, քեզ կը նզովեն աստուած ու մարդիկ։

*[Soldiers drag the Tutor away.]*

CLIFFORD.
Մեռե՞լ է արդէն, թէ նա երկիւղից աչքերն է գոցել՝ կը բանամ զոռով։

RUTLAND.
Այսպէս նայում է վանդակուած առիւծն իր խղճուկ զոհին, որ թպրտում է նրա գիշատիչ ծանր թաթի տակ, այսպէս ծաղրում է իր որսի վրայ, այսպէս մօտենում, որ պատառոտի նրա մարմինը։ Ազնիւ կլիֆորդ, աւելի լաւ է՝ սպանես սրով, քան թէ ինձ նայես այս սպառնալից, դաժան հայեացքով։ Բարի կլիֆորդ, լսիր իմ խօսքը մեռնելուց առաջ ես մի աննշան ոչնչութիւն եմ քո խենթ զայրոյթին, տղամարդկանցից քո վրէժը ա՛ռ, թող ինձ կենդանի։

CLIFFORD.
Իզո՛ւր ես խօսում, թշուառ պատանի, իմ հօր արիւնը այն անցքն է փակել, որով կարող էր խօսքդ թափանցել։

RUTLAND.
Թող հօրս արիւնը այն բացի նորից, նա տղամարդ է, չափուիր նրա հետ։

CLIFFORD.
Թէ եղբայրներդ այստեղ լինէին, հերիք չէր անի բոլորիդ կեանքը վրէժիս համար, թէ ես քանդէի քո նախնիների գերեզմանները եւ անարգանքի սիւնին գամէի նրանց դագաղներն այնքա՜ն գարշահոտ, դարձեալ չէր մարի հուրը զայրոյթիս, չէր թեթեւանայ իմ սիրտը այրուող։ Ամէն մի էակ, որ եորքի տնից աշխարհ է գալիս, ֆուրիայի նման տանջում է հոգիս, եւ ես քանի դեռ չեմ ջնջել նրանց տոհմը նզովեալ եւ չեմ թողել ողջ նրանցից մէկին, ես պիտի ապրեմ դժոխքում, ուստի։ [He raises his sword.]

RUTLAND.
Օ՜, թող աղօթեմ մեռնելուց առաջ, աղաչո՜ւմ եմ քեզ, ինձ գթա՜, միլո՜րդ։

CLIFFORD.
Կարող եմ սրով քեզ գութ պարգեւել։

RUTLAND.
Քեզ ոչ մի վնաս ես չեմ հասցրել ինչո՞ւ ես ուզում դու ինձ սպանել։

CLIFFORD.
Հայրդ չի՞ վնասել։

RUTLAND.
Բայց այն ժամանակ ես չէի ծնուել։ Դու զաւա՜կ ունես։ Ի սէ՜ր քո որդու՝ կեանքս խնայիր։ Թէ ոչ՝ իմացիր, աստուած է արդար, եւ քո զաւակը կը մեռնի ինձ պէս։ Ա՜խ, թող իմ կեանքը անց կենայ բանտում ու թէ առիթ տամ քեզ չարանալու, այնժամ սպանիր, արդ, չունես պատճառ։

CLIFFORD.
Ի՞նչ, չունե՞մ պատճառ։ Հայրդ չսպանե՞ց իմ հօրը, մեռի՜ր։

*[Clifford stabs Rutland.]*

RUTLAND.
«*Pedicabo ego vos et irrumabo!*» [Dies.]

CLIFFORD.
Օ՜, Պլանտագենետ, գալիս եմ ահա։ Թող քո զաւակի այս տաք արիւնից զէնքս ժանգոտուի, մինչեւ որ քոնն էլ խառնեմ նրա հետ եւ նոր կը սրբեմ սուրն իմ արիւնից։ [Exits.]

ACT SCENE IV.

Another part of the battlefield. York enters.

YORK.

Թագուհու բանակն յաղթանակ տարաւ, հօրեղբայրներս ընկան ինձ համար, փախչում են բոլոր կողմնակիցներս դաժան թշնամուց, ինչպէս մակոյկը՝ քամուց հալածուած, կամ թէ գառնուկը՝ հիւծուած գայլերից։ Ա՛խ, աստուած գիտի, թէ ինչ պատահեց իմ որդիներին։ Բայց որ ծնուել են այն մարդկանց նման, ովքեր պատրաստ են փառքին ծառայել կեանքով կամ մահով, ես հաստատ գիտեմ։ եւ երեք անգամ ռիչարդը բացեց ճամփայ դէպի ինձ, երիցս գոռաց՝ արիացի՛ր, հայր, եւ երեք անգամ ջահէլ Էդուարդս եկաւ իմ կողմը՝ ձեռքին մի լայն թուր եւ կոթը ներկուած թշնամու արեամբ, ում նա հանդիպեց։ Երբ նահանջեցին զինուորներն անգամ քաջ ու աննկուն, ռիչարդը գոչեց։ *«Յարձակուէ՛ք, չենք տայ մեր հողից մի թիզ,» եւ նորից գոչեց «թա՛գ կամ գերեզմա՛ն,» «փառաշուք դամբան կամ թէ գայիսոն։»* Բայց, աւա՛ղ, իզուր, այսպէս կարապն է երբեմն անօգուտ սահում ջրերի հոսանքին ընդդէմ, կորցնում ուժը։ Ա՛խ, օրհասական հետապնդումը շարունակւում է, եւ ես տկար եմ։ Չեմ կարող փախչել նրանց զայրոյթից, բայց թէ ուժերս լինէին տեղում, ես չէի փախչի հետապնդումից։ Կեանքիս ժամացոյցն աւազն է վերջին թափում անխնայ, այստեղ կը մնամ, այստեղ էլ պիտի վախճանս գտնեմ։

*[The Queen enters with Clifford, Northumberland, the Prince and Soldiers.]*

YORK [cont.]

Դե՛հ, առա՛ջ եկէք, արնախում կլիֆորդ եւ նորթեմբերլենդ, ես յանդգնում եմ ձեր անհանգչելի կատաղութիւնը նորից բորբոքել ես ձեր թիրախն եմ եւ սպասում եմ ձեր հարուածներին։

NORTHEMBERLAND.

Մեր գթութեանը անձնատուր եղիր, ամբարտաւա՛ն եորք։

CLIFFORD.

Այն գթութեանը՞, որ ռազմի դաշտում մատուցեց հօրս նրա ձեռքն անգութ։ Բայց ֆայտոնը արեւի կառքից գահավիժեց վար, միջօրէն դարձրեց խաւար իրիկուն։

YORK.

Գիտցիր, աճիւնս փիւնիկի նման կարող է փոխուել ջահէլ փիւնիկի, եւ ձեր բոլորից նա վրէժ կ՝առնի։ Այս յոյսով աչքս երկինք եմ յառնում՝ արհամարհելով ամէն սպառնալիք, ինչո՞վ կարող էք ինձ վշտացնել։ Ինչո՞ւ էք կանգնել, դե՛հ, ինձ մօտեցէ՛ք դուք այսքա՛ն շատ էք եւ վախենո՞ւմ էք։

CLIFFORD.

Այսպէս երկչոտն է մի կերպ պաշտպանւում, երբ նա այլեւս չի կարող փախչել այսպէս աղաւնին սուր մագիլներն է կտցում բազէի այսպէս գողն անյոյս, կորցրած ամէն ինչ, լուտանք է թափում ոստիկանի վրայ։

YORK.
Կլիֆո՛րդ, խորհիր մի անգամ դարձեալ, եւ դու մտովի վազ տուր նախընթաց օրերիս միջով ու թէ կարող ես, առանց շիկնելու նայիր իմ դէմքին եւ լեզուդ կծիր, որ անուանում է այն մարդուն վախկոտ, ում հայեացքն ահեղ ստիպում էր քեզ փախչել վիատեալ։

CLIFFORD.
Չեմ ուզում քեզ հետ վիճել բառ առ բառ, բայց մէկի դիմաց չորս հարուած կուտես։ Մերկացնում է սուրը։

QUEEN MARGARET.
Կա՛ց, քաջ կլիֆորդ, զի բիւր պատճառներ ստիպում են ինձ, որ դաւաճանի կեանքն երկարացնեմ։ Կատաղութիւնից դու խլացել ես, դէ՛հ, հետը խօսիր, կոմս նորթեմբերլենդ։

NORTHEMBERLAND.
Կա՛ց, կլիֆորդ, կա՛ց։ Այդ մարդու համար շատ մեծ պատիւ է սիրտը խոցելիս մատդ արիւնոտես։ Ի՞նչ քաջութիւն է, երբ մի կատաղի շուն է գռմռում ձեռքդ մտցնես նրա երախը, երբ կարելի է քացով ետ մղել, չէ՞ որ կռուի մէջ ներելի բան կայ թէ տասը կռուեն մէկ մարդու դիմաց, արիութիւնը չի աղարտուելու։

*[They grab hold of York who struggles.]*

CLIFFORD.
Այսպէս կտցարն է զարնւում թակարդին։

NORTHEMBERLAND.
Այսպէս ճագարն է թպրտում ցանցում։

YORK.
Այսպէս գողերն են աւարի վրայ խիստ ուրախանում, եւ այսպէս ազնիւ մարդն է յանձնւում աւազակներին։

NORTHEMBERLAND.
Ձերդ մեծութիւն, ի՞նչ անենք սրան։

QUEEN MARGARET.
Փառապանծ կլիֆորդ եւ նորթեմբերլենդ, թող նա այս փոքրիկ բլրին կանգնի լեռներ էր ուզում գրկել ձեռքերով, բայց նրան մնաց ստուերը միայն։ Ի՞նչ։ Ուզեցել ես թագաւո՞ր դառնալ, դո՞ւ ես պարծեցել մեր պառլամենտում եւ պարծեցել ես քո բարձր տոհմով։ Որտե՞ղ են, ասա՛, էդուարդն անառակ ու խիզախ ջորջը, որ պէտք է հիմա մէջքիդ կանգնէին, որտե՞ղ է քո այդ հրա՛շք սապատաւոր քաջ որդի դիկը, որ քրթմնջալով իր հօրը մղեց ապստամբութեան, կամ թէ որտե՞ղ է քո շատ սիրելի փոքրիկ ռետլենդը, նայի՛ր, ներկել եմ այս թաշկինակը քո որդու արեամբ, որ նրա կրծքից հեղեց իր սրով

խիզախ կլիֆորդը, ու թէ կարող են աչքերդ արտասուել զաւակիդ մահով, ա՛ռ թաշկինակը, որ չորացնես դալուկ այտերդ։ Աւա՜ղ, թշուա՛ռ եորք, թէ քեզ չատէի մահացուօրէն, ապա կ՝ողբայի խղճուկ վիճակդ։ Դէ՛հ, եորք, վշտացի՛ր, որ զուարճանամ։ Միթէ՞ կատաղի քո սիրտն այնպէս է քո ներսը այրել, որ որդուդ համար չես կարող թափել մի կաթիլ արցունք, ինչո՞ւ, մա՛րդ, այսպէս համբերող եղար։ Դու պէտք է վաղուց խելագարուէիր, եւ քեզ կը ծաղրեմ, որ խելագարուես։ Ձա՛րկ ոտքդ գետնին, զառանցի՛ր, գոռա՛, որ կարողանամ երգել ու պարել։ Դու վարձ ես ուզում, տեսնում եմ, ինձնից, որ զուարճացնես։ Եորքն առանց թագի չի կարող խօսել, թա՛գ տուէք նրան։ Եւ դուք, իշխաններ, ծունր իջէք խոնարհ, բռնէք ձեռքերը, որ միջոց գտնեմ թագադրելու։

*[They put a paper crown on his head.]*

QUEEN MARGARET [cont.]
Իսկապէս հիմա նա թագաւորի հպարտ տեսք ունի, ա՛յ, սա՛ էր խլել գահը հենրիից եւ որդեգրել իրեն ժառանգորդ։ Սակայն դու ինչո՞ւ, մեծ Պլանտագենետ, այսպէս շուտափոյթ թագադրուեցիր, ինչո՞ւ դրժեցիր քո հանդիսաւոր երդումը, ասա՛։ Որքան յիշում եմ, պէտք է իշխէիր, երբ հենրին թոթուէր մահուան չար ձեռքը։ Եւ դու ուզո՞ւմ ես զարդարել հենրու փառքով գլուխդ եւ յափշտակել նրա ճակատից ոսկեզօծ թագը, երբ նա ապրում է եւ հակառակ է քո սուրբ երդմանը։ Օ՜, այս յանցանքը երբեք չի ներուի։ Թող կորչի՛ թագը եւ նա՝ թագի հետ մինչեւ շունչ քաշեմ, վերջ տուէք նրան։

CLIFFORD.
Եւ դա իմ պարտքն է՝ ի յարգանք հօրս։

QUEEN MARGARET.
Բայց կա՛ց, թող լսեմ աղօթքը նրա։

YORK.
Ֆրանսիոյ էգ գայլ, բայց աւելի չար, քան թէ այդ երկրի գայլերը բոլոր, դու լեզու ունես աւելի թունոտ, քան ատամն իժի։ Օ՜, դա վայել չէ կանացի սեռին, ինչպէս սանձարձակ ամազոնուհի, չարախնդալու այն մարդկանց վշտով, ում բախտն է գետնել։ Եթէ չլինէր դիմակի նման դէմքդ անփոփոխ, որ թաքցնում է արարքներդ չար, գուցէ փորձէի, գոռոզ թագուհի, քեզ կարմրացնել։ Միթէ՞ այդ թշուառ թագաւորի մօտ սովորեցիր մարդկանց ոտնակոխ անել, բայց ինձ հաւատա, այդ բանից չունես դու ոչ մի օգուտ, դու հաստատում ես միտքը առածի, որ աղքատ հեծեալն իր ձին քշում է մինչեւ սատկելը։ Հպարտ է կինը իւր գեղեցկութեամբ, բայց աստուած գիտի, որ այդ շնորհից քեզ քիչ է տրուած, կինն սքանչելի էակ է իր սուրբ առաքինութեամբ, դու հակառակն ես ցոյց տալիս քեզնով, նա զուսպ կեցուածքով պարզեւն է երկնի, իսկ դու քո վարքով՝ գարշանք ու նողկանք։ Օ՜, վագրուհու սիրտ՝ կնոջ կրծքի տակ, ինչպէ՞ս կարող ես մանկան կենսատու արիւնը ոթել եւ հրամայել, որ հայրը սրբի աչքերն արցունքոտ, ու դեռ կին կոչուել։ Կանայք քնքուշ են, գթառատ ու հեզ, իսկ դու՝ կարծրասիրտ, անողորմ, դաժան, անխիղճ ու վայրագ, դու ուզում էիր, որ ես կատաղեմ, քո ցանկութիւնն եմ կատարում ահա, դու տենչում էիր, որ ես արտասուեմ, նայի՛ր, անզգամ, սիրտս է հեկեկում։ Կատաղի հողմը բերում է անդուլ, անդադար հեղեղ, բայց երբ հանդարտուի, անձրեւ կը տեղայ։ Այս արցունքները սիրեցեալ որդուս համար են թափւում, եւ պահանջում է ամէն մի կաթիլ վրէժը մահուան, վրէ՜ժ քեզանից, ստոր

կլիֆորդ, եւ վրէ՛ժ քեզնից, կին ուխտադրուժ։

NORTHEMBERLAND.
Սատանան տանի, բայց նրա վշտով այնպէս եմ տանջւում, որ հազիւ եմ ես արցունքս զսպում։

YORK.
Օ՜, նոյնիսկ քաղցած մարդակերները չէին մօտենայ մանկանն իմ անմեղ եւ չէին ներկուի նրա արիւնով։ Բայց դուք աւելի անմարդկային էք, աւելի դաժան, քան թէ վրկանայ վագրերն անողորմ։ Նայիր, թագուհի դաժան, անողոք, մի չարաբախտ հօր արտասուքներին Օ՜, դու ես ներկել որդուս արիւնով այս թաշկինակը, ես լուանում եմ իմ արցունքներով։ Ու թէ դժնդակ այս պատմութիւնը դու պատմես մարդկանց ուղղամտօրէն, երկի՜նքը վկայ, նրանք կ՝արտասուեն այո՜, նոյնիսկ իմ թշնամիները չեն կարող զսպել իրենց արցունքը եւ պիտի ասեն, աւա՜ղ գործ էր չար, վերցրո՜ւ իմ թագը, հետն էլ՝ անէծքս, դժբախտութեան մէջ գտնես այնպիսի մխիթարութիւն, ինչպիսին անգութ ձեռքդ ինձ տուեց։ Կարծրասի՛րտ կլիֆո՛րդ, յաւէրժ արտաքսիր ինձ այս աշխարհից, թող թռչի հոգիս դէպի երկինքը, թող իմ արիւնը թափուի ձեր գլխին։

NORTHEMBERLAND.
Եթէ նա լինէր տոհմիս դահիճը, դարձեալ նրա հետ ես կ՝արտասուէի՝ տեսնելով նրա սիրտը ծուատուած։

QUEEN MARGARET.
Ի՞նչ, նորթեմբերլենդ, դու լա՞ց ես լինում, յիշի՛ր, թէ ինչքա՜ն ցաւ է պատճառել, եւ կը չորանան մի ակնթարթում քո արցունքները։

CLIFFORD.
Սա՛ հօրս, սա՛ էլ երդումիս համար։ [He stabs York.]

QUEEN MARGARET.
Սա՛ էլ մեղմասիրտ արքայի համար։ [She stabs York.]

YORK.
Ողորմա՜ծ աստուած, բա՛ց քո գթութեան դարպասներն յաւէրժ, քեզ է որոնում հոգիս՝ թռչելով վէրքերի միջից։ [Dies.]

QUEEN MARGARET.
Թռցրէ՛ք գլուխը եւ դրէք եորքի դարպասի վրայ, թող եորքը հսկի քաղաքն հարազատ։

*[They exit.]*

]0[

## ACT II. SCENE I.

A plain near Mortimer's Cross in Herefordshire. Edward and Richard enter with their Soldiers.

### EDWARD.

Ինչպէ՞ս փրկուեց մեր հայրն արքայական, յաջողուեց նրան նորթեմբերլենդի ու լորդ կլիֆորդի հետապնդումից խուսափե՞լ, թէ՞ ոչ։ Եթէ գերուել է կամ թէ սպանուել, մեզ պիտի հասնէր այդ լուրը տխուր, իսկ թէ փրկուել է, նրա փրկութեան լուրն աւետալի մեզ պիտի հասնէր։ Քեզ ի՞նչ պատահեց, ինչո՞ւ տխրեցիր։

### RICHARD.

Չեմ կարող ժպտալ, քանի դեռ, էդուա՛րդ, ես չեմ համոզուել՝ ի՞նչ է պատահել մեր հօրն անվեհեր։ Տեսայ, թէ ինչպէս նա ռազմի դաշտում շրջագայում էր, փնտրում կլիֆորդին, ինձ թուաց, որ նա մտաւ թշնամու զօրագունդը հոծ, ինչպէս առիւծը՝ արջառների մէջ՝ կամ ինչպէս արջը՝ շներով սեղմուած որ կսմթելով երկու-երեք շուն, դողում է նրանց ցաւից վնգստալ, մինչ միւս շները, քաշուած մի անկիւն, վրան են հաչում։ Այսպէս մեր հայրը դատաստան տեսաւ իր թշնամու հետ, այսպէս էլ փախաւ ստոր թշնամին մեր խիզախ հօրից։ Մեծ բախտ է լինել նման հօր զաւակ։ Նայիր, ինչպէս է բացում արշալոյսն իր ոսկեայ դուռը, հրաժեշտ տալիս յաղթող արեւին ա՜խ, ինչ նման է նա ջահէլութեան ծաղիկ հասակին, նա, որ պճնազարդ պատանու նման գնում է դէպի սիրած աղջիկը։

### EDWARD.

Աչքի՞ս է թւում, թէ՞ ես տեսնում եմ երեք արեւներ։

### RICHARD.

Երեք փառապանծ, փայլուն արեւներ՝ իւրաքանչիւրը կատարեալ արեւ չեն զատուած նրանք թանձր ամպերով, բայց ջոկ-ջոկ գունատ են փայլուն երկնքում։ Նայի՛ր, Օ՛, նայիր, նրանք ձուլւում են, գգւում իրարու, կարծես երդւում են՝ լինել միաբան, տե՛ս, նրանք դարձան մի կանթեղ, մի լոյս, մի վառ արեգակ։ Երկինքը ինչ-որ բան է գուշակում։

### EDWARD.

Սա զարմանալի՛, տարօրինա՛կ է։ Ես դեռ չեմ տեսել երբեք նման բան։ Այն մեզ կանչում է կարծես թէ մարտի, մեզ՝ խիզախ եորքի հարազատ որդոց, որ հռչակուած ենք իւրաքանչիւրս մեր արժանիքով, բայց պիտի զուգենք մեր շողերն ի մի եւ լուսաւորենք արեւի նման այս հողագունդը։ Ինչ էլ գուշակի՝ սրանից յետոյ ես պիտի կրեմ վահանիս վրայ երեք մաքրափայլ, շողշողուն արեւ։

### RICHARD.

Թոյլ տուր քեզ ասել, որ լաւ է՝ կրես դու երեք լուսին, զի դու սիրում ես կնոջն աւելի, քան տղամարդուն։

*[Messenger enters in great haste.]*

### RICHARD [cont.]

Ո՞վ ես, ինչո՞ւ է դէմքդ ամպամած, քո լեզուի ծայրին բա՞ն կայ չարագոյժ։

MESSENGER.
Ա՛խ, ես այն դժբախտ մարդկանցից մէկն եմ, ովքեր տեսել են, ինչպէս սպանուեց ազնիւ դուքս եորքը՝ ձեր խիզախ հայրը, տէրն իմ սիրելի։

EDWARD.
Օ՛, էլ մի՛ խօսիր, շատ բան ասացիր։

RICHARD.
Ինչպէ՞ս մահացաւ, պատմիր մէկ առ մէկ։

MESSENGER.
Բազում թշնամիք պաշարել էին ձեր հօրն անվեհեր, բայց նա կանգնել էր նրանց յանդիման, ինչպէս հեկտորը՝ յոյների դիմաց, որ ձգտում էին տրոյա ներխուժել։ Բայց հերկուլեսը ինքն էլ կը զիջէր գերազանց ուժին թէպէտ փոքրիկ է կացինը, տեա՛րք իմ, բայց բիւր հարուածով գետին կը գցի հաստաբուն կաղնուն։ Բազմաթիւ ձեռքեր որսացին դուքսին, բայց նա սպանուեց անիաշտ կլիֆորդի եւ մեր թագուհու զայրագին ձեռքով, ով թագադրեց չարախնդութեամբ վեհափառ դուքսին, ծիծաղեց նրա վշտահար դէմքին, ու երբ նա ցաւից խորունկ հեկեկաց, անխիղճ թագուհին այտերն արցունքոտ սրբելու համար նրան շպրտեց մի լաթի կտոր, որ թաթախուած էր քնքուշ ռետլենդի անմեղ արեան մէջ, ում սպանել էր դաժան կլիֆորդը, եւ բիւր անպարկեշտ ծաղրանքից յետոյ կտրեցին, աւա՛ղ, գլուխը նրա՝ մեխելով եորքի դարպասի վրայ։ Այնտեղ է հիմա դուքսի գլուխը, չեմ տեսել նման ողբալի պատկեր։

EDWARD.
Սիրելի՜ մեր հա՛յր, դու մեր յենարա՛ն, արդ, չունենք նեցուկ, ոչ էլ՝ ցաւազան։ Օ՛, պիղծ կլիֆորդ, կատաղի կլիֆորդ, դու սպանեցիր ողջ եւրոպայի վարդն ասպետութեան, դու լոկ նենգութեամբ յաղթեցիր նրան, նա մենամարտում քեզ պիտի գետնէր։ Հոգուս պալատը դարձել է զնդան։ Ա՛խ, ե՞րբ նա պէտք է փախչի այնտեղից, որ այս մարմինս քիչ հանգստանայ ի վերա երկրի։ Ես, այսուհետեւ, չեմ ճաշակելու ոչ մի խնդութիւն, երբե՛ք, Օ՛, երբեք էլ չեմ տեսնելու ոչ մի պայծառ օր։

RICHARD.
Չեմ կարող, եղբա՛յր, արցունքներ թափել, քանզի մարմնիս խոնաւութիւնը չի մարի սրտիս բորբոքուած քուրան, չի կարող լեզուս թեթեւացընել բեռը իմ սրտի, չէ՞ որ նոյն ինքը՝ շունչը իմ խօսքի յոյժ կը բորբոքէ կրծքիս տակ այրող ածուխը դարձեալ, կ՝այրէ ինձ բոցով եւ պիտի ջանայ արցունքըս մարել։ Վիշտը լացով է միշտ թեթեւանում, լացն՝ երեխային, ինձ՝ վրէժ եւ սուր։ Օ՛, հայր իմ, ես քո անունն եմ կրում եւ պիտի լուծեմ վրէժդ մահուան կամ պիտի ընկնեմ՝ ինձ հռչակելով այս խիզախութեամբ։

EDWARD.
Մեր խիզախ դուքսը թողեց փառաւոր իր անունը քեզ, իսկ ինձ մնացին նրա աթոռը եւ դքսութիւնը։

RICHARD.
Թէ արքայական այդ արծուի ձագն ես, ի ցոյց դիր տոհմդ՝ անթարթ նայելով արեւի վրայ մի՛ ասա՝ աթոռն ու դքսութիւնը, այլ՝ նրա գահը եւ տէրութիւնը։ Երկուսն էլ քո՛նն են, կամ դու չես սերուել դուքս եորքի տոհմից։

*[Warwick and Montague enter and their Soldiers.]*

WARWICK.
Ի՞նչ կայ, իշխաննե՛ր, ի՞նչ լուրեր ունէք, ինչպէ՞ս է արդեօք իրաց վիճակը։

RICHARD.
Մեծ իշխան վորուիկ, եթէ մենք պատմենք լուրն աղէտալի եւ ամէն բառով մեր սիրտը խոցենք, մինչեւ աւարտուի ողջ պատմութիւնը, ապա բառերը վէրքից աւելի կը բազմապատկեն մեր տառապանքը։ Փառապանծ վորուիկ, եորքն սպանուած է։

EDWARD.
Ա՛խ, վորուի՛կ, վորուի՛կ։ Պլանտագենետը, օրին դու այնպէս սիրելի էիր, ինչպէս փրկութիւնն՝ իր հոգու համար, սպանուեց դաժան կլիֆորդի ձեռքով։

WARWICK.
Տասն օր է, ինչ այս լուրը խեղդել եմ արցունքներիս մէջ, եւ արդ, որպէսզի ես բազմապատկեմ ձեր վիշտն անսփոփ, եկայ, որ պատմեմ ձեզ այն բոլորը, ինչ որ պատահեց այն օրից ի վեր։ Ուեկֆիլդի մօտ տեղի ունեցած մարտերից յետոյ, ուր ձեր քաջ հայրը աւանդեց հոգին, դժբախտ պարտութեան ու ձեր հօր մահուան գոյժը ինձ հասաւ, ինչպէս կարող էր փոստի սրընթաց կառքը հասցնել։ Եւ ես լոնդոնում, որպէս արքայի ազնիւ պահապան, ոտքի կոչեցի իմ զինուորներին, բարեկամներիս, ինձ թուաց՝ շատ լաւ վճիռ եմ արել, ուղեւորուեցի դէպի սենտ օլբենս, որպէսզի կտրեմ թագուհու ճամփան։ Եւ տարայ ինձ հետ մեր թագաւորին։ Իմ դիտազօրներն ինձ հաղորդեցին, որ մեր թագուհին առաջանում է դիտաւորութեամբ, որպէսզի ջնջի խորհրդարանում մեր կայացրած վճիռը վերջին՝ ձեր ժառանգութեան ու թագաւորի երդումի մասին։ Կարճ ասած, տեարք իմ, մենք հանդիպեցինք սենտ օլբենսի մօտ, մեր ջոկատները միմեանց մերձեցան, եւ երկու կողմերն ուժգին բախուեցին։ Բայց թագաւորի սառնութի՞ւնն արդեօք, որ հետեւում էր քնքուշ հայեացքով ըմբոստ կնոջը, մարեց իմ զօրքի բուռն զայրոյթը, թէ՞ յաջողութեան լուրը թագուհու, կամ թէ սարսափը անխիղճ կլիֆորդի, որ սպառնում էր արեամբ ու մահով դատաստան տեսնել գերիների հետ։ Չգիտե՛մ, սակայն ես պիտի ասեմ՝ նրանց զէնքերը շողշողում էին կայծակի նման, իսկ մեր զօրքինը՝ ասես թէ լինէր բուի ծոյլ թռիչք կամ ծոյլ կամնաւար՝ իր տոպանի հետ, զի խփում էին այնպէս մեղմագին, կարծես լինէին լաւ բարեկամներ։ Թեւ տուի նրանց մեր արդար գործով, խոստացայ մեծ վարձ, հատուցում, բայց զո՛ւր մեր զօրքը, սակայն չէր կռւում սրտանց, եւ մենք, կտրելով մեր յաղթանակի յոյսը նրանցից, շուտափոյթ փախանք։ Արքան շտապեց դէպի թագուհին, ձեր եղբայր ջորջը, նորֆոլկը ու ես սուրհանդակի պէս փութացինք, որ ձեզ ժամ առաջ հասնենք, զի մենք իմացանք՝ զօրք էք հաւաքում յարձակման համար։

EDWARD.
Ո՞ւր է նորֆոլկը, սիրելի վորուիկ, եր՞բ վերադարձաւ ջորջը բուրգունդից։

WARWICK.
Դուքսը իր զօրքով հեռու է մեզնից ուղիղ վեց մղոն, գալով լորդ ջորջին՝ ապա վերջերս նրան ուղարկեց ձեր մօրաքոյրը՝ բուրգունդիայի ազնիւ դքսուհին, որ այս կարեւոր ու դաժան կռւում ձեզ պաշտպան կանգնի։

RICHARD.
Թերեւս նրանք ուժեղ են եղել, որ քաջ վորուիկը դիմեց փախուստի, յաճախ եմ լսել, թէ նա ինչպիսի խիզախութեամբ է հետամուտ լինում, սակայն չեմ լսել, որ խայտառակէր իրեն նահանջով։

WARWICK.
Հիմա էլ, ռիչա՛րդ, դու այն չես լսի։ Շուտով կ՝իմանաս, որ աջ ձեռքս հզօր կարող է գրաւել թուլամիտ հենրու թագը ոսկեձոյլ եւ սարսափազդու մականը խլել նրա բռունցքից, թէկուզ այս կռւում քաջի այնպիսի համբաւ վայելի, ինչպիսիք նրա բարեպաշտութիւնն ու հեզութիւնն են։

RICHARD.
Ես դա լաւ գիտեմ, սիրելի վորուիկ, ինձ մի՛ պարսաւիր, լոկ փառքիդ հանդէպ ունեցած սէրս է ստիպում խօսել։ Սակայն ի՞նչ անել այս խռովայոյզ, մռայլ օրերին, միթէ՞ մենք պիտի մի կողմ շպրտենք զէնքն ու զրահը եւ մեր մարմինը փաթթենք սգակիր պատմուճանի մէջ՝ համրելով եւ մեր «աւէ մարիան» տէրողորմեայով, թէ՞ պիտի գծենք մեր աղօթքները քինախոյզ զէնքով մեր ոսոխների սաղաւարտներին եթէ այդ բանին դուք համաձայն էք, ասացէք՝ այո։ Ուրեմն, ի զէ՜ն, ազնիւ իշխաններ։

WARWICK.
Դրա համար էլ ես ձեզ փնտրեցի, եւ դրա համար իմ բարի եղբայր մոնտէգիւն եկաւ։ Լսէք ինձ, լորդեր, ժպիրհ թագուհին, յանդուգն կլիֆորդն ու ամբարտաւան նորթեմբերլենդը, ինչպէս եւ բազում հպարտ թռչուններ՝ ճիշտ նոյն բնութեամբ, լաւ մշակեցին մեղրամոմի պէս կակուղ արքային։ Նա յօժարակամ երդուեց՝ ձեզ տալու ժառանգութիւնը, եւ այդ երդումը արձանագրուեց խորհրդարանում։ Հիմա լոնդոն է ոհմակն շտապում, որպէսզի ընդմիշտ խափանի երդումն ու այն բոլորը, ինչ հակառակ է լանկաստերի տան։ Նրանք կարծեմ թէ երեսուն հազար զինուորներ ունեն, բայց դու, մարչի կոմս, թէ կարողանաս ժողովել մի գունդ քո բարեկամներ ուելսցիներից՝ խանդակաթ ու քաջ, ապա նորֆոլկի ու իմ օգնութեամբ մեր զօրքի թիւը կարող ենք հաշուել քսանհինգ հազար։ Արդ, մեր ճանապարհն ուղղենք դէպ լոնդոն, մի անգամ նորից հեծնենք փրփրաբաշ մեր նժոյգները, մի անգամ նորից բղաւենք՝ խփի՛ր անարգ թշնամուն, բայց ոչ մի անգամ նորից չբռնենք փախուստի ճամփան։

RICHARD.
Արդ, մեծ վորուիկի ձայնն եմ ես լսում, թող նա չտեսնի՛ արեւոտ մի օր, ո՞վ կամենում է փախուստ ու նահանջ, երբ քաջ վորուիկը նետւում է առաջ։

EDWARD.
Վորուիկ, ես պիտի յենուեմ քեզ վրայ, եւ եթէ մահը քեզ հարուած հասցնէ, լեզուս պապանձուի, այդ նոյն հարուածով էդուարդն էլ կ՝ընկնի։

WARWICK.
Մարչի կոմսն էիր, արդ եորքի դուքսն ես, քո յաջորդ քայլը թագն է անգլիայի։ Պէտք է հռչակուես դու սուրբ թագաւոր այն քաղաքներում, ուր մենք կը լինենք, եւ ով չի նետի ուրախութիւնից գլխարկը վերեւ, նա պէտք է գլխով տուգանքն հատուցէ։ Թագաւոր էդուարդ, քաջասիրտ ռիչարդ, եղբայր մոնտէգիւ, հերիք է այստեղ մենք փառք երազենք, թող փողե՛ր հնչեն, շտապ դէպի գո՛րծ։

RICHARD.
Թող, արդ, կլիֆորդ, սիրտդ կարծրանայ պողպատի նման, արդէն ցոյց տուիր քո անխիղճ սիրտը քո արարքներով, ես այն կը խոցեմ, կամ ինքս կ՝ընկնեմ։

EDWARD.
Թող թմբո՛ւկ զարկեն։ Աստուա՜ծ, սուրբ գեւորգ, դուք մեզ պահապան։

*[Messenger enters.]*

WARWICK.
Ի՞նչ կայ, ի՞նչ լուր։

MESSENGER
Ինձ ուղարկել է նորֆոլկի դուքսը՝ ձեզ հաղորդելու, որ մօտենում է թագուհին զօրքով, եւ նա խնդրում է շուտափոյթ վճիռ։

WARWICK.
Յարմար է պահը, ի զէ՜ն, իմ քաջեր։

*[They all exit.]*

][][

ACT II. SCENE II.
Before York. The King, Queen and Prince enter, followed by Clifford and Northumberland.

QUEEN MARGARET.
Ողջո՛յն ձեզ, տէր իմ, փառապանծ եորքում, ահա՛ գլուխը դժմիտ թշնամու, որ ջանում էր ձեր թագով զարդարուել չէ՞ք զուարճանում դուք այդ պատկերով։

KING HENRY.
Ինչպէս ժայռերը նաւաբեկութեան ժամին նաւաստուն՝ այս տեսարանն ինձ վիշտ է պատճառում, աստուած, խափանի՛ր վրիժառութիւնդ, մեղք չունեմ բնաւ, ես միտք չունէի երդումս դրժել։

CLIFFORD.
Վեհափառ տէր իմ, պէտք է դէն նետել չափից աւելի այս մեղմութիւնը եւ վտանգաւոր կարեկցութիւնը։ Ո՞ւմ պէտք է ուղղեն առիւծներն իրենց հայեացքներն ազնիւ, եթէ ոչ նրան, ով կողոպտում է նրանց որջերը ո՞ւմ ձեռքն անտառի արջը կը լիզէ, եթէ ոչ նրա, ով սպանում է ձագին մօր առաջ ովքե՞ր են փախչում դարանող օձի թունոտ խայթոցից, եթէ ոչ նրանք, ովքեր ճզմում են օձը ոտքերով։ Աննշան որդը շարժւում է նոյնիսկ, երբ տրորում են, աղաւնիներն էլ կտցում են՝ ձագերն առած թեւի տակ։ Փառասէր եորքը նշան էր բռնել ուղիղ քո թագին, դու ժպտում էիր, երբ խոժոռում էր նա իր ճակատը։ Նա, դուքս լինելով, ուզում էր որդուն կարգել թագաւոր, եւ բարձրացնել իր ժառանգներին, ինչպէս սիրող հայր, իսկ դու, մեր արքան, համաձայնել ես քո շնորհալի զաւակին զրկել ժառանգութիւնից՝ վարուելով հետը անխիղճ հօր նման։ Անմիտ կենդանին կեր է հայթայթում իր ձագուկներին, թէեւ փախչում են նրանք մարդկային ահաւոր դէմքից, բայց, այնուհանդերձ, ո՞վ չի նկատել, թէ նա ինչպէս է, ի սէր ձագերի, կռւում թեւերով, որ ծառայում են փախուստի համար, եւ իրեն զոհում՝ յանուն ձագերի, երբ մէկն է փորձում մագլցել բոյնը, ամօ՜թ քեզ, տէր իմ, ամօ՜թ, վեհապետ։ Անմիտ կենդանուց վերցրու օրինակ, միթէ՞ յանցանք չէ, որ բարի տղան հօր մեղքով կորցնէր իր ժառանգութեան իրաւունքն ստոյգ եւ յետագայում իր մանկանն ասէր «այն, ինչ պապիս հայրն ու պապս են շահել, հայրս կորցրեց անխոհեմ կերպով։» ա՜խ, ի՞նչ ամօթանք։ Նայի՛ր քո որդուն, եւ թող պատանու առնական դէմքը, որ գուշակում է յաջողակ մի բախտ, կոփի քո փափուկ, անկայուն սիրտը, որպէսզի պահես այն, ինչ որ քոնն է, եւ այն շնորհես հարազատ որդուդ։

KING HENRY.
Կլիֆորդն ասես լինէր հռետոր, զի հզօր փաստեր լոյս աշխարհ բերեց։ Կլիֆո՛րդ, ասա՛, երբեք չե՞ս ասել անօրէն վաստակն օգուտ չի բերում, եւ միթէ՞, ասա, նա է բախտաւոր, ում թշուառ հայրը դժոխք է գնում ժլատութեան համար։ Ես կամենում եմ ինձանից յետոյ իմ որդուն թողնել մի բարի անուն եւ կ՝ուզենայի, որ հայրս ինձ թողնէր նման մի անուն։ Մնացեալն անչափ շատ թանկ է նստում, նրա պահպանումն հազար հոգս ունի, իսկ տիրապետումն, աւա՜ղ, դոյզն հաճոյք։ Հօրեղբօր որդի, սիրեցեալ իմ եորք, քո բարեկամներն անգամ չգիտեն, թէ քո գլուխն ինձ ինչպէ՜ս է տանջում։

QUEEN MARGARET.
Տէր իմ, արիացիր , մօտ է թշնամին։ Ա՜խ, փոքրոգութեամբ թուլացնում ես կողմնակիցներիդ։ Դու խոստացել ես ասպետութիւն տալ մեր քաջ տղային, ուրեմն, հանի՛ր սուրդ պատեանից։ Էդուա՛րդ, ծունր իջիր։

KING HENRY.
Բարձրացի՛ր ասպետ, Պլանտագենետ, եւ լսի՛ր հօրդ թող սուրդ շողա՝ ի պաշտպանութիւն լոկ արդարութեան։

PRINCE OF WALES.
Հայր իմ բարեսիրտ, ձեր թողտուութեամբ, ես սուրս եմ հանում որպէս ձեր թագի օրինաց ժառանգ եւ մինչեւ ի մահ ես պիտի կռուեմ այս գժտութեան մէջ։

CLIFFORD.
Այսպէս կը խօսէր արքայազնն արի։

*[Messenger enters.]*

MESSENGER
Փութացէ՛ք, տոհմիկ հրամանատարներ, քանզի երեսուն հազար զինուորով վորուիկն է գալիս՝ եորքին օգնելու։ Այն քաղաքներում, ուրկից անցնում են, եորքին արքայ են նրանք հռչակում, շատերն անցնում են այդ մարդու կողմը։ Կռուի պատրաստուէք, նրանք շատ մօտ են։

CLIFFORD.
Տէր իմ, կ՝ուզէի, որ թողնէք դաշտը, քանզի առանց ձեզ թագուհին գործը յաջող կը տանի։

QUEEN MARGARET.
Այո՛, տէր իմ, մեզ թողէք մեր բախտին։

KING HENRY.
Նոյնն է մեր բախտը, ես պիտի մնամ։

NORTHEMBERLAND.
Այն դէպքում՝ կռուի վճռականութեամբ։

PRINCE OF WALES.
Վեհափառ հայր իմ, դու ոգեւորիր ազնիւ լորդերին եւ սիրտ տուր նրանց, ովքեր կռւում են յանուն քո դատի, բարեսիրտ հայր իմ, դուրս քաշիր սուրդ, կանչիր՝ սուրբ գեւորգ։

*[Drums. Edward, Richard, Warwick, Norfolk, Montague and Soldiers enter.]*

EDWARD.
Երդմնազա՛նց հենրի, ծնկաչոք հայցիր ինձնից գթութիւն, յանձնիր քո թագը, որ դնեմ գլխիս, կամ բախտդ փորձիր մահացու կռւում։

QUEEN MARGARET.
Գնա՛ ու կռուիր սիրուհուդ համար, յանդո՛ւգն տղայ, ո՞վ է թոյլ տուել, որ դու լրբօրէն այսպէս բարբաջես քո օրինաւոր թագաւորի դէմ։

EDWARD.
Թագաւորը ե՛ս եմ, թող նա ծո՛ւնր իջնի։ Նա՛ է ինձ ընտրել իրեն որդեգիր, բայց յետոյ ինքը երդումը դրժեց։ Ես իմացել եմ, նրա փոխարէն դո՛ւ ես քեզ կարգել անգլիոյ թագաւոր։ Դո՛ւ ստիպեցիր, որ պառլամենտի մի նոր վճիռով նա իմ փոխարէն սեփական որդու անունը դնի։

CLIFFORD.
Իրաւացի է։ Ո՞վ պէտք է հօրը յաջորդի՝ տղան։

RICHARD.
Դո՞ւ էլ ես այստեղ, արնոտ մսագործ, շունչս է կտրւում, չեմ կարող խօսել։

CLIFFORD.
Այո՛, այստեղ եմ, գարշ սապատաւոր, պատրաստ եմ ահա քեզ եւ քո նման յանդուգն մէկին պատասխան տալու։

RICHARD.
Դո՞ւ ես սպանել ջահէլ ռետլենդին։

CLIFFORD.
Եւ՝ ծերուկ եորքին, բայց չեմ յագեցել։

RICHARD.
Ի սէր աստծո՛յ, իշխաննե՛ր, ի մա՛րտ։

WARWICK.
Հենրի, չե՞ս զիջում քո թագը, ասա՛։

QUEEN MARGARET.
Լեզուդ քեզ քաշի, շատախօս վորուիկ երբ հանդիպեցինք մենք սենտ օլբենսում, ոտքերդ աւելի լաւ ծառայեցին, քան թէ ձեռքերդ։

WARWICK.
Այնժամ ես փախայ, այժմ հերթն է քո։

CLIFFORD.
Այն ժամանակ էլ այդպէս ասացիր, բայց նորից փախար։

WARWICK.
Սակայն, կլիֆորդ, քո խիզախութիւնն ինձ չփախցրեց։

NORTHEMBERLAND.

Եւ ոչ էլ քոնը, որ քեզ կը ստիպէր տեղում մնալու։

RICHARD.

Քեզ, նորթեմբերլենդ, ես շատ եմ յարգում, թո՛ղ քո այս վեհը, զի դժուարութեամբ հազիւ եմ ճնշում հոգուս խռովքը չար մանկասպան կլիֆորդի հանդէպ։

CLIFFORD.

Ես սպանել եմ քո հօրը նոյնպէս, եւ դու կոչում ես նրան երեխա՞յ։

RICHARD.

Այո՛, սպանեցիր վախկոտի նման, դաւաճանի պէս, ինչպէս մեր եղբայր քնքուշ ռետլենդին։ Բայց մայրամուտից առաջ կը ստիպեմ, որ դու նզովես քո այդ արարքը։

KING HENRY.

Վե՛րջ տուէք վէճին, հիմա ինձ լսէք։

QUEEN MARGARET.

Դու սաստի՛ր նրանց կամ շուրթդ փակիր։

KING HENRY.

Խնդրում եմ, լեզուիս փականք չդնել։ Թագաւորն եմ ես, եւ կամքս է ազատ։

CLIFFORD.

Տէր իմ, այս վէրքը, որ պատճառ դարձաւ մեր հանդիպմանը, երբեք չեն կարող բառերը բուժել։ Ուրեմն, լռի՛ր։

RICHARD.

Ուրեմն, դահի՛ճ, սուրդ մերկացրու։ Երդւում եմ աստծով, ես համոզուած եմ, որ դու խիզախ ես միայն քո լեզուով։

EDWARD.

Ասա՛ ինձ, հենրի, միթէ՞ չես տալիս իմ իրաւունքը, զիջի՛ր քո թագն ինձ, թէ ոչ՝ բիւր մարդիկ, որ այս առաւօտ նախաճաշեցին, երբեք չեն ճաշի։

WARWICK.

Եթէ դու մերժես, նրանց արիւնը կը թափուի գլխիդ չէ՞ որ դուքս եորքը զէնք է վերցրել՝ ի պաշտպանութիւն ճշմարտութեանը։

PRINCE OF WALES.

Եթէ այն ճիշտ է, ինչ ճշմարիտ է վորուիկն անուանում, ուրեմն, չկայ եւ ոչ մի սխալ, ամէն ինչ ճիշտ է։

RICHARD.
Ով էլ որ աշխարհ քեզ բերած լինի, այստեղ է ահա քո մայրը կանգնած, քեզ ճանաչեցի քո մօր չար լեզուից։

QUEEN MARGARET.
Բայց դու նման չես քո հօրն ու մօրը, դու արատապիղծ, գարշելի դարձուոր քեզ ճակատագիրն այնպէս է ծնել, որ քեզնից փախչեն, ինչպէս դօդօշից կամ թէ մողէսի դաժան խայթոցից։

RICHARD.
Դու նէապոլի հասարակ երկաթ, բայց մեր անգլիական ոսկով սքօղուած, հայրդ կրում է արքայի տիտղոս (կարծես նեղուցը ծովի տեղ կ՝անցնի), եւ դու ինչպէ՞ս է, որ չես ամաչում։ Չէ՞ որ դու գիտես քո պիղծ ծագումը, բայց թոյլ չես տալիս, որ քո չար լեզուն երեւան հանի խառնածին սիրտդ։

EDWARD.
Այո՛, կ՝առնէի մի խորոմ ծղօտ հազար կռօնով, միայն թէ այս լիրբն իրեն ճանաչէր։ Հելենան քեզնից չքնաղ էր անչափ, թէեւ էրիկդ նոյնպէս մենելաւ կարող է լինել, բայց կրտսեր եղբայրն ագամեմնոնի իր նենգ կնոջից այնպէս չխոցուեց, ինչպէս այս խղճուկ արքան՝ քեզանով։ Նրա հայրն յաղթեց ֆրանսիոյ հողում, արքային սանձեց եւ ծունկի բերեց թագաժառանգին։ Թէ նրա որդին, ըստ պատշաճ դիրքի, իրեն կին ընտրէր, նա պիտի պահէր ցայսօր այդ փառքը, բայց երբ աղքատին առաւ անկողին, այդ ամուսնութեամբ յարգելով քո խեղճ, չքաւոր հօրը, նոյնիսկ արեւը հորդ անձրեւ տեղաց ու տարաւ նրա հօր անէծքները այս ծովից այն կողմ, եւ խռովութեան ամպեր նա դիզեց իր գահի շուրջը՝ հարազատ տան մէջ։ Քո հպարտութիւնն առիթ չէր դառնայ այս գժտութեանը, թէ դու լինէիր խոնարհ ու բարի մեր իրաւունքը դեռ պիտի ննջէր եւ, կարեկցելով բարի արքային, մենք կը ձգձգէինք մեր դատն առայժմ։

GEORGE.
Բայց երբ մենք տեսանք, որ մեր արեւը գարունդ է բացում իսկ քո ամառը մեզ բերք չի տալիս, կտրեցինք կացնով շորթող արմատդ, թէեւ սուր ծայրը մեզ երբեմն հասաւ։ Բայց դու իմացիր մենք սկսել ենք հարուածներ տեղալ, եւ չենք դադարի այնքան ժամանակ, քանի դեռ արեամբ մենք չենք ողողել քո արմատները։

EDWARD.
Այս որոշումով մարտի եմ կանչում, եւ չեմ կամենում ձեզ հետ բանակցել, քանզի չես թողնում, որ արքան խօսի։ Հնչեցրէ՛ք փողեր, թող մեր արնավառ դրօշները ծփան, յաղթանա՛կ կամ մա՛հ։

QUEEN MARGARET.
Սպասի՛ր, Էդուարդ։

EDWARD.
Ո՛չ, ո՛չ, չեմ ուզում, կռուարար դու կին, հազար կեանք արժեն այս բառերն այսօր, ձեզ պէտք է մերժեմ։

*[They exit.]*

]0[

ACT II. SCENE III.
A field of battle between Towton and Saxton, in Yorkshire. Sound of battle. Warwick enters.

WARWICK.
Յոգնաբեկ, ինչպէս վազող մի մարզիկ, ուզում եմ պառկել, մի քիչ շունչ առնել։ Այն հարուածները, որ ինձ հասցրին ու ետ դարձրի, զրկել են ուժից ամուր ջղերս, եւ ի հեճուկս իմ կատաղութեան՝ ես պէտք է այստեղ քիչ հանգստանամ։

*[Edward rushes in.]*

EDWARD.
Ժպտա ինձ, երկինք, կամ թէ, անգութ մահ, շանթի՛ր անխնայ, կնճռոտուել է այս աշխարհին արդէն, Էդուարդի արեւն ամպի տակ մտաւ։

WARWICK.
Ի՞նչ եղաւ, տէր իմ, ինչպէ՞ս է գործը, միթէ՞ դէպի լաւ ոչ մի յոյս չկայ։

*[George enters.]*

GEORGE
Ամէն ինչ կորաւ, յոյսի շող չկայ, մեր շարքը խառնուեց, հետապնդում է մեզ կործանումը, ի՞նչ խորհուրդ կը տաս, ո՞ւր փախչենք, ասա՛։

EDWARD.
Փախուստից բնաւ օգուտ չես քաղի, նրանք թեւ առած հետապնդում են, թոյլ ենք, չենք կարող նրանցից խոյս տալ։

*[Richard enters.]*

RICHARD.
Ա՛խ, ինչո՞ւ, վորուիկ, դու ետ քաշուեցիր, չէ՞ որ քո եղբօր արիւնը խմեց ծարաւած հողը, ում սուր գեղարդով խոցեց կլիֆորդը, եւ նա վերահաս մահուան մէջ գոչեց՝ վորուի՛կ, իմ եղբա՛յր, վրէժս լուծի՛ր, ասես թէ հեռուից լսուեց ողբագին մի տխուր հառաչ, եւ իշխանն ազնիւ նրանց ձիերի սմբակների տակ, լուացուած նրա ծխացող արեամբ, աւանդեց հոգին։

WARWICK.
Թող հողն յագենայ մեր տոհմի արեամբ, ձիուս կը սպանեմ, փախչել չեմ ուզում։ Ինչո՞ւ մենք ողբանք մեր կորուստները քնքուշ կնոջ պէս, երբ մոլեգնում է վայրագ թշնամին, եւ նայենք, ինչպէս դերասանները, իբրեւ թէ կատակ ներկայացնում են մի ողբերգութիւն։ Այստեղ ծնկաչոք երդւում եմ աստծուն, որ չեմ ունենայ հանգիստ ու դադար, քանի դեռ մահը աչքս չի փակել, քանի դեռ բախտը ինձ թոյլ չի տուել վրէժս չափել։

EDWARD.
Օ՛, վորուի՛կ, քեզ հետ ես ծունր եմ իջնում եւ այս երդումով ձուլում հոգիս քեզ, ու մինչ իմ ծունկը վեր կը բարձրանայ հողի ցուրտ դէմքից, ես քեզ եմ նետում իմ ձեռքն ու սիրտը, քեզ՝ բախտ արքայոց։ Աղերսո՛ւմ եմ քեզ եթէ քո կամքով պէտք է մարմինս կողոպուտ դառնայ թշնամիներիս, բաց քո պղնձեայ դռներն երկնքի, տար քո կածանով մեղապարտ հոգիս։ Այժմ, իշխաններ, ցնոր հանդիպում, թէկուզ այն լինի ի վերա երկրի կամ թէ երկնքում։

RICHARD.
Եղբա՛յր, տուր ձեռքդ, եւ ազնիւ վորուիկ, թոյլ տուր քեզ գրկել յոգնած ձեռքերով ես, որ չեմ տեսել երբեք արցունքներ, արդ լաց եմ լինում, զի մեր նորածիլ գարնանը պէտք է ձմեռն աւերի։

WARWICK.
Օ՛, մնաք բարով, ազնիւ իշխաններ։

GEORGE
Գնա՛նք բոլորս մեր զօրքին մօտ։ Թող փախչեն նրանք, ովքեր չեն ուզում մեզ հետ մարտնչել իսկ նրանք, ովքեր կը մնան մեզ մօտ, կը լինեն նեցուկ։ Բան է, թէ հասնենք մենք յաջողութեան, նրանք կը ստանան այնպիսի պարգեւ, ինչպիսին մարզիկն ոլիմպիականի շահած խաղերում թող սա քաջութիւն հաղորդի նրանց վհատեալ հոգուն դեռ յոյս կայ կեանքի ու յաղթանակի, պէտք չէ յապաղել, դէպի նո՛ր գրոհ։

*[They exit.]*

]0[

ACT II. SCENE IV.
Another part of the battlefield. Richard and Clifford enter.

RICHARD.
Վերջապէս, կլիֆո՛րդ, մենակ ես ինձ հետ այս աջս ազնիւ եորքի համար է, իսկ սա՝ ռետլենդի։ Գիտցիր, երկուսն էլ վրէժ են ուզում, թէկուզ պաշարուած լինես պղնձեայ ամուր պարսպով։

CLIFFORD.
Վերջապէս, ռիչարդ, մենակ ես ինձ հետ այս աջն սպանեց քո հօրը՝ եորքին, իսկ սա՝ քո ջահէլ եղբօրը

մորթեց։ Իսկ սա այն սիրտն է, որ նրանց մահով ուրախանում է եւ քաջալերում քո հօրն ու եղբօրն սպանող ձեռքը, որ նոյնպէս քեզ հետ հաշիւն իր մաքրի, ուստի պատրաստուի՛ր։

*[They fight. When Warwick enters Clifford scampers away.]*

RICHARD.
Ո՛չ, վորուիկ, ընտրիր մի ուրիշ երէ, ես ինքս պիտի այս գայլին որսամ։

*[They exit together.]*

]()[

## ACT II. SCENE V.

Another part of the field. King Henry enters alone.

KING HENRY.
Այս ճակատամարտն ասես թէ լինի մաքառող մի այգ երբ օրհասական ամպերն են կռւում բացուող լոյսի հետ, երբ հովիւ տղան թեթեւ փչում է մատների վրայ ու չի իմանում՝ գիշե՞ր է, թէ՞ լոյս։ Մերթ ճակատամարտն այս կողմն է թեքւում այն մեծ ծովի պէս, որ թաւալւում է քամուն հակառակ մերթ էլ մի այլ կողմ՝ նոյն ծովի նման, որ նահանջում է քամու զայրոյթից։ Մերթ զօրանում է մակընթացութիւնն, ապա՝ խենթ հողմը մերթ մէկն է տիրում, մերթ միւսը իշխում, նրանք փորձում են միմեանց յաղթել, սակայն ոչ մէկն էլ վերջում չի զիջում, այսպէս է, աւա՜ղ, այս դաժան կռուի զուգակշիռը։ Ես պէտք է նստեմ այստեղ՝ այս փոքրիկ բլրի գագաթին, եւ թող նա յաղթի, ում կամենում է աստուած ողորմած։ Ա՛խ, իմ թագուհին, կլիֆորդը նոյնպէս ինձ մարտի դաշտից հեռու պահեցին։ Նրանք երդուեցին, որ առանց ինձ էլ յաջող կ՝ընթանան գործերն ամէնուր։ Աւելի լաւ է կեանքից հեռանամ, թէ կամքն է աստծոյ ի՞նչ է աշխարհը, թէ ոչ՝ վիշտ ու ցաւ։ Աստուա՜ծ, կը լինէր կեանքս երջանիկ, թէ ես ապրէի ջահէլ հովուի պէս։ Ա՛խ, ինչպէ՞ս հիմա կ՝ուզէի նստել բլրի գագաթին եւ փորագրել ջանասիրութեամբ մի արեւացոյց, որպէսզի տեսնեմ, թէ րոպէներն ինչպէս են վազում, եւ քանի րոպէն մէկ ժամ է կազմում, եւ քանի ժամը՝ կատարեալ մի օր, եւ քանի օրը՝ մէկ ամբողջ տարի, եւ քանի տարի մարդուն է տրուած։ Երբ այս ամէնը ստոյգ իմանամ, ես կը բաժանեմ ժամանակն այսպէս այսքան ժամ պէտք է ոչխարիս հօտին, այսքան ժամ պէտք է հանգստիս համար, այսքան ժամ պէտք է իմ զուարճանքին, եւ այսքան օրից իմ ոչխարները պէտք է ծանրանան, այսքան շաբաթից խեղճ յիմարները գառնուկ կը ծնեն, եւ այսքան ամսից ես պէտք է խուզեմ գառներիս բուրդը։ Այսպէս կ՝անցնէին րոպէներ, ժամեր, ամիսներ, տարի կը մօտենային այն նպատակին, ինչի համար են նրանք ստեղծուած՝ տանելու ճերմակ վարսերս, աւա՜ղ, մի ցուրտ գերեզման։ Ա՛խ, ես կ՝ուզէի կեանքն այսպէս լինէր այսքան քաղցրաբոյր, այսքան գեղեցիկ։ Միթէ՞ սրափուշ մացառն աւելի ստուեր չի բաշխում ջահէլ հովիւին, որ պահպանում է իր հօտն անզգոյշ, քան ակնահաճոյ, ասեղնագործուած նուրբ ամպհովանին այն թագաւորի, որ վախենում է իրեն հպատակ դաւաճաններից։ Օ՜, հազար անգամ միթէ՞ տնական կաթնաշոռն հովուի, կաշուէ ամանի սառնորակ ջուրը, նրա քունն անուշ՝ ծառի ստուերում, որ քաղցր են դարձնում կեանքն աստղերի տակ, թանկ չեն իշխանի ընտիր կերակրից, ոսկեայ գաւաթի բոցափայլ գինուց, եւ շքեղազարդ նուրբ մահճակալից, ուր ընկղմւում է նրա

մարմինը, բայց, աւա՛ղ, հոգսի, անվստահութեան, դաւաճանութեան որոգայթն ընկած։

*[Suddenly a Murderous Son enters, dragging his father's body.]*

MURDEROUS SON.
Վատ է այն քամին, որ փչում է զուր։ Գուցէ այս մարդը շատ ոսկի ունի, ում սպանեցի ես ձեռնամարտում։ Ես, որ նրան եմ կողոպտում հիմա, մինչեւ իրիկուն կարող եմ զիջել իմ կայքն ու փողը այլ անծանօթի, ինչպէս այս թշուառ, մեռած մարդը՝ ինձ։ Ո՞վ է սա, աստուա՛ծ, հօրս դէմքն ունի, ում սպանեցի՝ չճանաչելով։ Օ՛, ծանր օրեր՝ ընդունակ միայն ոճրագործութեան։ Ինձ թագաւորը կանչեց Լոնդոնից։ Հայրս, լինելով վորուիկի մարդը, եորքի հետ եկաւ իր տիրոջ կամքով, իսկ ես, ում նա էր, աւա՛ղ, կեանք տուել, խլեցի նրա կեանքը իմ ձեռքով։ Ների՛ր ինձ, աստուած, ես չեմ իմացել, թէ ինչ եմ անում, ների՛ր ինձ, հայր իմ, քեզ չեմ ճանաչել, թող արցունքներս մաքրեն, լուանան այս հետքերն արնոտ, կանգ առէ՛ք, բառեր, թող նրանք յորդեն յագենալու չափ։

KING HENRY.
Օ՛, ողորմելի՛, թշուառ տեսարան, Օ՛, արիւնալի՛, բիրտ ժամանակներ, երբ առիւծներն են պայքարում իրենց որջերի համար, անմեղ գառներն են տառապում նրանց ընդհարումներից, ողբա՛, անբախտ մարդ, կ՝արտասուեմ քեզ հետ, եւ թող մեր սիրտը եւ մեր աչքերը լացից կուրանան, վշտից աւերուեն, ինչպէս նենգադաւ պառակտումներից։

*[Suddenly a Murderous Father enters, dragging his son's body.]*

MURDEROUS FATHER.
Դո՛ւ, որ քաջաբար պաշտպանւում էիր, տո՛ւր քո ոսկին ինձ, թէ ոսկի ունես,  ես այն գնեցի բիւր հարուածներով։ Բայց կա՛ց, թշնամու դէմքը չէ՞ արդեօք, ա՛խ, ո՛չ, զաւա՛կս է, միա՛կ զաւակս։ Ա՛խ, եթէ կեանքի նշոյլ կայ քո մէջ, բա՛ց քո աչքերը, նայի՛ր, թէ ինչպէս խեղայեղ սրտիս արցունքներն առատ յորդում են այս թաց վէրքերի վրայ, որ սպանում են իմ սիրտն ու աչքը։ Աստուա՛ծ, գթութիւն շաղ տուր այս թշուառ օրերի վրայ։ Ա՛խ, ի՜նչ նենգութիւն, ի՜նչ վայրենութիւն եւ ի՜նչ կոտորած՝ խռովեալ, մոլար եւ անբնական, ծնում են, աւա՛ղ, այս մահատեսիլ գժտութիւնները։ Օ՛, իմ զաւակս, քեզ կեանք տուեցի չափազանց կանուխ եւ չափազանց ուշ կեանքդ խլեցի։

KING HENRY.
Օ՛ Հեգնանք։ Հեգնանք։ Օ՛, Կարենի մահով դադարեցնել այս պիղծ գործը, օ՛, ողորմիր, ողորմիր, դրախտ բարի է: Դեմքին կարմիր ու սպիտակ վարդեր են, կռվող կողմերի մահացու գույներ: Նրանցից մեկը արյան գույն ունի, մյուսը՝ գունատ այտ: Թող այս վարդերից մեկը չորանա, մյուսը ծաղկի: Եթե պայքարեք, շատ կյանքեր ընդմիշտ կխամրեն։

MURDEROUS SON.
Ինչպէ՞ս կը նայի մայրս ինձ վրայ, երբ հօրս մահուան սեւ բօթը առնի, ինձ խիստ կ՝անարգի անսփոփ վշտով։

MURDEROUS FATHER.
Ինչպէ՞ս կը նայի կինս ինձ վրայ, երբ որ իմանայ իր որդու մահը արցունք կը յորդի յաւէրժ անսփոփ։

KING HENRY.
Ի՜նչ պիտի անի իմ ողջ երկիրը այս աղէտալի տանջանքի համար, ինձ կը նզովի անսփոփ վշտով։

MURDEROUS SON.
Լացե՞լ է այսպէս որդին հօր վրայ։

MURDEROUS FATHER.
Թախծե՞լ է այսպէս հայրը իր որդուն։

KING HENRY.
Եր՞բ է թագաւորն այսպէս ողբացել իր ժողովրդին, խորն է ձեր վիշտը, բայց հազար անգամ իմ վիշտն՝ առաւել։

MURDEROUS SON.
Քեզ պիտի տանեմ մի այնպիսի տեղ, ուր լաց կը լինեմ, որքան սիրտս ուզի։ [Exits carrying his father's body.]

MURDEROUS FATHER.
Թող այս ձեռքերը քեզ պատանք լինեն, իսկ սիրտս, տղա՛ս, քո գերեզմանը, քանզի սրտիս մէջ քո պատկերն է միշտ, հառաչող կուրծքս՝ քեզ թաղման կոչնակ։ Քեզ կորցնելով՝ կ՚ողբայ քո հայրը գերեզմանային այնպիսի վշտով, ինչպիսին տեսաւ ծեր պրիամոսը, երբ որ կորցրեց իր որդիներին։ Ես քեզ այստեղից հեռու կը տանեմ, թող նրանք կռուեն, որքան կամենան, վա՜յ ինձ, ում պէտք չէր, նրան սպանեցի։ [Exits carrying his son's body.]

KING HENRY.
Տխրասի՛րտ մարդիկ՝ վշտից կորացած, բայց ձեզնից տխուր՝ ահա մի արքայ։

*[The Roar of War. The Queen, Prince and Exeter enter.]*

PRINCE OF WALES.
Փախի՛ր, հայր, փախի՛ր, զի փախան բոլոր բարեկամներդ, վորուիկն է կատղել վայրի ցուլի պէս։ Գնա՛նք, մեզ մահն է հետամուտ լինում։

QUEEN MARGARET.
Ձի նստիր, տէր իմ, շտապենք բերուիք։ Ռիչարդն ու Էդուարդն արդէն գալիս են եւ ինչպէս երկու վազկան քերծէներ, որ նախանձում են վախից խիստ փախչող նապաստակներին, ցասկոտ, հրափայլ աչքերում՝ զայրոյթ, եւ արնոտ սուրը ձեռքերին սեղմած, գալիս են դէպ մեզ, փախչե՛նք այստեղից։

EXETER.
Շտապե՛նք, քանզի վրէժ են բերում։ Օ՛, ոչ, կանգնելու հարկ չկայ հիմա։ Դեհ, ինձ հետեւէք, գնում եմ առաջ։

KING HENRY.
Արդ, տար ինձ քեզ հետ, բարի Էքսետեր, բայց ոչ թէ վախից, այլ վասն նրա, որ թագուհին է այսպէս կամենում, շտապե՛նք առաջ։

*[They exit.]*

][][

ACT II. SCENE VI.
Another part of the battlefield. Clifford enters, wounded.

CLIFFORD.
Այստեղ վառուելով՝ այստեղ էլ մոմս մարում է դանդաղ։ Վառուելով նա լոյս տուեց արքային։ Օ՛, իմ լանկաստեր, քո կործանումից ես աւելի շատ երկիւղ եմ կրում, քան թէ այն պահից, երբ հեռանում է հոգին մարմնից։ Իմ սէրն ու վախը կապեցին քեզ հետ բիւր բարեկամներ, բայց ես ընկնում եմ, եւ այդ կապն ամուր պիտի քանդուի, եւ կը թուլանայ թագաւոր հենրին, կը հզօրանայ ամբարիշտ եորքը։ Եւ ստոր մարդկանց պարսն է բազմանում ամռան աներես ճանճերի նման, եւ ո՞ւր են թռչում այդ մծակները, դէպի արեւը՛, իսկ ո՞վ է հիմա երկնքում փայլում հենրու թշնամի՛ք։ Օ՛, ֆեբուս, թէ դու յանձն չառնէիր, որ ֆայտոնը սանձուէր հրեղէն քո նժոյգներով, չէր խանձի երկիրն այրող քո կառքը։ Ա՛խ, հենրի, թէ դու երկիրն իշխէիր արքաների պէս կամ ինչպէս հայրդ կամ թէ քո պապը՝ չտալով եորքին հողի մի կտոր, նա չէր բազմանայ ամռան ճանճի պէս։ Եւ ես տասն հազար այրիների հետ չէի արտասուի մեր դաժան մահը այս անբախտ երկրում, դու կը պահէիր քո գահը հաստատ։ Բայց մոլախոտերն արագ են աճում բարեշունչ օդում, եւ աւազակը յանդուգն է դառնում, երբ օրէնքն է մեղմ։ Զուր է իմ ողբը, անբուժելի են այրող վէրքերս։ Ես ճամփայ չունեմ, ոչ էլ զօրութիւն՝ փախչելու համար։ Անխիղճ թշնամին ինձ չի կարեկցի, զի չեմ վաստակել իմ իրաւունքը գթութեան համար։ օդն է թափանցում իմ մահաասարսուռ վէրքերիս խորքը, արեան կորստից նուաղում եմ ես։ Եկէ՛ք, գոռոզ եորք, վորուիկ ու ռիչարդ, ձեր հօրն սպանեցի, կուրծքս խոցէք արդ։ [He faints.]

*[Drums. Edward, George, Richard, Montague, Warwick and Soldiers enter.]*

EDWARD.
Այժմ շունչ առնենք, ազնիւ իշխաններ, մեզ բարի բախտը պարգեւեց դադար եւ պատերազմի կնճիռներն հարթեց խաղաղ հայեացքով։ Մեր ջոկատները հետապնդում են արնոտ թագուհուն, որն ուզածի պէս վարում է հենրուն, թէեւ այս մարդն է թագաւորն երկրի։ Այսպէս առագաստն՝ անչափ ուռեցուած հողմայուզանքից, հրամայում է վաճառանաւին, որպէսզի գնայ հոսանքին ընդդէմ։ Չի՞ փախել արդեօք կլիֆորդը նրանց հետ։

WARWICK.
Անհնարին է, չէր կարող խոսել տալ, քանզի ձեր եղբայր ռիչարդը արդէն, այդ բանն ասում եմ նրա երեսին, նշել է նրա պիղծ գերեզմանը, ուր էլ նա լինի, մեռած է, անշուշտ։

*[Clifford moans and dies.]*

EDWARD.
Այդ ո՞ւմ հոգին է, որ դժուարութեամբ մարմինն է լքում։

RICHARD.
Մահագո՛յժ հառաչ, երբ կեանքն է պարտուել դառնաշունչ մահից։

EDWARD.
Նայի՛ր, թէ ով է։ Ճակատամարտը յանգել է արդէն, ով էլ նա լինի՝ ազնիւ բարեկամ կամ թէ թշնամի պէտք է գթութեամբ օգնութիւն ցոյց տալ։

RICHARD.
Ե՛տ առ գթութեան քո վճիռն իսկոյն, զի կլիֆորդն է, ով չէր գոհանում, որ ճիւղն է կտրել՝ կեանքը ռետլենդի, երբ նոր էր նրա սաղարթը բացւում, եւ խրել արնոտ դանակն արմատին, որից այն մատղաշ ոստն էր կեանք առել։ նկատի ունեմ մեր հօրը վսեմ։

WARWICK.
Եորքի դարպասից գլուխն առէք վար՝ ձեր հօր գլուխը, որն այդ դարպասին կլիֆորդը մեխեց, թող տեղը դրուի նրա գլուխը ակն ընդ ական, թող այդպէս լինի։

EDWARD.
Թող այստեղ բերեն այդ բուն ողբաձայն, որ գուշակում էր անկումը մեր տան, մահը կտրել է նրա ձայնն արդէն խիստ սպառնալից, եւ նրա լեզուն՝ չարագոյժ ու գէշ, լռել է ընդմիշտ։

*[Soldiers bring the Clifford's corpse forward.]*

WARWICK.
Կարծեմ, կորցրել է գիտակցութիւնը խօսի՛ր, կլիֆորդ, մեզ չե՞ս ճանաչում։ Սեւ մռայլ մահը ստուեր է ձգել նրա պիղծ կեանքի շողերի վրայ, նա մեզ չի տեսնում, նա մեզ չի լսում։

RICHARD.
Օ՛, թէ կարենար, գուցէ կարող է նա ձեւանում է հմտօրէն մեռած, որպէսզի խոյս տայ այն դառն ու կծու խոշտանգումներից, ինչպիսիք նա էր մեր հօրն ենթարկում մահուան չար ժամին։

GEORGE.
Եթէ այդպէս է, մտրակիր նրան դառն խօսքերով։

RICHARD.
Կլիֆո՛րդ, հայցի՛ր, բայց չես ստանայ ո՛չ մի գթութիւն։

EDWARD.
Կլիֆո՛րդ, քաւութիւն հայցիր, բայց իզո՛ւր։

WARWICK.
Կլիֆո՛րդ, խորհիր մեղքիդ թողութիւն։

GEORGE
Մենք կը մտածենք դժոխքի տանջանք մեղքերիդ համար։

RICHARD.
Դու սիրում էիր փառապանծ եորքին։ Նրա որդին եմ։

EDWARD.
Դու խղճում էիր ջահէլ ռետլենդին, խղճում եմ ես քեզ։

GEORGE
Ո՞ւր է ձեր պաշտպան մարգարիտն հպարտ։

WARWICK.
Կլիֆո՛րդ, սրանք այպանում են քեզ, հայհոյի՛ր նրանց, վարժ ես այդ բանին։

RICHARD.
Նա չի հայհոյում, ուրեմն աշխարհում գործերը վատ են, երբ կլիֆորդը էլ չի նզովում բարեկամներին, այդ բանից պէտք է մենք գլխի ընկնենք, որ նա մեռած է։ Իմ հոգին վկայ, թէ հնար լինէր աջ ձեռքի գնով շնորհել սրան երկու ժամուայ կեանք, ձեռքս կը տայի, որ այպանէի նրան չարութեամբ, եւ խեղդէր արիւնն այդ սրիկային, ում ծարաւն անյագ չմարուեց եորքով ու ռետլենդով։

WARWICK.
Բայց նա մեռած է, կտրէք գլուխը եւ դրէք այնտեղ, որտեղ ձեր հօրն է։ Այժմ յաղթական քայլքով դէպ լոնդոն, ուր դու անգլիայի թագը կ՝ընդունես։ Այստեղից ծովով կ՝անցնեմ ֆրանսիա, լէդի բոնայի ձեռքը կը խնդրեմ քեզ համար, էդուա՛րդ, եւ դու այսպիսով ամուր կը կապես երկու երկրներ։ Ֆրանսիայի հետ բարեկամ դարձար, էլ չես վախենայ ցիրուցան եղած թշնամիներից, որ յոյս ունեն մեզ նորից վնասել։ Թէեւ չեն կարող քեզ վիշտ պատճառել, բայց պէտք է իրենց տհաճ բզզիւնով խիստ վիրաւորեն քո ականջները։ Ամէնից առաջ ուզում եմ տեսնել քեզ թագադրուած, ապա ես ծովով բրետան կը հասնեմ, որ քո պսակը ես գլուխ բերեմ, թէ հաճելի է իմ տիրոջն այսպէս։

EDWARD.
Թող այդպէս լինի, ինչպէս ուզում ես, սիրելի վորուիկ, քանզի իմ գահը պէտք է բարձրանայ ուսերիդ վրայ ես ձեռք չեմ զարնի որեւէ գործի, եթէ այն բնաւ քո սրտովը չէ, դէմ է խորհրդիդ։ Ռիչա՛րդ, այժմուանից հաստատում եմ քեզ գլոստերի դուքս, քեզ, ջորջ կը լարենսի, իսկ դու, քաջ վորուիկ, ամէնուր կ՝իշխես, ինչպէս կամենաս։

RICHARD.
Թող ջորջը լինի գլոստերի դուքսը, իսկ ես՝ կը լարենսի, քանզի գլոստերի դքսութիւնում կայ չարագուշ մի բան։

WARWICK.
Լռի՛ր, ի՜նչ անմիտ բաներ ես ասում, դու պէտք է լինես գլոստերի դուքսը։ Իսկ այժմ՝ լոնդոն, ուր կը վայելենք մեզ միշտ պատկանող մեծարանք ու շուք։

*[They exit.]*

]|[

ACT III. SCENE I.
A chase in the north of England. Two Keepers enter with cross-bows.

KEEPER I.
Թաքնուենք այս խիտ թփուտների տակ, շուտով բացատից կ՝անցնի այն հօտը մենք դարանամուտ նշան կը բռնենք հօտն առաջնորդող արու եղջերուին։

KEEPER II.
Եթէ ես կանգնեմ բլրի գագաթին, այնժամ կարող ենք ճիշտ նշան բռնել։

KEEPER I.
Պէտք չէ, քանի որ աղեղնազէնիդ ձայնից կը փախչեն եղջերուները, եւ զուր կը կորչի արձակած նետս։ Պէտք չէ։ Այստեղից աւելի դիպուկ նշան կը բռնենք։ Որպէսզի անցնի ժամանակն արագ, ես քեզ կը պատմեմ, թէ ինչ պատահեց մի անգամ ինձ հետ մեր կանգնած տեղում։

KEEPER II.
Նայի՛ր, անծանօթ մի մարդ է գալիս։ Սպասիր, թող նա այստեղից անցնի։

*[King Henry enters, disguised as a hunter.]*

KING HENRY.
Եղեք շատ, շատ փափուկ։ Ես ծպտեալ փախայ շոտլանդիայից, որ իմ փափագող հայեացքն ողջունի երկրիս հարազատ։ Ո՛չ, հարի, հարի, սա երկիրդ չէ, քո տեղն ասել են, քո գայիսոնը խլել են քեզնից, եւ

քո ճակատից քեզ օծած անուշ մեռոնն է թափուել։ Ոչ ոք ծնրադիր էլ քեզ չի կոչի հիմա թագաւոր, ոչ մի հեզամիտ աղերսարկու արդ քեզ չի պաղատի, որ նեցուկ կանգնես արդարութեանը, ոչ ոք չի ուզում պաշտպանութիւնդ, ինչպէ՞ս կարող եմ օգնել ուրիշին, երբ ինքս եմ անօգ։

KEEPER I.
Ահա՛ եղջերուն՝ թանկ մորթու համար պահակին, անշուշտ, առատ վարձ կը տան։ նախկին արքան չէ՞, շուտ բռնենք նրան։

KING HENRY.
Ե՛կ, քեզ համբուրեմ, բի՛րտ ձախորդութիւն, քանզի իմաստուն մարդիկ ասում են՝ սա է ամէնից իմաստուն քայլը։

KEEPER II.
Պէտք չէ յապաղել, առաջը կտրենք։

KEEPER I.
Սպասի՛ր, տեսնենք, ինչ է բարբաջում։

KING HENRY.
Իմ կինն ու որդին օգնութեան համար փախան ֆրանսիա։ Այնտեղ է մեկնել, ինչպէս լսեցի, մեծն վորուիկը, որպէսզի ուզէ լիւդովիկի քրոջն՝ էդուարդին։ Եթէ այս լուրերն ստոյգ են իրա՛, ապա ձեր ջանքերն ապարդիւն կ՝անցնեն, իմ խեղճ թագուհի եւ իմ խեղճ զաւակ, քանզի վորուիկը չափազանց ճարտար ատենախօս է, իսկ լիւդովիկն՝ այնպիսի արքայ, ում հեշտ է դիւթել սրտաշարժ խօսքով։ Սակայն այդ հաշուով՝ իմ մարգարիտն էլ կարող է նրա սիրտն հրապուրել, զի կարեկցութեան արժանի կին է։ Ա՛խ, թագաւորի կուրծքը կը մաշուի նրա հառաչից, եւ կը թափանցեն տաք արցունքները նրա սիրտը քար, եւ նրա վշտից վագրը կը մեղմուի, եւ կը տանջուէր ներոնը ցաւից, սրտի խայթ կը զգար, թէ լսէր նրա հոգու տրտունջը ու տեսնէր նրա արցունքներն աղի։ Բայց, աւա՜ղ, գնաց նա աղերսելու, մինչդեռ վորուիկը զոհ տուեց նրան, կինս կը կանգնի արքայի կողքին, օգնութիւն կ՝ուզէ հենրիի համար, վորուիկն՝ հարսնացու՝ ջահէլ էդուարդին, կինս ողբալով կ՝ասի, որ հենրին գահընկէց եղաւ, իսկ նա ժպտադէմ՝ կը կարգի նրան իմ խեղճ թագուհին վշտից չի կարող շշնջալ մի բառ, մինչդեռ վորուիկը կը պահանջի նրա իրաւունքները, կը բերի հզօր, խիստ ապացոյցներ եւ թագաւորից հեռու կը պահի ազնիւ թագուհուն, եւ կը խոստանայ քրոջ ձեռքն ուզել եւ ուրիշ բաներ, որ կը պաշտպանեն էդուարդի թագը։ Ա՜խ, իմ մարգարիտ, այդպէս կը լինի, եւ դու, խեղճ հոգի, պէտք է մոռացուես, ինչպէս եղել ես լքուած ու անօգ։

KEEPER II.
Ասա՛, ո՞վ ես դու, որ թագաւորից ու թագուհուց ես այսպէս բարբաջում։

KING HENRY.
Ես աւելին եմ, քան երեւում եմ, եւ այնչափ նուազ, քան թէ ծնուել եմ։ Մարդ եմ։ Աւելի սակաւ չեմ կարող, մարդիկ խօսում են թագաւորներից, ինձ էլ է տրուած այդ իրաւունքը։

KEEPER II.
Այնպէս ես խօսում, կարծես արքան ես։

KING HENRY.
Այսպէս եմ հոգով, եւ դա բաւ է ինձ։

KEEPER II.
Թէ դու արքան ես, ո՞ւր է քո թագը։

KING HENRY.
Այն իմ սրտում է եւ ոչ՝ ճակատիս, եւ չի զարդարուած ադամանդներով, լալ ու սուտակով։ Տեսանելի չէ։ Թագս կոչւում է գոհունակութիւն, թագաւորներից քչերն հազիւ թէ իրենց ճակատն այդ թագով պսակեն։

GUARD II
Շատ բարի, եթէ դու թագաւոր ես եւ պսակուած ես այդ գոհութեան հետ, ապա քո թագից գոհ պիտի լինես, որ տանում ենք քեզ։ Հաշուենք թէ, իրօք, այն թագաւորն ես, ում Էդուարդ արքան գահընկէց արաւ, բայց չէ՞ որ նրան երդւում ենք տուել հպատակութեան, ահա՛ թէ ինչու մենք քեզ բռնում ենք որպէս թշնամի։

KING HENRY.
Իսկ չի՞ պատահել, որ դուք երդուել էք եւ յետոյ դրժել։

KEEPER II.
Երբե՛ք, Օ՛, երբեք։ Այժմ էլ չենք դրժի։

KING HENRY.
Դուք որտե՞ղ էիք բնակւում առաջ, երբ ես անգլիայի թագաւորն էի։

KEEPER II.
Այստեղ, ուր այժմ էլ մենք բնակւում ենք։

KING HENRY.
Ես հազիւ էի ինը ամսական, երբ ինձ օծեցին երկրի թագաւոր։ Իմ հայրն ու պապը արքայ են եղել, դուք էլ ինձ մի օր հպատակութեան երդում էք տուել, ասէք, չէ՞ք դրժել ձեր ուխտը երբեք։

KEEPER I.
Այն ժամանակ՝ ոչ, երբ իշխում էիր։

KING HENRY.
Ի՞նչ է, մեռա՞ծ եմ, միթէ՞ չեմ շնչում ես մարդու նման։ Պարզամի՛տ մարդիկ, նոյնիսկ չգիտէք՝ ինչն է ուխտը ձեր, նայէք, ինչպէս եմ այս թեթեւ փետուրն իմ դէմքից վանում, բայց քամին նորից իմ կողմն է բերում։ Մերթ իմ տաք շնչից ինձ է ենթարկւում, մերթ քամուն զիջում, բայց նա հլու է միշտ հզօր հողմին։ Պարզամի՛տ մարդիկ, փետուրի նման դիւրադարձ էք յար, բայց դուք մի՛ դրժէք ձեր ուխտը երբեք, իմ աղերսանքը թող ձեզ չգցի ծանր մեղքի տակ։ Տարէ՛ք ինձ հիմա, ուր որ կամենաք հնազանդւում է ձեզ թագաւորը։ Եղէք արքաներ, հրամայեցէք, ձեզ կը հնազանդուեմ։

KEEPER I.
Մենք հաւատարիմ հպատակներն ենք Էդուարդ արքայի։

KING HENRY.
Միթէ՞ դուք նորից հենրուն կ՝ենթարկուէք, եթէ էդուարդը գահընկէց լինի։

KEEPER I.
Յանո՛ւն աստծոյ ու թագաւորի՝ մենք բռնում ենք ձեզ ու տանում մեզ հետ ոստիկանի մօտ։

KING HENRY.
Յանո՛ւն աստծոյ՝ այժմ ինձ տարէք, ձեր թագաւորի անունն եմ յարգում։ Ինչ կամենում է բարեգութ աստուած, թող այնպէս վարուի թագաւորը ձեր ինչ ուզում է նա, ես կը կատարեմ հնազանդօրէն։

*[They exit.]*

][][

ACT III. SCENE II.
London. The Palace. King Edward enters with Gloucester, Clarence and Lady Grey.

KING EDWARD.
Եղբայր գլոստեր, սենտ օլբենսի տակ այս ազնիւ լեդու ամուսինն ընկաւ, սըր ջոն գրեյը, իսկ կալուածքները յաղթողն է առել։ Արդ, նա խնդրում է, որպէսզի ետ տան այն կալուածքները։ Ճշմարիտն ասած՝ չենք կարող մերժել, քանզի պատուաւոր ազնուականը կեանքը կորցրեց եորքի տան համար մղուող պայքարում։

GLOUCESTER.
Ձերդ մեծութիւն, դուք ճիշտ կը վարուէք, եթէ չմերժէք նրա պահանջը։

KING EDWARD.
Ի հարկէ, սակայն պէտք է սպասել։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Ուրեմն այսպէս։ Տեսնում եմ, լէդին պէտք է շնորհի որոշակի բան, որ թագաւորը չմերժի նրան։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Լաւ հոտ է առել, որսն է ճանաչում։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Լռի՛ր։

KING EDWARD.
Այրի, կը նայենք ձեր խնդրանքն, անշո՛ւշտ, ուրիշ օր եկէք՝ վճիռն իմանալու։

LADY GRAY.
Բարեշնորհ տէր, չեմ կարող սպասել չէ՞ք բարեհաճի հէնց հիմա վճռել։ Ինչ էլ որոշէք, ես գոհ կը մնամ։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Այդպէ՞ս է, այրի՛, այնժամ կը ստանաս ողջ կալուածքները, սակայն այն դէպքում, եթէ կատարես դու նրա կամքը ամո՛ւր կաց, թէ ոչ՝ հարուած կը ստանաս։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Նա վախենալու առիթներ չունի, բացի պառկելուց։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Աստուած չարասցէ, քանզի կ՝օգտուի Էդուարդն այդ բանից։

KING EDWARD.
Այրի՛, դու քանի՞ երեխայ ունես։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Կարծես ուզում է այրուց ունենալ նա մի երեխայ։

GLOUCESTER.
[Aside to Clarence] Քիթս կը կտրեմ, թէ չի կամենում երկուսն ընծայել։

LADY GRAY.
Ողորմած տէր իմ, ես երեքն ունեմ։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Չորսը կ՝ունենաս, թէ լսես նրան։

KING EDWARD.
Ցաւալի է, որ նրանք կորցնեն հօր կալուածքները։

LADY GRAY.
Գթացէ՛ք, տէր իմ, եւ կալուածքները ետ տուէք նրանց։

KING EDWARD.
Ազնիւ իշխաններ, մեզ թողէք մենակ, ես պիտի փորձեմ այս կնոջ խելքը։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Այո՛, կը թողնէք մենք քեզ միայնակ, զի հաճոյ է քեզ երկուսով մնալ։ ջահէլութիւնդ շուտով կանց կենայ՝ թողնելով բախտիդ մի զոյգ անթացուպ։ Մի կողմ գնալով կլարենսի հետ։

KING EDWARD.
Տիկին, ինձ ասա, սիրո՞ւմ ես արդեօք քո զաւակներին։

LADY GRAY.
Այո՛, սիրում եմ, ինչպէս ինքս ինձ։

KING EDWARD.
Չե՞ս ուզում նրանց բարութիւն անել։

LADY GRAY.
Իսէր իմ որդոց՝ պատրաստ եմ կրել բազում զրկանքներ։

KING EDWARD.
Իսէր քո որդոց՝ դու ետ կը ստանաս կալուածքներն ամբողջ։

LADY GRAY.
Դրա համար էլ ձեզ մօտ եմ եկել, ձերդ մեծութիւն։

KING EDWARD.
Քեզ կ՝ասեմ, թէ ինչ ձեւով կարող ես նորից ձեռք բերել այդ կալուածքները։

LADY GRAY.
Ձերդ մեծութեան ծառան կը լինեմ։

KING EDWARD.
Ի՞նչ ծառայութիւն ինձ կը մատուցես, եթէ ամուսնուդ կալուածքներն ետ տամ։

LADY GRAY.
Ինչ որ կամենաք, թէ կարող եմ ես։

KING EDWARD.
Բայց պիտի մերժես, երբ որ իմանաս, թէ ինչ եմ ուզում։

LADY GRAY.
Ո՛չ, բարեգութ տէր, եթէ կարող եմ, չեմ մերժի երբեք։

KING EDWARD.
Բայց դու չես կարող ասածս անել։

LADY GRAY.
Այո՛, միայն թէ դուք հրամայէք։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Նա ոտքը ամուր դրել է գետնին իսկ հորդ անձրեւը քարն էլ կը ծակի։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Նա կարմրել է կրակի նման, եւ պիտի հալուի այրին մոմի պէս։

LADY GRAY.
Ինչո՞ւ չէք խօսում, ո՞րն է, ասացէք իմ անելիքը։

KING EDWARD.
Դա դիւրին բան է՝ սիրել արքային։

LADY GRAY.
Ինչպէ՞ս չսիրել, երբ հպատակն եմ։

KING EDWARD.
Եթէ այդպէս է, ես յօժարակամ կը տամ ամուսնուդ կալուածքներն ամբողջ։

LADY GRAY.
Ձեզ հազար անգամ շնորհակալութիւն, դե՛հ, մնաք բարեաւ։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Գործարքը կարծես գլուխ է գալիս, եւ այդ դաշինքը կնքում է այրին խոր ակնածանքով։

KING EDWARD.
Բայց դու սպասի՛ր, ես կամենում եմ ճաշակել սիրոյ քաղցր պտուղը։

LADY GRAY.
Ես էլ եմ ուզում, սիրեցեալ իմ տէր։

KING EDWARD.
Բայց վախենում եմ՝ ինձ չես հասկանում։ Ի՞նչ ես մտածում, ինչպիսի՞ սէր եմ քեզնից սպասում։

LADY GRAY.
Սէրս՝ մինչեւ մահ, հլու ե՛ւ խոնարհ, ե՛ւ երախտապարտ, սէր, որ փնտրում է ողջախոհ կինը։

KING EDWARD.
Երդւում եմ, նման սէր չեմ հասկացել։

LADY GRAY.
Ինչի մասին որ դուք մտածել էք, երբեք չեմ խորհել։

KING EDWARD.
Այժմ կարող ես դու գլխի ընկնել, թէ ինչ եմ ուզում։

LADY GRAY.
Ձերդ մեծութիւն, թէ չեմ սխալւում, ինչի ձգտում էք, չէք տեսնի բնաւ։

KING EDWARD.
Ճշմարիտն ասած՝ ուզում եմ քեզ հետ միասին պառկել։

LADY GRAY.
Ճշմարիտն ասած՝ ես նախընտրում եմ պառկել մութ բանտում։

KING EDWARD.
Ուրեմն ամուսնուդ կալուածքներն ամբողջ ետ չե՛ս ստանայ։

LADY GRAY.
Այրուս սուրբ պատուով ես չեմ կամենում կալուածքներն առնել։

KING EDWARD.
Բայց դու մեծ վնաս կը տաս քո որդոց։

LADY GRAY.
Իսկ դուք ձեր վճռով վնաս կը հասցնէք ե՛ւ ինձ, ե՛ւ նրանց։ Բայց, զօրաւոր տէր, ձեր ուրախ կատակն

երբեք չի կապւում տխուր խնդրանքիս, աղերսո՛ւմ եմ ձեզ, ինձ պատասխանէք՝ այո՛ կամ թէ՝ ոչ։

KING EDWARD.
Այո՛, թէ ասես խնդրանքիս՝ այո՛, ո՛չ, եթէ ասես իմ պահանջին՝ ո՛չ։

LADY GRAY.
Ո՛չ, տէր իմ, ո՛չ, էլ խնդիրք չունեմ։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] դուր չեկաւ այրուն, յօնքերն է կիտում։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Ամենատխմար սիրաբանողը ամբողջ աշխարհում։

KING EDWARD.
Նրա հայեացքում կայ պարկեշտութիւն, եւ խօսքերի մէջ՝ անզուգական խելք այս կատարեալ կինն իրաւունք ունի արքայոյց սիրոյ։ Այսպէս թէ այնպէս՝ նա պէտք է լինի տարփալի սէրն իմ կամ իմ թագուհին։ Ի՞նչ կ՝ասես, երբ քեզ Էդուարդ թագաւորն առնի որպէս կին։

LADY GRAY.
Աւելի հեշտ է այդ բանը ասել, քան թէ կատարել։ Տէր իմ, յարմար եմ լոկ ձեր կատակին եւ արժանի չեմ ձեզ կին լինելու։

KING EDWARD.
Օ՛, չքնաղ այրի, երդւում եմ թագով, ինչ որ ասացի, սիրտս է որոշել ես կամենում եմ քեզ տիրել միայն։

LADY GRAY.
Դա աւելին է, քան կարող եմ ես։ Ես շատ չնչին եմ թագուհու համար եւ նոյնքան բարձր՝ ձեզ հարճ լինելու։

KING EDWARD.
Այրի, մի՛ խաղա իմ խօսքերի հետ, ես ուզում էի ասել՝ թագուհի։

LADY GRAY.
Տհաճ կը լինի, երբ տղաներս ձեզ ասեն հայրիկ։

KING EDWARD.
Բայց ո՛չ աւելի, քան երբ դուստրերս քեզ ասեն մայրիկ։ Դու մի այրի ես, ունես զաւակներ, աստուածածինը թող վկայ լինի թէեւ ամուրի, բայց դուստրեր ունեմ։ Մեծ բախտ է լինել տղաների հայր ինձ մի՛ առարկիր, դու պէտք է լինես իմ սուրբ թագուհին։

GLOUCESTER.
[Aside to Clarence.] Տէր հայրն աւարտեց խոստովանանքը։

CLARENCE.
[Aside to Gloucester.] Իւր խաղից դրդուած՝ նա դարձաւ տէր հայր։

KING EDWARD.
Չէ՞ք ուզում լսել, թէ ինչի մասին էինք զրուցում։

GLOUCESTER.
Դուր չեկաւ այրուն, յօնքերն է կիտել։

KING EDWARD.
Գուցէ ձեզ թուայ խիստ օտարոտի, ես պսակեցի լէդի գրեյին։

CLARENCE.
Ո՞ւմ հետ, տէր արքայ։

KING EDWARD.
Ինձ հետ, կլարենս։

GLOUCESTER.
Օ՛, դա կը լինէր ամենաքիչը տասնօրեայ հրաշք։

CLARENCE.
Մէկ օր աւելի, քան սովորաբար հրաշքն է տեւում։

GLOUCESTER.
Դա կը լինի խիստ մի ուրիշ հրաշք։

KING EDWARD.
Կատակէ՛ք, եղբայրք, ձեզ պիտի յայտնեմ, որ նրա խնդրանքն յարգել եմ արդէն՝ տալով ամուսնու կալուածքներն ամբողջ։

*[Random Noble enters.]*

RANDOM NOBLE
Ողորմա՜ծ տէր իմ, բռնել են արդէն թշնամի հենրուն եւ որպէս գերի բերել են ամրոց՝ դարպասների մօտ։

KING EDWARD.

Բերդ տարէք նրան։ Գնա՛նք, եղբայրներ, տեսնենք, թէ ով է թշնամուն բռնել եւ ինչ հրաշքով։ Այրի՛, մեզ հետ եկ։ Իշխաննե՛ր, յարգանք մատուցէք լեդուն։

*[All exit save Gloucester.]*

GLOUCESTER.

Այո՛, Էդուարդն է կանանց մեծարում։ Ես կ՝ուզենայի, որ նա խիստ հիւծուէր, որպէսզի նրա մէջքից չընձիւղուէր ոչ մի յուսատու, խոստումնալից ճիւղ, որ կը պատնէշէր իմ ոսկեայ օրը իմ երազներից։ Իմ եւ իմ հոգու տենչանքի միջեւ, թաղուած են արդէն շուայտ Էդուարդի իրաւունքները, դեռ բարձրանում են դուքս կլարենսը, հենրին ու նրա ջահէլ զաւակը, եւ բոլոր անյայտ այն ժառանգները, որ պիտի ելնեն նրանց մարմնից։ Նրանք ինձնից շուտ կը գրաւեն տեղը, քան թէ կարող եմ ես նստել այնտեղ, այս բանն իմ մտքին պաղ ջուր է լցնում։ Ուրեմն, պէտք է երազել միայն իշխանութիւնը, նման այն մարդու, որ հրուանդանի եզերքին կանգնած՝ նայում է հեռու նշմարուող ափին, որտեղ կ՝ուզենար իր ոտքը դնել, եւ ցանկանում է, որ իր քայլերը հաւասար լինեն իր հայեացքի հետ նա ծովն է սաստում, որ բաժանում է իրեն այնտեղից եւ ասում *«Ջուրը կը թափեմ ծովից, որպէսզի ճամփաս անցնի ցամաքով։»* այդպէս ձգտում եմ հեռաւոր թագին, այդպէս փշրում եմ իմ ճանապարհի ամէն մի արգելք, եւ այդպէս ասում *«Ես կը խորտակեմ ամէն խոչընդոտ»*՝ շոյելով հոգիս անհնար յոյսով։ Իմ հայեացքն ունի չափից աւելի փութաշարժ թռիչք, եւ սիրտն իմ՝ շատ խիստ ինքնաբաւութիւն ո՛չ իմ ձեռքերը, ո՛չ իմ ուժերը չեն կարող նրանց հաւասար լինել։ Բայց, ասենք, չկայ թագաւորութիւն ռիչարդի համար, ուրիշ ի՞նչ բերկրանք պէտք է ընծայի աշխարհը նրան։ Կարո՞ղ եմ արդեօք կնոջ գրկի մէջ շինել երկինքն իմ, եւ իմ մարմինը պատել գունագեղ զարդարանքներով եւ չքնաղ կանանց կախարդել խօսքով ու արտաքինով։ Օ՜, խեղճ երազանք, որ ձեռք կը բերուի աւելի դժուար, քան քսան ոսկեայ շողշողուն թագեր։ Սէրն ինձ ուրացաւ մօրս արգանդում, որ ես անհաղորդ մնամ քնքշալից նրա օրէնքին, նա աղաւաղեց յեղյեղուկ բնոյթս ասես կաշառքով, որ չոր թփի պէս ձեռքս կծկուէր, որ մէջքիս ելնէր չարաստեղծ մի լեռ, որ հոգիս ծաղրէր այս խեղութեանը, որ զոյգ ոտքերս ձեւեր անկանոն, որ ես լինէի աննմանամասն, ինչպէս քաոսը կամ ինչպէս արջի ձագը նորածին, որը չի կրում իր մօր պատկերը։ Միթէ՞ կարող են ինձ սիրել մարդիկ Օ՜, մեղք է, անշուշտ, այդպէս մտածել, եթէ այս աշխարհն ինձ չի պարգեւում ոչ մի խնդութիւն, մնում է միայն՝ իշխե՛լ, նուաճե՛լ ու հրամայե՛լ այն մարդկանց, ովքեր սիրուն են ինձնից։ Թող թագի երազն ինձ երկինք դառնայ։ Ինձ պիտի թուայ աշխարհը դժոխք, քանի դեռ կեանքում իմ այս այլանդակ մարմնի վրայ չի պսակուի գլուխս շողշողուն թագով։ Բայց դեռ չգիտեմ, ինչպէս թագն առնել իմ ու իմ թագի միջեւ կեանքեր կան, եւ ես նման եմ այն դժբախտ մարդուն, որ մոլորուել է փշոտ անտառում եւ սուր փշերը ճամփից պոկելով՝ ինքն է փշերից խիստ պատառոտւում, փնտրում է ճամփան ու շեղւում դարձեալ, չգիտէ՝ ինչպէս դուրս գայ անտառից, բայց յամառօրէն ձգտում է դրան։ Այսպէս տանջւում եմ, որ թագը խլեմ, բայց ես կ՝ազատուեմ այս տառապանքից՝ հարթելով ճամփաս արիւնոտ կացնով։ Կարող եմ ժպտալ եւ գոչել *«գոհ եմ,»* երբ սիրտս է մռայլ, եւ նոյն ժպիտով մարդկանց սպանել ու կեղծ արցունքով ցօղել այտերս, դէմքիս տալ ուզած արտայայտութիւն։ Ես աւելի շատ նաւազ կը խեղդեմ, քան թէ կարող է ծովանոյշն անել, եւ աւելի շուտ շարքից դուրս հանել ինձ նայող մարդկանց, քան բասիլիսկը, աւելի հմուտ ճարտասան լինել, քան թէ նեստորը, աւելի խաբել, քան ոդիսեւսը։ Սինոնի նման կարող եմ առնել մի այլ տրոյա եւ գունափոխուել քամելէոնի պէս, եւ ձեւափոխուել պրոտէոսի պէս, ինձ մաքիաւելու աշակերտ կոչել։

Միթէ՞ չեմ կարող մի օր տիրանալ ինձանից հեռու թագին ոսկեփայլ։ [Exits.]

]0[

## ACT III. SCENE III.

France. The King's Palace. King Lewis enter with his sister Bona, Admiral Bourbon; Prince Edward, Queen Margaret and Oxford.

### KING LEWIS.

Անգլիո՛յ թագուհի, չքնա՛ղ մարգարիտ, նստիր մեր կողքին, ծագումն ու դիրքդ քեզ չեն պատշաճում, որ կանգնես ոտքի, երբ լիւդովիկ արքան է նստած։

### QUEEN MARGARET.

Ո՛չ, ֆրանսիայի հզօր թագաւոր, արդ, մարգարիտը պէտք է մոռանայ ծագումն ու դիրքը եւ հնազանդուի, երբ արքաներն են հրաման տալիս։ Աւա՜ղ, անց կացան օրերս ոսկեայ, երբ մեծ ալբիոնի թագուհին էի, երբ ոտնահարեց դժբախտութիւնը իրաւունքներս եւ ամօթանքով ինձ գամեց գետնին, որտեղ ես պէտք է դիրքիս համեմատ իմ խաչը կրեմ եւ լուռ հաշտուեմ խոնարհ բախտիս հետ։

### KING LEWIS.

Ինչի՞ց է, ասա, չքնաղ թագուհի, որ այդպէս խոր է սիրտդ ընկճուել։

### QUEEN MARGARET.

Պատճառն արցունքն է աչքերս լցրել ու կապանք դրել իմ լեզուի վրայ, եւ վիշտն է խեղդում սիրտս յուսահատ։

### KING LEWIS.

Ինչ էլ որ լինի, մնա ինքդ քեզ միշտ հաւատարիմ։ Ե՛կ, նստիր ինձ մօտ, վիզդ մի ծռիր չար բախտի առաջ։ Բայց թող քաջասիրտ քո ոգին յաղթի ամէն մի փորձանք։ Չքնաղ մարգարիտ, պատմիր ինձ շիտակ քո սրտի վիշտը, եւ դու կը սփոփուես, եթէ ֆրանսիան քեզ նեցուկ դառնայ։

### QUEEN MARGARET.

Այս բարեշնորհ բառերը դարձեալ կեանք են պարգեւում նուաղեալ հոգուս եւ թոյլ են տալիս վշտակամ լեզուիս նորից խօսելու։ Թող յայտնի լինի քեզ, ազնիւ արքայ, որ հենրին, սիրուս միակ սուրբ տէրը, դարձել է, աւա՜ղ, տարագիր մի մարդ եւ շոտլանդիայում ապրում է մենակ։ Մինչդեռ եորքի դուքս փառատենչ էդուարդն յափշտակել է տիտղոսն արքունի ու գահը անգլիոյ, ահա՜ թէ ինչու դժբախտ թագուհիս, եւ արքայազնը՝ ժառանգը հենրու, այսինքն՝ որդիս եկանք խնդրելու քո արդարաշատ պաշտպանութիւնը ու թէ մեզ լքես, կորած է ընդմիշտ մեր ամբողջ յոյսը, շոտլանդիան կ՝օգնէր, սակայն ուժ չունի, գայթել է ճամփից մեր երկիրն ամբողջ, ա՛խ, կողոպտել են մեր գանձարանը, փախել է զօրքը։ Ինչպէս տեսնում ես, մի ծանր վիճակ պարուրել է մեզ։

KING LEWIS.
Օ՛, երեւելի՛, չքնա՛ղ թագուհիդ, մեղմիր այս հողմը քո համբերութեամբ կը խորհենք, ինչպէս առաջը առնել։

QUEEN MARGARET.
Որքան սպասենք, այնքան թշնամիք կը հզօրանան։

KING LEWIS.
Որքան սպասեմ, այնքան աւելի շատ պիտի օգնեմ։

QUEEN MARGARET.
Անհամբերութի՛ւն, դու, վշտերի քոյր։ Նայի՛ր, գալիս է պատճառն իմ վշտի։

*[Warwick enters.]*

KING LEWIS.
Այդ ո՞վ է այդպէս համարձակ մտնում մեր ներկայութեամբ։

QUEEN MARGARET.
Մեր կոմս վորուիկն է՝ ամենազօրեղ ընկերն Էդուարդի։

KING LEWIS.
Բարով ես եկել, քաջասիրտ վորուիկ, ի՞նչ քամի է քեզ բերել ֆրանսիա։

QUEEN MARGARET.
Բարձրանում է, արդ, փոթորիկն երկրորդ, զի տէրն է գալիս մակընթացութեան ու քամիների։

WARWICK.
Ալբիոնի արքայ Էդուարդը ազնիւ, գերագոյն տէրն իմ, բարեկամդ ուխտեալ, նախ՝ անկեղծ սիրով ողջոյն է յղել քո արքայական վեհափայլ անձին, ապա փնտրում է բարեկամութեան մի դաշինք քեզ հետ, եւ նա ուզում է հարսնեաց կապերով խիստ։ Ամրապնդել այս մեծ դաշինքը, թէ շնորհ անես քո առաքինի, չքնաղ քրոջը Էդուարդին որպէս օրինաւոր կին։

QUEEN MARGARET.
[*Aside.*] Թէ սա գլուխ գայ, կորաւ յոյսն հենրու։

WARWICK.
[*To Bona.*] Գեղեցի՛կ տիկին, իմ թագաւորի յանձնարարութեամբ, եթէ թոյլ կը տաք ողորմածօրէն, ես խոնարհաբար պէտք է համբուրեմ ձեր ձեռքը բարի եւ լեզուով պատմել իմ տիրոջ սրտի տառապանքները, ուր ձեր հռչակը, մտնելով նրա արթուն ականջից, տեղաւորուել է ձեր առաքինի, չքնաղ պատկերը։

QUEEN MARGARET.
Արքայ լիւդովիկ ու լէդի բոնա, մինչեւ պատասխան կը տաք վորուիկին, լսէք թագուհուս։ Նրա խնդրանքը էդուարդի մաքուր, անշահախնդիր սիրուց չի ծագել, այլ խաբէութեամբ, կարիքից դրդուած ինչպէ՞ս կարող են բռնակալները ապահովապէս իրենց տանն իշխել, երբ ազգակցութիւն չունեն այլ երկրում։ Որ բռնակալ է, բաւ է մի փաստ էլ չէ՞ որ դեռեւս ապրում է հենրին, իսկ եթէ մեռնի, արքայազն ահա՝ թագաւոր հենրու որդին՝ էդուարդը։ Նայի՛ր, լիւդովիկ, այս ամուսնութեամբ եւ այս դաշինքով չբերես գլխիդ խայտառակութիւն ու դժբախտութիւն։ Պատահում է, որ յափշտակիչներն ատենօք իշխեն, բայց երկինքն արդար եւ ժամանակը սխալն են շտկում։

WARWICK.
Չարախօ՛ս լեզու։

PRINCE OF WALES.
Ինչո՞ւ չես կոչում մօրս թագուհի։

WARWICK.
Զի յափշտակիչ քո հայրն է հենրին։ Եւ որքան մայրդ է ստոյգ թագուհի, այնքան դու՝ իշխան։

OXFORD.
Վորուիկ, ժխտում ես մեծն ջոն գոնտին, ով իսպանիայի մեծ մասը գրաւեց, իսկ գոնտից յետոյ՝ հենրի չորրորդին, ով իմաստութեան հայելին եղաւ իմաստուններին, իսկ յետոյ՝ հենրի հինգերորդ այրուն, որն իր զօրութեամբ ֆրանսիան նուաճեց, այս մեծ այրերից սերւում է ուղիղ մեր արքայ հենրին։

WARWICK.
Ինչո՞ւ քո սահուն ճառում չասացիր, թէ ինչպէս հենրի վեցերորդն իրաւ կորցրեց ամէն բան, ինչ նուաճել էր հենրի հինգերորդ փառապանծ արքան, չ՞է որ թշնամիք թաքուն կը ժպտան խօսքերիդ վրայ։ Դու տոհմածառի մասին ես խօսում, բայց վաթսուներկու տարին շատ կարճ է, որպէսզի ճշտես թագաւորական իրաւունքները։

OXFORD.
Ի՞նչ։ Դու խօսում ես թագաւորիդ դէ՞մ, ում ծառայել ես քառասուն տարի։ Չե՞ս շիկնում արդեօք դաւաճանելիս։

WARWICK.
Իսկ դու, օքսֆորդ, որ պաշտպանում ես ճշմարտութիւնը, ինչո՞ւ ես այժմ կեղծիքը կապում այդ տոհմածառին։ Ամօ՜թ քեզ։ Լքի՛ր դու հիմա հենրուն եւ քաջ էդուարդին ճանաչիր արքայ։

OXFORD.
Ես ինչպէ՞ս կոչեմ նրան ինձ արքայ, ով մահապատժի վճիռ արձակեց իմ աւագ եղբայր լորդ օբրու հանդէպ, սա կարծես քիչ էր, հօրս էլ կործանեց, երբ տարիքն առած՝ հազիւ էր քայլում, երբ բնութիւնը

տարել էր նրան մահուան դռան մօտ։ Ո՛չ, վորուիկ, քանի ուժ կայ իմ բազկին, պէտք է պաշտպանեմ լանկաստերներին։

WARWICK.
Իսկ ես էլ՝ եորքին։

KING LEWIS.
Չքնաղ մարգարիտ, արքայազն էդուարդ եւ կոմս օքսֆորդ, մեզ շնորհ արէք եւ մի կողմ անցէք, ուզում եմ խօսել կոմս վորուիկի հետ։

*[They stand aloof.]*

QUEEN MARGARET.
[Aside.] Երկինք, մի՛ թողնի, որ նա շողոմի արքային բարի։

KING LEWIS.
Վորուիկ, ինձ ասա քո խղճի մտօք, էդուա՞րդն է արդեօք ձեր ստոյգ արքան, չէի կամենայ միանալ նրան, եթէ արքան չէ նա օրինաւոր։

WARWICK.
Առհաւատչեան են փառքն ու անունս։

KING LEWIS.
Սիրելի՞ է նա ձեր ժողովրդին։

WARWICK.
Անչափ սիրելի, քանզի դժբախտ էր թագաւոր հենրին։

KING LEWIS.
Թո՛ղ մէկդի ամէն կեղծաւորութիւն, ճշմարիտն ասա նրա սիրոյ չափն իմ քրոջ հանդէպ։

WARWICK.
Այնպէս է սիրում, ինչ պաշտպանում է նման արքային։ Յաճախ եմ լսել՝ ինչպէս էր երդւում, որ իր այդ սէրը ծաղիկ է յաւէրժ, նրա արմատներն առաքինութեան հողով են սնւում, իսկ տերեւները ու պտուղները՝ արեւի լոյսով։ Այդ սէրը երբեք չգիտի խանդել, բայց քամահրանքը չի կարող տանել, թէ լէդի բոնան վիշտը չամոքի։

KING LEWIS.
Այժմ, քոյր, ասա՛ քո վճիռն հաստատ։

BONA.
Ես համաձայն եմ ձեր վճռի հետ։ [To Warwick.] Բայց խոստանում եմ, մինչեւ այս օրը յաճախ եմ լսել, թէ ինչ արժանիք ունի ձեր արքան իմ լսելիքն է միտքս առաջնորդել դէպի տենչանքը։

KING LEWIS.
Վորուիկ, քրոջս կը տամ Էդուարդին։ Ե՛կ, անմիջապէս մի պայմանագիր ստուերագծենք տուայրի մասին, որով ձեր արքան բոնայի հարուստ օժիտը պէտք է հակակշռի։ Մօ՛տ եկ, մարգարիտ, ու դարձիր վկայ, որ բոնան պիտի դառնայ անգլիայի արքայի կինը։

PRINCE OF WALES.
Էդուարդն անգլիայի թագաւորը չէ։

QUEEN MARGARET.
Խաբեբա՛յ վորուիկ, այս նենգ դաշինքով ի չիք դարձրիր յոյսն իմ օգնութեան քո գալուց առաջ լիւդովիկն հենրու լաւ բարեկամն էր։

KING LEWIS.
Այժմ էլ երկուսիդ բարեկամն եմ ես։ Բայց քանի որ ձեր իրաւունքները գահի նկատմամբ անզօր են ու թոյլ, որ երեւում է Էդուարդի պատշաճ յաջողութիւնից, ուստի կը լինի ողջամտութիւն, որ ես ազատուեմ իմ օգնութիւնից, թէեւ կը ստանաք ինձնից ամէն բան, ինչ պահանջում է ձեր ազնիւ դիրքը, եւ ինչ կարող եմ զիջել թագուհուդ։

WARWICK.
Արդ, շոտլանդիայում ապրում է հենրին հանգիստ ու խաղաղ, որտեղ նա չունի եւ ոչ մի տիրոյթ, ոչինչ էլ չունի ի կորուստ մատնեալ։ Գալով ձեզ, մեր խեղճ նախկին թագուհի, ապա ձեր հայրը թող ձեզ պաշտպանի, զի լաւ է նրան անհանգստացնել, քան ֆրանսիային։

QUEEN MARGARET.
Լռի՛ր, անպատկա՛ռ, անամօ՛թ վորուիկ, դու՝ արքաներին գահ բարձրացնող եւ գահից նետող, ես չեմ հեռանայ, մինչեւ իմ խօսքով եւ արցունքներով՝ իմ ճշմարտութեան վկաներն ազնիւ, չմերկացնեն քո նենգ մտքերը եւ քո գէշ տիրոջ խաբուսիկ սէրը, քանզի երկուսդ էլ նոյն արիւնարբու թռչնի թեւերն էք։

*[From the depths of the stage, the sound of someone running.]*

KING LEWIS.
Վորուիկ, ինձ կամ քեզ բերել են նամակ։

*[Messenger enters.]*

MESSENGER
Մեծատոհմ դեսպան, այս նամակները ձեզ է առաքել մարքիզ մոնտէգիւն, սա ձեզ, վեհափա՛ռ, մեր

թագաւորից։ Սրանք էլ, տիկին, ձեզ են ուղարկուած։ Սակայն չգիտեմ՝ ով է առաքել։

*[They read their letters.]*

OXFORD.
Ինձ հաճելի է, որ մեր թագուհին, չքնաղ տիրուհին ժպտում է նորից, մինչդեռ վորուիկը յօնքերն է կիտում։

PRINCE OF WALES.
Տե՛ս, թէ ինչպէս է լիւդովիկ արքան ոտքերը զարնում կարծես չարացած։ Ամէն ինչ դէպի լաւն է ընթանում։

KING LEWIS.
Ի՞նչ լուրեր, վորուիկ, եւ դուք, թագուհի։

QUEEN MARGARET.
Իմն անակնկալ բերկրանքով լցրեց վշտացած սիրտս։

WARWICK.
Դժգոհ եմ սաստիկ, ու սիրտս է տխուր։

KING LEWIS.
Ի՞նչ։ Ձեր թագաւորն ամուսնացել է լէդի գրեյի հե՞տ եւ արդ, որպէսզի զգուշօրէն մեղմեն քո եւ քո տիրոջ խարդախութիւնը, ուղարկում են ինձ այսպիսի՞ նամակ՝ յուսալով, որ ես պիտի հանդուրժե՞մ։ Ինձ հետ այսպիսի՞ դաշինք էր փնտրում եւ միտք էր դրել մեզ այդպէս ծաղրե՞լ։

QUEEN MARGARET.
Չէ՞ որ նախօրօք ձեզ զգուշացրի, ահա՛ ապացոյցն էդուարդի սիրոյ եւ կոմս վորուիկի ազնուութեանը։

WARWICK.
Արքայ լիւդովիկ, երդւում եմ այստեղ՝ երկնքի առաջ, եւ իմ երկնային փրկութեան յոյսով, որ ես մաքուր եմ էդուարդի մեղքից։ Նա իմ արքան չէ, զի անարգեց ինձ բայց աւելի շատ իրեն անպատուեց, եթէ կարող է իր ամօթն զգալ։ Միթէ՞ մոռացայ, որ ի սէր եորքի հարազատ հայրս ընկաւ վաղաժամ, միթէ՞ ներեցի վիրաւորանքը, որ նա հասցրեց եղբօրս աղջկան, միթէ՞ ես նրան արքայից թագով գահ չբարձրացրի, եւ միթէ՞ հենրուն ես չզրկեցի իր իրաւունքից։ Եւ ահա, տէր իմ, բոլորի դիմաց վարձատրւում եմ խայտառակութեամբ։ Բայց ամօ՜թ նրան, ես պատիւ ունեմ։ Որպէսզի կորցրած պատիւս գտնեմ, որ ես կորցրի նրա պատճառով, հրաժարւում եմ նրանից ահա եւ վերադառնում բարի հենրու մօտ։ Ազնիւ թագուհի, մոռանանք նախկին թշնամութիւնը, ես այսուհետէ ձեր հաւատարիմ ծառան կը լինեմ եւ կը հատուցեմ լէդի բոնայի վիրաւորանքին եւ հենրուն նորից կը բարձրացնեմ առաջուայ դիրքին։

QUEEN MARGARET.
Վորուի՛կ, այս բառերն ատելութիւնս փոխում են սիրոյ ես մոռանում եմ քո հին մեղքերը եւ ուրախանում, որ դու դառնում ես հենրուն բարեկամ։

WARWICK.
Այսպիսի անկեղծ, լաւ բարեկամով, եթէ հաճենայ լիւդովիկ արքան ընտիր զօրքերի մի ջոկատ մեզ տալ, կ՝իջնեմ մեր ափը նրանց հետ մէկտեղ ու բռնակալին կը վանեմ ուժով իր տիրած գահից։ Ջահէլ հարսնացուն նրան չի օգնի, իսկ կլարենսը, ինչպէս իմացայ իր նամակներից, գուցէ իր կապը կտրի եղբօրից, քանզի Էդուարդը աւելի բարձր է դասում տարփանքը, քան հայրենիքի ուժն ու պատիւը։

BONA.
Սիրեցեա՛լ եղբայր, ուրիշ ի՞նչ ձեւով կարող ես լուծել բոնայի վրէժը՝ թէ ոչ թագուհուն նեցուկ դառնալով։

QUEEN MARGARET.
Փառապա՛նծ արքայ, ինչպէ՞ս կարող է խեղճ հենրին ապրել, թէ դու չփրկես նրան այս աւէր յուսահատումից։

BONA
Նոյնն է թագուհու եւ իմ կռիւը։

WARWICK.
Նոյնը եւ իմը, գեղեցիկ բոնա, ես միանում եմ ձեզ, ահաւասիկ։

KING LEWIS.
Իսկ ես՝ թագուհուն, քեզ ու բոնային։ Ես որոշել եմ հաստատ ձեզ օգնել։

QUEEN MARGARET.
Թոյլ տուէք ասել բոլորի համար շնորհակալութիւն։

KING LEWIS.
Անգլիոյ սուրհանդակ, շտապ ետ դարձիր, ասա կարծեցեալ քո թագաւորին՝ Էդուարդին խարդախ, որ ֆրանսիայի լիւդովիկ արքան ծպտեալ մարդիկ է ուղարկում նրան, որ զուարճանան իր նոր հարսի հետ։ Դու տեսար, թէ ինչ այստեղ կատարուեց, գնա՛, վախեցրու քո թագաւորին։

BONA.
Ասա, դու նրան, որ ես յոյս ունեմ իրեն տեսնելու այրու շոր հագած, եւ պիտի կրեմ ուռենու պսակ։

QUEEN MARGARET.
Ասա դու նրան, որ սգի զգեստն արդէն հանել եմ, ու զէնք կայ ձեռքիս։

WARWICK.
Ասա՛, որ նա ինձ վիրաւորել է շուտով ես նրան գահընկէց կ՝անեմ։ Ահա՛ քո վարձը։ Գնա՛։

*[Messenger exits.]*

KING LEWIS.
Բայց, վորուիկ եւ դու, օքսֆորդ, հինգ հազար մարդով պէտք է ծովն անցնէք, կռուէք այդ խարդախ, նենգ Էդուարդի հետ։ Կարիքի դէպքում բարի թագուհին եւ իշխանն ազնիւ թարմ ուժ կը բերեն։ Գնալուց առաջ վանիր կասկածս ի՞նչ գրաւական դու կը տաս հաստատ հաւատարմութեան։

WARWICK.
Ահա իմ անխախտ հաւատարմութեան գրաւականը եթէ կամենան ջահէլ իշխանը ու մեր թագուհին, ապա Էդուարդին աւագ աղջկաս՝ ուրախութեանս, ես անմիջապէս կը միացնեմ սուրբ ամուսնութեամբ։

QUEEN MARGARET.
Համաձայն եմ ես։ Շնորհակալութիւն այդ մտքի համար։ Որդի իմ Էդուա՛րդ, նա գեղեցիկ է ու առաքինի, պէտք չէ յապաղել, մեկնի՛ր քո ձեռքը մեր դուքս վորուիկին եւ քո ձեռքի հետ անսասան երդուիր, որ դուքս վորուիկի աղջիկը միայն կինդ կը լինի։

PRINCE OF WALES.
Այո՛, ուզում եմ նրան կին առնել, քանզի այդ կոյսը արժան է դրան, ահա՛ իմ ձեռքը ի նշան ուխտիս։

*[The two shake hands.]*

KING LEWIS.
Պէտք չէ յապաղել, զօրք է հարկաւոր։ Իսկ դու, դուքս բուրբոն, մեր մեծ ծովակալ, այդ զօրքը պէտք է մեր արքայական տորմիղով տանես։ Ես կ՝ուզենայի, որ Էդուարդն ընկնէր չարաղէտ կռւում, զի Ֆրանսիայի տիրուհուն ծաղրեց այդ ամուսնութեամբ։ Բոլորը գնում են, բացի վորուիկից։

WARWICK.
Ես եկայ որպէս Էդուարդի դեսպան, բայց ետ եմ դառնում երդուեալ թշնամի, նա ինձ առաքեց, որ գլուխ բերեմ ամուսնութիւնը բայց զարհուրելի կռիւը կը լինի նրան պատասխան, միթէ՞ նա չունէր մի այլ հպատակ, որ ինձ դարձրեց ծաղրի առարկայ։ Բայց ո՞վ կարող է ինձ նման հեգնել նրա վիշտը խոր։ Ես բարձրացրի Էդուարդին գահին եւ ես էլ նրան գահընկէց կ՝անեմ ոչ այն պատճառով, որ խղճում եմ ես մեր հենրուն թշուառ, Էդուարդն ինձ ծաղրեց ես պէտք է լուծեմ իմ վրէժն արդար։ [Exits.]

ACT IV. SCENE I.
London. The Palace. Gloucester, Clarence, Somerset and Montague enter.

GLOUCESTER.
Այժմ ինձ ասա, եղբայր կլարենս, ինչպէս ես նայում էդուարդի այս նոր ամուսնութեանը միթէ՞ չի արել պատշաճ ընտրութիւն։

CLARENCE.
Աւա՛ղ, ֆրանսիան հեռու է մեզնից, ինչպէ՞ս կարող էր էդուարդն սպասել վորուիկի դարձին։

SOMERSET.
Տեարք իմ, վերջ տուէք։ Գալիս է արքան։

GLOUCESTER.
Հետն էլ՝ շնորհքով ընտրած հարսնացուն։

CLARENCE.
Ուզում եմ նրան ամէն ինչ ասել։

*[King Edward enters, attended by Lady Grey, now Queen; Pembroke, Stafford, Hastings and others. Four stand on one side of the Royal Couple and four on the other.]*

KING EDWARD.
Եղբայր կլարենս, քեզ դուր չի՞ գալիս մեր ընտրութիւնը։ Դու մտախոհ ես եւ, կարծես, դժգոհ։

CLARENCE.
Բայց ոչ աւելի, քան ֆրանսիայի լիւդովիկ արքան ու կոմս վորուիկը, որոնք այնքան թոյլ համարձակութիւն ու վճիռ ունեն, որ չեն զայրանում վիրաւորանքից։

KING EDWARD.
Թող առանց պատճառ նրանք զայրանան, ովքե՞ր են նրանք մէկը վորուիկն է, միւսը՝ ֆրանսիայի լիւդովիկ արքան, իսկ ես էդուարդն եմ՝ քո եւ վորուիկի թագաւորն ստոյգ։ Կարող եմ վարուել, ինչպէս կամենամ։

GLOUCESTER.
Ձեր կամքն է, քանզի մեր թագաւորն էք, սակայն շուտափոյթ ամուսնութիւնը յաջող չի լինում։

KING EDWARD.
Դու, եղբա՛յր ռիչարդ, նոյնպէ՞ս դժգոհ ես։

GLOUCESTER.
Օ՛, ո՛չ։ Աստուած չարասցէ, թէ կամենայի նրանց բաժանել, որոնց իրարու աստուած է կապել, եւ ցաւալի է անջատել նրանց, որ այդպէս յաջող մի զոյգ են կազմել։

KING EDWARD.
Մի կողմ թողէք ձեր արհամարհանքն ու սրտնեղութիւնը, ասէք, թէ ինչու լէդի գրեյը չպէտք է դառնար անգլիոյ թագուհին։ Դուք էլ, Սոմերսետ, եւ դուք, մոնտէգիւ, ձեր կարծիքն ասէք։

CLARENCE.
Ահա՛ կարծիքս լիւդովիկ արքան թշնամանում է ձեզ հետ, քանզի դուք ծաղրեցիք նրան՝ հարսնախօսելով բոնայի համար։

GLOUCESTER.
Ես, օգտուելով ազատ խօսելու ձեր շնորհումից, ասում եմ, տէր իմ, վորուիկն անարգուեց ձեր ամուսնութեամբ։

KING EDWARD.
Կը մեղմանա՞ն վորուիկն ու արքան, եթէ ես գտնեմ մի ինչ-որ հնարք։

MONTAGUE.
Ֆրանսիայի հետ նման մի դաշինք աւելի զօրեղ պիտի դարձնէր մեր տէրութիւնը՝ընդդէմ չարագոյժ, օտար հողմերի, քան թէ ընտանի ամուսնութիւնը։

HASTINGS.
Միթէ՞ չգիտէ ազնիւ մոնտէգիւն, որ բրիտանիան անվտանգ կ՝ապրի, եթէ ներքնապէս միաբան լինի։

MONTAGUE.
Այո՛, կը լինէր նա խիստ ապահով, եթէ ֆրանսիան կանգնէր մեզ նեցուկ։

HASTINGS.
Աւելի լաւ է՝ օգտուել նրա պիտանութիւնից, քան թէ վստահել նրան, մոնտէգիւ։ Աստուած մեզ նեցուկ եւ մէկ էլ՝ ծովը, որ նա մեզ տուեց որպէս անմատոյց, անառիկ պատնէշ, հէնց դրանով է երկիրն ապահով։

CLARENCE.
Այդ խօսքի համար լորդ հեստինգսն արժէր, որ հենգերֆորդի աղջկան առնէր։

KING EDWARD.
Ձեզ ի՞նչ։ Ես այսպէս էի մտադիր, այս անգամ կամքս կը դառնայ օրէնք։

GLOUCESTER.
Բայց ես կարծում եմ, ձերդ մեծութիւն, դուք լաւ չէք վարւում, երբ լորդ սքելսի դստեր տալիս էք ձեր աներորդուն, նա շատ աւելի յարմար կը լինէր ինձ կամ կլարենսին։ Դուք եղբայրներիդ զոհ էք մատուցում սիրեցեալ կնոջդ։

CLARENCE.
Ապա թէ ոչ՝ դուք չէիք կամենայ բոնուիլի դստերը ձեր կնոջ որդուն տալ եւ եղբայրներիդ թողնել ձեռնունայն, որ այլուր փնտրեն յաջողութիւնը։

KING EDWARD.
Աւա՛ղ, խեղճ կլարենս, դու դժգոհում ես այ՞դ կնոջ համար։ Քեզ կի՞ն կը ճարեմ։

CLARENCE.
Նոր կին ընտրելով՝ ցոյց տուեցիք ձեր դատավճիռը։ Թոյլ տուէք ինքս ինձ լինել միջնորդ, ուստի ես պէտք է հեռանամ ձեզնից։

KING EDWARD.
Քո կամքն է, սակայն Էդուարդն է արքան, նա ենթակայ չէ իր եղբօր կամքին։

QUEEN ELIZABETH.
Ազնիւ իշխաններ, դուք ճշմարտօրէն խոստովանեցէք, մինչ կը հաճենար արքան ինձ դարձնել իրեն թագուհի, միթէ՞ չեմ եղել ազնուատոհմ աղջիկ։ Ցածր ծագումով շատ ու շատ կանայք յաճախ են հասել այսպիսի բախտի։ Բայց քանի որ այս տիտղոսն ինձ ու իմ հարազատներին պատիւ է բերում, իսկ ձեզ բոլորիդ՝ խիստ տհաճութիւն, որոնց կ՝ուզէի հաճոյք պատճառել, ապա վտանգի ու աղէտների նախազգացումով բերկրանքս է մարում։

KING EDWARD.
Սէր իմ, խուսափիր այս իշխանների դժգոհութիւնից։ Քեզ ոչ մի աղէտ եւ ոչ մի վտանգ չի կարող բռնել, քանի դեռ ե՛ս եմ քո հաւատարիմ, ճիշտ բարեկամը եւ նրանց արքան, ում առաջ նրանք պէտք է խոնարհուեն։ Ո՛չ, նրանք պէտք է ե՛ւ քեզ ենթարկուեն, ե՛ւ անկեղծ սիրեն, եթէ չեն ուզում ատելութեանս հրով այրուել։ Ես քո նեցուկն եմ, թէ փորձեն ձեռք տալ, կը զգան զայրոյթիս վրէժն ահաւոր։

GLOUCESTER.
[Aside.] Ես ունկնդրում եմ եւ քիչ եմ խօսում, բայց աւելի շատ հարկ է խորհելու։

*[Messenger enters.]*

KING EDWARD.
Սուրհանդա՛կ, ի՞նչ լուր կամ ի՞նչ նամակներ։

MESSENGER.

Օ՛, նամակների փոխարէն, տէր իմ, բառեր եմ բերել, այն էլ այնպիսիք, որ չեմ յանդգնում աստ յիշատակել առանց իմ տիրոջ կարգադրութեան։

KING EDWARD.

Մենք թոյլ ենք տալիս, ասա՛, բայց հակիրճ փորձի՛ր, որ յիշես բառերը մէկ-մէկ։ Ի՞նչ պատասխանեց լիւդովիկ արքան մեր նամակներին։

MESSENGER.

Մեկնելուս պահին այս բառերն ասաց *«յայտնիր կարծեցեալ քո թագաւորին՝ էդուարդին խարդախ, որ ֆրանսիայի լիւդովիկ արքան ծպտեալ մարդիկ է ուղարկում նրան որ զուարճանան իր նոր հարսի հետ։»*

KING EDWARD.

Միթէ՞ լիւդովիկն այսքան խիզախ է, գուցէ դրել է ինձ հենրու տեղը՞։ Ի՞նչ ասաց բոնան, երբ որ իմացաւ՝ ամուսնացել եմ։

MESSENGER.

Լէդին շշնջաց մեղմ քամահրանքով *«ասա դու նրան, որ ես յոյս ունեմ իրեն տեսնելու այրու շոր հագած եւ պիտի կրեմ ուռենու պսակ։»*

KING EDWARD.

Չեմ պախարակում, քանզի չէր կարող նա քիչ բարբառել։ Վիրաւորուել է։ Սակայն ի՞նչ ասաց հենրու թագուհին։ Լսել եմ, որ նա եղել է այնտեղ։

MESSENGER.

*«Ասա դու նրան, որ սգի զգեստն արդէն հանել եմ, եւ զէնք կայ ձեռքիս։»*

KING EDWARD.

Պարզ է, ուզում է ամազոնուհու դերը կատարել։ Վորուիկն ի՞նչ ասաց այս վիրաւորիչ խօսքերից յետոյ։

MESSENGER.

Նա բոլորից շատ ձեր դէմ բորբոքուեց, ձերդ մեծութիւն եւ ինձ բաց թողեց այս բառերի հետ *«ասա՛, որ նա ինձ վիրաւորել է, շուտով ես նրան գահընկէց կ՝անեմ։»*

KING EDWARD.

Ի՞նչ, համարձակուեց դաւաճանն այդպէս յանդուգն խօսե՞լ։ Շատ լաւ, կը զինուեմ, ինձ զգուշացրեց։ Թող նրանք կռուով հատուցեն իրենց լկտիութեանը։ Բայց ասա, վորուիկն ընկերացե՞լ է մարգարիտի հետ։

MESSENGER.

Գերագոյն իմ տէր, նրանք կապուած են այնպիսի ամուր բարեկամութեամբ, որ իշխան էդուարդն

ուզում է առնել վորուիկի դստերն։

CLARENCE.
Թերեւս աւագին, իսկ ես՝ կրտսերին։ Արդ, մնաս բարով, եղբայր թագաւոր, ամո՛ւր կաց գահիդ, ես պիտի առնեմ կրտսեր աղջկան։ Թէեւ ես չունեմ թագաւորութիւն, բայց պսակի մէջ ցած չեմ քեզանից։ Ով սիրում է ինձ ու կոմս վորուիկին, թող ինձ հետեւի։

*[Clarence exits, followed by Somerset.]*

GLOUCESTER.
[Aside.] Ես չեմ հետեւի։ Մտքերս են թռչում աւելի հեռու, եւ ես մնում եմ ոչ թէ Էդուարդի, այլ թագի համար։

KING EDWARD.
Եղբայր կլարենսը եւ լորդ սոմերսետն, երկուսով անցան վորուիկի կողմը, բայց ես զինուել եմ ընդդէմ վատթարի, որ երբեւիցէ կարող է կեանքում տեղի ունենալ, եւ պէտք է փութալ այս խիստ ծայրայեղ պարագայի մէջ։ Փեմբրոկ եւ ստեֆորդ, դուք իմ անունից զինուոր հաւաքէք, պատրաստուէք ի մարտ, մօտ է թշնամին, շուտով ափ կ՝ելնի, ես ինքս անձամբ ձեզ կը հետեւեմ։

*[Pembroke and Stafford exit.]*

KING EDWARD [cont.]
Հեստինգս, մոնտէգիւ, գնալուց առաջ թոյլ տուէք մեկնել կասկածը հոգուս, դուք բոլորից էլ մօտ էք վորուիկին արեամբ եւ ուխտով։ Բայց խոստովանէք, որ դուք սիրում էք նրան ինձնից շատ։ Եթէ այդպէս է, նրա կողմն անցէք լաւ է ունենալ ստոյգ թշնամի, քան թէ կարծեցեալ երկու բարեկամ բայց թէ ուզում էք ինձ որդեգրել ձեր հաւատարիմ հպատակութեանը, տուէք ընկերոջ սրբազան երդում, եւ չեմ կասկածի երբեք ձեզ վրայ։

MONTAGUE.
Թող աստուած օգնի, որպէսզի ցոյց տամ, թէ ես ինչքան եմ ձեզ հաւատարիմ։

HASTINGS.
Եւ ինձ, թէ ինչպէս ձեզ կը ծառայեմ։

KING EDWARD.
Դու, եղբա՛յր ռիչարդ, չե՞ս մնայ ինձ մօտ։

GLOUCESTER.
Այո՛, ի հեճուկս թշնամիներիդ։

KING EDWARD.
Եթէ այդպէս է, ես հաւատում եմ իմ յաղթանակին։ Ուրեմն, առա՜ջ, պէտք չէ կորցնել եւ ոչ մի վայրկեան, քանի դեռ կրկին մենք չենք հանդիպել վորուիկի զօրքին։

*[They exit.]*

]0[

ACT IV. SCENE II.
A plain in Warwickshire. Warwick and Oxford enter with French soldiers.

WARWICK.
Հաւատա՛, միլորդ, գործերն յաջող են, հասարակ մարդիկ, բազմութիւն կազմած, մեր կողմն են անցնում։

[Clarence and Somerset enter.]

WARWICK [cont.]
Բայց ահա՛, նայի՛ր, մեզ մօտ են գալիս լորդ սոմերսետը եւ լորդ կլարենսը։ Լորդեր, դուք իսկոյն պատասխան տուէք բարեկա՞մ էք մեզ։

CLARENCE.
Անկասկա՛ծ, տէր իմ։

WARWICK.
Բարո՛վ ես եկել, ինձ մօտ, կլարենս, ողջո՛յն, Սոմերսետ։ Թող վախկոտ կոչուեմ, թէ երկմտօրէն նայեմ այն մարդուն, ով մաքուր սրտով ձեռք է մեկնում ինձ՝ ի նշան սիրոյ։ Թէ ոչ, կլարենս, ես կարող էի մտածել, որ դու՝ Էդուարդի եղբայր, ձեւանում ես մեզ որպէս բարեկամ։ Բայց բարի՛ գալուստ, ազնիւ կլարենս, աղջիկս քոնը կը լինի, անշո՛ւշտ, իսկ ինչո՞ւ հիմա նրան չբռնեն գիշերուայ խաւար պատսպարանում, երբ քո եղբայրը անզգուշաբար բանակ է խփել, երբ զինուորները դարան են մտել քաղաքների շուրջ, երբ սովորական պահակ է հսկում նրան միայնակ։ Մեր դիտազօրներն այդ գործն հեշտութեամբ գլուխ կը բերեն։ Ինչպէս ոդիսեւսն ու դիոմեդը, որ սօղոսկեցին խորամանկօրէն ու խիզախաբար արքայ ռեսուսի  վրանների տակ, որպէսզի տանեն թրակեան ձիերը։ Այսպէս նաեւ մենք, հագած գիշերուայ սեւ պատմուճաններ, կարող ենք յանկարծ շարքից դուրս հանել նրա պահակին, բռնել Էդուարդին։ Սակայն չեմ ասում՝ նրան սպանել, քանզի ուզում եմ բռնել յեղակարծ։ Դուք, որ այս գործում ինձ նեցուկ դարձաք, հենրուն հռչակէք եւ հետեւեցէք ձեր առաջնորդին։

*[Shouts of "Henry!" can be heard.]*

WARWICK [cont.]
Ուստի լռելեայն անցնենք մեր գործին, աստուա՛ծ, սուրբ գեւո՛րգ, դուք մեզ զօրաւիգ՝ յանո՛ւն վորուիկի

ու նրա ազնիւ բարեկամների։

*[They all exit.]*

][][

## ACT IV. SCENE III.

Edward's camp, near Warwick. three Watchmen enter to guard the King's tent.

WATCHMAN I.
Գնացէ՛ք, տղաներ, բռնէք ձեր տեղը թագաւորն արդէն ուզում է քնել։

WATCHMAN II.
Նա դեռ չի՞ քնել։

WATCHMAN I.
Ո՛չ։ Հանդիսաւոր երդում է տուել, որ նա չի պառկի, չի հանգստանայ, քանի դեռ ինքը կամ թէ վորուիկը չեն ջնջուել երկրի երեսից իսպառ։

WATCHMAN II.
Թերեւս վաղն այդ օրը լինի, եթէ վորուիկը, ինչպէս ասում են, մօտիկ է արդէն։

WATCHMAN III.
Բայց ասա՛, խնդրեմ, ո՞վ է այս լորդը, որ նոյն վրանում թագաւորի հետ հանգիստ է առնում։

WATCHMAN I.
Դա լորդ հեստինգսն է՝ մեր թագաւորի մօտ բարեկամը։

WATCHMAN III.
Բայց ինչո՞ւ արքան հրամայել է, որ քաղաքների շուրջն իջեւանեն զօրավարները, իսկ ինքը մնայ ցուրտ երկնքի տակ։

WATCHMAN II.
Վտանգն աւելի պատիւ է բերում։

WATCHMAN III.
Ա՛խ, տուէք պատիւ ինձ հանգստի հետ, դրանք սիրում եմ ես վտանգաւոր պատուից առաւել։ Եթէ վորուիկը յանկարծ իմանար, թէ իր թագաւորն ինչ է հրամայել, նա կ՝արթնացնէր Էդուարդին, անշուշտ։

WATCHMAN I.
Թէ զինուորները չփակեն ճամփան։

WATCHMAN II.
Դրա համար էլ վրանն ենք հսկում, որ գիշերային այցելուներից նրան պաշտպանենք։

*[Suddenly Warwick, Clarence, Oxford, Somerset and Soldiers enter.]*

WARWICK.
Նայեցէ՛ք, ահա՛ նրա վրանը, նայէք, սրանք են քաջ պահակները, Օ՛, արիացէ՛ք, իմ բարեկամներ, ժամ է գործելու։ Ինձ հետեւեցէք, եւ մենք կը բռնենք էդուարդ արքային։

WATCHMAN I.
Ո՞վ է գալիս։

WATCHMAN II.
Կա՛ց, թէ ոչ՝ կը մեռնես։

*[Warwick and the rest all cry 'Warwick! Warwick!' and set upon the Watchmen, who flee, crying 'To arms! To arms!' Warwick and the rest following them. Soon drumming can be heard. Warwick and others re-enter with a confused King Henry in his dressing gown, sitting in a chair. Gloucester and Hastings fly over the stage.]*

SOMERSET.
Ովքե՞ր են փախչում։

WARWICK.
Հեստինգսն ու ռիչարդն, աստուա՛ծ նրանց հետ։ Ահա՛ դուքսն ինքը։

KING EDWARD.
Դո՞ւքս։ Ինչո՞ւ, վորուի՞կ։ Երբ վերջին անգամ մենք բաժանուեցինք, դու ինձ կոչեցիր քո թագաւորը։

WARWICK.
Այո՛, բայց հիմա փոխուել է գործը։ Ինձ անպատուեցիր իբրեւ դեսպանիդ, ես քեզ գահընկէց արեցի, էդուա՛րդ, եկայ, որ դարձնեմ քեզ եորքի դուքսը։ Աւա՜ղ, դու ինչպէ՞ս պիտի իշխէիր թագաւորութիւն, երբ որ չգիտես, թէ ինչպէս վարուել քո դեսպանի հետ, ինչպէս գոհանալ լոկ մի կնոջով, ինչպէս եղբօր հետ վարուել եղբօր պէս, ինչպէս մտածել մեր երկրի մասին, ինչպէս պաշտպանուել թշնամիներից։

KING EDWARD.
Եղբայր կլարենս, դո՞ւ էլ ես այստեղ տեսնում եմ, պէտք է էդուարդն ակամայ գահընկէց լինի։ Վորուի՛կ, չնայած անյաջողութեանս, էդուարդը պէտք է քեզ ու քո բոլոր մեղսակիցներին նայի յանց արքայ։ Թէեւ ֆորտունան չարակամօրէն փորձում է գահից ի վայր ինձ շրջել, բայց նրա անուից զօրեղ է

հոգիս։

WARWICK.
Այսպէս հոգուդ մէջ թագաւոր եղիր։

[He removes the crown from King Edward's head.]

WARWICK [cont.]
Բայց պէտք է թագը պատկանի հենրուն, նա մեր իսկական արքան կը լինի, իսկ դու՝ ստուերը։ Միլորդ Սոմերսետ, հոգ տարէք խնդրեմ, որ դուքս Էդուարդին առաջնորդեն եորք, արքեպիսկոպոս եղբօրս յանձնեն։ Երբ փեմբրոկի հետ կռիւս աւարտեմ, ես ձեզ մօտ կը գամ, կ՝ասեմ մէկ առ մէկ, թէ ինչ պատասխան տուեցին լիւդովիկն ու լէդի բոնան, արդ, մնա՛ս բարով, եորքի բարի դուքս։

KING EDWARD.
Մարդը գերի է իր ճակատագրին զուր է կռիւը, երբ միանում են յորձանքն ու քամին։

*[Soldiers drag Edward away.]*

OXFORD.
Ազնի՛ւ իշխաններ, ի՞նչ է մեզ մնում, եթէ ոչ՝ շարժուել զօրքի հետ լոնդոն։

WARWICK.
Առաջին քայլով՝ պէտք է ազատել թագաւոր հենրուն եւ արքայական գահին նստեցնել։

*[They exit.]*

][][

ACT IV. SCENE IV.
London. The Palace. Queen Elizabeth and Rivers enter.

RIVERS.
Տիրուհի, ինչո՞ւ յանկարծ փոխուեցիր։

QUEEN ELIZABETH.
Դու, եղբայր ռիւերս, միթէ՞ չգիտես, թէ մեր Էդուարդին ինչպիսի փորձանք վերջերս եկաւ։

RIVERS.
Ի՞նչ։ Տանուլ տուեց կարեւոր մի մա՞րտ՝ ընդդէմ վորուիկի։

QUEEN ELIZABETH.
Ո՜չ, մենք կորցրինք միայն արքային։

RIVERS.
Արքան սպանուա՞ծ։

QUEEN ELIZABETH.
Գրեթէ այո՛, քանզի գերուած է։ Գուցէ դաւաճան պահակն է մատնել, կամ թէ թշնամին բռնել է յանկարծ, եւ, ինչքանով ինձ յաջողուեց պարզել, յանձնել են եորքի եպիսկոպոսին՝ վայրագ վորուիկի եղբօրն հարազատ ուրեմն, նա էլ մեր թշնամին է։

RIVERS.
Պէտք է խոստանամ՝ տխուր է լուրը, բայց դու, տիրուհի, պէտք է համբերես, թող շահած մարտով ժպտայ վորուիկը, հոգ չէ, վաղ թէ ուշ նա տանուլ կը տայ։

QUEEN ELIZABETH.
Ցարդ կեանքս է պահում այդ յոյսն, հաւատա՛։ Եւ չի ընկճուի իմ հոգին երբեք, ի սէր էդուարդի ազնիւ պտուղի, որ ես կրում եմ իմ կրծքի ներքոյ, դա ստիպում է սանձել զայրոյթս, տանել իմ խաչը։ Ա՛խ, ես զսպում եմ իմ արցունքները եւ արիւն ծծող հառաչանքներս, որ այդ պտուղը յանկարծ չհանգչի՝ անգլիական գահի ժառանգն օրինաց։

RIVERS.
Բայց ի՞նչ պատահեց վորուիկին յետոյ։

QUEEN ELIZABETH.
Ասում են, որ նա գնում է լոնդոն, որպէսզի նորից թագով զարդարի ճակատը հենրու, իսկ մնացեալը ինքդ կռահիր արքայ էդուարդի բարեկամները պէտք է կործանուեն։ Սակայն որպէսզի այդ բռնակալի գործը խափանուի, դու մի հաւատա երդմնազանցին, ես անմիջապէս կը գնամ տաճար, որ փրկեմ թէկուզ պտուղն էդուարդի։ Այնտեղ կը թաքնուեմ բռնութիւններից ու խարդաւանքից։ Դեհ, գնա՛նք, փախչե՛նք, քանի կարող ենք, փրկութիւն չկայ, եթէ մենք ընկնենք ձեռքը վորուիկի։

*[They exit.]*

]|[

ACT IV. SCENE V.
A park near Middleham Castle in Yorkshire. Gloucester, Hastings and Sir William Stanley enter.

GLOUCESTER.
Արդ, լորդ հեստինգս ու սըր ստենլի, դուք մի՛ զարմանաք, որ կանչել եմ ձեզ գլխաւոր թաւուտն այս գբօսայգու։ Դուք արդէն գիտէք, որ իմ եղբայրը՝ մեր թագաւորը, գերի է այստեղ եպիսկոպոսին։ Բայց

նա վարւում է նրա հետ բարի, եւ իմ եղբայրը թոյլ հսկողութեամբ յաճախ է գալիս այս կողմը որսի։ Ես նրան թաքուն իրազեկ դարձրի, որ եթէ որսի պատրուակով գայ այս ժամին այստեղ, ապա կը գտնի հեծեալ ընկերներ, ովքեր պատրաստ են նրան փրկելու այս գերութիւնից։

*[King Edward and a Hunter enter.]*

HUNTER.
Այ՛ս կողմը, տէր իմ, կը գտնէք որսը։

KING EDWARD.
Ո՛չ, իմ բարեկամ, նայիր այս կողմը, ուր որսորդներն են։ Եղբա՛յր գլոստեր, լորդ հեստինգս եւ այլք, եկել էք այստեղ որ յափշտակէ՞ք եպիսկոպոսի ազնիւ եղջերուին։

GLOUCESTER.
Ժամանակն ու գործն հրամայում են, որ աճապարենք։ Ձիդ սպասում է անտառի եզրին։

KING EDWARD.
Ո՞ւր պիտի գնանք։

HASTINGS.
Դէպի լին, տէր իմ, այնտեղից՝ նաւով դէպի ֆրանսիա։

GLOUCESTER.
Լաւ է մտածուած։ Հաւատա, նոյնն էլ մտքովս էր անցել։

KING EDWARD.
[To Stanley.] Քեզ կը հատուցեմ քո ջանքի համար։

GLOUCESTER.
Ո՞ւմ ենք սպասում։ Արդ, չէ ժամանակ խօսք ու զրոյցի։

KING EDWARD.
Որսո՛րդ, ի՞նչ կ՝ասես, չե՞ս գալիս մեզ հետ։

HUNTER.
Աւելի լաւ է՝ ճիշտ այդպէս վարուել, քան այստեղ մնալ ու կառափնատուել։

GLOUCESTER.
Ուրեմն, գնանք, պէտք չէ շաղակրատել։

## KING EDWARD.

Դեհ, մնա՛ս բարեաւ, լորդ եպիսկոպոս, վահանիր դու քեզ խոժոռ վորուիկից։ Աղօթի՛ր, որ ես նորից տիրանամ իմ ոսկեայ թագին։

*[They exit.]*

]|[

## ACT IV. SCENE VI.

London. The Tower. King Henry, Clarence, Warwick, Somerset, Young Henry, Richmond, Oxford, Montague and the Lieutenant of the Tower all enter.

## KING HENRY.

Ազնիւ բերդապետ, այժմ, երբ աստուած ու բարեկամներդ Էդուարդին զցին արքունի գահից, երբ ազատութեան փոխուեց վերստին իմ գերութիւնը, երկիւղս՝ յոյսի ու վիշտս՝ խինդի, ինչպիսի՞ պատշաճ քեզ վարձ հատուցեմ։

## LIEUTENANT.

Հպատակները իրաւունք չունեն իրենց տէրերից ոչինչ պահանջել, բայց եթէ համեստ հարցը ուժ ունի, ապա խնդրում եմ, ինձ ներէ՛ք, արքայ։

## KING HENRY.

Ինչո՞ւ, բերդապետ։ Այն բանի համա՞ր, որ բարեացակամ եղաք իմ հանդէպ։ Ո՛չ, վստահ եղիր, քո բարութեանը պէտք է հատուցեմ պատշաճին հաւուր, զի գերութիւնս այն փոխարինեց ախորժ բերկրանքով։ Այո՛, այնպիսի հեշտալուր բերկրանք, որ ճաշակում է վանդակած հաւքը, երբ դիւթուած երգով՝ մոռանում է իր ազատութիւնը։  բայց աստծուց յետոյ դու, բարի վորուիկ, ինձ ազատեցիր, շնորհակալութի՛ւն ե՛ւ աստծուն, ե՛ւ քեզ նա արարիչն է, իսկ դու՝ գործիքը։ Որպէսզի յաղթեմ ճակատագրի ատելութեանը գոյութեան բոցով, որտեղ չի կարող բախտն ինձ վնասել, որպէսզի օրհնեալ այս երկրի մարդիկ իմ չար աստղերից երբեք չտանջուեն, ես, վորուիկ, թէեւ կրում եմ թագն իմ, բայց քեզ եմ յանձնում ղեկն իշխանութեան, քանզի յաջող ես քո գործերի մէջ։

## WARWICK.

Տէր իմ, շարունակ փառաբանուել էք առաքինութեամբ, արդ, զուգորդում էք ձեր իմաստութիւնն առաքինութեանը՝ կանխատեսելով ճակատագրի թշնամութիւնը։ Քչերն են միայն նրանից փախչում եւ իրենց աստղից գթութիւն հայցում։ Բայց վրիպում էք մի բանում, արքա՛յ, պէտք չէ ինձ ընտրել, երբ կլարենսը կայ։

## CLARENCE.

[To Warwick] Դու ես արժանի իշխանութեանը, չ՞է որ ծնուելիս աստուածները քեզ շնորհ բերեցին ե՛ւ ձիթենու ճիւղ, ե՛ւ դափնեպսակ, որ դու ամէնուր բախտաւոր լինես, ուստի զիջում եմ քեզ սիրայօժար։

WARWICK.
Իսկ ես ուզում եմ, որ կլարենսը դառնայ հովանի։

KING HENRY.
Կլարենս ու վորուիկ, ձեռքերդ ինձ տուէք, միացրէ՛ք իրար, հետն էլ՝ ձեր սիրտը, որ չարգելակի երկպառակութիւնն իշխանութեանը։ Երկուսդ էլ եղէք երկրին հովանի, իսկ ես, իմ կեանքի վերջին օրերը աղօթք անելով, պէտք է սպառեմ մենակութեան մէջ՝ ի հատուցումն բոլոր մեղքերիս՝ տիրոջն օրհնելով։

WARWICK.
Ի՞նչ կ՝ասես, կլարե՛նս, քո տիրոջ կամքին։

CLARENCE.
Ես համաձայն եմ, թէ վորուիկն ուզի, զի կ՝ապաւինեմ լոկ նրա բախտին։

WARWICK.
Կամքիս հակառակ՝ պիտ համաձայնեմ, եւ ինչպէս հենրու երկու ստուերներ՝ մենք պիտի քաշենք միեւնոյն լուծը եւ լցնենք նրա տեղն անմիջապէս։ Ես կառավարման կշիռն եմ զգում, մինչդեռ նա պէտք է ըմբոշխնի անդորրն ու մեծարումը։ Իսկ մեզ, կլարենս, անհրաժեշտ է, արդ, էդուարդին իսկոյն կոչել դաւաճան, գրաւել նրա ինչքն ու կալուածքը։

CLARENCE.
Ուրիշ ի՞նչ, վորուիկ, որոշել նրա ժառանգութիւնը։

WARWICK.
Այո՛, կլարենս, նրանից քեզ էլ բաժին կը հանենք։

KING HENRY.
Բայց ձեր առաջին կարեւոր գործը պէտք է այն լինի, որ ձեր թագուհուն՝ իմ մարգարիտին, ու իմ էդուարդին դուք վերադարձնէք իսկոյն ֆրանսիայից։ Քանի դեռ նրանց չեմ տեսել այստեղ, վախն ու կասկածը կիսով չափ պիտի խաւարացնեն իմ ազատութեան ուրախութիւնը։

CLARENCE.
Դա հնարաւոր աճապարումով ի գործ կը դրուի։

KING HENRY.
Միլորդ Սոմերսետ, ո՞վ է այս տղան, ո՞ւմ խնամում էք այսպէս քնքշօրէն։

SOMERSET.
Տէր իմ, հենրին է, ռիչմոնդի կոմսը։

KING HENRY.
Մօտ եկ, անգլիայի յոյս ու ապաւէն։

*[He puts his hands on Young Henry's head.]*

KING HENRY [cont.]
Օ՛, եթէ գաղտնի ուժերն են յուշում ճշմարտութիւնը նախազգաց ոգուս, ապա այս ջահէլ, գեղեցիկ տղան օրհնանք կը բերի մեր տէրութեանը։ Նրա հայեացքում կայ մի անխռով վեհափառութիւն, աստուած արարեց նրա գլուխը լոկ թագի համար, իսկ ձեռքերն ուժեղ՝ մական բռնելու, որ գեղեցկացնի իր ժամանակին գահն արքայական։ Մեծարե՛նք նրան, քանզի այս տղան ձեզ աւելի շատ բարիք է տալու, քան ես տուեցի ձեզ միայն վնաս։

*[Messenger enters.]*

WARWICK.
Ի՞նչ լուր, բարեկա՛մ։

MESSENGER.
Ձեր եղբօր ձեռքից խոյս տուեց էդուարդն ու փութանակի փախաւ բուրգունդիա։

WARWICK.
Անախո՛րժ լուրեր, բայց ինչպէ՞ս փախաւ։

MESSENGER.
Նրան փախցրին ռիչարդ գլոստերը ու լորդ հեստինգսը, որ դարանամուտ սպասում էին անտառի եզրին։ Նրան փախցրին եպիսկոպոսի քաջ որսորդներից, զի նա ամէն օր որսի էր գնում։

WARWICK.
Իմ եղբայրն եղաւ սաստիկ անզգոյշ իր գերու հանդէպ, բայց ե՛կ այստեղից գնանք, վեհապե՛տ, ու մեր վէրքերին ճարենք սպեղանի։

*[Exit all save Somerset, Richmond and Oxford.]*

SOMERSET.
Ինձ դուր չի գալիս փախուստն էդուարդի, զի կասկած չկայ, որ նրան կ՝օգնեն բուրգունդիայում, եւ մենք կը կանգնենք նախկինից էլ խիստ մեծ կռուի առաջ։ Որքան որ հենրու գուշակութիւնը սիրտս ուրախացրեց այն պայծառ յոյսով, որ նա կապում է մեր ռիչմոնդի հետ, այնքան էլ սիրտս կասկած են ձգել ընդհարումները, որ յետագայում չարիք կը դառնան բոլորիս համար։ Ուստի, լորդ օքսֆորդ, որպէսզի խոյս տանք վատթարագոյնից, շտապ ուղարկենք պատանուն բրետան, մինչեւ որ անցնի հողմը գժտութեան։

OXFORD.
Թէ գահ բարձրանայ Էդուարդը վերստին, ազատում չկայ մեզ ու ռիչմոնդին։

SOMERSET.
Թող այդպէս լինի, թող գնայ բրետան փութով, իշխաններ, կտրենք այս ճամփան։

*[They exit.]*

][][

ACT IV. SCENE VII.
Before York. King Edward enters with Gloucester, Hastings, and Soldiers.

KING EDWARD.
Իմ եղբայր ռիչարդ, լորդ հեստինգս եւ այլք, դեռ մինչեւ հիմա մատուցում է մեզ ճակատագիրը եւ ասում, որ ես կարող եմ դարձեալ նուաղեալ դիրքս փոխել վեհապետ հենրու գահի հետ։ Մենք յաջողութեամբ նորից ծովն անցանք եւ բուրգունդիայից բերինք ցանկալի օժանդակութիւն։ Արդ, ի՞նչ է մնում, երբ ռեւենսպուրգից հասել ենք եորքի դարպասների տակ, եթէ ոչ՝ մտնել մեր դքսութիւնը։

GLOUCESTER.
Գոց է դարպասը։ Ինձ դուր չի գալիս երբ դռան սեմին ոտքն է սայթաքում, վտանգն է տան մէջ դարանել թաքուն։

KING EDWARD.
Դէ՛հ լաւ, մարդ աստծոյ, գուշակութիւնից պէտք չէ վախենալ, ուղիղ կամ խոտոր ճանապարհներով պէտք է ներս մտնել, քանզի այստեղ են մեզ միանալու բարեկամներս։

HASTINGS.
Տէր իմ ես նորից դուռը կը բախեմ։

*[The Mayor and his Retinue enter on the Wall.]*

MAYOR.
Մենք առել էինք ձեր գալու լուրը, փրկութեան համար գոցել ենք դուռը, քանզի մենք պարտ ենք հենրուն հնազանդուել։

KING EDWARD.
Արդ, եթէ հենրին ձեր թագաւորն է, ապա եորքի դուքսն Էդուարդն է գոնէ։

MAYOR.
Դուք ճշմարիտ էք, աւելի նուազ ձեզ չեմ ճանաչում։

KING EDWARD.
Ես դքսութիւնս եմ ձեզնից պահանջում, որով, իսկապէս, ես գոհ կը մնամ։

GLOUCESTER.
[Aside.] Ոտքին տեղ արաւ, կրունկին էլ կ՝ուզէ։

HASTINGS.
[To the Mayor.] Դեռ կասկածո՞ւմ էք, բացէք դարպասը, մենք բարեկամ ենք թագաւոր հենրուն։

MAYOR.
Այդ դէպքում պէտք է դարպասը բանանք։ [He descends.]

GLOUCESTER.
Քաջ հրամանատարն է իսկոյն համոզւում։

HASTINGS.
Բարի ծերունին կ՝ուզէր անձկանոք, որ ամենայն ինչ յաջող ընթանայ, եւ ինքն էլ քաշուի մի խաղաղ անկիւն բայց ներս մտնելով՝ ես չեմ կասկածում, որ պէտք է նրան ու նրա բոլոր քաջ եղբայրներին շուտ խելքի բերել։

*[Enter, below, the Mayor and two Aldermen.]*

KING EDWARD.
Լորդ քաղաքապետ, այս դարպասները գոց պէտք է լինեն գիշերը կամ թէ կռուի ժամանակ։ Պէտք չէ վախենալ, տո՛ւր ինձ, սիրելիս, բանալիները։

*[Takes the keys.]*

KING EDWARD [cont.]
Էդուարդի կամքն է պաշտպանել քաղաքն ու քեզ՝ նրանց հետ, ովքեր ուզում են նրան հետեւել։

*[Montgomery enters with Soldiers.]*

GLOUCESTER.
Եղբա՛յր, ահա եւ ջոն մոնտգոմերին՝ մեր հաւատարիմ, լաւ բարեկամը, թէ չեմ սխալւում։

KING EDWARD.
Բարո՛վ ես եկել, բայց ինչո՞ւ զինուած։

MONTGOMERY.
Որպէսզի օգնեմ բարի Էդուարդին փորձութեան ժամին, ինչպէս վայել է ազնիւ ծառային։

KING EDWARD.
Շնորհակալութի՛ւն, սըր մոնտգոմերի։ Մոռացութեան ենք մենք տալիս հիմա մեր իրաւունքը թագի նկատմամբ եւ պահանջում ենք մեր դքսութիւնը, մինչեւ որ աստուած աւելն ուղարկի։

MONTGOMERY.
Այն դէպքում, Էդուա՛րդ, մնացէ՛ք բարով, ես պէտք է գնամ, քանզի բերել եմ ծառայութիւնս մեր թագաւորին եւ ոչ թէ դքսին։ Զարկի՛ր, թմբկահա՛ր, գնանք այստեղից։ [Drums begin.]

KING EDWARD.
Սպասի՛ր, սըր ջոն, ուզում եմ քեզ հետ որոշել՝ ինչպէս կարող ենք նորից գահը ստանալ։

MONTGOMERY.
Խորհել ձեզ պէտք չէ, ասեմ ձեզ շիտակ, թէ չէք կարող ձեզ հռչակել արքայ, ես թողնում եմ ձեզ բախտի քմայքին եւ գնում հեռու, որ կասեցնեմ ձեզ օժանդակող ուժերը բոլոր։ Ինչո՞ւ ոգորել, երբ թագ չես ուզում։

GLOUCESTER.
Ի՞նչ օգուտ, եղբայր, երկդիմ խօսքերից։

KING EDWARD.
Երբ մենք զօրանանք, կը ներկայացնենք մեր իրաւունքը, մինչ այդ խնամքով պէտք է թաքցնել մեր նպատակը։

HASTINGS.
Կորի՛ր այստեղից, միտք կասկածելի, զէնքերն են միայն հարցերը լուծում։

GLOUCESTER.
Խիզա՛խ ոգիներ, շտապ մագլցէք դուք գահերն ի վեր։ Եղբա՛յր, թագաւոր քեզ կը հռչակենք, եւ այդ համբաւը կը բերի բազում բարեկամներ քեզ։

KING EDWARD.
Թող լինի, ինչպէս դուք էք ցանկանում, իրաւունքն իմն է, հենրին է, իրա՛ւ, թագս գողացել։

MONTGOMERY.
Խօսում է տէրն իմ արքային վայել, արդ, պէտք է լինեմ Էդուարդին պաշտպան։

HASTINGS.
Էդուարդին հռչակենք արքայ, հէ՛յ, զինուո՛ր, կարդայ հռչակումն իսկոյն։

SOLDIER.
[Reads.] *«Աստծոյ ողորմածութեամբ՝ մենք Էդուարդ չորրորդս, թագաւորն անգլիայի ու ֆրանսիայի, տէր իռլանդիայի եւ այլն։»*

MONTGOMERY.
Ով որ ժխտում է թագը Էդուարդի, թող գայ եւ ինձ հետ սա մենամարտի։ [Throws down his gauntlet.]

EVERYONE.
Թող երկա՜ր ապրի Էդուարդ չորրորդը։

KING EDWARD.
Շնորհակալութի՜ւն, քաջ մոնտգոմերի եւ ձեզ բոլորիդ, թէ բախտն ինձ օգնի, ես կը հատուցեմ ազնուութեանը։ Այս գիշեր մնանք մենք այստեղ՝ եորքում։ Երբ առաւօտեան արեւն իր կառքով բարձրանայ ծայրին այս հորիզոնի, կ՝երթանք ընդառաջ ե՛ւ քաջ վորուիկին, ե՛ւ նրա զօրաց։ Լաւ եմ ճանաչում՝ հենրին զինուոր չէ։ Ա՜խ, չա՜ր կլարենս, ինչ գէշութիւն ես շողոմել հենրուն, մոռանալ, աւա՜ղ, եղբօրն հարազատ։ Ինչ էլ որ լինի՝ քեզ ու վորուիկին պէտք է հանդիպեմ զինուորնե՛ր, մարտը մերն է, անկասկա՜ծ, դուք կռուից յետոյ կը ստանաք մեծ վարձ։

*[They all exit.]*

][][

ACT IV. SCENE VIII.
London. The Palace. King Henry, Warwick, Montague, Clarence, Oxford and Exeter all enter.

WARWICK.
Ի՞նչ խորհուրդ կը տաք, ազնի՜ւ իշխաններ, ծոյլ հոլանդացոց, սաստիկ ռազմատենչ գերմանների հետ բելգիայից Էդուարդն ապահովապէս նեղուցը անցել ու իր գնդերով գալիս է լոնդոն։ Բազում յեղամիտ մարդիկ են նրա շուրջը հաւաքուել։

OXFORD.
Թող զօրք հաւաքեն, ետ մղեն նրանց։

CLARENCE.
Հեշտ է կոխոտել կրակն սկզբում, բայց երբ բորբոքուեց, գետն էլ չի մարի։

WARWICK.
Ես վորուիկշիրում ունեմ ճշմարիտ շատ բարեկամներ, խաղաղասէր են, բայց խիզախաբար կը նետուեն մարտի ես պէտք է նրանց ժողովեմ իմ շուրջ։ Որդի կլարենս, կանչիր սեֆոլկում, նորֆոլկում, քէնտում խիզախ ասպետներ, ազնուականներ դրօշիդ ներքոյ։ Եղբա՜յր մոնտէգիւ, դու բեկինգեմում

նորթեմպտօնում ու լեսեստերշիրում գտիր այն մարդկանց, ովքեր պատրաստ են խօսքդ լսելու, իսկ դու, քաջ օքսֆորդ, ում շատ են սիրում քո օքսֆորդշիրում, հաւաքիր ազնիւ բարեկամներիդ։ Գերագոյն տէր իմ, կը մնաք այստեղ դուք՝ շրջապատուած ձեր հաւատարիմ լոնդոնցիներով, ինչ կղզին՝ ծովով, եւ կոյս դիանան՝ ջրահարսերով, մինչեւ ետ դառնանք։ Ազնիւ իշխաններ, բարի՛ ճանապարհ, չտարուենք խօսքով, մնացէ՛ք բարեաւ, գերագոյն իմ տէր։

KING HENRY.
Գնա՛ս բարով, հեկտոր, իմ տրոյայի ճշմարտափայլ յոյս։

CLARENCE.
Ինշան անխախտ հաւատարմութեան՝ ձերդ մեծութեան ձեռքն եմ համբուրում։

KING HENRY.
Անձնուէր կլարենս, յաջողակ եղիր։

MONTAGUE.
Սրտապինդ եղէք, գերագոյն տէր իմ, մնացէք բարո՛վ։

OXFORD.
[Kisses Henry's hand.] Ես դրոշմում եմ հաւատարմութիւնս։ Ցնո՛ր հանդիպում։

KING HENRY.
Թանկագի՞ն օքսֆորդ, բարի՛ մոնտէգիւ, ես ձեզ բոլորիդ մաղթում եմ դարձեալ բախտաւորութիւն։

WARWICK.
Մնացէ՛ք բարեաւ, ազնիւ իշխաններ, թող մենք հանդիպենք քովենտրիում։

*[Exit all save except King Henry and Exeter.]*

KING HENRY.
Առայժմ այստեղ թող հանգստանամ, ի՞նչ է մտածում էքսետերն արդեօք ինձ թւում է, որ ուժերն էդուարդի ի վիճակի չեն մեր բանակի դէմ կռուի ելնելու։

EXETER.
Եթէ նա այլոց գլխից չհանէ։

KING HENRY.
Այդ բանից երբեք ես չեմ վախենում, զի բարութիւնս է ինձ փառաբանում ժողովրդի մէջ, ես չեմ խցանել իմ լսելիքը նրանց խնդրանքով կամ կասեցրել նրանց հայցերը քաշքշուկներով, իմ գթութիւնը որպէս բալասան ապաքինել է վէրքերը նրանց, իմ բարութիւնը վէրքն է ամոքել, իմ գթութիւնը նրանց յորդացող արցունքն է սրբել, ես աչք չեմ դրել նրանցից մէկի հարստութեանը, նրանց չեմ ճնշել բարձր

հարկերով, վրէժխնդրութիւնս առաջ չեմ տարել, թէեւ իմ հանդէպ մեղքեր են գործել։ Ա՛խ, ինչո՞ւ նրանք Էդուարդին պէտք է ինձնից շատ սիրեն, ո՛չ, ո՛չ, Էքսետեր, այս շնորհները վարձ են պահանջում, եւ երբ առիւծը գառանն է շոյում, նրա ետեւից գառնուկն է գնում։

*[Drums from the depths of the stage. Sudden shouts of: Lancaster! Lancaster!]*

EXETER.
Լսո՞ւմ էք, տէր իմ, այս ի՞նչ ձայներ են։

*[King Edward, Gloucester and Soldiers enter.]*

KING EDWARD.
Բռնէ՛ք շփոթուած հենրուն եւ տարէք նորից հռչակէ՛ք մեզ անգլիոյ արքայ։ Դուք այն ակունքն էք, ուրկից բխում են փոքրիկ առուակներ, արդ, ձեր աղբիւրը պէտք է ցամաքի։ Իմ ծովը պէտք է ծծելով քաշի ձեր առուակները, ու կը բարձրանան ջրերը նրա։ Տարէ՛ք սրան բերդ։ Չթողնէք խօսի։

*[King Henry is manhandled, once again.]*

KING EDWARD [cont.]
Այժմ, իշխաննե՛ր, դէպի քովենտրի, որտեղ յանդուգն վորուիկն է մնում։ Շոգ է։ Շտապենք, թէ ոչ՝ հողմերը ցիրուցան կ՝անեն մեր դիզած խոտը։

GLOUCESTER.
Գնա՛նք, քանի դեռ զօրք չի հաւաքել, մեծ դաւաճանին յանկարծ կալանենք։ Խիզախ ռազմիկնե՛ր, դէպի քովենտրի՛։

*[They exit.]*

][][

ACT V. SCENE I.
Coventry. Warwick enters with the Mayor of Coventry, two Messengers and Others upon the Wall.

WARWICK.
Որտե՞ղ է լրաբերն անվախ օքսֆորդի, հեռո՞ւ է քո տէրն, ազնիւ բարեկա՛մ։

MESSENGER I.
Դանեսմորում է, այս կողմ է գալիս։

WARWICK.
Իսկ շա՞տ հեռու է եղբայր մոնտէգիւն, որտե՞ղ է նրա սուրհանդակն հիմա։

MESSENGER II.
Նա դենտրիում է, հզօր բանակով։

*[Sir John Somerville enters.]*

WARWICK.
Ասա՛, սոմերուիլ, սիրելի տղաս, ըստ քեզ՝ մօտի՞կ է կլարենսն այժմ։

SOMERVILLE.
Ես սաութեմում նրան թողեցի իր բանակի հետ երկու ժամ յետոյ այստեղ կը լինի։

WARWICK.
Ուրեմն, կլարենսը մօտենում է մեզ, լսում եմ նրա թմբուկի ձայնը։

SOMERVILLE.
Ո՛, ո՛չ։ Սաութեմն այն կողմն է, միլո՛րդ։

*[In the distant war drums can be heard.]*

WARWICK.
Բայց ո՞վ է գալիս։ Գուցէ բարեկա՞մ, որ չենք սպասում։

SOMERVILLE.
Շատ մօտ են, իսկոյն դու կը ճանաչես։

*[King Edward, Gloucester and their Army enter.]*

KING EDWARD.
Փողհա՛ր, մօտեցիր դու պարիսպներին եւ տարափողի՛ր խօսք բանակցութեան։

GLOUCESTER.
Տե՛ս, թէ ինչպէս է խոժոռ վորուիկը պատի երկայնքով զինուորներ լցնում։

WARWICK.
Ի՞նչ անակնկալ։ Միթէ՞ զուարճասէր Էդուարդն է եկել, ծախուա՞ծ են արդեօք դիտազօրները, թէ՞ քուն են մտել, որ ես չիմացայ՝ ինչպէս է եկել։

KING EDWARD.
Արդ, բացելո՞ւ ես դռները, վորուի՛կ, թէ՞ չես կամենում խօսել ազնուաբար եւ համեստօրէն չոքել իմ առաջ ինձ կոչիր արքայ, թողութիւն խնդրիր, եւ նա կների վիրաւորանքդ։

WARWICK.
Աւելի լաւ է՝ չքուեա զօրքիդ հետ, յիշի՛ր, թէ ո՞վ է քեզ բարձրացրել, եւ ո՞վ է գցել։ Կոչիր վորուիկին քո պաշտպանեալը, զղջա՛ արարքդ, այնժամ կը մնաս դարձեալ եորքի դուքս։

GLOUCESTER.
Ես կարծում էի՝ քեզ առնուազն կը կոչէր արքայ, գուցէ կատակե՞ց՝ հակառակ կամքին։

WARWICK.
Միթէ՞ դքսութիւնն առատ նուէր չէ։

GLOUCESTER.
Աստուած է վկայ, եթէ մի աղքատ կոմսի են տալիս։ Եւ ես պատրաստ եմ այսպիսի շռայլ նուէրի համար քեզ ծառայելու։

WARWICK.
Ես չէի՞, որ քո եղբօրը տուի թագաւորութիւն։

KING EDWARD.
Այն իմն էր, թէեւ վորուիկն է տուել։

WARWICK.
Դու ատլասը չես, որ այսպիսի մեծ ծանրութիւն կրես։ Հէնց դրա համար վորուիկն իր նուէրն ետ է վերցնում։ Արդ, թագաւորն իմ հենրին է միայն, ես՝ նրա ծառան։

KING EDWARD.
Բայց, վորուիկ, արքադ իմ գերին է, արդ, դու, անվախ վորուիկ, պատասխան տուր ինձ ի՞նչ է մարմինը՝ գլխից զրկուած։

GLOUCESTER.
Աւա՛ղ, քեզ, վորուիկ, հեռուն չես տեսնում մինչ դու խորհում ես տասնոցը քաշել, թագաւորն արդէն խորամանկօրէն հանուած է լինում խաղաթղթերից։ Դու թշուառ հենրուն եպիսկոպոսի պալատում թողիր տասնոցը ձեռքիդ՝ դու կը հանդիպես նրան թաուերում։

KING EDWARD.
Մինչեւ իսկ այդպէ՛ս։ Բայց, այնուհանդերձ, վորուիկն ես դարձեալ։

GLOUCESTER.
Վորուիկ, դու որսա յարմար ատենը եւ ծունր իջիր։ Էլ ի՞նչ ես խորհում, յիշիր՝ երկաթը տաք-տաք են ծեծում։

WARWICK.
Աւելի լաւ է, որ մէկ հարուածով կտրեմ այս ձեռքը եւ միւս ձեռքով այն նետեմ դէմքիդ, քան թէ վար բերեմ իմ առագաստը քո ոտքերի տակ։

KING EDWARD.
Դե՛հ, առագաստիր, ինչպէս ուզում ես, եւ թող բարեկամ քեզ լինեն քամին, ընթացքը ջրի սակայն այս ձեռքը, ամուր բռնելով քո սեւ մազերից, քանի դեռ տաք է կտրած գլուխդ, քո պիղծ արիւնով հողին կը գրի *«Քամու պէս փոխուող վորուիկն այլեւս չի կարող փոխուել։»*

*[Oxford and Soldiers enter.]*

WARWICK.
Սիրելի դրօշներ։

OXFORD.
Ահա՛ օքսֆորդը։ Կեցցէ՛ լանկաստերը։

*[Oxford and his Soldiers enter the city.]*

GLOUCESTER.
Բաց են դռները, մենք էլ ներս մտնենք։

KING EDWARD.
Այդպէս կարող են ուրիշ թշնամիք թիկունքից խփել։ Մենք կազմ ու պատրաստ այստեղ կը կանգնենք, նրանք, ի հարկէ, դուրս կը գան դարձեալ եւ մեզ կը նետեն նոր կռուի ձեռնոց։ Ու թէ չուզենան քաղաքից դուրս գալ, դուրս կը վռնդենք դաւաճաններին։

WARWICK.
Բարով ես եկել, թանկագին օքսֆորդ, դու ժամանակին օգնութեան հասար։

*[Montague and his Soldiers enter.]*

MONTAGUE.
Ահա՛ մոնտէգիւն։ Կեցցէ՛ լանկաստերը։

*[Montague and his Soldiers enter the city.]*

GLOUCESTER.
Դու եւ եղբայրդ պէտք է ձեր մարմնի թանկագին արեամբ հատուցանէք այս դրժութեան համար։

KING EDWARD.
Դժուարին կռուի պտուղը քաղցր է ես գուշակում եմ իմ յաղթանակը։

*[Somerset with his Soldiers enter.]*

SOMERSET.
Սոմերսետն ահա, կեցցէ՜ լանկաստերը։

*[Somerset with his Soldiers enter the city.]*

GLOUCESTER.
Քո անուանակից երկու դքսերն էլ արիւն են թափել եորքի տան կողմից, եւ դու կը լինես երրորդն անկասկած, եթէ այս սուրն ինձ ստոյգ ծառայի։

*[Clarence with his Soldiers enter.]*

WARWICK.
Նայի՛ր, գալիս է ջորջ կլարենսը, եւ նա բաւարար զօրութիւն ունի, որպէսզի կռուի եղբօր հետ անվախ, իր արդար գործի եռանդն է յաղթում հարազատ եղբօր սիրոյ զգացումը։

CLARENCE.
Հայր, հասկանո՞ւմ ես, ինչ եմ ակնարկում։ Պոկելով կարմիր վարդը գխարկից։ Օ՛, նայի՛ր այստեղ, իմ ամօթանքն եմ նետում քո դէմքին, չեմ ուզում քանդել իմ տունն հայրական, որ շաղախել եմ քարերն իմ արեամբ, եւ լանկաստերին ես չեմ պաշտպանի։ Ի՞նչ։ Միթէ՞, վորուի՛կ, դու հաւատում ես, որ կլարենսը այն աստիճանի բութ է, տմարդի եւ անագորոյն, որ կ՝ուղղի կռուի մահաբեր զէնքը ընդդէմ իր եղբօր եւ օրինաւոր իր թագաւորի։ Գուցէ իմ երդումն երեսի՞ս զարնես, բայց ես չեմ կարող այն կեանքի կոչել, քանզի կը լինեմ աւելի դաժան, քան թէ յեփթայէն, որ միակ դուստրին ողջակէզ արաւ։ Այնպէս ցաւում եմ իմ մեղքի համար, որ ի տրիտուր եղբօրս գութի՝ քեզ համարում եմ երդուեալ թշնամիս։ Ես միտք եմ դրել, ուր որ էլ լինի, հանդիպել քեզ հետ ու վրէժս առնել, քանզի խաբեցիր անմաքուր ձեւով։ Քեզ, գոռող վորուիկ, կանչում եմ ի մարտ, եղբօրս եմ դիմում շիկնած այտերով, ներիր ինձ, էդուա՛րդ, մեղքերիս համար, այսպէս մի՛ նայիր, ես այսուհետեւ կայուն կը լինեմ։

KING EDWARD.
Ողջո՛յն։ Տասն անգամ դու կը լինէիր դարձեալ սիրելի, եթէ դու նոյնիսկ չհատուցէիր ատելութեանս։

GLOUCESTER.
Իմ ողջոյնն էլ քեզ, բարի կլարենս, դու եղբայրաբար վարուեցիր մեզ հետ։

WARWICK.
Օ՛, չար դաւաճան, ստոր երդմնազանց։

KING EDWARD.
Վորուիկ, ուզո՞ւմ ես քաղաքից դուրս գալ ու կռուել մեզ հետ, թէ՞ ստիպուած ենք քարեր նետելու ականջներիդ շուրջ։

WARWICK.
Աւա՜ղ, ես այստեղ բնաւ չեմ գոցուել՝ ի պաշտպանութիւն, այժմ ես իսկոյն մեկնում եմ բարնետ, եւ քեզ հետ, Էդուա՛րդ, ես պէտք է կռուեմ, եթէ յանդգնես։

KING EDWARD.
Այո՛, Էդուարդը երկիւղ չի կրում, նա ցոյց է տալու քեզ ճանապարհը։ Իշխաննե՛ր, ի մա՛րտ։ Փա՛ռք քեզ, սուրբ գեւորգ եւ մեր յաղթանակ։

*[They exit.]*

][][

ACT V. SCENE II.
A field of battle near Barnet. Battle raging. King Edward enters with a wounded Warwick.

KING EDWARD.
Ա՛յ, այստեղ պառկիր, մեռի՛ր, թող քեզ հետ մեռնի մեր ահը, քանզի վորուիկը մեզ էր վախեցնում այժմ, մոնտեգիւ, փորձի՛ր դիմանալ, ես քեզ եմ փնտրում, որ նոյն փոսի մէջ քո եւ վորուիկի ոսկորներն հանգչեն։ [Exits.]

WARWICK.
Ա՛խ, ո՞վ կայ այստեղ, թող ինձ մօտենայ՝ թէկուզ թշնամի կամ թէ բարեկամ։ Ո՞վ յաղթեց ։ Եորքը՞, թէ՞ վորուիկն, ասա՛, բայց ինչո՞ւ հարցնել։ Իմ թուլութիւնը, արիւնս, սիրտս՝ հիւանդ ու տկար, եւ իմ յօշոտուած մարմինն ասում են, որ պէտք է յանձնեմ աճիւնս հողին, եւ յաղթանակը՝ կործանումիս հետ թշնամիներիս։ Այսպէս ընկնում է կացնից ծիգ մայրին, որի ճիւղերն են իրենց գիրկն առել վեհապանծ արծուին, իսկ ստուերի տակ առիւծն է նիրհում, եւ նրա կատարն աւելի բարձր է, քան իւպիտերի տարածուող ծառը, որ պաշտպանում է զաճաճ թփերը ցրտաշունչ քամուց։ Եւ այս աչքերը, որ մշուշուել են մահուան սեւ քօղով, թափանցում էին բարկ միջօրէի արեւի նման արար-աշխարհի դաւաճանութեան գաղտնիքների մէջ, իսկ իմ ճակատի բիւր խորշոմները՝ առլեցուն արեամբ, բաղդատւում էին յաճախ արքայոց գերեզմանի հետ, քանզի կա՞յ արքայ, ում գերեզմանը փորած չլինէի, ո՞վ կը յանդգնէր ժպտալ իմ առջեւ, երբ մռայլ էի, ահա՛ քո փառքը՝ այժմ շաղախուած արեամբ ու փոշով, իսկ այգիներս, ծառուղիներս ու կալուածքներս, աւա՛ղ, ինձանից անջատ են արդէն, ես ոչինչ չունեմ, բացի մարմինս ծածկող սեւ հողից։ Ի՞նչ է օրէնքը, իշխանութիւնը, արքայութիւնը՝ լոկ ունայնութիւն։ Ինչպէս էլ ապրես, վաղ թէ ուշ մահը պէտք է տանի քեզ։

*[Oxford and Somerset enter.]*

SOMERSET.
Օ՜, վորուի՛կ, վորուի՛կ, եթէ մեզ նման լինէիր ուժեղ, մենք կարող էինք ի չիք դարձնել կորուստները մեր հէնց նոր իմացանք, որ ֆրանսիայից թագուհին հզօր ուժեր է բերել։ Ա՛խ, կարենայիր դու մեզ հետ փախչել։

WARWICK.
Ո՛հ, այն ատեն էլ ես չէի փախչի։ Ա՛խ, իմ մոնտէգի՛ւ, սիրելի եղբայր, թէ դու այստեղ ես, ձեռքդ ինձ մեկնիր եւ քո շուրթերով իմ հոգին պահիր։ Դու ինձ չես սիրում, քանզի, իմ եղբա՛յր, եթէ սիրէիր, քո արցունքները պէտք է թրջէին այս արիւնը պաղ, որ արգելում է շուրթերս բանալ ու քեզ հետ խօսել։ Ա՛խ, շտապ արի՛, թէ ոչ՝ կը մեռնեմ։

SOMERSET.
Ա՛խ, վորուիկ, շունչը փչեց մոնտէգիւն, բայց մինչեւ վերջ էլ նա քեզ էր կանչում եւ ասում *«Տարէ՛ք իմ ջերմ բարեւը խիզախ եղբօրս։»* Եւ ջանում էր նա ինչ-որ բան ասել, բայց խօսքը նրա, ինչպէս նկուղում արձակուած խուլ ձայն, հազիւ հասկացայ, բայց վերջին պահին հառաչեց *«Վորուի՛կ։ Ա՛խ, մնաս բարեաւ։»*

WARWICK.
Ես հրաժեշտ եմ տալիս բոլորիդ, մենք կը հանդիպենք այնտեղ՝ երկնքում։ Թող հանգչի խաղաղ նրա սուրբ հոգին։ Փախէ՛ք, իշխաններ, դուք ձեզ կը փրկէք։ [Dies.]

OXFORD.
Գնանք թագուհու զօրքին ընդառաջ։

*[They exit carrying Warwick's body.]*

][][

ACT V. SCENE III.
Another part of the battlefield. Enter King Edward, Gloucester and Clarence.

KING EDWARD.
Մեզ մինչեւ հիմա բախտը տանում է դէպի յերկինս եւ յաղթանակի պսակ շնորհում, բայց պայծառափայլ այս միջօրէին տեսնում եմ մի սեւ, տարակուսելի, սպառնալից ամպ, որ պիտի կռուի մեր փառաւորեալ արեգակի հետ, մինչ նա կը հանգչի իր արեւմտեան խաղաղ անկողնում։ Իշխաններ, ամպը զօրքն է թագուհու, որ ժողովել է նա գաղիայում ու մեր հողն իջել։ Ինչպէս լսեցի, նրանք գալիս են մեր դէմ կռուելու։

CLARENCE.
Մի թեթեւ քամի շուտով կը ցրի այդ մռայլ ամպը եւ ծովից այն կողմ, ուրկից եկել է, կ՝ուղարկի նրան, քո բիւր շողերը պէտք է փարատեն այս մառախուղը։ Ոչ ամէն ամպն է փոթորիկ ծնում։

GLOUCESTER.
Թագուհին ունի երեսուն հազար քաջասիրտ մարտիկ, փախաւ սոմերսետն օքսֆորդի հետ նրա բանակը։ Եթէ թագուհին քիչ հանգստանայ, հաւատա, մեզ չափ նա ուժ կ՝ունենայ։

KING EDWARD.
Մեր հաւատարիմ բարեկամները ծանուցել են մեզ, որ նրանք իրենց ընթացքն ուղղել են դէպի տիւքսբերի։ Բարնետի դաշտում մենք ըստ կարելւոյն յաղթանակ տարանք, արդ, պէտք է ուղիղ շտապենք այնտեղ, հեշտ է ճանապարհին անցնել կամաւոր։ Ամէն կոմսութիւն մենք ոտք դնելիս խիստ կ՝ուժեղանանք։ Թմբուկնե՛ր զարկէք, կանչեցէք անվախ՝ առա՛ջ մարտիկներ։

*[They all exit.]*

][][

ACT V. SCENE IV.
Plains wear Tewksbury. Queen Margaret and Prince Edward enter with Somerset, Oxford and Soldiers.

QUEEN MARGARET.
Մե՛ծն իշխաններ, իմաստուն մարդիկ չեն նստում, ողբում իրենց կորուստը։ Այլ արիասիրտ փնտրում են նրանք վիշտն ամոքելու ճանապարհները։ Թէեւ մեր նաւի կայմը կոտրել է, պարանը պոկուել, եւ յուսոյ խարիսխն՝ ի կորուստ մատնեալ, եւ կուլ է տուել մեր նաւազների կէսին ծովն անհուն, բայց դեռ ապրում է մեր նաւապետը։ Յարմա՞ր է, որ նա վախկոտ մանչի պէս ղեկը բաց թողնէր եւ արտասուաթոր, լացող աչքերով խիստ կրկնապատկեր ծովի ջրերը, աւելի ուժ տար մեր ահեղ ծովին, որ առանց այդ էլ զօրութիւն ունի, եւ նաւը թողնէր, որ բախուէր ժայռին, երբ նա կարող էր հմտութեամբ փրկել։ Ա՜խ, ի՜նչ ամօթ է, ի՜նչ ծանր յանցանք։ Ասենք, վորուիկն է մեր խարիսխն եղել, մոնտէգիւն՝ կայմը, իսկ պարանները՝ մեր զոհուած մարդիկ։ Սակայն ի՞նչ օգուտ։ Միթէ՞ օքսֆորդը մեզ խարիսխ չէ արդ, միթէ՞ սոմերսետն ամուր կայմ չէ արդ, իսկ ֆրանսիացի բարեկամները պարան ու սարք չե՞ն։ Թէեւ նեղն ու ես անփորձ ենք այժմ, սակայն կարող ենք այս անգամ տանել մեր նաւարկելի գործը դժուարին։ Մենք բաց չենք թողնի ղեկը մեր ձեռքից, որպէսզի նստենք ու ողբանք անյոյս, բայց ճամփայ կ՝ընկնենք՝ ընդդէմ չար քամու, ծանծաղուտների ու ժայռերի մէջ, որ սպառնում են մեզ նաւաբեկել։ Ո՛չ յանդիմանանք, ո՛չ քծնանք ալեաց ի՞նչ է էդուարդը, եթէ ոչ՝ միայն ծով ալեկոծուած, ի՞նչ է կլարենսը, եթէ ոչ՝ սորուն աւազ նենգութեան, ի՞նչ է ռիչարդը, եթէ ոչ՝ միայն ժայռ չարագուշակ ահա մեր անբախտ նաւի թշնամիք։ Կարող էք լողալ, բայց կարճ կը տեւի, գուցէ ոտք դնէք աւազի վրայ ձեզ ներս կը քաշի դաւաճանօրէն, գուցէ մագլցէք կոպիտ ժայռն ի վեր ջրերն ալեկոծ ձեզ կը լուանան, կամ դուք կը մեռնէք այնտեղ սովամահ։ Օ՛, մահ եռակի։ Այդ բանն ասում եմ, որ դուք հասկանաք, ազնիւ իշխաններ, եթէ ձեզանից որեւէ մէկը պատեհ առիթին խոյս տայ մեզանից, թող նա աւելի քիչ յոյս ունենայ այդ երեք կողմից, քան թէ այս ծովից՝ իր լերկ ժայռերով, իր աւազներով։ Դե՛հ, արիացէք։ Եթէ չարութիւնն անկասելի է, ապա տտայոց թուլութիւններն են արցունքն ու վախը։

PRINCE OF WALES.
Այո՛, այսպիսի անվեհեր կինը, եթէ վախկոտը նրան ունկնդրէր, կարող էր սիրտ տալ ու ոգեւորել եւ առանց զէնքի կռուի կը գնար։ Ես դա ասում եմ ոչ նրա համար, որ կասկած ունեմ ես մէկի վրայ, բայց թէ գտնուէր այստեղ մի վախկոտ, ես կ՝արձակէի նրան ժամ առաջ որ չվարակէր նա ծանր պահին այլոց թոյլ ոգով։ Եթէ այդպիսի մէկը կայ այստեղ, աստուած չարասցէ, թող նա ժամ առաջ մարտից հեռանայ։

OXFORD.
Եթէ այսպիսի քաջութիւն ունեն տղայք ու կանայք, իսկ զինուորները՝ լոկ վախկոտութիւն, նրանց բիւր ամօ՛թ։ Օ՛, երիտասարդ, քաջ արքայազն, քո մէջ վերստին քո հռչակաւոր մեծ հայրն է ապրում, դու պիտի ապրես երկար տարիներ, որպէսզի կրես նրա պատկերը եւ յարութիւն տաս նրա մեծ փառքին։

SOMERSET.
Եւ ով չի ուզում ի սէր այդ յոյսի պայքարի ելնել, թող տանը քնի ու թէ բուի պէս ցերեկն արթնանայ, մարդիկ զարմանքից կը ծաղրեն նրան։

QUEEN MARGARET.
Շնորհակալութի՛ւն, ազնիւ Սոմերսետ, սիրելի օքսֆորդ։

PRINCE OF WALES.
Ընդունէք ինձնից շնորհակալութիւն, ով ուրիշ ոչինչ դեռ չի կարող տալ։

*[Messenger enters.]*

MESSENGER
Պատրաստուէք, տեարք իմ, Էդուարդը մօտ է, գալիս է կռուի մտադրութեամբ, վճռական եղէք։

OXFORD.
Ես նուազագոյնն այլ կերպ չեմ խորհել, նա շտապում է, որպէսզի բռնի մեզ յանկարծակի։

SOMERSET.
Բայց սխալւում է, մենք պատրաստ ենք, արդ։

QUEEN MARGARET.
Սիրտս լցնում է ձեր եռանդը խինդ։

OXFORD.
Մեր կռիւն այստեղ պէտք է բռնկի, ուստի մենք պէտք է տեղից չշարժուենք։

*[King Edward enters with Clarence, Gloucester and their Army.]*

KING EDWARD.
Քաջամարտիկնե՛ր, կանգնած է այստեղ փշոտ անտառը, որ երկինքների ձեռնտուութեամբ ու ձեր զօրութեամբ պէտք է կտրատէք ողջ արմատները մինչեւ ուշ գիշեր։ Ինչո՞ւ կիզանիւթ ես աւելացնեմ ձեր կրակի վրայ, երբ ես լաւ գիտեմ, թէ ձեր բոցն ինչպէս կ՝այրի անտառը։ Թմբուկնե՛ր զարկէք, ի մա՛րտ, իշխաննե՛ր։

QUEEN MARGARET.
Լորդե՛ր, ասպետնե՛ր, ազնուականնե՛ր, իմ արցունքները չեն թողնում խօսել իւրաքանչիւր բառ արտասանելիս՝ տեսնում էք, ինչպէս ես կուլ եմ տալիս իմ արցունքները։ Ուստի չեմ ասում ոչինչ աւելի, քան թէ այս մէկը հենրին՝ ձեր արքան, գերուել է, աւա՜ղ, թշնամու կողմից, յափշտակել են եւ նրա գահը, երկիրը դարձրել մի սպանդանոց, մորթում են նրա հպատակներին եւ ոտնահարում օրէնքներն ամէն, գանձերը շորթում, արդ, գայլն է եկել՝ այս կողոպուտի արարիչն ստոր։ Կռուէ՛ք, իշխաններ, ձեր գործն է արդար, դեհ արիացէ՛ք, ջեփորներ հնչէք՝ ի նշան մարտի։

*[The two Armies brace themselves for battle.]*

][][

ACT V. SCENE V.
Another part of the field. King Edward, Gloucester and Clarence enter with Queen Margaret, Oxford and Somerset as their prisoners.

KING EDWARD.
Արդ, վախճանն հասաւ արնոտ գժտութեան։ Տարէ՛ք օքսֆորդին հեմսի ամրոցը, իսկ սոմերսետի գլուխն յանցաւոր թռցրէք իսկոյն։ Տարէք, չեմ ուզում ոչ մէկին լսել։

OXFORD.
Գալով ինձ՝ քեզ չեմ անհանգստացնի ես ոչ մի խօսքով։

SOMERSET.
Ոչ էլ ես, միլորդ։ Բայց խոնարհւում եմ իմ բախտի առաջ։

*[Oxford and Somerset exit with Guards.]*

QUEEN MARGARET.
Այսպէս տխրօրէն մենք բաժանւում ենք այս չար աշխարհից, որ ուրախութեամբ հանդիպենք վերին երուսաղեմում։

KING EDWARD.
Յայտարարե՞լ էք արդեօք այն մասին, ով երիտասարդ էդուարդին գերի, նա կը ստանայ վարձ, իսկ գերին՝ կեանքը։

GLOUCESTER.
Այո՛, մեր արքայ։ Եւ ահաւասիկ բերում են նրան։

*[Soldiers enter with Prince Edward.]*

KING EDWARD.
Մօտ բերէք քաջին, թողէք նա խօսի։ Միթէ՞ կարող է այսքան մատղաշ փուշն այսպէս ծակոտել։ Դու ի՞նչ գոհացում կարող ես մեզ տալ այն բանի համար, որ զէնք վերցրիր եւ ըմբոստացրիր ժողովուրդն իմ դէմ՝ ինձ պատճառելով այսքան նեղութիւն։

PRINCE OF WALES.
Դու պէտք է խօսես հպատակի պէս, ո՛վ փառամոլ եո՛րք։ Հաշուի՛ր, որ քեզ հետ հայրս է խօսում իմ շրթունքներով։ Իջիր դու գահից, չոքիր իմ առաջ։ Ես քեզ եմ ուղղում այդ նոյն բառերը, որոնց պատասխանն ինձանից էիր ուզում իմանալ։

QUEEN MARGARET.
Ա՛խ, եթէ հայրդ քեզ նման լինէր այդպէս անհողդողդ։

GLOUCESTER.
Այն ժամանակ դու պէտք է հագնէիր նորից շրջազգեստ եւ լանկաստերի տաբատը բնաւ չյափշտակէիր։

PRINCE OF WALES.
Թող եզովպոսի առակներն ասեն ձմռան գիշերին, այստեղ երկդիմի խօսելու վայր չէ։

GLOUCESTER.
Երդւում եմ, լակո՛տ, այս խօսքիդ համար տանջամահ անել։

QUEEN MARGARET.
Այո՛, ծնուել ես, որ մարդկանց տանջես։

GLOUCESTER.
Տարէք այստեղից չարախօս քածին։

PRINCE OF WALES.
Աւելի լաւ չէ՞ր՝ չարախօս կուզիկին։

KING EDWARD.
Լռիր, շան լակոտ, լեզուդ կը կտրեմ։

CLARENCE.
Դու, լակո՛տ, լեզուիդ շատ ես զօռ տալիս։

PRINCE OF WALES.
Ես գիտեմ պարտքս, դուք այդ չգիտէք։ Կնամոլ Էդուարդ, երդմնազանց ջորջ, եւ դու, դարձուոր դիկ, ես ձե՛զ եմ ասում, ես բարձր եմ ձեզնից, ո՛վ դաւաճաններ, իսկ դո՛ւ, նենգ Էդուարդ, յափշտակել ես իմ հօրս թագը։

KING EDWARD.
Ա՛ռ քեզ, վիուկին արժանի ծնունդ։ [Stabs him.]

GLOUCESTER.
Դեռ թպրտո՞ւմ ես, ա՛ռ քեզ, որպէսզի հոգիդ տաս ընդմիշտ։ [Stabs him.]

CLARENCE.
Սա՛ էլ քեզ, քանզի ինձ պարսաւեցիր երդմնազանցութեամբ։ [Stabs him.]

QUEEN MARGARET.
Ինձ էլ սպանէք։

GLOUCESTER.
Շա՞տ կ՝ուզես, խնդրեմ։ [Offers to kill her.]

KING EDWARD.
Սպասի՛ր, ռիչարդ, մենք առանց այն էլ չափն անցկացրինք։

GLOUCESTER.
Ինչո՞ւ նա ապրի։ Որպէսզի լցնի՞ աշխարհն իր խօսքով։

KING EDWARD.
Ի՞նչ։ Նուաղո՞ւմ է, շուտ, ուշքի բերէք։

GLOUCESTER.
Կլարենս, իմ եղբա՛յր եւ իմ թագաւո՛ր, ներէք ինձ այժմ, կարեւոր գործով մեկնում եմ լոնդոն։ Հէնց որ գաք այնտեղ, նոր լուրեր կ՝առնէք։

CLARENCE.
Ի՞նչ։ Ի՞նչ։ Լուրեր։

GLOUCESTER.
Թաուե՛ր։ Թաուե՛ր։ [Exits.]

QUEEN MARGARET.

Օ՜, նե՜ղ, զաւա՜կս։ Խօսի՛ր մօրդ հետ, չե՞ս կարող խօսել։ Օ՜, դաւաճաննե՛ր, մարդասպաննե՛ր։ Յուլիոս կեսարին սպանող մարդիկ ձեր այս զազրելի գործի համեմատ արիւն չթափին եւ չանարգեցին, չծածկին իրենց այսքան ամօթով, ինչպէս այս մարդիկ։ Նա տղամարդ էր, իսկ սա՝ երեխայ։ Իսկ տղամարդիկ իրենց ցասումը բնաւ չեն թափում երեխայի վրայ։ Կա՞յ աւելի գէշ, քան մարդասպանը։ Ի՞նչ անուն տամ ձեզ։ Ո՛չ, ո՛չ, թէ խօսեմ, սիրտս կը պայթի։ Բայց պիտի խօսեմ, որ սիրտս պայթի։ Օ՜, մսագործնե՛ր, թշուառ դահիճնե՛ր, մարդասպաննե՛ր, ինչպիսի՜ քնքուշ ծաղիկ պոկեցիք ժամանակից շուտ։ Դուք, մսագործնե՛ր, չունէք երեխայ ու թէ ունենաք, նրանք ձեր խղճի խայթը կը շարժէին։ Եթէ ձեզ աստուած երեխայ բաշխի, իսկէք, որ նրան չմորթեն այսպէս ջահէլ հասակում ինչպէ՛ս, դահիճներ, դուք կործանեցիք իմ երեխային։

KING EDWARD.

Դուրս տարէք նրան այստեղից ուժով։

QUEEN MARGARET.

Ո՛չ, ինձ մի՛ տարէք, այստեղ սպանէք, այստեղ մարմինս պատեան դարձրու քո սրին, եւ քեզ կը ներեմ իմ մահի համար։ Չե՞ս ուզում։ Կլարենս, դու ինձ սպանիր։

CLARENCE.

Երկի՛նքը վկայ, ես չեմ կամենում քո վիշտն ամոքել։

QUEEN MARGARET.

Սպանի՛ր, կլարենս, իմ բարի կլարենս։

CLARENCE.

Միթէ՞ չես լսել դու իմ երդումը, որ չեմ սպանի։

QUEEN MARGARET.

Այո՛, բայց չէ՞ որ ինքդ սովոր ես դրժել երդումդ, դա մեղք էր եղել, իսկ, արդ, կը լինի միայն գթութիւն։ Էլի՞ չես ուզում։ Որտե՞ղ է, ասա՛, ռիչարդն այլանդակ։ Որտե՞ղ ես, ռիչարդ։ Օ՜, դու այստեղ չե՞ս։ Ով արիւն խնդրի, չես մերժի նրան։

KING EDWARD.

Տարէ՛ք, ասացի։ Հրամայո՛ւմ եմ։

QUEEN MARGARET.

Այն, ինչ որ եկաւ իմ որդու գլխին, թող նոյնն էլ քեզ գայ, քո ամբողջ տոհմին։

*[The Queen is dragged off-stage by Soldiers.]*

KING EDWARD.
Ո՞ւր է ռիչարդը։

CLARENCE.
Տէր իմ, շուտափոյթ նա մեկնեց լոնդոն, որ արեան ընթրիք պատրաստի բերդում։

KING EDWARD.
Ինչ մտքովն անցնի, իսկոյն նա կ՝անի։ Այժմ այստեղից մենք գնանք լոնդոն ու զինուորներին ազատ արձակենք շնորհակալութեամբ եւ առատ վարձով։ Գնանք ու տեսնենք, թէ մեր թագուհին ինչպէս է զգում, նա, հաւանաբար, ինձ պարգեւել է մի արու զաւակ։

*[They exit.]*

][][

ACT V. SCENE VI.
London. The Tower. King Henry enter with Gloucester and the Gaoler.

GLOUCESTER.
Բարի օր, միլորդ, խորասուզուե՞լ ես այդպէս գրքի մէջ։

KING HENRY.
Այո, բարի լորդ, բայց ես կ՝ուզէի ասել ձեզ՝ միլորդ։ Չէ՞ որ յանցանք է շողոքորթելը, իսկ *«Բարի»* բառով ես շողոմեցի։ *«Բարի գլոստեր,»«Բարի սատանայ,»* այդ երկու բառն էլ նոյն իմաստն ունեն ես սխալուեցի, պէտք չէ՝ *«Բարի լորդ։»*

GLOUCESTER.
[To the Gaoler.] Թող մեզ միայնակ, մենք պէտք է խօսենք։

*[The Gaoler exits.]*

KING HENRY.
Այդպէս փախչում է անհոգ հովիւը գայլի առջեւից, այդպէս սկզբում ոչխարն է յանձնում բուրդը դանակին եւ յետոյ՝ վիզը։ Մահուան ինչպիսի՞ տեսարան պէտք է ռոցիուսը խաղայ։

GLOUCESTER.
Կասկածն է ճնշում յանցաւոր հոգուն ամէն թուփ գողին պահակ է թւում։

KING HENRY.
Բայց այն թռչունը, որ թփերի մէջ մի անգամ բռնուեց, հեռու կը մնայ դողդոջ թեւերով ամէն մի թփից։ Ես՝ դժբախտ հայրս քնքուշ թռչնակի, արդ, աչքիս առաջ այն օրհասական առարկան ունեմ, որով

բռնեցին իմ մատղաշ ձագին ու սպանեցին։

GLOUCESTER.
Ի՞նչ գէշ յիմար էր այդ կրետացին, որ սովորեցրեց հարազատ որդուն թռչնի պէս ճախրել։ Նա թեւեր ունէր, բայց, աւա՜ղ, խեղդուեց։

KING HENRY.
Ես դեդալոսն եմ, որդիս՝ իկարը, հայրդ՝ մինոսը, մեր ճամփան փակեց իսկ այն արեւը, որ քնքուշ որդուս թեւերը այրեց, քո աւագ եղբայր էդուարդն է եղել, դու էլ՝ այն ծովը, որի չարակն անդունդը խլեց նրա ողջ կեանքը։ Ա՜խ, դու սպանիր ինձ քո գեղարդով, բայց ոչ՝ բառերով, կուրծքս կարող է հեշտութեամբ տանել հարուածը սրիդ, քան լսելիքս՝ այս ողբերգական պատմութիւնները։ Ինչո՞ւ ես եկել, կեանքս առնելո՞ւ։

GLOUCESTER.
Դու մտածում ես, որ ես դահի՞ճ եմ։

KING HENRY.
Դու հոգէառ ես, ես չեմ կասկածում եթէ սպանուողն անմեղ մանկիկ է, ուրեմն, գլոստեր, դու ե՛ւ դահիճ ես։

GLOUCESTER.
Ես սպանեցի քո որդուն, քանզի շատ էր յանդուգն։

KING HENRY.
Եթէ, գլոստեր, քեզ սպանէին, երբ յանդգնեցիր առաջին անգամ, դու չէիր ապրի, որ սպանէիր անմեղ զաւակիս։ Արդ գուշակում եմ անհամար մարդիկ, որ դեռ չեն զգում երկիւղն իմ հոգու, եւ վշտահառաչ բիւր ծերունիներ, բազում այրիներ, որբեր լալագին, հայրեր՝ կորցրած անմեղ որդիներ, կանայք՝ սգացող ամուսիններին, որբեր, որ տեսան իրենց ծնողաց մահը վաղաժամ, պէտք է դառնութեամբ քո աշխարհ գալու պահը նզովեն։ Երբ դու ծնուեցիր, չար բուն էր վայում, եւ կռաւում էր բուէճն անողորմ, գուշակում դժնի ու անբախտ օրեր, եւ շներն էին ոռնում, կաղկանձում, պոկում էր գետնից զարհուրելի հողմն անհամար ծառեր, եւ ծխնելոյզին ագռաւն էր նստած, եւ շաղակրատ կաչաղակների չարագոյժ երամն ճչում էր խառնեկ։ Աւելի խորունկ քո մայրը զգաց երկունքի ցաւը, քան ուրիշ մայրեր, բայց բոլորից քիչ նա մխիթարուեց, քանզի այլանդակ այս տգեղ գունդը նման չէ այնքան լաւ ծառի պտղին երբ դու ծնուեցիր, ատամ ունէիր, սա ցոյց է տալիս, որ աշխարհ եկար մարդկանց խածնելու, ու թէ ստոյգ են, ինչ դեռ լսել եմ, ուրեմն, գլոստեր։

GLOUCESTER.
Բաւ է, այլեւս չեմ ուզում լսել։ Սատկի՛ր, գուշակո՛ղ։ [Stabs him.] Սա էլ էր նոյնպէս կարգուած իմ բախտին։

## KING HENRY.

Այո՛, դեռ ուրիշ անթիւ ոճիրներ։ Աստուա՛ծ, մեղքերիս թողութիւն արա եւ ներիր նրան։ [Dies.]

## GLOUCESTER.

Ի՞նչ։ Լանկաստերի գոռոզ արիւնը հողն է ներծծում ես կարծում էի՝ պիտ ելնի երկինք։ Նայի՛ր, ինչպէս է իմ սուրը ողբում արքայի մահը։ Օ! թող այսպիսի կարմիր արցունքներ հեղուեն նրանցից, ովքեր ուզում են մեր տունն աւերել։ Եթէ քո մէջ կայ դեռ կեանքի նշոյլ, գնա՛ դու դժոխք եւ ասա, որ քեզ ե՛ս եմ ուղարկել նորից խոցում է։ Եւ չունեմ ո՛չ տէր, ո՛չ խղճմտանք եւ ո՛չ էլ սարսափ։ Իրաւ, ստո՞յգ է, ինչ ասաց հենրին յաճախ եմ լսել՝ ինձ մայրս էր ասում, առաջ ոտքերս լոյս աշխարհ եկան։ Ինձ հարկաւոր էր այսպէս շտապել, կործանել նրանց, ովքեր խլեցին մեր իրաւունքը։ Մանկաբարձուհին խիստ զարմացել էր, իսկ կանայք, կանայք բղաւում էին՝ «յիսո՛ւս, խափանի՛ր, ծնուեց ատամով։» Հէնց այդպէս էի։ Սա ցոյց է տալիս, որ ես շան նման պէտք է խածնէի ու գռմռայի։ Եթէ երկինքն ինձ աշխարհ է բերել տգեղ մարմնով, թող այլանդակի դժոխքն իմ ոգին նրա համեմատ, ես եղբայր չունեմ, սրտիս մէջ չկայ եղբօր զգացում, եւ թող այդ սէրը, որ մօրուքաւոր այրերն են կոչում աստուածային հուր, ապրի ոչ թէ իմ, այլ մարդկանց սրտում, ովքեր իրարու նման են իրա՛ւ։ Ես միայնակ եմ, զգո՛յշ, կլարենս, դու պատուարում ես լոյսն իմ առջեւի բայց կը պատրաստեմ ես քո սեւ օրը, քանզի այնպիսի կանխագուշակում պէտք է շշնջամ, որ, իրա՛ւ, էդուարդն իր կեանքից սօսկայ։ Որպէսզի վանի սարսափն իրենից, ես պիտի դառնամ քո մահը ահեղ։ Թագաւոր հենրին ու նրա որդին այլեւս չկան, հերթը, կլարենս, քոնն է եւ այլոց։ Ես փոքրիկ կայծ եմ, բայց կը դառնամ բոց։ Ես քարշ եմ տալիս դիակդ այստեղից եւ քո սեւ օրով ցնծում եմ նորից։

*[Gloucester exits, dragging King Henry's body.]*

][][

## ACT V. SCENE VII.

London. The Palace. King Edward and Queen Elizabeth enter with Clarence, Gloucester, Hastings and a Nurse with the Young Prince.

## KING EDWARD.

Բազմում ենք դարձեալ գահին արքունի, որ նորից գնուեց թշնամու արեամբ։ Ի՛նչ թշնամական ջահէլ զինուորներ, որ փթթում էին իրենց կատարեալ մեծամտութեամբ, հնձեցինք աշնան ցորենի նման։ Երեք Սոմերսետ՝ երիցս անուանի խիզախ մարտիկներ, երկու կլիֆորդ՝ հայրն ու զաւակը, եւ երկու անվախ նորթեմբերլենդներ, որոնց նման ցարդ ձի չի խթանել փող հնչեցնելիս եւ ոչ մի ասպետ։ Նրանց հետ երկու քաջասիրտ արջեր՝ մարկիզ մոնտէգիւն ու կոմս վորուիկը, որ շղթայեցին առիւծն արքունի եւ ստիպեցին իրենց ոռնոցով անտառը երերալ այսպէս վանեցինք մեզ շրջապատող ամէն կասկածանք, անվտանգութիւնն եղաւ մեր գահի ոտնայենակը։ Մօ՛տ արի, իմ բես, թոյլ տուր համբուրել փոքրիկ մանչուկս։ Չէ՞ որ քեզ համար, իմ պատանի նեդ, քո հօրեղբայրը եւ ես՝ քո հայրը, ձմռան գիշերին զէնքեր կրեցինք, տրորեցինք հողն ամռան բարկ շոգին, որպէսզի իշխես դու խաղաղութեամբ եւ հնձես բերքը մեր աշխատանքի։

GLOUCESTER.
[Aside.] Ես պէտք է նրա հունձը խորշակեմ, երբ դու գլուխդ մի օր վայր դնես, քանզի դեռ կեանքում կարեւոր դէմք չեմ ինձ ուս է տրուած ծանր բեռ կրելու, ես պէտք է կրեմ կամ մէջքս ջարդեմ։ Դու ցոյց տուեցիր ինձ ճանապարհը, դու էլ կատարիր։

KING EDWARD.
Կլարենս ու գլոստեր, ես ձեզ խնդրում եմ, սիրէք թագուհուն եւ արքայական ձեր եղբօրորդուն համբուրէք, եղբա՛յրք։

CLARENCE.
Հպատակութիւն իմ տիրոջ հանդէպ սրբազան պարտքս է։ Այս քնքուշ մանկան շուրթերի վրայ համբոյրս եմ դրոշմում։

KING EDWARD.
Շնորհակալութի՛ւն, փառապանծ կլարենս իմ ազնիւ եղբա՛յր, շնորհակալութի՛ւն։

GLOUCESTER.
Այն ծառն եմ սիրում, որի ճիւղն ես դու, որպէս ապացոյց ես համբուրում եմ պտուղը նրա։ [Aside.] ճշմարիտն ասած՝ այսպէս համբուրեց յուդան յիսուսին, ասաց՝ բարեաւ կաց, բայց չարութիւնը թաքցրեց հոգում։

KING EDWARD.
Արդ, ես հոգեկան հաճոյքների մէջ թագաւորում եմ երկիրս է խաղաղ, ու վայելում եմ սէրն եղբայրներիս։

CLARENCE.
Ձերդ մեծութիւն, մենք ինչպէ՞ս վարուենք մարգարիտի հետ։ Նրա հայրը՝ ռենէն, լիւդովիկին գրաւ է տուել երուսաղէմը սիցիլիայի հետ։ Նրա փրկագինն ուղարկել են, արդ։

KING EDWARD.
Նրան այստեղից քշէք ֆրանսիա։ Ի՞նչ է մեզ մնում, եթէ ոչ միայն ժամանակ վատնել ճոխ հանդէսներում եւ ուրախանալ խիստ ծիծաղաշարժ տեսարաններով, ինչպէս վայել է թագաւորական զուարճանքներին։ Հնչէ՛ք շեփորներ, զարկէ՛ք թմբուկներ, մնացէ՛ք բարեաւ, օրեր դառնագին, բացւում է այգը մեր երանաւէտ ու անամպ կեանքին։

*[They all exit.]*

[FIN]

